# ԽՄԲԱՎԱՐ ԵՒ ԵՐԱԺՇՏԱՀԱՆ
# ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ
# ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ
# ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՈՒՐՈՒԱԳԻԾ

**(ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)**

Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

---

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Է.

ԳԱՀԻՐԷ
2017

# ԽՄԲԱՎԱՐ ԵՒ ԵՐԱԺՇՏԱՀԱՆ
# ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ
# ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ
# ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՈՒՐՈՒԱԳԻԾ

**(ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)**

Հաւաքեց եւ պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ Է.

ԳԱՀԻՐԷ
2017

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Սոյն հրատարակութիւնը փորձ մըն է մէկտեղելու խմբավար եւ երաժշտագէտ Հայկ Սարգիսեանի (ծն. 1955, Գահիրէ) եգիպտական շրջանի գործունէութեան հետ կապուած վաւերաթուղթեր եւ փաստագրութիւններ, որոնց մէկ մասը Սարգիսեան ինծի փոխանցած էր Փարիզ հաստատուելէն առաջ եւ որոնց հիման վրայ 2005-ին գրած էի յօդուած մը («Հայկ Սարգիսեան. խմբավար եւ երաժշտագէտ», *Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Ե. տարի, թիւ 2 (18), Ապրիլ 2005, էջ 3-28։)

Սարգիսեանի եգիպտահայ եւ եգիպտական շրջանը կ՚երկարի մինչեւ 1992 թուականի կէսերը։ Վերջնականապէս գաղթելով Եգիպտոսէն, 1992 Սեպտեմբերին ան արդէն ստանձնած էր Ռենսիի Դպրոցասէր Վարժարանի երգի ուսուցիչի եւ մանկական երգչախումբի խմբավարի պաշտօնները։

Հ. Ա.



ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

*Զորեքշաբթի, 30 Յունուար 1980, երեկոյեան ժամը 9·30*
*Շահեկան զրոյց մը կը կատարէ*

**ՊՐ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

ԵՒ ՀԱՅՐԵՆԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ

*Պիտի ցուցադրուին լուսապատկերներ*

Յայտարարութիւն
*Արեւ*, 28 Յունուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.467, էջ 4




*Հինգշաբթի, 7 Փետրուար 1980, երեկոյեան ժամը 9.30*
*Շահեկան զրոյց մը կը կատարէ*

**ԴՐ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

ԵՒ ՀԱՅՐԵՆԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ

*Պիտի ցուցադրուին լուսապատկերներ*
*Սիրալիր հրաւէր բոլորին, մանաւանդ երիտասարդներուն եւ պատանիներուն*

Յայտարարութիւն
*Արեւ*, 31 Յունուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.469, էջ 4

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ

## ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

Գալուստեան Ազգային Վարժարանի
Երկրորդական Բաժնի Աշակերտութիւնը

*Արտասանութիւն, Երգ, Նուագ, Խմբային Արտասանութիւն, Խմբերգ*

**ԽՄԲԱՎԱՐ**

## ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

(Խմբավարութեան Դափնեկիր)

**Գեղարուեստական Պատասխանատու՝**

**ՄԱՆՈՒԷԼ ՔԷՕՍԷԵԱՆ**

**Հանդիսութեան Ընդհանուր Ղեկավար՝**

**Տնօրէն ՆՇԱՆ ՎԱՐԴԵԱՆ**

*Ուրբաթ, 8 Փետրուար 1980, երեկոյեան ժամը 8.30 ին*

« ՆԱՅԼ ՀՈԼ » ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

## Ա. ՄԱՍ

1. Եգիպտական Քայլերգ — Երգչախումբ
Խօսք՝ Մուսթաֆա Քամէլ
Երաժշտ.՝ Սայիտ Տարուիշ

2. Ասացուած Կոմիտաս Վարդապետի Համար — Մ. Քէօսէեան
Կոստան Զարեան
Դաշնամուրով կընկերակցի՝ — Հ. Սարգիսեան

3. Հերիք Որդեակք — Երգչախումբ
Երաժշտ.՝ Տ. Չուհաճեան

4. Մարալօ — Երգչախումբ
Միջնադարեան երգ
Մշակում՝ Նարօ Չալըքեան

5. Հարս եմ գնում — Քրիստին Բաքուձաս
ժողովրդական
Մշակում՝ Թ. Ալթունեան

6. Այ Փորկա, Փորկա — Երգչախումբ
Վանայ հարսանեաց երգ
Մշակում՝ Թ. Ալթունեան

7. Չինար ես — Իրիս Գայսէրլեան
Կոմիտաս Վարդապետ

8. Սարերդ ծաղկել — Երգչախումբ
Երաժշտ.՝ Արամ Խաչատուրեան

9. Նուասարդեան — Երգչախումբ
Դանիէլ Վարուժան
Մենասող՝ — Գրիգոր Միքայէլեան

## Բ. ՄԱՍ

1. Ասացուած Մեռած Բանաստեղծի Համար
   Կոստան Զարեան
   Մենասող` — Քերի Մխաիկեան
   Խումբ` Րաֆֆի Դելփեան, Մարօ Եափուճեան
   Մարօ Ժամկոչեան, Յակոբ Իրատեան
   Նայիրի Խաչիկեան, Լուսին Կէրիկեան
   Սօսէ Մաճառեան, Գրիգոր Միքայէլեան
   Անի Նալպանտեան, Հարի Չէչճէնեան
   Րաֆֆի Չէչճէնեան, Անահիտ Սարգիսեան
   Անի Փայլակեան, Լենա Ֆրընճեան

2. Դաշնամուր — Լուսին Կէրիկեան
   Մոցարթ

3. Վարդ Կօշիկս — երգչախումբ
   Կարա Մուրզա
   Կը մեներգեն` — Անի Փայլակեան, Րաֆֆի Չէչճէնեան

4. Էլ Հէլուա Տի — երգչախումբ
   Սայիտ Տարուիշ

5. Կռունկ — երգչախումբ
   Ձայնագրութիւն` Միհրան Թումաճեան
   (Առաջին կատարում)

6. Երգ Գայի Մասին — երգչախումբ
   Երաժշտ.` Ալ. Յարութիւնեան

7. Երեւան - Էրեբունի — երգչախումբ
   Խօսք` Պարոյր Սեւակ
   Երաժշտ.` Էտկար Յովհաննիսեան

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԿԱՐԳԵՐՈՒ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԷ ԿԱԶՄՈՒԱԾ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՅԱՋՈՂ ԵԼՈՅԹԸ ԽՄԲԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Երբեք պէտք չէ զարմանալ Հայկ Սարգիսեանի երաժշտական բացառիկ եւ յատուկ տաղանդին համար, քանի որ ան սերած է երաժշտագէտ ընտանիքէ մը, եւ իր յատկութիւնները ցուցաբերած, շատ փոքր տարիքէն, շնորհիւ իր հօր՝ եգիպտահայ գաղութի սիրուած երգիչներէն ողբ. Պարոյր Սարգիսեանի ցուցմունքներուն:

Հայկ Սարգիսեան շարունակելով հօրը՝ Պարոյր Սարգիսեանի գծած ուղին, կը մտնէ երաժշտական լայնածաւալ արուեստի ուղիէն ներս: Սկսելով փոքր տարիքէն, հետզհետէ Հայկ Սարգիսեան զարգացուց իր տաղանդը, եւ ի վերջոյ այդ զարգացումը բոլորելու, ամբողջացնելու, կատարելագործելու համար, դիմեց Երեւանի Արամ Խաչատուրեանի անուան երաժշտանոցը, եւ հետեւեցաւ խմբավարական բաժնին, որուն վերջին տարին ըլլալով Յունիսին ան արդէն ընթացաւարտ կ'ըլլայ:

Հայկ Սարգիսեան իր ուսանողութեանը շրջանին, որպէս փայլուն ուսանող, մասնակցած է Հայաստանի երաժշտական ուսումնարաններու խմբավարական մրցանքներուն եւ արժանացած «Խմբավարութեան Հանրապետական դափնեկիր»-ի կոչումին:

Եգիպտահայերս եթէ ասկէ տարիներ առաջ, ունկնդրած էինք Հայկ Սարգիսեանի դաշնամուրային մենանուագները, ու զինք ջերմօրէն ծափողջունած, ահա այսօր դարձեալ կը վայելենք զինքը, որպէս փայլուն յաջողութիւններ ձեռք բերած խմբավար որ շատ կարճ ժամանակամիջոցի մը մէջ կարողացաւ համախմբել Գալուստեան Ազգային Վարժարանի երկրորդական կարգի երեք դասարաններու աշակերտութիւնը եւ անոնցմով կազմել շատ յաջող երգչախումբ մը, որ ելոյթ ունեցաւ Ուրբաթ 8 Փետրուար 1980-ի երեկոյեան, Նայլ Հօլ հանդիսասրահին մէջ, ուր յոգնախուռն բազմութիւն մը եկած էր ներկայ ըլլալու այս գեղարուեստաերաժշտական աննախընթաց երեկոյթին:

Երգչախումբին կողմէ երգուած եգիպտական քայլերգէն ետք, սկսաւ յայտագրի առաջին մասին գործադրութիւնը, եւ հայերէնի ուսուցիչ Պր. Մանուէլ Քէօսէեան ասմունքեց Կոստան Զարեանի *Ասացուած Կոմիտաս Վարդապետի համար* քերթուածը, որուն դաշնամուրով կ'ընկերանար Հայկ Սարգիսեանը: Ապա երգչախումբը, խմբավարութեամբ Հայկ Սարգիսեանի ելոյթ ունեցաւ Տ. Չուհաճեանի *Հերիք որդեակք* երգով, որուն յաջորդեց, միջնադարեան երգերէն *Մարալօ*ն, որ մշակումն էր Կարօ Չալըքեանի: Ապա աշակերտուհի Քրիստին

Փափուցաս մեներգեց ժողովրդական, Թ. Ալթունեանի մշակումներէն *Հարս եմ գնում* երգը, դարձեալ Թ. Ալթունեանի մշակումներէն, երգչախումբը ելոյթ ունեցաւ, ներկայացնելով Վանայ հարսանեաց երգը *Այ ֆորկա, ֆորկա*ն։

Աշակերտուհի Իրիս Գայսէրլեան մեներգեց Կոմիտաս Վարդապետի *Չինար ես*ը, որուն յաջորդեց Արամ Խաչատուրեանի *Սարերդ ծաղկել* երգը կատարուած երգչախումբին կողմէ։ Դանիէլ Վարուժանի *Նաւասարդեան* քերթուածի արտասանութիւնը կատարեց երգչախումբը, մենարտասանութեամբ Գրիգոր Միքայէլեանի եւ այսպէսով վերջ գտաւ յայտագրի առաջին մասը։

Յայտագրի երկրորդ բաժինը սկսաւ Կոստան Զարեանի *Ասացուած մեռած բանաստեղծի համար* քերթուածին խմբային շատ յաջող արտասանութեամբ, որուն մենակատարի մասը արտասանեց Քերիմ Մխտիկեան, որուն յաջորդեց աշակերտուհի Լիւսի Կէրիկեանի դաշնամուրի վրայ նուագածութիւնը։

Ապա երգչախումբը կատարեց Կարա-Մուրզայի *Վարդ կօշիկս* ժողովրդական երգը, որուն մենակատարներն էին Անի Փայլակեան եւ Րաֆֆի Չէչճէնեան, այս երգը ներկաներուն փափաքին ընդառաջելով կրկնուեցաւ տարբեր մենակատարներով, որոնք էին Լէնա Ֆրընճեան եւ Յակոբ Իրատեան։ Արաբական երգաշխարհի Կոմիտասը Սէյիտ Տարուիշի երգերէն *Էլ հէլուա տի* երգով ելոյթ ունեցաւ երգչախումբը, որուն յաջորդեց *Կռունկ* երգը, եւ ապա Ալ. Յարութիւնեանի *Երգ Գայի մասին*ը եւ ի վերջոյ Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի* երգով, որուն, խմբավար Հայկ Սարգիսեանին փափաքին ընդառաջելով եւ անոր չափերուն հետեւելով բոլոր ունկնդիրներն ալ մասնակցեցան ստեղծելով խանդավառ եւ միանգամայն յուզիչ մթնոլորտ մը։

Այս շատ յաջող գեղարուեստական երեկոն վերջ գտաւ։ Շատ մեծ աստղ մըն է որ փայլեցաւ եգիպտահայ գաղութի երկնակամարին վրայ, յանձին Հայկ Սարգիսեանի, որ յառաջիկային ան աւելի եւս պիտի փայլի ու իր փայլով լուսաւորէ մեր գաղութը։

Որպէս վերջին խօսք, մեզի կը մնայ շնորհաւորել տաղանդաւոր խմբավար Հայկ Սարգիսեանը, երգչախումբն ու բոլոր մենակատարները, եւ անոնց մաղթել նորանոր նուաճումներ, յատկապէս Հայկ Սարգիսեանին։

*Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 18 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.483, էջ 2

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՋՈՂ ԵՐԵԿՈՆ

ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆ

Ինչպէս հաղորդած էինք մեր անցեալ թիւով, Ուրբաթ 8 Փետրուարին, Նայլ Հոլ հանդիսասրահին մէջ ներկայ գտնուեցանք Գալուստեան Ազգային Երկրորդական Վարժարանի կազմակերպած գեղարուեստական յաջող երեկոյին:

Յայտագիրը ամբողջութեամբ կատարուեցաւ վարժարանին Երկրորդական բաժնի աշակերտներուն կողմէ: Հանդիսութեան ընդհանուր ղեկավարն էր՝ տնօրէն Պր. Նշան Վարդեան: Խմբերգները ղեկավարեց երիտասարդ խմբավար՝ Հայկ Սարգիսեան (Խմբավարութեան Հանրապետական Դափնեկիր), որ այժմ իր ուսումը կը կատարելագործէ Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցին խմբավարութեան բաժանմունքին մէջ: Գեղարուեստական պատասխանատուն էր վարժարանին հայագիտական նիւթերու ուսման ուսուցիչ՝ Պր. Մանուէլ Քէօսէեան:

Յայտագիրը սկսաւ երգչախումբին կողմէ երգուած եգիպտական քայլերգով: Պր. Մանուէլ Քէօսէեան ապրումով ասմունքեց Կոստան Զարեանի *Ասացուած Կոմիտաս Վարդապետի համար* քերթուածը, որուն դաշնամուրով մեղմօրէն կ'ընկերանար Հայկ Սարգիսեան Կոմիտասի երգերու շարքով մը: Երգչախումբը երգեց երկու երգ՝ Տ. Չուհաճեանի *Հերիք որդեակք*ը եւ *Մարալօ*ն (մշակում Կարօ Չալըքեանի): Աշակերտուհի Քրիստին Բաբուծաս մեներգեց Թ. Ալթունեանի մշակումներէն *Հարս եմ գնում* ժողովրդական երգը, որմէ ետք երգչախումբը ելոյթ ունեցաւ երգելով Վանայ հարսանեաց երգը *Այ ֆորկա, ֆորկա*ն (դարձեալ մշակում Թ. Ալթունեանի): Օր. Իրիս Գայսէրլեան մեներգեց Կոմիտասի *Չինար ես*ը, որուն յաջորդեց *Սարերը ծաղկել* երգը կատարուած երգչախումբին կողմէ: Յայտագրին առաջին մասը վերջ գտաւ Դ. Վարուժանի *Նաւաստեան* քերթուածի արտասանութեամբ որ կատարեց երգչախումբը. մենասողն էր՝ Գրիգոր Միքայէլեան:

Յայտագրի երկրորդ մասը սկսաւ Կոստան Զարեանի *Ասացուած մեռած բանաստեղծի համար* քերթուածին խմբային արտասանութեամբ, որուն մենակատարի մասը արտասանեց աշակերտ Քերիմ Մխտիկեան: Խումբին մաս կազմեցին աշակերտներ՝ Ռաֆֆի Դելփեան, Մարօ Եափուճեան, Մարօ Ժամկոչեան, Յակոբ Իրատեան, Նայիրի Խաչիկեան, Լուսի Կէրիկեան, Սօսէ Մաճառեան, Գրիգոր Միքայէլեան, Անի Նալպանտեան, Հարի Չէչճէնեան, Ռաֆֆի Չէչճէնեան, Անահիտ Սարգիսեան, Անի Փայլակեան եւ Լենա Ֆրընճեան: Այս խմբային շատ յաջող արտասանութեան համար կը շնորհաւորենք աշակերտները եւ իրենց

ուսուցիչը Պր. Մ. Քէօսէեանը։

Դաշնամուրի վրայ Մոցարթէն երկու կտոր նուագեց աշակերտուհի Լիւսի Կէրիկեան։

Ապա երգչախումբը կատարեց Կարա Մուրզայի *Վարդ կօշիկս* երգը, մենակատարութեամբ Անի Փայլակեանի եւ Րաֆֆի Չէչճէնեանի։ Ներկաներուն փափաքին ընդառաջելով, նոյն երգը կրկնուեցաւ երկու տարբեր մենակատարներով, յանձինս Լենա Ֆրընճեանի եւ Յակոբ Իրատեանի։ Սայիտ Տարուիշի երգերէն *Էլ հէլուա տի* երգով ելոյթ ունեցաւ երգչախումբը, որուն յաջորդեց Միհրան Թումաճանի ձայնագրութեամբ *Կռունկ* երգը եւ ապա Ալ. Յարութիւնեանի *Երգ Գայի մասին*ը։ Այս երգը մեզի համար նորութիւն մըն էր, որովհետեւ առաջին անգամ ըլլալով կ'ունկնդրէինք։

Հանդիսութեան յայտագիրը կը վերջանար Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի* երգով, եւ որուն, խմբավար Հայկ Սարգիսեանին փափաքին ընդառաջելով, բոլոր հանդիսականներն ալ մասնակցեցան ստեղծելով խանդավառ մթնոլորտ մը։

Երիտասարդ խմբավար Հայկ Սարգիսեան կարճ ժամանակամիջոցի մը մէջ կարողացած էր համախմբել վարժարանին երկրորդական բաժնի երեք դասարաններու աշակերտութիւնը, անոնցմով կազմել երկսեռ երգչախումբ մը եւ մեզի հրամցնել գեղարուեստական այս յաջող երեկոն։ Ապրի՛ս։

Կը շնորհաւորենք վարժարանին Տնօրէնութիւնը, աշակերտութիւնը եւ խմբավար Հայկ Սարգիսեանը եւ կը մաղթենք բոլորին նորանոր յաջողութիւններ։

*Ջահակիր*, շաբաթաթերթ, Գահիրէ, 21 Փետրուար 1980, նոր շրջան, թիւ 791, էջ 1, 4

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՀԱՅՐԵՆԱՇՈՒՆՉ ԵՐԵԿՈՆ

ՀՐԱՉԴԱՆ ՊԱԼԵԱՆ

Գեղարուեստական արտակարգ երեկոյի մը հանդիսատես եղանք Ուրբաթ 8 Փետրուար 1980, երեկոյեան ժամը 8.30-ին, Նայլ Հոլ սրահին մէջ, ներկայ գտնուող ծնողներուն, օտար հիւրերուն եւ արուեստասէր հոծ հասարակութեան կախարդուած աչքերուն առջեւ՝ բոլոր իրենց մասնակցութիւնը բերողները արձանագրեցին յաջողութիւն մը, ուսանելի, թելադրական, անմոռանալի։

Գեղարուեստական այս երեկոն պատրաստած էր եւ ներկայացուց Գալուստեան Ազգային Վարժարանը։ Կազմակերպողները ջերմօրէն շնորհաւորելի են այն մանկավարժական սկզբունքին համար, որ անմիջապէս ըմբռնելի էր.

բացատրել աշակերտութեան էութիւնը, երեւան բերել անոնց ձիրքերը եւ հնարաւորութիւն ստեղծել զանոնք զարգացնելու։ Եւ ահա կարճ արձակուրդով մը քաղաքս գտնուող՝ խմբավարութեան դափնեկիր Հայկ Սարգիսեան, Գալուստեանի երկրորդական բաժնի աշակերտութեամբ կը կազմէ երգչախումբ եւ բեմ կը բարձրացնէ 15 օրուան պատրաստութենէ մը ետք։

Ներկաներս, որ կը լեցնէինք սրահին մինչեւ վերջին աթոռները, տակաւին առանց մոռնալու ոտքի կեցողները, հանդիսութեան ամբողջ տեւողութեան հարց կու տայինք մենք մեզի, թէ ինչպէ՞ս Գալուստեան Վարժարանի մեր մատաղ սերունդը կրցաւ այդքան լաւ պատրաստութեամբ եւ արժանաւորապէս ներկայանալ Գահիրէի գեղարուեստասէր հասարակութեան։

Երգչախումբին յաջողութիւնը կը կայանար խմբավարին իւրայատուկ կարողութեան մէջ, որուն զօրութեամբ՝ երգողները՝ գտնուելով հոգեբանական առումով խանդավառող ու ոգեւորող մթնոլորտի մէջ, դրսեւորեցին իրենց ձայնական թաքուն յատկութիւնները այն մակարդակով, զոր երիտասարդ խմբավարը կ՚ակնկալէր իրենցմէ։

Այդ դրսեւորումը եղաւ բացառիկ պատեհութիւն մը մեզի համար՝ ունկընդրելու մեր տղոց եւ աղջիկներուն ձայներու համադրութեան մէջ՝ իրենց զգացական տրամադրութիւնները, հայրենաբաղձ ոգին, եւ անոնց զուգահեռ՝ ելեւէջներու նրբութիւնները, ուր պատշաճօրէն կը յաջորդէին իրարու փայլունը, կեանքոտը, վսեմը, մերթ մեղմը, մրմնջայինը...։ Հաճելի էր ձայնական հնչականութիւնը մեներգողներուն, որոնք մշակուելով կրնան յուսաթռիչ հորիզոններ բանալ։

Շատ ներկայ գտնուած ենք հայ երգի համոյթներու։ Գիտցուած իրողութիւն է, որ մեր հոգիները ծարաւի են հայրենի երգին, ծարաւի են հայրենի բառ ու բանին։ Սակայն Գալուստեան Վարժարանի կազմակերպած երեկոն, մատղաշ սերունդին կենսունակ կշռոյթով, կը բերէր մեզի շունչը յաւիտենական Հայաստանին մեր առօրեան պայծառացնելով։

Պահ մը աչքերս գոցած, կը կարծէի լսել Յովհաննէս Չէքիճեանի խմբավարութիւնը Երեւանի Հայ Ֆիլհարմոնիայի սրահին մէջ։ Թէպէտեւ 40 դեռատի երկսեռ աշակերտներէ կազմուած խումբ մը չի կրնար բաղդատուիլ 99 արուեստագէտներով կազմուած Հայաստանի պետական երգչախումբին հետ, բայց եւ այնպէս, երկու խմբավարութիւնները ունէին նմանօրինակ ըմբռնումի մը հիմքը։ Եւ սահկա կ՚աճեցնէր մեր մէջ խանդաղատանքը։

Հայկ Սարգիսեան, որ Գահիրէցի է, ծնած է 1955-ին։ Յաճախած է Գալուստեան Ազգային Վարժարան եւ ապա Հ.Բ.Ը.Մ.ի Նիկոսիոյ Մելգոնեան կրթական հաստատութիւն, ուրկէ շրջանաւարտ ըլլալէ ետք ընդունուած է Երեւանի Արամ Խաչատուրեանի անուան երաժշտական ուսումնարանի խմբավարութեան բաժինը։ Հոն՝ մասնագիտական ճիւղին ուսուցիչ ունեցած է հայրենի մեծ

խմբավար Նուպար Մնկրեանը։ 1978-ին, Հայաստանի երաժշտական ուսումնարաններու միջեւ կայացած մրցոյթին, արժանացած է առաջին մրցանակի եւ Խմբավարութեան Հանրապետական Դափնեկիր կոչումին։ Առաջին սփիւռքահայն էր որ կ'արժանանար այդ պատիւին։ Այսօր, Հայկ Սարգիսեան կը խորացնէ իր մասնագիտութիւնը Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցին խմբավարութեան բաժնին մէջ։

* * *

Վարագոյրը բացուեցաւ ու ահա բեմին վրայ են 40 տղաք ու աղջիկներ՝ ժպտուն, կայտառ, ինքնավստահ։ Երիտասարդ խմբավարը հրաւիրեց ներկաները ոտքի ելլելու, երգչախումբը հնչեցուց եգիպտական քայլերգը, խօսք՝ Մուսթաֆա Քամէլի եւ երաժշտութիւն՝ Սայիտ Տարուիշի։ Ներկաներս գիտէինք որ քայլերգին չեն ծափահարեր, բայց ծափահարեցինք, որովհետեւ պարզուող տեսարանը նոր էր, յուզիչ, հաղորդական։

Բեմ մտան Մանուէլ Քէօսէեան եւ Հայկ Սարգիսեան։ Քէօսէեան արտասանեց Կ. Զարեանի *Ասացուած Կոմիտաս Վարդապետի համար* հոյակապ պոէմը, մինչ դաշնամուրով կ'ընկերակցէր Հայկ Սարգիսեան՝ Կոմիտասեան մեղեդիներով։ Յստակ էր, կը գծուէր երեկոյին մթնոլորտը։ Այս զգայացունց բանաստեղծական կտորը Կոստան Զարեան գրած է Վարդապետին աճիւնին հայրենիք փոխադրութեան առթիւ, 1935-ին, Մարսիլիոյ քարափէն։ «Բարի ճանապարհ, Վարդապետ, վերադարձ բարի»։ Երկար ժամանակէ ի վեր չէինք լսած ասմունքային այդպիսի համոզիչ ոճ մը։

Ունկնդիրներս բառ առ բառ կը հետեւէինք բանաստեղծին մտքին ու զգացումին՝ մինչեւ վերացումը մեր հոգիներուն։ Պրն. Մ. Քէօսէեան թարգմանը հանդիսացաւ բարձր գնահատելի գեղարուեստական արժէքի մը, որ կը յուսանք թէ օրինակելի կ'ըլլայ։

Մեզի յոյժ ծանօթ Տիգրան Չուհաճեանի *Հերիք որդեակք*ը խանդով երգուեցաւ երգչախումբին կողմէ։ Երգին վերջին տունին բառերը փոխուած էին եւ վերածուած հոգեկան կապի մը՝ հայրենիքին եւ վարժարանին միջեւ։

12-րդ դարու միջնադարեան երգ մը՝ *Մարալօ*, որ մշակուած է Կարօ Չալըքեանի կողմէ, առաջին անգամ երգած է Երեւանի ակադեմական երգչախումբը, իսկ երկրորդ կատարման բախտաւորութիւնը ունեցաւ Հայկ Սարգիսեանի խմբավարած երգչախումբը։

Երբ 1959-ի Նոյեմբերին Թ. Ալթունեանի երգի եւ պարի անսամպլը Եգիպտոս այցելեց, յայտագրին մաս կը կազմէր նաեւ *Հարս եմ գնում* ժողովրդական երգը, որուն կ'աջակցէր իր դիւթիչ ձայնով Լուսիկ Քոշեան։ Հիմա, պարմանուհի Քրիստին Բաբուծաս, որուն ձայնին գեղջկական երանգը նշանակելի էր, մեզի վերապրումի պահ մը շնորհեց։

*Այ ֆորկա, ֆորկա* վանայ հարսանեաց երգը, Թ. Ալթունեանի մշակումով,

Կոմիտաս Վարդապետի *Չինար ես*ը՝ մեներգութեամբ Իրիս Գայսէրլեանի, տպաւորիչ էին՝ քնարական այլազան շեշտաւորումներով:

Արամ Խաչատրեանի վեհ ու խանդավառ *Սարերը ծաղկել* երգը, որ փառաբանութիւնն է հայրենիքի վերածնունդին, երգչախումբը երգեց զգալի հպարտութեամբ:

Դանիէլ Վարուժանի *Նաւասարդեան* շքեղ բանաստեղծութիւնը, արտասանութեամբ եւ երգով գնահատանքի արժանացաւ իր փայլուն յաջողութեամբ: Արտասանողն էր Գրիգոր Միքայէլեան՝ հպարտ ու ինքնավստահ շեշտով: Երաժշտութիւնը յօրինած է Հայկ Սարգիսեան, երբ տակաւին 16 տարեկան պատանի աշակերտ էր Մելգոնեան Հաստատութեան: Այս ձեւի կատարում մը նորութիւն էր գոնէ մեր գաղութին համար:

Հոս վերջ կը գտնէր երեկոյին առաջին մասը: Քառորդ ժամուան դադարի ընթացքին ներկաները մագնիսացած մնացած էին իրենց աթոռներուն: Ուրախութեան արտայայտութիւն կար բոլոր դէմքերուն վրայ, նաեւ զարմանքի, նաեւ հպարտութեան:

Երեկոյին երկրորդ բաժինը սկսաւ խմբային արտասանութեամբ: 15 տղաք ու աղջիկներ մեկնաբանեցին Կոստան Զարեանի *Ասացուած մեռած բանաստեղծի համար* երկարաշունչ բանաստեղծութիւնը, մենասողն էր Քերիմ Միտիկեան, մենասողն ու խումբը արժանի են գովասանքի թէ իրենց զուսպ կեցուածքին եւ թէ արտասանութեան տրամադիկ կերպաւորումին համար: Այս քերթուածը առաջին անգամ արտասանուած է 1922-ին, Սկիւտար, Պէրպէրեան Վարժարանի աշակերտութեան կողմէ, Շահան Պէրպէրեանի պատրաստութեամբ: Հոս մեկնուած է մարդուն արժէքը՝ արիական ողբերգութիւններուն համաձայն, ուր արարեալը կրնայ մօտենալ Արարչին՝ միայն բարիով, երգով, յօրինուածքով, ստեղծագործութեամբ:

Լուսի Կէրիկեան դաշնամուրի վրայ նուագեց երկու փոքրիկ վալսեր՝ էթիւտ 38՝ Պեյէրէն եւ վալս մը՝ Մոցարթէն եւ արժանացաւ ծափերու:

Ահաւասիկ կրկին բեմին վրայ են երգչախումբն ու համակրելի խմբավարը: Կարա Մուրզայի *Վարդ կօշիկս* քնքուշ ու գրաւիչ երգը կատարուեցաւ քնքշութեամբ եւ գրաւչութեամբ եւ կրկնուեցաւ հանդիսականներու փափաքով: Առաջին անգամ մեներգողներն էին Անի Փայլակեան եւ Ռաֆֆի Չէչճէնեան՝ զուարթ, միամիտ, պայծառ: Երկրորդ անգամ մեներգեցին Լենա Ֆրընճեան եւ Յակոբ Իրատեան: Այստեղ եւս երեւցաւ կազմակերպողներուն նախանձախնդրութիւնը՝ հայ երգը դարձնել նորահաս սերունդին կեանքին մէկ մասը: Ու հաւանաբար այս իսկ էր հանդէսին յաղթանակը: Յետոյ Սայիտ Տարուիշի *Էլ հելուա տի*ն կատարուեցաւ նոր աւիւնով, նորօրինակ ըմբռնումով:

Միհրան Թումաճան, Կոմիտասի 5 սաներէն մէկը, իր մեծ վարպետին ճամբով հաւաքած է հազարաւոր երգեր: Երեւանի Ակադեմիային հրատարակու-

թեամբ լոյս տեսած է Թումաճանի հաւաքումներուն առաջին հատորը։ Այս հատորէն առնելով Թումաճանի գրի առած *Կռունկ*ը, Հայկ Սարգիսեան մեզի պարգեւեց անոր առաջին կատարումը։ Երգչախումբը զայն կատարեց րոմանթիք գողտրիկութեամբ։

Հայկ Բժշկեանցի, զինուորական անունով՝ Գայի նուիրուած Ալ. Յարութիւնեանի երգը, որ արժանացած է մրցանակի, երգչախումբը կատարեց վեհութեամբ, վսեմութեամբ։ Այս երգին կատարումին ժամանակ ես մտքով գացի Նոր Նորքի բարձունք, ուր խրոխտաբար կը բարձրանայ Գայի պրոնզեայ արձանը։

Յայտագիրին վերջին ելոյթը՝ Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի*ն, բարձրակէտն էր ստեղծուած մթնոլորտին։ Երգչախումբը հազիւ սկսած խմբավարը դարձաւ ժողովուրդին, ցոյց տուաւ օրուան յայտագիրը, որուն վերջին էջին վրայ տպուած էին երգին բառերը, եւ այս անգամ չափ տուաւ ներկայ հանդիսականներուն, որոնք երգեցին յոյզով, սիրով, խանդաղատանքով։ Եւ հիմա ժողովուրդին կը ծափահարէին երգչախումբին անդամները։

Անմոռանալի երեկոյ մըն էր, երեկոյ մը՝ հայրենաշեշտ, հայրենաշունչ, հայրենադրոշմ։

Ապրիք։

Շնորհակալութիւն եւ երախտագիտութիւն՝ Գեղարուեստական պատասխանատու Պրն. Մ. Քէօսէեանին, հանդիսութեան ընդհանուր ղեկավար՝ Տնօրէն Նշան Վարդեանին եւ բոլոր այն ազգայիններուն, որոնք սատարեցին գեղարուեստական երեկոյի յաջողութեան։

*Արեւ*, 27 Փետրուար 1980, 64-րդ տարի, թիւ 18.491, էջ 2-3

## ԽՄԲԱՎԱՐՆ Է ՌԻՍԱՆՈՂԸ

ՄԱՆՈՒԷԼ ՆԱԴՐԵԱՆ

Կահիրէի Նայլ Հոլ սրահում հարիւրաւոր հանդիսականների առջեւ, վերջերս ելոյթ ունեցաւ Կահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանի երկրորդական բաժնի քառասուն մարդուց բաղկացած երկսեռ երգչախումբը, որի հիմնադիրն ու խմբավարն է Երեւանի պետական կոնսերվատորիայի առաջին կուրսի եգիպտահայ ուսանող Հայկ Սարգիսեանը։

Ուսանողական ձմեռային արձակուրդը Հայկն անցկացրեց ծննդավայրում՝ Կահիրէում։ Տեղի Գալուստեան Ազգային Վարժարանի հայոց լեզուի եւ գրականութեան ուսուցիչ, Երեւանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտէտի նախկին շրջանաւարտ Մանուէլ Քէօսէեանը նրան խորհուրդ տուեց

վարժարանի բարձր դասարանցիների ուժերով երգչախումբ հիմնել։

Հեշտ խնդիր չէր դա. վերջին տարիներին կազմակերպուած երկրորդական բաժնի արաբախօս հայ աշակերտները հայկական գրեթէ ոչ մի երգ չգիտէին։ Սակայն ուսանող-խմբավարի հոգում մի ազնիւ մղում առաջացաւ՝ սովորեցնել, տալ այն ամէնը, որ ձեռք էր բերել տարիների ուսումնառութեան ընթացքում, հնչեցնել հայ երգը սփիւռքահայ սաների շուրթերից։ Աշակերտների եւ երիտասարդ խմբավարի ջանքերը յաջողութեամբ պսակուեցին։ Եւ ընդամէնը 17-օրուայ փորձերից յետոյ։

Համերգի օրը սրահի նստարանները չէին բաւականացնում։ Բոլորն անհամբեր սպասում էին նորաստեղծ երգչախմբի առաջին ելոյթին։ Ամէնից շատ յուզուած էին իրենք՝ խմբի անդամները։ Հազիւ էին լռել առաջին երգի հնչիւնները, երբ դահլիճը թնդաց ծափերից ու խանդավառ բացականչութիւններից։

Երգչախումբը կատարեց հայկական ժողովրդական *Մարալօ*, *Այ ֆորկա, ֆորկա*, *Կռունկ*, Տ. Չուխաջեանի *Հէրիք որդեակք*, Ա. Խաչատրեանի *Սարերը ծաղկել են*, Կարա-Մուրզայի *Վարդ կօշիկս*, Ալ. Յարութիւնեանի *Երգ Գայի մասին* եւ այլ երգեր։ Սրահում նստածներից շատերի աչքերում ուրախութեան արցունքներ էին շողում։ Հիացումով ընդունուեցին Իրիս Գայսէրլեանի, Անի Փայլակեանի, Րաֆֆի Չէչճէնեանի, Քրիստին Բաբուծասի մենակատարումները։ Բոլորին նոյն ապրումներն էին համակել, իւրաքանչիւրն, ասես, հայ երգի միջոցով ինչ-որ բան էր յայտնագործել. նրանք չէին կարծում, որ այդքան հայեցի ապրում կայ իրենց մէջ...

Իսկ բեմի խորքում, ուրախութիւնից խենթացած, երգչախմբի սաները նետւում են դէպի Հայկը, գրկախառնւում նրա հետ։ Տղաներից մէկը՝ Զարեհ Շուշանեանը յուզմունքից մոռացել էր իր պարտականութիւնը կատարել՝ իջեցնել բեմի վարագոյրը։

Երեկոյի փառահեղ աւարտն էր *Երեւան-Էրեբունի* երգը։ Երգում էր ամբողջ սրահը՝ խմբավարը, երգչախումբը, հանդիսականները։ Երգում էին ինքնամոռաց, եւ բոլորի աչքերը շողում էին հպարտութիւնից, այն բանի գիտակցումից, որ վերածնուած Երեւան-Էրեբունին նաեւ իրենցն է, համայն հայութեանը։

Ի՜նչ խօսք, յաջողութիւնը թեւաւորել է ուսանող-խմբավարին։ Այդ բանը զգացինք, երբ մի քանի օր առաջ զրուցում էինք Հայկի հետ։

Ծննդավայրում՝ Կահիրէում, հայրը՝ Պարոյր Սարգիսեանը, սիրող երգիչ է եղել։ Հայկական շրջանակներում, ակումբներում նա սիրով էր կատարում Արմենակ Շահմուրադեանի երգերը։ Եւ երգի հանդէպ ունեցած սէրը հայրը փոխանցում է միակ որդուն։ Հայկը եօթ տարի դաշնամուրի դասերի է յաճախում։ Իսկ Գալուստեան Ազգային Վարժարանում սովորելու տարիներին երգում է ակումբներում, առաջնութիւն է շահում աշակերտական, երաժշտական տարբեր մրցոյթներում։

Վարժարանն աւարտելուց յետոյ հինգ տարի սովորում է Կիպրոսի Մելքոնեան կրթական հաստատութիւնում: Այստեղ արդէն հայ երգի կատարման աւանդոյթներ կային, երգչախումբ էր գործում: Սկսում է երգել Սեպուհ Աբգարեանի ղեկավարած երգչախմբում: «Հոս ալ սկիզբ առին իմ հետաքրքրութիւնն ու սէրը խմբերգային արուեստին հանդէպ», պատմում է Հայկը: Սեպուհ Աբգարեանն իր բացակայութիւնների ժամանակ խմբավարութիւնը վստահում էր Հայկին: Սա առիթ է դառնում, որ նա իրենց դասարանի սաների ուժերով ստեղծի երգչախումբ, որոնք կրթական հաստատութիւնն աւարտելու շրջանում հանդէս են գալիս համերգով՝ կազմուած Սեպուհ Աբգարեանի ստեղծագործութիւններից, ապա ելոյթ են ունենում Կիպրոսի ռադիոկայանի հայկական հաղորդումների ժամանակ:

- Փափագս էր՝ մասնագիտանալ երգչախմբային արուեստի մէջ, խմբավարական խորը գիտելիքներ ձեռք բերել: Միակ տեղը ինձի համար մայր հարենիքն էր:

1975ին ընդունւում է Արամ Խաչատրեանի անուան երաժշտական ուսումնարանի խմբավարական բաժինը, Մելքոնեանի կրթական հաստատութեան նախկին շրջանաւարտ, դոցենտ Նուպար Սնգրեանի դասարանը: Երջանիկ զուգադիպութիւն էր սանի եւ իր ղեկավարի համատեղ աշխատանքը: Հայկական ժողովրդական խմբերգային արուեստի մեկնաբանման Սնգրեանի ոճը հոգեհարազատ էր Հայկին:

Ուսումնարանն աւարտելու շրջանում մասնակցում է հանրապետութեան երաժշտական ուսումնարանների խմբավարական մրցոյթի եւ երեք յաջորդական փուլերից յետոյ արժանանում դափնեկրի կոչման:

Հայկն այժմ Երեւանի կոնսերվատորիայի ուսանող է, կրկին Նուպար Սնգրեանի սանը:

Երբ պատմում էր Գալուստեան Ազգային Վարժարանում իր ստեղծած երգչախմբի մասին, երբեմն ասածը լրացնելու համար, սեղմում էր մագնիտոֆոնի կոճակը, եւ մենք լսում էինք երգչախմբի փորձերի եւ համերգի պահերին ձայնագրուած երգերը: Թւում էր՝ տարիների փորձ եւ հմտութիւն ունեցող խումբ է երգում:

Նայում եմ դիմացս նստած խմբավարին: Նա ասես իր երգչախմբի հետ է, ձեռքերը թեթեւակի շարժւում են, ասես երգչախմբին թելադրում են երգի կշռոյթները: Աւարտւում է երգը, Հայկը մտախոհ է: Ըստ երեւոյթին, գալիքի ծրագրերն ու հոգսերն են պաշարել նրան: Չէ՞ որ այնտեղ, սփիւռքում, մարդիկ ծարաւի են հայաշունչ երգի:

*Հայրենիքի ձայն*, շաբաթաթերթ, Երեւան, 19 Մարտ 1980, թիւ 12 (764), էջ 6-7

# ՀԱՅՐԵՆԻՔԷՆ ՓՉՈՂ ՔԱՄԻՆ

ԿԱՐՕ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ

Նկարագրով համեստ է Հայկ Սարգիսեանը, արտակարգ համեստ։ Հերիք է մի քանի րոպէ զրուցես իր հետ, կարծես կը կարողանաս շօշափել իր զգայուն, զուարթ, բարի հոգին։

Բնութիւնն, ինչ խօսք, չէ սխալած նման արժանիքներով անձի մէջ ներմուծել երաժշտական կայծեր, հոգին օժտել տաղանդի հասնող երաժշտական նուրբ զգացողութեամբ։

Շատո՜նց, դեռ իր պատանեկութեան շրջանին, հարազատ Գալուստեան Վարժարանէն՝ ապա Կիպրոսի Մելգոնեան Հաստատութենէն ներս, Հայկը երաժշտութեան մեծ սիրահար էր, անով մեծապէս կը զբաղէր։

Ինձ համար անմոռանալի է, Նիկոսիոյ մէջ՝ հանրութեան առաջ, դաշնամուրի վրայ պատանի Հայկօ-ի առաջին ելոյթը։ Այդ ժամանակ դեռ դողդոջուն, մելամաղձոտ Հայկ Սարգիսեանը սքանչելի տպաւորութիւն թողեց՝ իր ճկուն կատարողականութեամբ։ Խանդավառ ներկաներ արտայայտուեցան՝ «երաժշտութիւնը ի՛րն է, ինքը՝ երաժշտութեանը»։

Յետագային, Հայկը զերազանց որոշում ընդունեց երաժշտական բարձրագոյն ուսումն ստանալ մայր հայրենիքի մէջ։ Իր ընդունակութեան, տաղանդի յղկումը, մշակումը ան բացարձակապէս վստահեցաւ հայրենի հիանալի մասնագէտներուն։

Աստիճանաբար գեղեցիկ սովորոյթ կը դառնայ, տարին գոնէ երկու անգամ ունկնդրել Գալուստեան վարժարանի աշակերտութիւնը՝ Հայկ Սարգիսեանի խմբավարութեամբ։

Անձամբ երաժշտութեան ոչ-լաւ գիտակ մ'ըլլալով հանդերձ, համեստօրէն կը նկատեմ թէ Երեւանի կոնսերվատորիայի երկրորդ կուրսի այդ ուսանողը, հայրենիքէն իւրաքանչիւր վերադարձին, հանդէս կու գայ երաժշտական աւելի կազմակերպուած նկարագրով, աւելի հմուտ, սեփական ուժերու նկատմամբ աւելի վստահ։

Վերջապէս կարեւորագոյնը։ Ինչ խօսք, որ մարդու իմացականի, հոգեկանի, յուզական ներաշխարհի վրայ արագ ազդեցութիւն գործելու՝ խանդավառելու հզօրագոյն միջոցն է երաժշտութիւնը. իսկ ապագայ խմբավար Հայկ Սարգիսեանի միջոցով, տարին գոնէ երկու անգամ՝ հայրենիքէն փչող երաժշտական այդ թարմ, զով քամին, անզուգական կերպով կը հովացնէ, կը խանդավառէ Նեղոսի ափին հաւաքուած մեր ափ մը պանդուխտ հայ հոգիները, սրտերը։

*Արեւ*, 29 Օգոստոս 1980, 65-րդ տարի, թիւ 18.640, էջ 3

# ՀԱՅՐԵՆԻՔԸ ՆԵՐՇՆՉՄԱՆ ԱՂԲԻՒՐ Է

ՄԱՆՈՒԷԼ ՆԱԴՐԵԱՆ

Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցի լսարաններում ու դահլիճներում աշխոյժ, գործնական մթնոլորտ է. քննութիւններ են յանձնում ուսանողները: Չորրորդ յարկում խմբավարական բաժնի աւարտական դասարանի ուսանողներն են:

Հերթը եգիպտահայ ուսանող-խմբավար Հայկ Սարգիսեանինն է. դահլիճում մի քանիսը շշուկներ եւ բազմանշանակ հայեացքներ են փոխանակում: Երաժըշտանոցում լաւ գիտեն Հայկին, որպէս շնորհալի երաժշտի:

Բեմում երգչախումբն է: Մի պահ քար լռութիւն է տիրում, ապա մէկէն տարածւում են կոմիտասեան Լոռուայ գութանի երգի հմայիչ հնչիւնները... Հայկը իբրեւ խմբավար կարողանում է երգի ոգուն հարազատ մթնոլորտ ստեղծել, խորապէս ապրել երգով եւ իր զգացումներով, տրամադրութեամբ վարակել երգչախմբին:

Քննական յանձնաժողովը միաձայն գերազանց է գնահատում Սարգիսեանի աւարտական ելոյթը: Կոմիտասեան գութաներգից բացի, նրա ծրագրում ընդգրկուած էին միջնադարի դասական Պալեստրինայի ստեղծագործութիւններից, Տիգրան Մանսուրեանի *Երկիր, իմ Հայաստան* խմբերգը՝ դաշնամուրի նուագակցութեամբ:

Սանի յաջողութիւնը անակնկալ չէր նրա անմիջական ղեկավար, արուեստի վաստակաւոր գործիչ, միջազգային եւ համամիութենական մրցոյթների դափնեկիր Նուբար Սնգրեանի համար:

- Իբրեւ երաժիշտ Հայկը քնարական-դրամատիկական խառնուածք ունի, - ասում է Սնգրեանը: - Նրա նախասիրութիւնը հիմնականում հայկական ժողովրդական երգ-երաժշտութիւնն է: Հայկը խառնուածքով շատ անմիջական է, միաժամանակ օժտուած ինքնատիրապետման կարողութեամբ, յատկութիւններ, որոնք այնքան կարեւոր են խմբավարի համար:

Ինքնին բնութագրական է հետեւեալ փաստը. 1980-ի ձմեռային արձակուրդի օրերին Հայկը, դեռ կոնսերվատորիայի առաջին կուրսի ուսանող, մեկնեց իր ծննդավայրը՝ Կահիրէ եւ տեղի Գալուստեան Ազգային Վարժարանի բարձր դասարանցիների ուժերով հիմնեց երգչախումբ: Շատ չանցած՝ երգչախումբը քաղաքի Նայլ Հոլ սրահում հանդէս եկաւ համերգով՝ հայ երգը հնչեցնելով հայրենի երգի ու երաժշտութեան ծարաւի հանդիսականների համար: Այցելելով եգիպտահայ Այծեմնիկ ծերանոցը՝ Հայկը տարագրութեան ճանապարհով անցած հայ մամիկներից ու պապիկներից լսեց ու գրի առաւ կորստեան վտանգին ենթակայ հարսանեկան, քնարական, հայրենասիրական-պատմական երգեր՝

այդ ամէնը նուիրելով հայրենի երաժշտանոցի ժողովրդական ստեղծագործութեան կաբինէտին: Երաժշտանոցի պրոֆեսոր Մարգարիտ Բրուտեանի ղեկավարութեամբ նա Սեւանի շրջանում կատարեց ժողովրդական երգերի ձայնագրութիւններ: Կարելի է եւ ուրիշ փաստեր բերել, որոնք վկայում են Հայկի պրպտող, նախաձեռնող բնաւորութեան մասին: 1977-ին, երբ Երեւանի Արամ Խաչատրեանի անուան ուսումնարանի սան էր, հիմնեց սփիւռքահայ ուսանողներից կազմուած երգչախումբը, որը ելոյթներ ունեցաւ Երեւանի տարբեր համերգասրահներում: Հայկն ինքն օժտուած է գեղեցիկ ձայնով, երգում է կոնսերվատորիայի երգչախմբում:

- Մենք՝ կոնսերվատորիայի դասախօսներս, - ասում է Սնգրեանը, - հաւատում ենք, որ Հայկը օգտակար աշխատանք կը կատարի սփիւռքի գաղթօճախներում:

Երգի ու երաժշտութեան հանդէպ Հայկի հակումները դերսեւորուել են դեռ վաղ հասակից: Ծննդավայրում՝ Կահիրէում, առաջին մղումն ստացել է հօրից՝ երգիչ Պարոյր Սարգիսեանից: Տեղի Գալուստեան Ազգային Վարժարանում ուսանելիս երգի եւ երաժշտութեան նրա առաջին ուսուցիչը եղաւ անուանի խմբավար եւ կոմպոզիտոր Էդուարդ Յակոբեանը: Միաժամանակ դաշնամուրի դասեր էր առնում երաժշտագէտ Նուարդ Տամատեանից: Կիպրոսի Մելքոնեան կրթական հաստատութիւնում ուսումը շարունակելու ընթացքում նա երգում էր Սեպուհ Աբգարեանի ղեկավարած երգչախմբում:

- Հոս ալ սկիզբ առին իմ հետաքրքրութիւնն ու սէրը խմբերգային արուեստին հանդէպ, - պատմում է Հայկը:

Սեպուհ Աբգարեանը երբ ստիպուած էր լինում բացակայել, խմբավարութիւնը վստահում էր իր ուշիմ սանին՝ Հայկին:

1975-ին եկաւ հայրենիք, որտեղ նրա խմբավարական շնորհքը անմիջապէս նկատեց կոմպոզիտոր եւ խմբավար Ջեմս Գէօզալեանը: Ընդունուեց Երեւանի Արամ Խաչատրեանի անուան երաժշտական ուսումնարան: Այստեղ նրա ուսուցիչը դարձաւ նոյն Մելքոնեան կրթական հաստատութեան նախկին շրջանաւարտ Նուբար Սնգրեանը: Երջանիկ զուգադիպութեամբ սանի եւ իր ղեկավարի համատեղ աշխատանքը տեւեց ութ տարի. նրա ղեկավարութեամբ Հայկը իր մասնագիտական ուսումնառութիւնը շարունակեց Կոմիտասի անուան երաժշտանոցում: Ուսումնարանն աւարտելու ընթացքում մասնակցելով հանրապետութեան երաժշտական ուսումնարանների խմբավարական մրցոյթին՝ Հայկն արժանացաւ դափնեկրի կոչման:

Հայկ Սարգիսեանը հայրենիք եկաւ ոչ միայն մասնագիտական, երաժշտական գիտելիքները խորացնելու:

- Մայր հողին վրայ հայ երգի ակունքներուն հաղորդուելով, արմատներուն մօտենալով է միայն հնարաւոր ըմբռնել, հասկնալ անոր ոգին, - ասում է

երիտասարդ խմբավարը։ - Բաժանումը դժուար է, անշուշտ։ Որոշած եմ երկու տարին անգամ մը այցի գալ Հայաստան, կարօտս առնելու, խորհրդակցելու, տեսակ մը հաշուետուութիւն տալու իմ դասախօսներուս, որոնք, վստահ եմ, հեռուէ-հեռու պիտի հետեւին իմ քայլերուս... Պիտի գամ մանաւանդ լիցքաւորուելու, քանի որ հայրենիքն է աղբիւրն իմ ներշնչումներուն։

*Հայրենիքի ձայն*, շաբաթաթերթ, Երեւան, 22 Յունիս 1983, թիւ 26 (934), էջ 6

## 1983-ի ԿԷՍԵՐԸ

Գահիրէի Երաժշտանոցի տնօրէնուհի Տոքթ. Սամիհա Ալ-Խուլի ժամավճարային դրութեամբ Հայկ Սարգիսեանին կ'ընդունի իբրեւ Երաժշտանոցի երիտասարդական երգչախումբի խմբավար։

اكاديمية الفنون

المعهد العالى للموسيقى

الكونسرفاتـــوار

الى من يهمه الامـــــر

السيد / هايج سركيسيان يعمل بالمعهد العالى للموسيقى "الكونسرفاتوار
فى العام الدراسى ٨٣ / ١٩٨٤ قائدا لكورال الشباب بمكافاه الحصه .
وجارى التعاقد معه على العمل بعقد فى العام الد اسى القادم .

امــــين المعهد

" فهــــــمى منصــــــور

١٩٨٤/٧/١٧

نادية



Գահիրէի Երաժշտանոցի փաստաթուղթ մը՝ ուր նշուած է Հայկ Սարգիսեանի 1983-1984 տարեշրջանի դրութիւնը իբրեւ երիտասարդական երգչախումբի խմբավար

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՌԻԱԼԱՍ ՄՐԱՀ,
ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1983
ԿԻՐԱԿԻ, 11 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1983

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

# Հ.Բ.Ը.Մ

ԳԱՀԻՐԷ

---

## Խմբերգային Երեկոյ

Շաբաթ, 10 Դեկտեմբեր 1983,
երեկոյեան ժամը 8.30ին

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ
« ՈՒԱԼԱՍ » ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ
ՊԵՏԵՐՈՒՆ

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
**ԿՌՈՒՆԿ**
ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ
ԽՄԲԱՎԱՐ
**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ
ԿԱՍԻԱ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

1.- Եգիպտական Քայլերգ
2.- Հ. Բ. Ը. Մ.-ի Քայլերգ
3.- Բարեւ — Պարոյր ՍԵՒԱԿ
Արտասանութիւն Սիլվա Սիմոնեան
4.- Կիլիկիա — Կարա ՄՈՒՐՋԱ
5.- Քելեր Ցոլեր — Սպիրիտոն ՄԵԼԻՔԵԱՆ
Մենակատար Աննա Գազանճեան
6.- Ջուլօ — Անտոն ՄԱՑԻԼԵԱՆ
7.- Քրիստոս Ի Մէջ — ԿՈՄԻՏԱՍ
8.- Ալ Այլուղս — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ
Մենակատարներ Արփի Գալըճեան Ռաֆֆի Չէչնէճեան
9.- Անծրեւ Եկաւ — ԿՈՄԻՏԱՍ
Մենակատար Իրիս Գայսերլեան
10.- Վառեցէք Լոյսերը — Պարոյր ՍԵՒԱԿ
Արտասանութիւն Վանիա Էֆէնտեան
11.- Ջար Ջընգը — ԿՈՄԻՏԱՍ

ԸՆԴՄԻՋՈՒՄ

## Բ. ՄԱՍ

1.- Անորոշութիւն — Պարոյր ՍԵՒԱԿ
Արտասանութիւն Ռաֆֆի Չէչնէճեան
2.- Կռունկ — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ
Մենակատար Անուշիկ Զատրճեան
3.- Թէլէլէթ Եա Մանլա Նուրհա — Սայիտ ՏԱՐՈՒԻՇ
4.- Մարալ Մարալ — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ
Մենակատարներ Ռաֆֆի Չէչնէճեան Զարեհ Շուշանեան
5.- Ամպի Տակից — Արմէն ՏԻԳՐԱՆԵԱՆ
Մենակատար Սիլվա Մարգարեան
6.- Ծերանում Ենք — Պարոյր ՍԵՒԱԿ
Արտասանութիւն Վանիա Էֆէնտեան
7.- Ծովասարզիկս — Գուսան ԱՇՈՏ
Մենակատար Քրիստին Զատրճեան
8.- Սարը Կեալին — Կարօ ԶԱՔԱՐԵԱՆ
9.- Հէյ, Կը Քելեր — ՍԱՍՈՒՆՑԻՆԵՐՈՒ ԵՐԳ
10.- Հովը Փչեց Էն Սարէն — ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԵՐԳ
Մենակատարներ Ալիս Սիմոնեան Վազգէն Էֆէնտեան
Սեդա Ալեքսանեան Ալին Արթինեան
11.- Եարամ Կորանի — ՄՇԵՑԻՆԵՐԻ ԵՐԳ
Մենակատար Լիւսի Տէր Ներսէսեան

Դաշնամուրի նուագակցութիւն
ԿԱՍԻԱ ՇԵՕՎԼԷԹԵԱՆ
ԽՄԲԱՎԱՐ
ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Խմբավար ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Ծնած է Գահիրէ 19 Յունիս 1955-ին։

Իր նախնական ուսումը ստացած է Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ։

Կանուխէն սկսած է հետեւիլ դաշնամուրի դասընթացքներու։

Իր երկրորդական ուսումը շարունակած է Հ. Բ. Ը. Մ.-ի Կիպրոսի Մելգոնեան Կրթական Հաստատութեան մէջ, որուն ընթացքը աւարտած է 1975-ին։

Ապա, իր երաժշտական ուսումը շարունակած է Երեւանի մէջ, ուր յաճախած է Արամ Խաչատուրեանի անուան Երաժշտական Ուսումնարանը, զոր աւարտելէ ետք ընդունուած է Կոմիտասի անուան Երաժշտանոցը, որմէ շրջանաւարտ եղած է 1983-ին։

Ուսանողական տարիներուն երգչախումբ ղեկավարած է Գահիրէի թէ Երեւանի մէջ։

Շրջանաւարտ ըլլալէ ետք, ներկայ ելոյթը խմբավարին անդրանիկ ելոյթն է Եգիպտոսի մէջ։

## ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

Հ.Բ.Ը.Մ.-ի Կռունկ երգչախումբը կազմուած է Սեպտեմբեր 1983-ին, նախաձեռնութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Գահիրէի Մասնաճիւղին։

Երգչախումբը կազմուած է ամբողջութեամբ երիտասարդ տարրերէ, որոնց մեծամասնութիւնը առաջին անգամ ըլլալով ելոյթ կ՚ունենայ։

Խմբավարը կը նպատակադրէ Կռունկ երգչախումբին միջոցաւ, առայժմ, Եգիպտահայութեան աւելի մօտէն ծանօթացնել հայ ժողովրդական երգարուեստի տեսակներուն, մասնաւորաբար ուշադրութիւն դարձնելով խմբերգային և անհատական երգի «Հայեցի» կատարողականութեան։

Նոյնպէս, կը նպատակադրուի երգչախումբին անդամներուն ըմբռնելի դարձնել բազմաձայնութեան տարատեսակները։

Ներկայ խմբերգային երեկոն այդ ուղղութեամբ առնուած առաջին քայլն է։

# ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՆԵՐԿԱՅ ԿԱԶՄԸ

**ՕՐԻՈՐԴՆԵՐ**

Ալեխանեան Սեդա
Արփինեան Ալին
Արփինեան Լառա
Գազանճեան Աննա
Գալըճեան Արփի
Գայսերլեան Իրիս
Գուքճուեան Արտա
Գույումճեան Մարի
Երզնկացեան Մարի
Էֆէնտէրեան Վանիա
Թուլումպաճեան Թալին
Խորասանճեան Նայիրի
Կէրիկեան Լիւսի
Ճանիկեան Արփի
Մարգարեան Սիլվա
Զատրճեան Անուշկա
Զատրճեան Քրիստին
Սիմոնեան Ալիս
Սիմոնեան Մարլէն
Սիմոնեան Սիլվա
Տէր Ներսէսեան Լիւսի

**ՊԱՐՈՆՆԵՐ**

Դազանճեան Զուէն
Գէորգեան Ժոզէֆ
Գարակէօզեան Լեւոն
Գարակէօզեան Յակոբ
Եօթնեղբայրեան Լեւոն
Էֆէնտէրեան Վազգէն
Թէրզիպաշեան Ռուբէն
Կիրակոսեան Կարի
Կիրակոսեան Ստեփան
Ճանիկեան Արա
Ճիզմէճեան Զուէն
Ճիզմէճեան Վիգէն
Նիկոլեան Ճոն
Չէչէնեան Հարի
Չէչէնեան Ռաֆֆի

## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՀԵՏ Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԱՆԴՐԱՆԻԿ ԵԼՈՅԹԻՆ ԱՌԻԹՈՎ

Ա. Վ. Տ.

Մօտ 15 տարիներ առաջ Մելգոնեան Կրթական Հաստատութեան հանդէսներուն մէկուն ընթացքին, բեմ բարձրացաւ փոքր հասակով, բայց վստահ քայլերով պատանի մը եւ դաշնամուրին առջեւ անցնելով ելոյթ մը ունեցաւ: Հանդէսին աւարտին դպրոցին Տնօրէնը յայտարարեց. «Այս տղան տաղանդ ունի»: Այս խօսքը մինչեւ այսօր միտքիս մէջ թարմ է եւ ամէն անգամ որ Հայկ Սարգիսեան անունը լսեմ կամ զինք տեսնեմ, կը յիշեմ Տնօրէնին խօսքը:

Մեր հարցազրոյցին անցնելէ առաջ, նախ քանի մը տողով ներկայացնենք խմբավար Հայկ Սարգիսեանն ու անոր ղեկավարած Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը:

Խմբավար Հայկ Սարգիսեան ծնած է Գահիրէ 19 Յունիս 1955-ին:

Իր նախնական ուսումը ստացած է Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ:

Կանուխէն սկսած է հետեւիլ դաշնամուրի դասընթացքներու:

Իր երկրորդական ուսումը շարունակած է Հ.Բ.Ը.Մ.ի Կիպրոսի Մելգոնեան Կրթական Հաստատութեան մէջ, որուն ընթացքը աւարտած է 1975-ին:

Ապա, իր երաժշտական ուսումը շարունակած է Երեւանի մէջ, ուր յաճախած է Արամ Խաչատրեանի անուան Երաժշտական Ուսումնարանը, զոր աւարտելէ ետք ընդունուած է Կոմիտասի անուան Երաժշտանոցը, որմէ շրջանաւարտ եղած է 1983-ին:

Ուսանողական տարիներուն երգչախումբ ղեկավարած է Գահիրէի թէ Երեւանի մէջ:

Շրջանաւարտ ըլլալէ ետք, ներկայ ելոյթը խմբավարին անդրանիկ ելոյթն է Եգիպտոսի մէջ:

Իսկ Հ.Բ.Ը.Մ.-ի Կռունկ երգչախումբը կազմուած է Սեպտեմբեր 1983-ին, նախաձեռնութեամբ Հ.Բ.Ը. Միութեան Գահիրէի Մասնաճիւղին:

Երգչախումբը կազմուած է ամբողջութեամբ երիտասարդ տարրերէ, որոնց մեծամասնութիւնը առաջին անգամ ըլլալով ելոյթ կ’ունենայ:

Խմբավարը կը նպատակադրէ Կռունկ երգչախումբին միջոցաւ, առայժմ, եգիպտահայութեան աւելի մօտէն ծանօթացնել հայ ժողովրդական երգարուեստի տեսակներուն, մասնաւորաբար ուշադրութիւն դարձնելով խմբերգային եւ անհատական երգի «Հայեցի» կատարողականութեան:

Նոյնպէս, կը նպատակադրուի երգչախումբին անդամներուն ըմբռնելի դարձնել բազմաձայնութեան տարատեսակները։

Խմբերգային յառաջիկայ երեկոն այդ ուղղութեամբ առնուած առաջին քայլն է։

**Հարցում - Ե՞րբ առաջին անգամ զգացիք խմբավարական ասպարէզին հանդէպ հակում ունենալնիդ։**

Պատասխան - Այդ զգացումը առաջին անգամ ունեցայ Մելգոնեան Կրթական Հաստատութենէն ներս։ Դպրոցին արուեստի ուսուցիչը՝ Պր. Սեպուհ Աբգարեանը, առիթով մը ստիպողական ճամբորդութեան մը պատճառաւ պիտի բացակայէր եւ ինծի յանձնեց հաստատութեան երգչախումբը վարելու ծանր պաշտօնը։

Այդ առիթը մղեց զիս անդրադառնալու թէ խմբավարութիւնը իմ ապագաս պիտի ըլլայ։ Յետագային դարձեալ Մելգոնեանի մէջ կազմեցի դասարանային քառաձայն երգչախումբ մը, որ երկու տարբեր առիթներով ելոյթ ունեցաւ։

**Հ.- Որո՞ւն կամ ինչի՞ ազդեցութեամբ մուտք գործեցիք երաժշտական աշխարհէն ներս։**

Պ.- Հայրս։ Ան ինծի մանուկ տարիքէս ունկնդրել կու տար հայկական երգեր, թէ՛ իր կատարումով, թէ ձայնագրումներով, մանաւանդ, կը յիշեմ Շահմուրատեանի կատարումները։ Յետոյ ան զիս առաջնորդեց Օր. Ն. Տամատեանի մօտ, որ եղաւ իմ դաշնամուրի ուսուցչուհիս։

**Հ.- Իսկ հայրենիքի դերը ի՞նչ եղած է այս ուղղութեամբ։**

Պ.- Հայրենիքը առիթ տուաւ որ երաժշտական բարձրագոյն եւ մասնագիտական կրթութիւն ստանամ եւ նոյն ատեն առիթ տալով աւելի մօտէն ճանչնալու խմբերգային արուեստին մասնայատկութիւնները։ Աւելորդ է ըսել նաեւ, թէ հայրենիքի մէջ ութնամեայ ուսման շրջանս լայնօրէն բացաւ իմ առջեւ՝ իմ հայրենիքիս եւ ժողովուրդիս հոգեկան ծալքերը։

Հայրենիքը անփոխարինելի դեր ունեցաւ իմ մասնագիտական կազմաւորման մէջ։ Երախտագիտութեամբ կը յիշեմ բոլոր խմբավարները, ի մասնաւորի Պ. Նուպար Սրնկըրեանը։

**Հ.- Ի՞նչ է երգչախումբին ըմբռնումը ձեզի համար։**

Պ.- Երգչախումբը հաւաքական կազմ մըն է, որուն անդամները միասնաբար կ'երգեն միաձայն՝ կամ բազմաձայն՝ ընդհանուր ներդաշնակութեան մը մէջ դրսեւորելով մէկ միտք, մէկ զգացում եւ մէկ արտայայտութիւն, միաժամանակ պահպանելով երաժշտական տարրական կանոնները, այսինքն լարուածքը առոգանութեան եւ հնչիւնային ճշգրտութիւն։

**Հ.- Ի՞նչ աստիճանի դեր ունի խմբավարի մը նկարագիրը երգչախումբի մը յաջողութեան մէջ։**

Պ.- Խմբավարի մը նկարագիրը շատ մեծ դեր ունի, նախ, երգչախումբի կազմաւորման՝ այսինքն, անդամներուն իրարու քով գալուն, ապա, անոնց խմբային երգը սիրցնելուն մէջ։ Ռեւէ խմբական աշխատանքի մը ղեկավարին նման,

խմբավարը պէտք է ունենայ երգչախումբի իւրաքանչիւր անդամին հոգեբանական մօտեցումի կարելիութիւն, նոյն ժամանակ, կատարելով ընկերոջ թէ դաստիարակի զոյգ դերերը։

**Հ.- Դպրոցէն ներս, դաստիարակչական գետնի վրայ, որոշ ծրագրի մը կը հետեւի՞ք։**

Պ.- Այո, մասնաւոր կարեւորութիւն կու տամ դասարանային երգեցողութեան, որուն ընթացքին աշակերտը, առանց դաշնամուրի ընկերակցութեան, կը զարգացնէ իր լսողականութիւնը եւ ձայնային ճշգրիտ բարձրութեան վրայ՝ երգեցողութիւնը։ Կարեւոր է նաեւ երգերու ընտրութիւնը, որպէսզի արագ կամ դանդաղ երգերու կատարումով, աշակերտներու մօտ կազմաւորուի երաժշտական ճաշակը։ Պէտք է զգոյշ ըլլալ որ աշակերտը պոռալով չկատարէ երգելը, որովհետեւ ատիկա ամէնէն վնասակար հանգամանքն է երաժշտական լսողականութեան խանգարումին մէջ։

**Հ.- Կ'ըսեն թէ գրել գիտցողը կրնայ նաեւ գծել։ Երգի պարագային որքա՞ն ճիշդ պիտի ըլլար եթէ ըսէինք, ամէն խօսիլ գիտցող կրնայ նաեւ երգել։**

Պ.- Գծագրութեան մասին կարծիք չեմ կրնար յայտնել։ Գալով երգին, երգեր կան որոնք հզօր ձայնի պէտք ունին, իսկ երգեր ալ կան որ մեղմ ձայնի պէտք ունին։ Երկու պարագաներուն ալ, կարեւորը, ենթակային լսողականութիւնն է, ինչպէս նաեւ ապրումը ու մեկնաբանութիւնը։ Խմբավարին պարտականութիւնն է տուեալ ձայնին համեմատ, յարմար երգ ընտրել։

**Հ.- Որոնք են, ձեր կարծիքով, հայ երաժշտութեան երեք մեծ դէմքերը։**

Պ.- Առաջին՝ Կոմիտաս իբր երաժշտագէտ։ Երկրորդ՝ Կոմիտաս իբր երգիչ։ Երրորդ՝ Կոմիտաս իբր խմբավար։

**Հ.- Իսկ այսօրուայ հայ իրականութեան մէջ, որո՞նք են հայ երաժշտութեան երեք կարեւորագոյն դէմքերը։**

Պ.- Տիգրան Մանսուրեան՝ իբր ստեղծագործող։

Լուսինէ Զաքարեան՝ իբր երգչուհի։

Յովհաննէս Չէքիճեան՝ իբր խմբավար։

**Հ.- Ձեր բոլոր յիշած անունները հայրենիքի մէջ կ'ապրին, որո՞նք կարելի է յիշել որպէս Սփիւռքի հայ երաժշտութեան գլխաւոր երեք դէմքերը։**

Պ.- Ալան Յովհաննէս՝ ստեղծագործող։ Լորիս Ճգնաւորեան՝ ստեղծագործող։ Օհան Տուրեան՝ խմբավար։

**Հ.- Կը կարծէ՞ք որ հայ երաժշտութիւնը կրնայ մօտիկ ապագային նոր Արամ Խաչատրեան մը ունենալ։ Եթէ ոչ՝ ինչո՞ւ եւ եթէ այո, ուր՝ Հայաստա՞ն թէ սփիւռքի մէջ։**

Պ.- Արամ Խաչատրեան, համաշխարհային երաժշտութեան պատմութեան մէջ անցած մեծ դէմք մըն է, որուն կրկնութիւնը դժուար է։ Բայց Ս. Հայաստանի մէջ տուեալներ կան նման երեւոյթի մը կրկնութեան համար։ Արտասահմանի

մէջ, դժուար է։

**Հ.- Ինչո՞ւ էսթրատային երաժշտութիւնը երիտասարդութեան սրտին աւելի կը խօսի, քան դասականը եւ ի՞նչ ձեւով կարելի է դասականը աւելի մատչելի դարձնել երիտասարդութեան։**

Պ.- Էսթրատային երաժշտութիւնը ընդհանրապէս բոլոր երկիրներուն մէջ կը գերիշխէ երիտասարդներուն վրայ իր պարային ռիթմին ազդեցութեամբ եւ զայն խանդավառելով անմիջական դարձած է իրենց կենցաղին մէջ։ Գալով դասականին, անիկա մատչելի դառնալու համար, պէտք է կանուխէն փոխանցուի անոր ճաշակը տան եւ դպրոցին միջոցաւ։

**Հ.- Ինչո՞ւ Հ.Բ.Ը.Մ.-ի նորակազմ երգչախումբը Կռունկ անուանուեցաւ։**

Պ.- Կռունկը աւանդականօրէն պանդուխտին կը յիշեցնէ իր հայրենի տունը։ Մեր հասկացողութեամբ, այս նորակազմ երգչախումբը, հայ երգը ներկայացնելու իր ճիգին մէջ, կռունկի դերը պիտի կատարէ... կը յուսամ։

**Հ.- Այս շաբաթավերջին Կռունկ երգչախումբին ծրագիրը երգի ի՞նչ տարատեսակներ կ'ընդգրկէ։**

Պ.- Ծրագիրը կազմուած է հայկական երգարուեստի տարբեր տեսակներէն փունջով մը, ըլլայ հայրենասիրական կամ գեղջկական, որուն մէջ կ'ընդգրկուի քնարականը, պարերգային եւ պանդխտայինը, ինչպէս նաեւ ազգագրական երգեր։ Այս վերջին տեսակին Սփիւռքի մէջ կատարումը նորութիւն է։ Յարատեւելու պարագային, ազգագրական երգերու միջոցաւ, պիտի կարենանք ներգրաւել երիտասարդութիւնը՝ անոր մէջ արթնցնելով դէպի ակունք վերադառնալու ձգտումը։

**Հ.- Վերջապէս... Ո՞ւր կրնանք հասնիլ Կռունկին թեւերով։**

Պ.- Յարատեւ աշխատանքով կարելի է ունենալ բարձր մակարդակով երգչախումբ մը, որ պատիւ բերէ եգիպտահայ գաղութին՝ թէ՛ հայրենիքի եւ թէ օտարներուն առջեւ։

*Արեւ*, 7 Դեկտեմբեր 1983, 68-րդ տարի, թիւ 19604, էջ 3

## ԳԱՀԻՐԷԻ Հ.Բ.Ը.Մ.Ի ՆՈՐԱԿԱԶՄ ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԱՌԱՋԻՆ ԵԼՈՅԹԸ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Անցեալ Շաբաթ, 10 Դեկտեմբեր եւ Կիրակի, 11 Դեկտեմբեր 1983-ի երեկոյեան ժամը 8.30-ին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանին Ուալաս թատերասրահին աթոռները ամբողջութեամբ գրաւուած էին

հասարակութեան մը կողմէ, որ եկած էր գեղարուեստական եւ հայրենաշունչ երեկոյի մը ներկայ ըլլալու, որուն կարօտն ու կարիքը ունէր այնքա՜ն ատենէ ի վեր։

Այդ օրը ելոյթ կ'ունենար Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովին կազմակերպած նորակազմ Կոունկ երգչախումբը, զոր կը ղեկավարէ Երեւանի պետական երաժըշտանոցը տակաւին այս տարի աւարտած տաղանդաւոր երաժիշտ մը՝ խմբավար Հայկ Սարգիսեանը։ Երգչախումբ թէ խմբավար, իրենց առաջին ելոյթն էր Եգիպտոսի մէջ։ Թէեւ խմբավարը ասկէ առաջ, Գալուստեան Ազգային Վարժարանի աշակերտներով խումբ մը ղեկավարած էր մեր հասարակութեան առջեւ, բայց իբրեւ վկայեալ խմբավար, ասիկա իր առաջին ելոյթն էր։ Երգչախումբ թէ խմբավար, այդ օր քննութիւն պիտի յանձնէին լայն հասարակութեան մը առջեւ։ Այդ օր քննութիւն պիտի յանձնէր նաեւ Երեւանի պետական երաժշտանոցը... Եւ անմիջապէս ըսենք, թէ քննութեան մէջէն երեքն ալ մե՜ծ պատիւով դուրս եկան։

Երեւանի պետական երաժշտանոցը հաստատեց, թէ իրեն յանձնուած սերմը ինչպէս ինք գիտէր ու կրնար ծլեցնել ու ծաղկեցնել եւ նուիրել Սփիւռքին, այս պարագային՝ եգիպտահայութեան։ Հայկ Սարգիսեանը փաստեց, թէ իր տաղանդը փթթած էր հայրենի բերրի հողին վրայ։ Երգչախումբն ալ ցոյց տուաւ, թէ օժտեալ խմբավարի մը ձեռքին տակ, կրնար կուրծքը ուռած մնալ բեմին վրայ։ Իսկապէս, առաջին մէկ օրէն, երբ սկսան փորձերը, տղաքը սիրեցին իրենց երիտասարդ խմբավարը, որ համբերութեամբ եւ տքնանքով իրենց կը սորվեցնէր հայ երգը, կը սորվեցնէր միասնական, համախումբ աշխատանքին տալիք բարիքը։ Խմբավարն ալ սիրեց իր հոգածութեան յանձնուած այդ տղաքը, որոնք դեռ խակ, հասուննալու կը պատրաստուէին իր ղեկավարութեան տակ։ Ստեղծագործական որեւէ աշխատանք կարելի է միայն փոխադարձ սիրոյ եւ իրարհասկացողութեան մթնոլորտի մէջ։ Եւ Հայկ Սարգիսեանը, առաջին մէկ օրէն, գիտցաւ եւ կրցաւ ստեղծել այդ մթնոլորտը, որուն արգասիքն էր այս ելոյթը։

Երգչախումբը առայժմ կը բաղկանայ 36 հոգիէ. 21 աղջիկ եւ 15 մանչ, որոնք, բացի քանի մը հոգիէ, առաջին անգամն է, որ երգչախումբի մը մաս կը կազմէին, նոյնիսկ, առաջին անգամն է, որ բեմ կ'ելլէին։ Եւ հիմա, որ անոնք բեմին զրաւչութեան հաղորդուեցան, վստահ ենք, որ այլեւս այնտեղէն ոչ միայն վար պիտի չիջնեն, այլեւ իրենց հետ նորեր ալ պիտի զրաւեն։

Հանդիսութիւնը դրուած էր եգիպտահայ երեք յարանուանութեանց պետերուն հովանաւորութեան տակ, որոնցմէ ներկայ էր թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան։ Ներկայ էին նաեւ Եգիպտոսի Սովետական դեսպանորդ Պր. Էտմոն Շահնազարեանը եւ Տիկինը, դեսպանատան երկրորդ քարտուղար Պր. Մարտին Շահնազարեանը, Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Կեդրոնական Յանձնաժողովի Ատենապետ Պր. Յովհաննէս Քէհեաեանը, Գահիրէի Թեմական Ժողովի նախկին Ատենապետներ ՊՊ. Բօղ Քիլիտճեան եւ Արթօ Պըլըքտանեան՝ իրենց Տիկիններով, ինչպէս նաեւ Գահիրէի հայկական բոլոր

կազմակերպութիւններուն ղեկավարները:

Հայաստանէն եկած մեր արուեստագէտներուն մէկ այլ արժանիքն ալ այն է, որ հանդիսութիւնները կը սկսին ճիշտ յայտարարուած ժամուն: Չենք գիտեր, թէ արդեօք ուշացողները զգացին իրենց տգեղ ընթացքը, երբ մինչ երգչախումբը կ'երգէր, իրենք ներս մտան եւ իրենց տեղերը գրաւեցին՝ իրենց աթոռներուն հանած ժխորին մէջ... Խե՜ղճ աթոռներ, որոնց կը ստիպէին իրենց աններդաշնակ աղմուկով՝ խանգարել բեմէն սփռուող երգեցողութեան ներդաշնակութիւնը. եթէ լեզու ունենային, վստահ ենք, որ իրե՜նք պիտի բողոքէին... Եթէ ամէն կազմակերպութիւն իր հանդիսութիւնը սկսի ճիշտ յայտարարուած ժամուն, հասարակութիւնն ալ ի վերջոյ կանոնաւորութեան կը վարժուի եւ կը հրաժարի «հայկական ժամադրութեան» գաղափարէն:

Երգչախումբը, զգեստաւորուած, աղջիկները՝ բաց մանիշակագոյն երկար շրջազգեստներով, տղաքը՝ սեւ տաբատ, սպիտակ շապիկ, մանիշակագոյն փողկապով, շնորհալի կեցուածքով, արդէն անմիջապէս կը գրաւէր հանդիսականներուն հմայքը:

Յայտագիրը կը բաղկանար 22 կտորներէ. 11 առաջին մասին մէջ եւ 11 երկրորդ մասին մէջ. 18 երգեր եւ 4 արտասանութիւններ: Յոտնկայս ունկնդրուած եգիպտական պետական եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներէն ետք, զորս երգչախումբը կատարեց, առաջին մէկ հնչումէն իսկ ցոյց տալով, որ երգարուեստի բարձրորակ ունկնդրութեան մը ներկայ պիտի ըլլանք:

Ապա, յաջորդաբար երգեց Կարա Մուրզայի *Կիլիկիա*ն, Սպիրիդոն Մելիքեանի *Քելեր ցոլեր*ը, որուն մենակատարի բաժինը կատարեց Աննա Գազանճեան, Անտոն Մայիլեանի *Ջուլօ*ն, Կոմիտասի *Քրիստոս ի մէջ*ը, Թաթուլ Ալթունեանի *Այ այլուղ*ը, որուն մենակատարներն էին Արփի Գալընեան եւ Ռաֆֆի Չէչճէնեան, Կոմիտասի *Անձրեւ եկաւ*ը, որուն մենակատարն էր Իրիս Գայսէրլեանը, նոյնպէս Կոմիտասի *Ջար զընգը*ն, Թաթուլ Ալթունեանի *Կռունկ*ը, մենակատարութեամբ՝ Անուշքա Չատրճեանի, Սայիտ Տարուիշի *Թէլէէթ եա մահլա* արաբերէն երգը, Թաթուլ Ալթունեանի *Մարալ մարալ*ը, մենակատարներ՝ Ռաֆֆի Չէչճէնեան եւ Զարեհ Շուշանեան, Արմէն Տիգրանեանի *Ամպի տակից*ը, մենակատար՝ Սիլվա Մարգարեան, Գուսան Աշոտի *Ծովաստղիկս*, մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, Կարօ Զաքարեանի *Սարը կեալին*ը, *Հէյ կը քելեր* սասունցիներու երգը որուն մենակատարներն էին Ալիս Սիմոնեան, Վազգէն Էքսէրճեան, Սեդա Ալեքսանեան, Ալին Արթինեան եւ *Հովը փչեց էն սարէն* ազգագրական երգը, *Եարամ կորանի* մշեցիներու երգը, որուն մենակատարն էր Լիւսի Տէր Ներսէսեան՝ խոստմնալից տարր մը:

Երգչախումբը մէկը միւսէն հմայիչ կատարումով ներկայացուց երգերը, քանիցս արժանանալով հանդիսատեսներուն պիսերուն: Հայկ Սարգիսեան երգերուն տուած էր ցարդ մեր լսած մեկնաբանութիւններէն տարբեր մեկնաբա-

նութիւն մը, ինչպէս օրինակի համար, *Զար զընգը* երգը, զոր ցարդ իմացած էինք ջրվէժի շառաչին նման գոռ մեկնաբանութեամբ, Հայկ Սարգիսեան զայն վերածած էր առուակի մը խոխոջիւնին։ Անշուշտ ան իր երգերը զատած էր եւ կը մեկնաբանէր, նկատի ունենալով երգչախումբին նորափթիթ կազմը։ Սքանչելի երգեր էին ազգագրական երգերը, որոնք ոչ միայն Եգիպտոս, այլեւ ընդհանրապէս Սփիւռքի մէջ առաջին անգամ կը կատարուէին, եւ ժողովուրդին մէջ մեծ խանդավառութիւն ստեղծեցին, մեր մէջ ալ զարմանք, թէ ինչո՛ւ խմբավարները ցարդ անոնցմէ հեռու մնացած են։

Երգերուն դաշնակի նուագակցութիւնը կը կատարէր Կասիա Տէօվլէթեանը, այնքան ներդաշնակօրէն, որ նոյնինքն խմբավարին իսկ գնահատանքին արժանացաւ։ Յատկանշական էր այն պարագան, որ դաշնակի նուագակցութիւնը միշտ չէր որ տեղի կ'ունենար բոլոր երգերուն հետ։

Խմբավարը ինքը անշուշտ կեդրոնաձիգ ուժն էր, որ իր վրայ կը բեւեռէր երգչախումբին նայուածքները։ Զուսպ եւ մեղմ էին իր շարժումները, առանց որեւէ բուռն շարժուձեւի մը, համեստ պահուածք մը, ինչ որ, կը խորհինք, երգչախումբին անդամները կը պահէ ձգտեալ, լարուած վիճակէ զերծ։

Մենակատարները, բացի Չատըրճեան քոյրերէն, որոնք արդէն «վեթերաններ» են այս երգչախումբին համար, եւ որոնք այնքան դիւթիչ մենակատարումով մը հանդէս եկան, միւսները բոլորն ալ նորեկներ էին, զոր խմբավարը առաջ քաշած էր, անոնց առիթ տալու համար, որ իրենց մէջ զարգացնեն երգարուեստի ընդունակութիւնները։

Արտասանութեամբ ելոյթ ունեցաւ Պարոյր Սեւակի *Բարեւ* քերթուածով, Սիլվա Սիմոնեանը արտասանեց զոյգ քայլերգներէն անմիջապէս ետք, որպէս ողջոյն ներկայ հասարակութեան։ Սիլվան օրէ օր կը յառաջդիմէ ասմունքի մարզին մէջ։ Այնքան անուշ էին իր շեշտերը, ձայնը, անոր ելեւէջները կը կատարէր այնքան գիտակցօրէն, որ հասարակութիւնը այդքան ջերմ եւ սրտագին ողջոյն հազիւ թէ լսած ըլլար մինչայդ։

Վանիա Էքսէրճեանը երկու արտասանութեամբ ելոյթ ունեցաւ, երկուքն ալ Պարոյր Սեւակէն, *Վառեցէք լոյսերը* եւ *Ծերանում ենք*։ Վանիային այս արժանիքը շատոնց ծանօթ էր մեր հասարակութեան, սակայն երկար ատենէ ի վեր, հրապարակէն անյայտացած էր։ Պէտք է հոս եւս շնորհակալ ըլլալ Հայկ Սարգիսեանին, որ զայն կրկին մեր դէմ կը հանէր։ Անզուգական էր մանաւանդ *Ծերանում ենք* քերթուածին արտասանութիւնը։ Ձայնին շեշտադրումը, դիմախաղերը, սքանչելիօրէն մեկնաբանեցին քերթուածը։

Երրորդ արտասանողն էր Ռաֆֆի Չէչճէնեանը, որ արտասանեց Պարոյր Սեւակի *Անորոշութիւն*ը։ Այս տղան բազմաշնորհ է. ոտանաւորներ կը գրէ, թէեւ առ այժմ միայն ինքն իրեն համար... կ'երգէ եւ կ'արտասանէ։ Բայց այդ օր, ոչ թէ արտասանեց, այլ բեմին վրայ մենախաղ մը կատարեց՝ ձայնով, դիմախաղերով,

շարժուձեւերով: Կեցցես Րաֆֆի:

Եւ կեցցեն բոլորն ալ: Հ.Բ.Ը.Մ.ի Մասնաժողովը, որ կազմակերպեց այս երեկոն, խմբավար Հայկ Սարգիսեանը, որ մեզի պարգեւեց վերացման ու խանդավառութեան պահեր, երգչախումբը, մենակատարները, արտասանողները, դաշնակահարուհին:

Երեկոյ մըն էր, որ ոչ միայն գեղարուեստական հաճոյք պարգեւեց մեզի, այլեւ բորբոքեց մեր մէջ հայու նոյնիսկ անթեղուած զգացումները:

Իսկ Հայկ Սարգիսեանը ծանր բեռան մը տակ մտաւ... Մեր անյագ ծարաւը գրգռեց. այսուհետեւ մեզի թող հասցնէ հայրենի այս պաղպաջուն ջուրէն, զոր անապատին մէջէն քալող ճամբորդը երբ կ՚ըմպէ, օխա՛յ մը կը բացագանչէ սրտին խորերէն... Իսկ ճամբորդին ճամբան դեռ շա՛տ երկար է:

Շաբաթ օրուան երգահանդէսէն ետք, Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովը, ի պատիւ երգչախումբին եւ անոր ղեկավարին, պատուասիրութիւն մը սարքած էր Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, ուր հրաւիրուած էին բոլոր հանդիսականները, եւ ուր խօսք առին Մասնաժողովի Ատենապետ Պր. Վահան Չէչճէնեան, Կեդրոնական Յանձնաժողովին կողմէ Պր. Յակոբ Համբիկեան, երիտասարդներուն կողմէ Պր. Վիգէն Ճիզմէճեան, որ փափաք յայտնեց, որ հայրենիքը, խմբավարէն ետք, պարուսոյց մըն ալ ղրկէ, Սովետական դեսպանատան երկրորդ քարտուղար Պր. Մարտին Շահնազարեան, որ մաղթեց որ այս երգչախումբը 1985-ի Երեւանի երիտասարդական փառատօնին եգիպտահայութիւնը ներկայացնէ, միաժամանակ ճշտելով, որ խմբավարը հայրենիքը չէ որ ղրկեց, այլ եգիպտահայութիւնը զայն Երեւան ղրկեց, ուր ան մասնագիտացաւ, նոյնպէս եթէ պարուսոյց մը ղրկէ՝ հայրենիքը զայն եւս կը մասնագիտացնէ, Կեդրոնական Յանձնաժողովի փոխ Ատենապետ Պր. Պերճ Թէրզեան, որ շնորհակալութիւն յայտնեց Տիկին Սիրարփի Չատըրճեանի, Օր. Վանիա Էքսէրճեանի եւ Պր. Քարիմ Միտիկեանի, որոնք իրենց օժանդակութիւնը ընձեռած էին կազմակերպչական հարցերու մէջ: Եղան սրտաբուխ նուիրատուութիւններ:

Կիրակի օրուան ելոյթին, երգերուն գէթ կէսը կրկնուեցան ժողովուրդին պահանջին վրայ: Արհեստավարժօրէն ձայնագրուեցաւ երգերը, իսկ մեր բարեկամներէն Պր. Սարգիս Պէրպէրեան յայտագիրը վիտէոյի առաւ, այս երիզներն ու ժապաւէնները տրամադրելի պիտի ըլլան հասարակութեան: Կիրակի երեկոյեան երգչախումբին անդամները եւ երիտասարդներու խումբ մը կրկին հաւաքուեցաւ Հ.Գ.Մ.ի Թէքէեան Սրահը, ուր Մասնաժողովը ճոխ սեղան մը պատրաստած էր, եւ հոն երգչախումբին անդամները տօնելով իրենց յաղթանակը, խոստացան շարունակել իրենց գործունէութիւնը եւ օգտակար հանդիսանալ իրենց գաղութին:

*Արեւ*, 12 Դեկտեմբեր 1983, 68-րդ տարի, թիւ 19608, էջ 1. 13 Դեկտեմբեր 1983, թիւ 19609, էջ 2

# ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՀԱՄԵՐԳԸ

ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ

Համերգը վերջացաւ, բայց երգը մնաց մեր շրթներուն եւ հոգիներուն մէջ: Հ.Բ.Ը.Մ.ի նորակազմ Կռունկ քառաձայն երգչախումբը յաղթական իր ելոյթը ունեցաւ Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Ուալաս սրահին մէջ յաջորդական երկու օրերուն, Շաբաթ եւ Կիրակի:

Ներկաները յափշտակուած էին դիտելով բեմը, որուն հարթալոյսին մէջէն աղջիկներու բաց մանիշակագոյն երկար պարեգօտին, տղոց համազգեստին մէջէն, հայկական մեղեդին ալիք ալիք կու գար բերելով իր թախծութեան հետ, թարմութիւնը, գեղեցկութիւնը, տեսողական եւ լսողական վայելքի մէջէն զիրենք փոխադրելով ներշնչումի եւ հիացումի ոլորտներու մէջ:

Երկու ամսուան կարճ ժամանակաշրջանի մը մէջ, երեսուն եւ վեց պարման-պարմանուհիներ արդէն կրցած են համակարգութիւն ստեղծել, ձայնական եւ կատարողական ներդաշնակութիւն, հայկական երգի ըմբռնում, ի վերջոյ յայտնաբերուած է մենակատարներու խումբ մը, որուն իրագործումը թերեւս տարիներու կը կարօտէր: Երեւոյթը բացառիկ է, աննախատեսելի եւ ուսանելի:

Խումբին միութիւնը զգալի է: Անհատական ձայները միաձուլուած են եղանակին մէջ, հրաշալի համադրութեամբ մը: Կենսունակ, խանդոտ բծախնդրութեամբ, թարմութեամբ, խռովիչ իրենց եղանակի հարազատութեան մէջ, երգելու ձեւի ճշգրտութեամբ եւ մանաւանդ իրենց երգի ապրումով:

Խմբավար Հայկ Սարգիսեան անոնց մէջ ներմուծած է այդ խանդավառութիւնը, գիտական եւ արուեստագիտական մտահոգութիւններէ մեկնելով, նրբութիւններու, երանգներու գաղտնիքը, իր իսկ խօսքով, «երգը թէ՛ բառ է եւ թէ եղանակ»: Աւելցնենք՝ երգը ապրում է: Ինք որքան հմուտ երաժշտագէտ, նոյնքան հոգեկան է, հայ երգի այս տրիբունը արդէն կազմած է կորիզ մը որուն շուրջ պիտի համախմբուին մեր գաղութի զանազան տարրերը:

Երգացանկի տասնըվեց բաժիններէն զատ կային Եգիպտոսի եւ Հ.Բ.Ը.Մ.ի զոյգ քայլերգները եւ չորս արտասանութիւններ - չորսն ալ Պարոյր Սեւակէն: *Բարեւ* Սիլվա Սիմոնեանի քնքոյշ, մտերմիկ շեշտով: *Վառեցէք լոյսերը* եւ *Ծերանում ենք* Վանիա Էքսէրճեանի արուեստագիտական թափանցումով, անձնական հասկացողութեամբ, եւ *Անորոշութիւն*ը Ռաֆֆի Չէչճէնեանի խոր ապրումով եւ համոզումով տրուած:

Երգահանդէսը բացուեցաւ Կարա Մուրզայի *Կիլիկիա* երգով ուր հայրենաբաղձութեան, կարօտի թախիծը տիրական է: Նախ միաձայն ապա հանդիսաւոր քառաձայնով, ուր շեշտը կը դրուի ցանկութեան, զանազան ելեւէջներով: «Ցանկամ տեսնեմ զիմ Կիլիկիա, աշխարհ որ ինձ ետուր արեւ»:

Սպիրիդոն Մելիքեանի մշակած ժողովրդական, քնարերգական *Քելեր ցոլեր* (քայլեց եւ փայլեցաւ) մեներգը, Աննա Գազանճեանի մեղմութեամբ, հանդարտութեամբ բայց ներքին խռովքով իր քառաձայն արձագանգը գտաւ բառերու, եղանակի, այսինքն խօսքի եւ երգի պարզագոյն, զուսպ միջոցներով:

Անտոն Մայիլեանի *Զուլօ*ն կը յատկանշուի իր կշռոյթի հարստութեամբ: Պարերգային այս եղանակը չափական դժուարութեան առջեւ կը դնէ խումբը, երբ պասի, թենօրի եւ ալթոյի հատ հատ ձայներու մէջէն սոփրանօները մեղեդին կը հոսեցնեն:

Կոմիտասի *Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ* հինգ ձայնով եւ միահամուռ կրկնումով եղաւ հանդիսաւոր լրջութեամբ եւ նորութիւն մը իր տեսակին մէջ: Թեմային հարստութիւնը, անոր զարգացումը, ձայներու ճոխութիւնը, թերեւս նմանցնէինք լոյսի ճառագայթի մը, որ կը տարածուի եւ կը բաշխուի ժողովուրդին: Մեր հոգեւոր երաժշտութիւնը թէ՛ կրօնական եւ թէ մանաւանդ ժողովրդական աւանդութիւններէ յառաջ եկած է, ինչպէս իրաւամբ կ'ըսէ Ներսէս Շնորհալի: Տոհմային դրոշմը անհրաժեշտ է մեր հոգեւոր երաժշտութեան կատարման մէջ:

*Այ այլուղս* (կարմիր թաշկինակս) Թաթուլ Ալթունեանի մշակմամբ ունեցաւ իբրեւ մենակատարներ, Արփի Գալըճեան եւ Ռաֆֆի Չէչճէնեան: Ժողովրդական, քնարերգական այս զուգերգը երկախօսութիւն մըն է թաշկինակի մը շուրջ: Զոյգը զիրար կը լրացնէր, դաշնակի ձեռնհասութեամբ Կասիա Տէօվլէթեանի:

Գեղջկական պարերգ մը՝ *Անձրեւ եկաւ* Կոմիտասի գրչին տակ դարձած է գողտրիկ թատերապար մը երբ Իրիս Գայսէրլեան մենակատարուհին իր յստակ, հնչեղ առաջնորդութեամբ խումբը ստացաւ ձայնական չափաւորութիւն:

Դարձեալ Կոմիտասի հանճարեղ մշակումով ռազմապարերգային երգը *Զար զընգը*, արագ կտրուկ չափերով, քայլերգային թափով, որմէ ետք մեղեդային երկարաձգում մը ուր կը ստեղծուի հակապատկեր մը, ցնցիչ տպաւորութիւն թողլով: Դժուար էր կշռոյթը պահել քառաձայն երգչախումբի մը համար: Այստեղ հարուածի ձայներ կու տար պասը, թէնորը եւ ալթօն տարբեր չափերու վրայ: Պասերու տկարութեան պատճառով Հայկ Սարգիսեան խումբին համաչափութեան վրայ ծանրացած էր:

Պիտի ըսենք «Անկրկնելի է *Կռունկ*ը»: Այսինքն որքան ժամանակ որ սփիւռք գոյութիւն ունի, այնքան եւ պիտի երգուի *Կռունկ*ը առանց կրկնութեան: Թաթուլ Ալթունեանի մշակումը անհատական ձայնի եւ խմբական երգի հիւսք մըն է ուր մենակատարը երգին մասնաւոր փայլ մը կու տայ: Անուշքա Չատրճեան ոչ միայն իր ձայնական կարողութիւնը յայտնեց բարձր նօթերու ճշգրիտ եւ յուզական արտաբերումով այլ իր զգացումը հաղորդեց հասարակութեան, սրտայոյզ ապրումով մը: *Կռունկ*ը մեր պատմութիւնն է, հայ ողբերգութիւնը: Ներկաներուն աչքերուն եւ սրտին մէջ արցունք կար:

Սայիտ Տարուիշ եղած է արդի արաբական երաժշտութեան ռահվիրան: Իր

ժողովրդական երգը *Թէլէէթ եա մահլա նուրիա*ն յարգանքի տուրք մը եղաւ արաբ ազնիւ ժողովուրդին: Երգը տրուեցաւ երկձայն ուր երեք մեներգուհիներ իրենց մասնակցութիւնը բերին - Սեդա Ալեքսանեան, Ալիս Սիմոնեան եւ Լիւսի Տէր Ներսէսեան որոնք ներկայացուցին գեղջկական եղանակին գեղեցկութիւնը:

Արական երգչախումբի եռաձայն *Մարալի պէս ման գաս*ը եղաւ պայծառ եւ բարձր մակարդակով: Երկու մենակատարները տարբեր ձայներով, տարբեր գոյներով բայց հայեցի շունչով խզեցին միօրինակութիւնը - Ռաֆֆի Չէչճէնեան եւ Զարեհ Շուշանեան մասնաւոր փայլ մը տուին կրկներգին:

Կանացի խումբը, Արմէն Տիգրանեանի *Ամպի տակից*ի մէջ իր յաջողութիւնը կը պարտի մենակատարուհի Սիլվա Մարգարեանի բացառիկ ձայնին, անոր երգի թեքնիքի տիրապետումին:

Գուսան Աշոտի *Ծովաստղիկս* Քրիստին Չատրճեանի ձայնի տուեալ յատկանիշերով եւ ապրումի միջոցաւ եղաւ արուեստագիտական երեւոյթ մը: Երբ Քրիստին իր ալթոյի զօրութեան միախառնած էր ներքին արձագանգը, երբ երկար շունչի եւ նախադասութեան կատարելութեան մէջէն խումբը կրկներգի մը մէջ նոյն մեղեդին տարբեր ձայնաստիճանի վրայ կը փոխադրուէր:

Վերջին չորս երգերը կապուած էին իրարու: Կարօ Զաքարեանի *Սարը կեալին*, *Նէլլի եաման* ծանօթ եղանակով եւ սասունցիներու *Հէյ կը քէլէր*ը եւ ապա ազատագրական *Հովը փչեց էն սարէն*, մշեցիներու *Եարամ կորանի*ին հետ:

Մեր ժողովուրդը այս երգերը իր հողին վրայ կ'երգէր, անկէ ներշնչում եւ ոյժ ստանալով: Սփիւռքի մէջ այս երգերուն տարածումով մեր հոգիներուն մէջ ստեղծած կ'ըլլանք հայրենի հողը: Մենակատարները իրենց բաժինը ունեցան յանձինս Ալիս Սիմոնեանի, Սեդա Ալեքսանեանի, Ալին Արթինեանի, Վազգէն Էքսէրճեանի եւ մանաւանդ Լիւսի Տէր Ներսէսեանի: Այս վերջին մասին մէջ «Էհ կնքեր եմ» եւ «Նինամ» կրկնութիւնները մասնաւոր խանդավառութիւն մը յառաջ բերին եւ զարմանալի չէ որ համերգը, երկրորդ օրը ժողովուրդը ինքն ալ մասնակցեցաւ իր ծափերով եւ նոյնիսկ երգերով խումբին հետ:

Կռունկ երգչախումբի ելոյթը իբրեւ գեղարուեստական արտայայտութիւն ի յայտ բերաւ հայ երգի բարձր չափանիշ մը: Առանց նուագարանի - միակ դաշնակով մը որ երբեմն լուռ էր նոյնիսկ - քառաձայն երգացանկը ընթացաւ անթերի կերպով, պարզագոյն միջոցներով, դեռատի ոյժերով, օտար ազդեցութիւններէ հեռու, մեներգողներու կատարումներով, որոնք զուտ հայկական բնոյթ կը կրէին: Խումբը ցուցաբերեց միասնականութիւն մը, ներդաշնակութիւն մը, ձայներու միախառնում մը, երանգաւորում մը, առանց գունաւորումի, հարազատ եւ ճշգրիտ:

Եւ պատահական չէ որ Հայկ Սարգիսեան զատած էր երեք կտոր Կոմիտասէն, երեք եւս կտորներ Թաթուլ Ալթունեանէն, առաւել Արմէն Տիգրանեանէն, Գուսան Աշոտէն, սասունցիներէն եւ մշեցիներէն:

Այս ելոյթով երիտասարդութիւնը, մեր նոր սերունդը, յաղթանակ մը տարաւ նախ ինքն իր վրայ - ապա հասարակութեան կարծիքին վրայ, թէ ինք գիտակից է, գործունեայ եւ քանի Հայկ Սարգիսեանի նման ղեկավարներ ունի:

Հայկ Սարգիսեան փաստեց թէ երգը զօրեղ ազդակ մըն է ազգապահպանման, թէ երգով կարելի է սփիւռքի հայը կապել հայրենիքին:

*Արեւ*, 23 Դեկտեմբեր 1983, 68-րդ տարի, թիւ 19617, էջ 1. 24 Դեկտեմբեր 1983, թիւ 19618, էջ 1

## ԿՌՈՒՆԿԻ ԿԱՊՈՅՏ ԵՐԿԻՆՔԸ

ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐԵԱՆ

Խմբավար Հայկ Սարգսեանն անցեալ տարի իր ուսումն աւարտեց Երեւանի Կոմիտասի անուան պետական երաժշտանոցում՝ աշակերտելով Նուբար Սնգրեանին: Ես, որ ծանօթ էի հայրենիքում ապրող, սովորող ուսանողի ուսումնառութեան աւարտին ծնուող խանդավառութեանը, չգիտէի, թէ այս խանդավառութիւնն ինչ երանգ ունի սփիւռքահայ ապագայ խմբավարի մօտ: Եւ երբ Հայկ Սարգսեանը թաքուն տենդով երկար խօսում էր իր անելիքների եւ ապագայի ծրագրերի մասին, ես յուզւում էի: Ինձ տանջում էր այն հարցը, թէ Հայկի խանդավառ երազների ո՞ր մասն է իրականանալու արդեօք, եւ կեանքն ի՞նչ ձեւով է խմբագրելու դրանք: Մշտապէս հաւատացել եմ իմ կրտսեր բարեկամի հայրենասիրական կորովին, հաւաքական մտքերով ապրելու կարող նրա նկարագրին: Հայկի՝ Գահիրէ վերադառնալուց յետոյ, ես ականջս պահել էի նրա գործին վերաբերող հեռուների լուրերին: Գիտէի, որ երգչախումբ է կազմել, որ հաւատ է ներշնչել իր կարողութիւնների, իր դերի նկատմամբ, եւ ահա սփիւռքի թերթերից մէկը ծաւալուն յօդուած էր տպագրել Հայկ Սարգսեանի անդրանիկ համերգի մասին: Շուտով ինձ հասաւ նաեւ այդ համերգի ձայնագրութիւնը:

Երեւունվեց հայ տղաներ եւ աղջիկներ, այդ թւում՝ Ալիս Սիմոնեանն ու Սեդա Ալեքսանեանը, Ալին Արթինեանն ու Վազգէն Էքսէրճեանը, Արփի Գալընեանն ու Լիսի Տէր-Ներսէսեանը, Աննա Գազանճեանն ու Րաֆֆի Չէչճէնեանը եւ ուրիշներ, ներկայացնում են Կռունկ նորակազմ քառաձայն երգչախումբը:

Երգչախումբը երգում է Կոմիտաս, Կարա-Մուրզա, Արմէն Տիգրանեան, Սպիրիդոն Մելիքեան, Անտոն Մայիլեան, Կարօ Զաքարեան:

Լսում եմ համերգի ձայնագրութիւնը եւ առաջին հնչիւնների հետ կապւում դահլիճի խանդավառ մթնոլորտին: Հայ երգի հնչիւնների տարածման հետ

կարծես համերգային դահլիճի առաստաղից վեր բացւում է Արագածի կապոյտ երկինքը, ու համերգային դահլիճի պատերից դուրս հայրենի երկրի բնապատկերներն են շարւում, *Հով է փչում էն սարէն* ու *Ամպի տակից* երգ է տեղում: Երգի ելեւէջները ոգեղէն նիւթով հայրենի երկրի պատկերն ստեղծելու, այդ պատկերը սիրելու եւ նրանով ներշնչելու ծրագիրը Կոմիտաս երգչախմբի ու նրա խմբավարի գործունէութեան հիմքն են: Սա պարզորոշ լսւում է համերգին հնչած իւրաքանչիւր երկում:

Լսում եմ Կոմիտասին, եւ իմ աչքերի առջեւ, լուսամուտիս տակ տարածուող Երեւանն է ու երգչախմբի երեսունվեց հոգու երգի ալիքներով ստեղծուած երազի կապոյտ հայրենիքը: Այս պահին ես թէ իրենց երգի մէջ եմ, թէ իրականութեան: Ու մտովի ասում եմ իմ կրտսեր բարեկամին՝ Հայկ Սարգսեանին. այն, ինչի մասին դու խօսում էիր թաքուն տենդով ու սպասումի յղիութեամբ լեցուն, իր հաստատուն գոյութեան առաջին քայլերն է անում, եւ քո ղեկավարած երգչախմբի անդրանիկ Կոմիտասը վերադարձել է հայրենի հող, մեզ հետ է, մեր հոգում:

Ողջո՛յն քո գործին եւ հայերէն երգող քո երգչախմբի երեսունվեց անդամներից իւրաքանչիւրին: Ողջո՛յն նրանց, ովքեր հաւատացել են քո կարողութիւններին ու քո դերին, թեւ տուող հովանաւոր են դարձել հայ երգին ու նրա թռիչքին:

*Արեւ*, 27 Հոկտեմբեր 1984, 69-րդ տարի, թիւ 19861, էջ 1

ԱՆԳԼԻԱԿԱՆ ԱՂՋԿԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԿԻՐԱԿԻ, 29 ՅՈՒՆՈՒԱՐ 1984

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

Հ·Բ·Ը·Մ· ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ Հ·Մ·Ը·Մ· ՆՈՒՊԱՐ

**Խմբերգային Երեկոյ**

*Կիրակի, 29 Յունուար 1984 Կ.Ե. ժամը 6-ին*
E.G.C. *Անգլիական Աղջկանց Վարժարանի*
*հանդիսասրահին մէջ (Շաթպի)*
*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԵՐԵՔ*
*ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՈՒՆ*
*Նախագահութեամբ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ**

*Ցկեանս պատուոյ նախագահ*
*Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի եւ Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐԻ*
*ԵՂՈՅԹ Կ՚ՈՒՆԵՆԱՅ ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ*
*ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ*

**Կուսնէկ Քառաձայն Երգչախումբը**

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

**ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

Յայտարարութիւն
*Արեւ*, 26 Յունուար 1984, 68-րդ տարի, թիւ 19641, էջ 4

# CE SOIR, A ALEXANDRIE: RECITAL DE CHANT DE LA CHORALE ARMENIENNE GEROUNG

ZAVEN DJIZMEDJIAN

Ce soir, à la 18h. à la salle de théâtre du English Girls Collège (EGC) à Alexandrie, la chorale arménienne Geroung donnera un récital de chant. Composée de jeunes elements, dont la plupart chantent pour la première fois, la chorale a fait preuve d'une grande maturité dès sa première apparution dans la salle Wallace de l'Université Américaine du Caire au début Décembre.

Le grand succès de la chorale revient surtout à son jeune directeur Haig Sarkissian. Né en 1955 au Caire, il a commencé l'étude du piano dès son enfance, ensuite il a continué ses études musicales à Erévan en Arménie. Puis au conservatoire Komitas, d'où il a obtenu son diplôme avec mérite en 1983.

Revenu au Caire, il a pris en charge la formation de la chorale, sous le patronage de la Société de Bienfaisance Arménienne. Grâce à son habileté, à son travail ardent et à sa patience infinie il a su, dans un laps de temps assez court, initier les jeunes voix inexpérimentées aux secrets de la mélodie et leur communiquer cet enthousiasme juvénile grâce auquel ils ont tout de suite appris et chanté des chants folkloriques, patriotiques et religieux avec une maîtrise digne de professionnels.

D'autre part, l'ambiance saine qui règne entre les 39 jeunes gens et jeunes filles de la chorale est aussi l'un des éléments de son succès. En effet, malgré les occupations diverses de ses membres (études ou travail), ils sont toujours présents aux répétitions, prêts à sacrifier leur temps précieux pour l'épanouissement et le succès de leur chorale.

Leur répértoire comprend des compositions de célèbres musiciens arméniens tels que Komitas, Barouyr Sevag et autres, mais aussi des chansons arabes classiques, telles que *Teleet ya mahla nourha* et *Beladi beladi* de Sayed Darwishe.

Nous souhaitons que cette chorale, qui n'est qu'à ses premiers pas, rencontre l'encouragement nécessaire pour pouvoir continuer et s'épanouir.

*Le Progrès dimanche*, 29 janvier 1984, 36ème année, No. 5, p. 3

# BRILLANT SUCCES DE LA CHORALE ARMENIENNE GEROUNG

MAGGIE

La Société de Bienfaisance Arménienne AGBU (section d'Alexandrie) dont la Présidence d'Honneur est assumée par M. Vahan Alexanian, consul d'Autriche et le Club sportif M.M.E.M. NUBAR (secrétaire: V. Seférian) ont offert aux alexandrins, dimanche soir, un cadeau de prix, celui de l'audition du très beau choeur arménien GEROUNG, venu du Caire pour cette circonstance.

35 jeunes gens et jeunes filles, dirigés par le talentueux artiste qu'est Haig Sarkissian ont donné, devant la salle comble de l'English Girls' College, la manifestation d'un art que chacun de ces jeunes artistes a fait valoir par des voix pures, chaudes et parfaitement exercées.

Que dire de ces chants pleins de charme et de soleil, de ces chants où prime la mélodie, de ces chants folkloriques et parfois nostalgiques qui rappellent le pays perdu, de ces remplis de saveur où éclate la bonhommie paysanne; de ces autres, religieux et graves et de ces autre encore qui évoquent l'amour et la tendresse...

Une chorale admirable qui a surgi subitement sous la baguette de Haig Sarkissian de ce jeune musicien diplômé avec "Mérite" en 1983 après sa formation musicale à Erivan, en Arménie Soviétique et dont la biographie a été déjà donnée dans notre quotidien du 29 janvier.

Haig Sarkissian a su, par sa seule volonté, son amour de l'art, et une recherche patiente, rassembler tout élément possédant une voix bien posée, même si elle manquait d'expérience. Et ce fut le miracle... On ne peut qu'être en admiration devant le résultat acquit, devant cet ensemble plein d'ardeur et d'allant, dont l'homogénité en remontrerait aux plus expérimentées des chorales; et d'écouter avec un plaisir délicat ces voix d'une pureté cristallines ou graves, voilées, aux surprenantes nuances variées et pleines d'harmonies et que le public applaudit avec enthousiasme, particulièrement dans les solos chantée par Christine Tchadordjian, Raffi Tchedchenian, Iris Kaisserian, Anna Kazandjian, Sylva Markarian, Alice Simonian, Seta Alexanian, Aline Artinian. Nous n'oublions pas également le ténor et le baryton léger: Zareh Shoushanian et Vazken Ekserdjian et de mentionner deux poèmes récités avec chaleur par Sylva Markarian[1] et Sylva Simonian.

Sur la scène, c'était un coup d'oeil charmant que de voir alignées devant leurs camarades masculins, ces jeunes filles, l'une plus jolie que l'autre, les chants étaient,

1. Պէտք է ըլլայ՝ Vania Ekserdjian, Հ.Ա.

lorsqu'ils n'étaient pas du "plein chant", secondés au piano avec compétence par la jeune et gracieuse Gassia Deuvletian.

Le répertoire de cette très belle chorale parfaitement disciplinée comprend des oeuvres de musiciens arméniens connus tels que Komitas, Barouyr Sevag; elle fut également applaudie dans l'interprétation des chansons arabes du compositeur égyptien Sayed Darwiche dans *Beladi, beladi* et *Teleet ya mahla nourha*.

Nous avons appris, par ailleurs, que lors d'un Festival de Chants qui se tiendra en 1985 à Erivan (Arménie Soviétique) et qui groupera les chorales arméniennes de la Diaspora, celle du GEROUNG y participera également et, de cela, nous en sommes sûrs, remportera le plus beau des succès.

* * *

Faisant suite à ce concert vocal, M. V. Alexanian et Mme Alexanian avaient convié à un dîner au "Cercle d'Alexandrie" un groupe d'amis et de connaissances dont M. et Mme Onsi, directeurs du Conservatoire d'Alexandrie; Mme A. Dozi directrice de l'Institut de Culture Italien; Le directeur du British Council et Mme Bonar; M. C. Motrat, directeur du C.C.F.; M. A. Tullmann, directeur du Goethe Institut; Mme G. Boulad, M. E. Assad, Mme Papazian et MM. Alexanian, qui secondaient leurs parents au cours de ce dîner qui s'est déroulé dans une ambiance des plus amicales.

*Le Progrès égyptien*, 1er février 1984, 87ème année No. 25, p. 3

## ԿՌՈՒՆԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՓԱՅԼՈՒՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

ՄԱԿԿԻ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Աղեքսանդրիոյ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութիւնը, որուն պատուոյ նախագահն է Աւստրիոյ հիւպատոս Պր. Վահան Ալեքսանեանը, եւ Հ.Մ.Ը.Մ. Նուպար մարզակումբը (ատենադպիր՝ Վ. Սէֆէրեան), Կիրակի երեկոյ աղեքսանդրիացիներուն նուիրեցին խաղաղութեան նուէր մը՝ այս առթիւ յատկապէս Գահիրէէն եկած հայկական շատ գեղեցիկ Կռունկ երգչախումբին ունկնդրութիւնը։

35 երիտասարդ-երիտասարդուհիներ, ղեկավարութեամբ տաղանդաւոր արուեստագէտ Հայկ Սարգիսեանի, Ինկլիշ Կըրլզ Քոլէճի ամբողջովին լեցուած սրահին մէջ կատարեցին արուեստի ցուցադրութիւն մը, զոր այս երիտասարդ արուեստագէտներէն իւրաքանչիւրը արժեցուց ջինջ, ջերմ եւ կատարելապէս

արտայայտուած ձայնով:

Ինչ ըսել սա հմայքով եւ արեւով լի երգերուն մասին, սա երգերուն մասին, ուր մեղեդին կը գերազանցէ, սա ժողովրդական երգերուն մասին՝ երբեմն հայրենաբաղձութեամբ տոգորուն, որոնք կը յիշեցնեն կորուսեալ հայրենիքը, լի ճաշակով, ուր կը յայտնուի բարի գեղջուկը, կամ սա միւս՝ կրօնական եւ ծանրակշիռ երգերուն մասին, կամ անոնց մասին, որոնք սէր եւ քնքշանք կ'արտայայտեն:

Հիանալի երգչախումբ մը, որ յանկարծ կը պոռթկայ Հայկ Սարգիսեանի ճպոտին տակ, սա երիտասարդ երաժիշտին, որ 1983-ին արժանեաց գնահատականով երաժշտական իր կազմաւորումը ստացած է Երեւանի՝ Սովետական Հայաստանի մէջ, եւ որուն կենսագրականը տուած էինք 29 Յունուարի մեր թիւին մէջ:

Հայկ Սարգիսեան կրցաւ, իր կամքով, արուեստի հանդէպ իր սիրով եւ համբերատար փնտռտուքով, ի մի բերել ամէն մէկ տարր, որ ունի դաշն ձայն մը, նոյնիսկ եթէ ան զուրկ է փորձառութենէ: Եւ տեղի ունեցաւ հրաշքը...

Կարելի է միայն հիանալ ձեռք բերուած արդիւնքով, եռանդով եւ կորովով լի այս համոյթին դիմաց, որուն միատարրութիւնը ամենափորձառու երգչախումբերուն յատուկ է. եւ նրբին հաճոյքով ունկնդրեցինք սա բիւրեղեայ յստակութեամբ կամ ծանրութեամբ, քօղարկուած, այլազան զարմանալի երանգներով եւ ներդաշնակութեամբ լի ձայները, զորս հանրութիւնը ծափահարեց խանդավառութեամբ, մասնաւորաբար Քրիստին Չատըրճեանի, Ռաֆֆի Չէչճէնեանի, Իրիս Գայսէրլեանի, Աննա Գազանճեանի, Սիլվա Մարգարեանի, Ալիս Սիմոնեանի, Սեդա Ալեքսանեանի, Արթին Արթինեանի մենակատարումներուն ընթացքին: Չենք կրնար մոռնալ նաեւ թենոր եւ թեթեւ պարիթոն Զարեհ Շուշանեանն ու Վազգէն Էքսէրճեանը, եւ երկու քերթուածներու այնքան ջերմ արտասանութիւնը Սիլվա Մարգարեանի[1] եւ Սիլվա Սիմոնեանի:

Բեմին վրայ, հմայիչ էր տեսնել՝ իրենց արական ընկերներուն կողքին, սա երիտասարդուհիները՝ մին միւսէն սիրուն, երգելու պահուն, դաշնակի այնքան ձեռնհաս ընկերակցութեամբը երիտասարդ եւ շնորհալի Կասիա Տէօվլէթեանի:

Այս շատ գեղեցիկ երգչախումբին կատարելապէս կարգաւորուած երգացանկը կ'ընդգրկէր հայ ծանօթ երգահաններու գործերը, ինչպիսիք էին Կոմիտասը, Պարոյր Սեւակը. անոնք նոյնպէս ծափահարութիւններ խլեցին արաբական երգերու՝ եգիպտացի կոմպոզիտոր Սայէտ Տարուիշի *Պիլատի, պիլատի* եւ *Թէլէթ եա մահլա նուրհա* երգերուն մեկնաբանութեան համար:

Բաց աստի, կը տեղեկանանք, թէ 1985-ին Երեւանի մէջ (Սովետական Հայաստան) կայանալիք երգերու փառատօնին, որուն պիտի մասնակցին սփիւռքահայ երգչախումբերը, Կռունկը նոյնպէս պիտի մասնակցի, եւ վստահ ենք, որ

1. Պէտք է ըլլայ՝ Վանիա Էքսէրճեան, Հ.Ա.

ամենափայլուն յաջողութիւններէն մին պիտի արձանագրէ:

Համերգէն ետք, Տէր եւ Տիկին Վահան Ալեքսանեան, Սերքլ տ'Ալեքսանտրիի մէջ ճաշկերոյթ մը տուին, որուն մասնաւորաբար ներկայ էին Աղեքսանդրիոյ Երաժշտանոցին տնօրէն Տէր եւ Տիկին Օնսի, Իտալական Մշակութային Կեդրոնի տնօրէնուհի Տիկ. Ա. Տոզի, Անգլիական Մշակութային Կեդրոնի տնօրէն Պր. Պոնար եւ Տիկինը, Ֆրանսական Մշակութային Կեդրոնի տնօրէն Պր. Մոթրա, Արեւմտագերմանական Մշակութային Կէօթէ Կեդրոնին տնօրէն Պր. Ա. Թելման, Տիկին Ժ. Պուլատ, Պր. Է. Ասատ, Տիկին Փափազեան եւ Պր. Ալեքսանեան: Ճաշկերոյթը անցաւ բարեկամական ջերմ մթնոլորտի մէջ:
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 1 Փետրուար 1984)

*Արեւ*, 6 Փետրուար 1984, 68-րդ տարի, թիւ 19650, էջ 1

## ECLATANT SUCCES DE LA CHORALE GEROUNG CHEF DE CHOEUR: HAIG SARKISSIAN

GISELE BOULAD

Rappelons rapidement l'origine du chant polyphoniques (Choeur). Il s'est formé au Moyen-Age. Il atteint son degré ultime de perfectionnement au XVI siècle. La tradition le continue, ce qui rend le passé toujours vivant... en l'écoutant, on a l'impression que le passé continue à vivre dans le présent... et nous devons ces réminescences à la chorale GEROUNG, formé de 39 jeunes gens et jeunes filles qui, sous la direction, on ne peut plus excellente, de Haig Sarkissian, a enthousiasmé à juste titre un auditoire subjugué par le talent et la beauté de l'exécution.

Haig Sarkissian est né au Caire en 1955. Il a fait ses études musicales à Erivan (Arménie), pour les compléter au Conservatoire Komitas où il a obtenu son diplôme avec Mention. Revenu au Caire en 1983, il prit en charge la chorale, sous le patronage de la Bienfaisance arménienne. Notons que cette prise en charge ne date que de quatre mois. Devant le résultat obtenu, nous restons stupéfaits.

On sait que la polyphonie vocale est née du chant d'Église. Haig Sarkissian a donc eu l'intelligence et le bon goût de nous faire entendre, outre des chants patriotiques, folkloriques, chansons d'amour et autres, des chants religieux à 5 voix empreints d'une noble beauté.

Tous ces morceaux entendus, chantés à Cappella ou accompagnés au piano, méritent d'être analysés et mentionnés, mais hélas! la place manque. Disons simplement que nous félicitons chaleureusement les exécutants et leur chef. Toutes ces oeuvres sont

imprégnées d'une élégance de sentiments, d'une puissance émouvante qui on ont fait des pièces de goût et d'harmonie.

Quel merveilleux instrument que la voix humaine! Dans cette chorale, les voix se fondent, s'associent, s'harmonisent. On comprend alors qu'une chorale n'est fondée que sur la puissance de la communauté: Chef et chanteurs n'ont plus qu'une même pensée, qu'une même âme.

Rendons hommage à ces jeunes chanteurs qui ont su répondre aux vertus de rigueur et de sensibilité, vertus maîtresses de vrais musiciens, inculquées par leur Chef.

Ils ont chanté avec ferveur et tendresse. Ils ont admirablement eu la maîtrise des colorations obtenues à partir des mélanges de registre... Comme nous avons admiré ces beaux crescendos et diminuendos! Ces qualités ont rendu encore la musique plus transparente et plus pure. On sentait l'air circuler entre les parties vocales: elles n'étaient pas "compressées", mais nettes, claires et en ordre.

Félicitons tous ces solistes garçons et filles: Alice Simonian, Seta Alexanian, Vazken Ekserdjian, Aline Artinian, Sylva Markarian. Et spécialement Christine Tchaderdjian (mezzo) dont la voix semble avoir toutes les qualités: chaleur et richesse de timbre qui, dans tous les cas, est profond et émouvant. A cette superbe voix, s'ajoute ce je ne sais quoi de voilé qui donne à son timbre un charme sensuel. C'est une voix surprenante au timbre rare.

Anouchka Tchaderdjian (soprano): Nous avons apprécié sa voix ronde et pure, son timbre exquis. Elle vocalise bien. Elle chante comme ces rossignols qui ont l'air de vouloir se faire entendre jusque dans les plaines. C'est avec une grâce et une légèreté charmantes qu'elle a su nous faire comprendre les chants de son pays. Belle voix prenante.

Félicitons Zareh Shoushanian[1] pour sa douce voix de tenorino et le joli poème récité avec ardeur et émotion.

Vania Ekserdjian pour sa vivante récitation. Silva Simonian pour l'interprétation du poème. Anna Kazandjian pour sa voix lumineuse et douce. La pianiste Gassia Devletian.

Félicitons surtout Haig Sarkissian, Chef de Choeur, pour ses qualités de précision, pour sa magnifique interprétation de tous les morceaux et spécialement pour celui du compositeur Sayed Darwiche qui fut éblouisant, pour la formation du choeur qui garde dans les rythmes une belle robustesse, pour le talent qu'il a de tirer de l'ensemble des voix, des effets savoureux et enfin, pour sa sensibilité raffinée.

Soirée mémorable qui restera gravée, pour nous, d'une pierre blanche.

*Le Journal d'Egypte*, 1er février 1984, p. 3

1. Պէտք է ըլլայ՝ Raffi Tchetchenian, Հ.Ա.

# ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՇՈՂՇՈՂՈՒՆ ՅԱՂԹԱՆԱԿԸ
# ԽՄԲԱՎԱՐ՝ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

ԺԻԶԷԼ ՊՈՒԼԱՏ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Արագօրէն յիշենք բազմաձայն երգին (երգչախումբ) ծնունդը: Կազմուած է Միջին դարերուն: Իր կատարելագործման գագաթնակէտին հասաւ ԺԶ. դարուն: Աւանդութիւնը կը շարունակուի, ինչ որ անցեալ է միշտ կենդանի կը պահէ... ունկնդրելով զայն՝ մարդ այն տպաւորութիւնը կ'ունենայ, թէ անցեալը կը շարունակէ ապրիլ ներկային մէջ... եւ այս մտորումները կը պարտինք Կռունկ երգչախումբին, որ կազմուած է 39 երիտասարդ-երիտասարդուհիներէ, որոնք, սքանչելի ղեկավարութեանը տակ Հայկ Սարգիսեանի, արդարացիօրէն խանդավառեցին ունկնդիրները, որոնք տիրապետութեանը տակ մնացին անոնց տաղանդին եւ բարձրորակ կատարումին:

Հայկ Սարգիսեան ծնած է Գահիրէ 1955 թուականին, երաժշտական իր ուսումը ստացած է Երեւանի (Հայաստան) մէջ, զայն կատարելագործելով Կոմիտասի անուան երաժշտանոցին մէջ, ուրկէ ստացաւ իր վկայականը՝ գնահատականով: Գահիրէ վերադառնալով 1983 թուականին, ղեկավարութիւնը ստանձնեց երգչախումբին՝ հովանաւորութեանը տակ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան: Յիշենք նաեւ, որ այս ստանձնումը եղաւ միայն չորս ամիսներ առաջ: Մէջտեղ եկած արդիւնքին դիմաց՝ ապշած կը մնանք:

Ծանօթ է, որ բազմաձայն երգը ծնած է եկեղեցական երաժշտութենէն: Հայկ Սարգիսեան, ուրեմն, խելացութիւնն ու ճաշակը ունեցած էր մեզի ունկնդրել տալու, բացի հայրենասիրական, ժողովրդական, սիրային եւ այլ երգերէ, նաեւ կրօնական երգեր հնգաձայն՝ դրոշմուած ազնիւ գեղեցկութեամբ մը:

Ունկնդրուած բոլոր այս կտորները՝ երգուած առանձին կամ դաշնակի ընկերակցութեամբ, կ'արժէ յիշել եւ վերլուծել, բայց աւա՜ղ, տեղը կը պակսի: Պարզապէս ըսենք, թէ ջերմօրէն կը շնորհաւորենք երգիչներն ու իրենց խմբավարը: Բոլոր այս կտորները դրոշմը կը կրեն զգացումներու շնորհալիութեան, յուզիչ ուժգնութեամբ մը, որ զանոնք ըրին ճաշակի եւ ներդաշնակութեան գործեր:

Ինչ սքանչելի գործիք է մարդկային ձայնը: Այս երգչախումբին մէջ ձայները կը միաձուլուին, կը միաւորուին, կը ներդաշնակուին: Այն ատեն է, որ մարդ կ'ըմբռնէ, թէ երգչախումբ մը հիմնուած է միայն հասարակաց միութեան ուժին վրայ, խմբավար եւ երգիչներ միայն մէկ մտածում ունին, կը կազմեն միակ անձ մը:

Պատիւ ընծայենք այս երիտասարդ երգիչներուն, որոնք գիտցան ընդառաջել պահանջի եւ զգայնութեան առաքինութիւններուն, որոնք տիրուհիներն են

իսկական երաժիշտներուն՝ տպաւորուած իրենց խմբավարով:

Անոնք երգեցին ջերմութեամբ եւ քնքշութեամբ: Անոնք հիանալիօրէն տիրապետեցին խառնուրդին մէջէն զատորոշուած երանգներուն: Որքա՜ն հիացանք ձայներու սա գեղեցիկ ելեւէջներով: Այս կարողութիւնը երաժշտութիւնը ըրաւ աւելի թափանցիկ, աւելի վճիտ: Կը զգացուէր եղանակին շրջանը ձայնային մասերուն մէջ. անոնք «ճնշուած» չէին, այլ յստակ, պայծառ եւ կարգաւորուած:

Շնորհաւորենք բոլոր մենակատարները՝ աղջիկ թէ մանչ - Ալիս Սիմոնեան, Սեդա Ալեքսանեան, Վազգէն Էքսէրճեան, Ալին Արթինեան, Սիլվա Մարգարեան, եւ մասնաւորապէս Քրիստին Չատըրճեան (մեծծօ), որուն ձայնը կը թուի ունենալ բոլոր յատկութիւնները - ջերմութիւն եւ հարստութիւն հնչիւնի, որ, ամէն պարագայի տակ, խոր է եւ յուզիչ: Այս գերազանց ձայնին կ՚աւելնայ չեմ գիտեր քօղարկուած բան մը, որ հնչիւնին կու տայ զգացական հմայք մը: Հազուագիւտ հնչիւնով հիասքանչ ձայն մը:

Շնորհաւորենք Զարեհ Շուշանեանը[1] իր թենորինօ անուշ ձայնին եւ սիրուն քերթուածի մը ջերմութեամբ եւ յուզումով իր արտասանութեան համար: Վանիա Էքսէրճեանը՝ իր կենդանի արտասանութեանը համար: Սիլվա Սիմոնեանը՝ քերթուածին իր մեկնաբանութեանը համար: Աննա Գազանճեանը՝ իր լուսաւոր եւ անուշ ձայնին համար: Դաշնակահարուհի Կասիա Տէօվլէթեանը:

Շնորհաւորենք մանաւանդ խմբավար Հայկ Սարգիսեանը՝ իր ճշգրտութեան յատկութեան, իր հիանալի մեկնաբանութեանը համար բոլոր այս կտորներուն, եւ մասնաւորաբար կոմպոզիտոր Սայիտ Տարուիշին համար, որ եղաւ ունկնահաճոյ, կազմութեանը համար երգչախումբին, որ կշռոյթներուն մէջ կը պահէ գեղեցիկ ուժգնութիւն մը, իր այն տաղանդին համար, որով գիտցած է ստանալ ձայներու միատարրութիւն մը, հմայիչ արդիւնք մը, եւ ի վերջոյ, իր նրբին զգայնութեան համար:

Յիշատակելի երեկոյ մը, որ դրոշմուած պիտի մնայ մեզի համար, ոսկեայ տառերով:

(*Լը Ժուռնալ տ՚Էժիփթ*, 1 Փետրուար 1984)

*Արեւ*, 8 Փետրուար 1984, 68-րդ տարի, թիւ 19652, էջ 1

1. Պէտք է ըլլայ՝ Րաֆֆի Չէչճէնեան, Հ.Ա.

ՍԱՅԷՏ ՏԱՐՈՒԻՇ ՍՐԱՀ, ԿԻԶԱ (ԳԱՀԻՐԷ)

ՈՒՐԲԱԹ, 30 ՄԱՐՏ 1984

ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

Academy of Arts



THE CAIRO CONSERVATOIRE

presents

A CONCERT BY

THE CAIRO CONSERVATOIRE YOUTH CHOIR

Conducted by : HAIG SARKISSIAN

At the Piano : David Hales

8 p.m.Friday 30th March 1984
at the Sayed Darwish Concert Hall
Pyramids

Free Entrance

PROGRAMME

| | |
|---|---|
| - SAFAR ALY | Islami Ya Misr<br>Choral setting:Y.El Leithy |
| - GAMAL SALAMA | Mohamed Rasoul Allah |
| - SAYED DARWISH | Teleet Ya Mahla Nourha<br>Choral setting:Y.El Leithy |
| - G.ABDEL-RAHIM | Ana Bent El Sultan<br>Iman Moustafa |
| - G.ABDEL-RAHIM | Folk Songs<br>Choral setting:G.Abdel-Rahim<br>- El Henna<br>- Marmar Zamani<br>- El Wad Dah Malou |

INTERVAL

| | |
|---|---|
| - LEO DELIBES | Les Filles de Cadix<br>Iman Moustafa |
| - BIZET | Danse Bohémienne |
| - MOZART (Duet) | Die Entfuhrung aus dem Serail<br>Nashwa Ibrahim & Reda El Wakil |
| - COMITAS | Falling Rain<br>Sahar Nouh |
| - ROSSINI | Serata Musicale<br>Nashwa Ibrahim & Gihan Aly |
| - CARL ORFF | Veni , Veni , Venias |
| - MOZART (Duet) | From Opera"Cosi Fan Tutti"<br>Hanan Abul-Magd & Sahar Nouh |
| - J.OFFENBACH | General Boom<br>Reda El Wakil |
| - SAYED DARWISH | Biladi , Biladi |

## البرنامج

| | |
|---|---|
| – صفر على | اسلمى يا مصر |
| | توزيع : يحيى الليثى |
| – جمال سلامه | محمد رسول الله |
| – سيد درويش | طلعت يا محلى نورها |
| | توزيع : يحيى الليثى |
| – جمال عبد الرحيم | أنا بنت السلطان |
| | ايمان مصطفى |
| – جمال عبد الرحيم | ثلاثة أغانى شعبية |
| | توزيع : جمال عبد الرحيم |
| | – الحنة |
| | – مر مر زمانى |
| | – الواد ده ماله |

---

استراحة

---

| | |
|---|---|
| – ديليب | فتيات قادس |
| | ايمان مصطفى |
| – بيزيه | رقصة غجرية |
| – موتسارت | (ثنائى) من أوبرا " الاختطاف من السراى " |
| | نشوى ابراهيم ، رضا الوكيل |
| – كوميتاس | المطر |
| | سحر نوح |
| – روسينى | أمسية موسيقية |
| | نشوى ابراهيم ، جيهان على |
| – كارل أورف | فينى ، فينى ، فينياس |
| – موتسارت | (ثنائى) من أوبرا " هكذا يفعلن الجميع " |
| | حنان أبو المجد ، سحر نوح |
| – أوفنباخ | أغنية الجنرال بوم |
| | رضا الوكيل |
| – سيد درويش | بلادى ، بلادى |

أكاديمية الفنون



الكونسرفتوار

يقدم

حفل موسيقى

لكورال شباب الكونسرفتوار

قيادة : هايك سركسيان

مصاحبة البيانو : دافيد هيلز

٨ مساء الجمعة ٣٠ مارس ١٩٨٤

بقاعة سيد درويش بالهرم

# ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ԱՆԴՐԱՆԻԿ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ԲԵՄԻ ՎՐԱՅ

ՍԱՐԳԻՍ ՍՐԿ.

Ուրբաթ, 30 Մարտ 1984-ին գաղութիս ծանօթ եւ սիրուած խմբավար՝ Հայկ Սարգիսեան պաշտօնապէս մուտք գործեց բոլոր խմբավարներու, ինչպէս նաեւ Եգիպտական խմբավարներու պատմութեան մէջ, բարձրանալով առաջին աստիճանին վրայ, հասնելու եւ գրաւելու համար իր արժանի տեղը, միանալու համար այն հոյլին, որ զարմանալի մոգականութեամբ մականի շարժումներով է, որ երաժշտութիւն, երգ ու տաղ կ՚արտադրէ։

Հովանավարութեամբ Արուեստից Կաճառին եւ կազմակերպութեամբ Գահիրէի Երաժշտանոցին՝ Սայիտ Տարուիշ հանդիսասրահին մէջ, ելոյթ ունեցաւ Գահիրէի Երաժշտանոցին Երիտասարդական երգչախումբը, շուրջ 60 հոգի, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։ Դաշնամուրին կ՚ընկերակցէր՝ Տէյվիտ Հէյզ։

Ներկայ հանդիսականները, որոնց կը գլխաւորէր Արուեստից Կաճառին Տնօրէնուհի՝ Տոքթորայ Սամիա Խուլի, մեծամասնութեամբ ազգականներ էին եւ պատասխանատուներ, որոնց մաս կը կազմէր, զգալի թիւ մը, Հ.Բ.Ը.Մ.ի Կոունկ երգչախումբի անդամներէն եւ նոյնքան ալ ծանօթ քաջալերող հայրենակիցներ, ըմբոշխնեցին եգիպտական ժողովրդական եւ եւրոպական դասական երաժշտութիւն։

Արուեստը եւ մշակոյթը չունին չափ եւ սահման, անոնք խտրականութիւն չեն դներ կրօնքի, ազգութեան եւ կամ գաղափարի միջեւ, անոնք անտեսանելի թեւերով՝ զօրութեամբ կը թափանցեն ամէն տեղ, մանաւանդ երաժշտութիւնը, որ բոլոր ժամանակներու համար ամենամատչելին է։ Միայն չարերը երգ չունին, - ըսած է, մեծանուն բանաստեղծ Շիլլէր։

Յայտագիրը արեւելեան ժողովրդականի եւ եւրոպական դասականի ընտրանի մըն էր, որոնց մէջ ասուպի նման կը փայլէր Կոմիտաս իր *Անձրեւն եկաւ*ով որ մեներգեց Սահար Նուհ եւ համարձակելով շնորհալի օրիորդին անուան հետ բառախաղ կատարել կ՚ըսենք, որ Օր. «Շաքար նուշ» իր շաքարային հայերէն հնչիւններով նուշի նման նայուածքներ եւ ժպիտներ, ինչպէս նաեւ ծափահարութիւններ քաղեց հայ հասարակութենէն։ Նպատակը կ՚արդարացնէ միջոցը, այո, այս ձեւով եւս կարելի է հայ մշակոյթը ծանօթացնել եւ տարածել։

Յայտագրի առաջին վայրկեաններէն զգալի դարձաւ խմբ. Հայկ Սարգիսեանի տաղանդին դրոշմը, որ իր ձգողական ուժով քարացած կը պահէր տարածուած երգչախումբը եւ ներկաները լսելով երկձայն եւ քառաձայն ազատ արձակուած հնչիւնները՝ Սայիտ Տարուիշի *Թէլէէթ եա մահլա նուրհա* եւ Կ. Ապտէլ Ռահիմի,

որ անձամբ ներկայ էր եւ ողջունեց հասարակութիւնը, *Ալ հէննա*, *Մարմար զամանի* եւ *Էլ ուատ տա մալու* եւ մանաւանդ Կամալ Սալամայի *Մոհամէտ Ռասուլ Ալլահ* երգերը, անշահախնդիր եւ անվարան տուին իրենց գնահատականը, իսկ ներկայ պատասխանատուները, անկասկած, լիուլի բաւարարուած, գոհ մնացին եւ շատ հաւանաբար մտածեցին աւելի յաջող կազմակերպել երգչախումբին եւ մանաւանդ խմբ. Հայկ Սարգիսեանի յաջորդ ելոյթները։

Յայտագրի երկրորդ մասին մէջ, ուր յաճախ հանդէս կու գային զուգերգներով, տեղ գտած էին Պիզէ, Մոցարթ, Րոսսինի, Օֆֆէնպախ։

Ինչպէս կ'ըսեն գեղեցիկը մէկի եւ ընդհանուրի միատեղ ամբողջացումն է ներդաշնակօրէն, այդ իմաստով խմբ. Հայկ Սարգիսեան ինքզինք գերազանցեց, իսկ մենակատարներ Օր. Նաշուա Իպրահիմ իր թրթռուն ձայնով եւ ելեւէջներով, ինչպէս նաեւ Պրն. Րէտա Էլ Ուաքիլ իր սքանչելի եւ թաւ պարիթոնով՝ գերազանցեցին իրենց դասընկերները՝ Օրիորդներ՝ Ճիհան Ալի եւ Իման Մուսթաֆա, թէեւ այս վերջինս օժտուած է օփերային հզօր ձայնով։

Համոզուած ըլլալով, որ տաղանդները կարելի չէ անթեղուած պահել, կրկին ու կրկին կը շնորհաւորենք բոլոր ներկաներուն անունով եւ նորանոր յաջողութիւններ կը մաղթենք երիտասարդ խմբավարին իր ասպարէզին մէջ, ցանկանալով որ տիրանայ փառապսակներու եւ անդադար հնչեցնէ, որպէս ղօղանջ, աշխարհի չորս ծագերուն, հայրենի երգն ու տաղը։

*Արեւ*, 3 Ապրիլ 1984, 68-րդ տարի, թիւ 19699, էջ 1

المجلس الأعلى للثقافة

أكاديمية الفنون

مجلس تنسيق الأنشطة الطلابية

# برنامج حفل

مجلس تنسيق الأنشطة الطلابية

يوم الجمعة ٨٤/٤/١٣

لصالح إتحاد طلاب الأكاديمية



## فرقه الباليه

١- أداجو من باليه كوبيليا

موسيقى ديليب - أداء- سونيا سركيس - هانى عزمى

٢- الطائر الأزرق

موسيقى تشايكوفسكى- أداء- احلام يونس - مجدى صابر

٣- الجيجا موسيقى منبكوس- أداء- المجموعة

٤- جلوك

موسيقى جلوك - أداء- منال زكريا - أحمد عزت

٥- ليسجينكا

موسيقى خاتشادوريان - أداء - سونيا سركيس - عماد السيد



## بانتوميم

أداء- هشام عبد الحميد



## كورال شباب الكونسير فتوار

١- بلادى بلادى لحن/ سيد درويش توزيع / يحيى الليثى

٢- اسلمى يامصر لحن/ صفر على

٤- طلعت يامحلى نورها - لحن/سيد درويش. توزيع يحيى الليثى

٥- مرمر زمانى صياغة جمال عبد الرحيم

٦- الواد داماله صياغة جمال عبد الرحيم

بمصاحبة ديفيد هيلز قيادة هايك سركيس

• استراحة •

## عمر دياب وفرقته الموسيقية

١- أغنية أمى الحبيبة كلمات. سمير الطائر لحن. هانى شنودة

٢- الشجرة كلمات. عبد الرحيم منصور لحن. محمد الشيخ

٣- نور يا ليل كلمات. عبد الرحيم منصور لحن. هانى شنودة

٤- يا حلوة الحلوين كلمات. هشام الدودى لحن ياسر عبد الرحيم

٥- يا طريق يا طريق كلمات عبد الرحيم منصور لحن هانى شنودة

---

## الفنانة منى عبد الغنى

١- أغنية بخاف من الحب كلمات. عصمت الحبروك
لحن حسن نشأت

٢- فات فات كلمات. عصمت الحبروك لحن مختار السيد

## الفنانة عفاف راضى

١- هوى ياهوى

كلمات محمد حمزة   لحن بليغ حمدى

٢- ردوا السلام

كلمات سيد مرسى لحن بليغ حمدى

٣- يا وابور الساعة ١٢

كلمات ولحن الأخوان رحبانى

٤- مصر هى أمى

كلمات عبد الوهاب محمد لحن كمال الطويل



قيادة الفرقة الموسيقية   عماد الشارونى

ديكور   عبد الرحمن الدسوقى

إخراج   عامر على عامر

Յայտագիրին հայերէն համառօտ թարգմանութիւնը.

**Կազմակերպութիւն**
Մշակոյթի Բարձրագոյն Խորհուրդ
Արուեստի Կաճառ
Ուսանողական Գործունէութիւնները Համակարգելու Խորհուրդ

**Կատարողներ**
Գահիրէի Երաժշտանոցի Երիտասարդական Երգչախումբ
Հայկ Սարգիսեան (խմբավար)
Տէյվիտ Հէյլս (դաշնակի նուագակցութիւն)

**Յայտագիր**
Սայէտ Տարուիշ, *Պիլատի պիլատի*, մշակում՝ Եահիա Ալ-Լիսի
Սաֆար Ալի, *Էսլամի եա Մասր*
Սայէտ Տարուիշ, *Թալաաթ եա մահլա նուրհա*, մշակում՝ Եահիա Ալ-Լիսի
Եգիպտական ժողովրդական, *Մարմար զամանի*, մշակում՝ Կամալ Ապտէլ Ռահիմ
Եգիպտական ժողովրդական, *Ալ-ուատ տա մալու*, մշակում՝ Կամալ Ապտէլ Ռահիմ

Նոյն ձեռնարկին մասնակցած է նաեւ եգիպտահայ պարուհի Սոնիա Սարգիս, պարելով *Քոփելիա* թատերապարէն Ատաճիօ, եւ *Գայեանէ*էն «Լեզգինկա»:

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՇԱԲԱԹ, 14 ԱՊՐԻԼ 1984

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

# Հ.Բ.Ը.Մ

ԳԱՀԻՐԷ

# Խմբերգային Երեկոյ

Շաբաթ, 14 Ապրիլ 1984,
Երեկոյեան ժամը 9 ին

« ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ » ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ
ՊԵՏԵՐՈՒՆ

ԵՂՈՅԹ Կ՚ՈՒՆԵՆԱՅ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

**ԿՌՈՒՆԿ**

ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

ԽՄԲԱՎԱՐ

## ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ

ԿԱՍԻԱ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

# ՅԱՅՏԱԳԻՐ

1.- Եգիպտական Քայլերգ

2 - Հ. Բ. Ը. Մ.ի Քայլերգ

3.- Ով Հայոց Աշխարհ — Մակար ԵԿՄԱԼԵԱՆ

4.- Պախրա — Գուսան ԱՇՈՏ

Մենակատար Քրիստին Զարնեան

5 - Ա. Արդէն Մութն Ընկել է — Գուսան ՇԵՐԱՄ

Մենակատարներ Սիլվա Մարգարեան - Ռաֆֆի Չէչնէնեան

Բ. Օլոր Մոլոր

6.- Ա. Սարի Սիրուն Եար — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ

Մենակատարներ Սիլվա Մարգարեան - Ռաֆֆի Չէչնէնեան

Աննա Գազանճեան, Լեւոն եւ Յակոբ Գարակէօզեան Եղբ.

Սրինգի նուագակցութիւն Անահիտ Ճէպէճեան - Սարգիսեան

Բ. - Թելլօ — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ

Մենակատար Ալիս Սիմոնեան

## Ը Ն Դ Մ Ի Ջ Ո Ւ Մ

1.- ՊԱԽ — Flûte Sonate No 5

Adagio

Allegro

Սրինգ Անահիտ Ճէպէճեան - Սարգիսեան

Դաշնամուրի ընկերակցութիւն Տէյվիտ Հէյլզ

2.- Տէլէ Եաման — Վանի Երգ

Մենակատար Քրիստին Զարնեան

3.- Ա. Խամբաճի — Թաթուլ ԱԼԹՈՒՆԵԱՆ

Մենակատարներ Լիւսի Տէր Ներսէսեան - Զարեհ Ծուծանեան

Բ. Սարի Սոլ

4 - Ա. Կարմիր Վարդ — Մարտին ՄԱԶՄԱՆԵԱՆ

Բ. Ջախջի Դունով

5.- Ա. Տէր Կեցո — Մակար ԵԿՄԱԼԵԱՆ

Բ. Հաւուն-Հաւուն — Գր. ՄԱԳԻՍՏՐՈՍ 11րդ դար

Մենակատար Անուշկա Զարնեան

6.- Ա. Քարպի Ծերին

Բ. Հայ Մերիկ

Գ. Արեւ Կպաւ Սանոյ Սարին

Դ. Փարոս Երեւան

ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

# ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԵՐԿՐՈՐԴ ԵԼՈՅԹԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Անցեալ Շաբաթ, 14 Ապրիլ 1984, երեկոյեան ժամը 9-ին, Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանի Պըլըքտանեան հանդիսասրահը ամբողջութեամբ լեցուած էր՝ ունկնդրելու համար Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբին երկրորդ ելոյթը, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի: Երեկոյթը կը վայելէր եգիպտահայ երեք քոյր յարանուանութեանց պետերուն հովանաւորութիւնը:

Եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներուն երգչախումբին կողմէ կատարումէն ետք, սկսաւ յայտագրին գործադրութիւնը: Այսպէս, յաջորդաբար երգչախումբը երգեց *Ով հայոց աշխարհ*՝ Մակար Եկմալեանի, *Պախրա*՝ Գուսան Աշոտի, մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, *Եար կը կոնտաս*, մենակատարութեամբ Անուշքա Չատրճեանի, Գուսան Շերամի *Արդէն մութն ընկել է* եւ *Օլոր մոլոր*, մենակատարութեամբ Սիլվա Մարգարեանի եւ Ռաֆֆի Չէչճէնեանի, Թաթուլ Ալթունեանի *Սարի սիրուն եար*, մենակատարութեամբ Սիլվա Մարգարեանի, Ռաֆֆի Չէչճէնեանի, Աննա Գազանճեանի, Լեւոն եւ Յակոբ Գարակէօզեաններու, եւ սրինգի նուագակցութեամբ Անահիտ Ճէպէճեան-Սարգիսեանի, եւ յայտագրին առաջին մասը աւարտեցաւ կրկին Թաթուլ Ալթունեանի *Թէլլոյ*ով, մենակատարութեամբ Ալիս Սիմոնեանի:

Դադարէ մը ետք, խօսք առաւ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ Պր. Վահան Չէչճէնեան, որ նախ ներկաները ողջունեց Ս. Զատկուան առթիւ, ապա յիշեց, թէ Ապրիլ ամսուան մէջ էր, որ հայ ժողովուրդը զոհ գնաց ցեղասպանութեան, եւ նոյն ամսուան մէջ էր, որ Գահիրէի մէջ ծնաւ Հ.Բ.Ը.Մ.ը: Եւ իր խօսքը աւարտեց երախտագիտութիւն յայտնելով մեր սիրելի նախագահին՝ Հոսնի Մուպարաքին:

Ապա, առաջին անգամն ըլլալով, խմբավարին կողակիցը՝ Անահիտ Ճէպէճեան-Սարգիսեան սրինգով նուագեց Պախի Սոնաթ թիւ 5-ը, դաշնակի ընկերակցութեամբ Տէյվիտ Հէյլզի: Իսկապէս որ շատ հաճելի էր երգչախումբին կողքին սրինգի նուագածութեան այս գեղեցիկ ելոյթը, որ արդարօրէն գնահատուեցաւ բոլորէն: Իսկ Տէյվիտ Հէյլզը, չենք գիտեր թէ իր շրջապատին մէջ ինչ համբաւ կը վայելէ, սակայն եգիպտահայ համայնքին մէջ ան արդէն իր ուրոյն տեղը գրաւած է:

Այնուհետեւ, երգչախումբը կատարեց Վանի համբաւաւոր *Դըլէ եամանը*, մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, Թաթուլ Ալթունեանի *Խամբաջի*ն եւ *Սարի սոլ* երգերը, մենակատարութեամբ Լիւսի Տէր Ներսէսեանի եւ Զարեհ Շուշանեանի, Մարտին Մազմանեանի *Կարմիր վարդ* եւ *Չախչի դռնով* երգերը, Մակար Եկմալեանի *Տէր կեցո* եւ *Հաւուն-հաւուն* երգերը, մենակատարութեամբ

Անուշքա Չատրճեանի, եւ վերջաւորութեան՝ *Քարպի ծերին*, *Հայ մերիկ*, *Արեւ կպաւ Սասնոյ սարին* եւ *Փարոս Երեւան* ազգագրական երգերը։

Երգչախումբին թիւը աւելցած էր եւ հասած 43-ի, հակառակ որ այս տարի պետական քննութիւններու պատճառաւ քանի մը հոգի ստիպուած քաշուած էր, 20 մանչ եւ 23 աղջիկ։

Նորութիւն մը, զոր խմբավար Հայկ Սարգիսեան բերած էր, զոյգ երգերու, կամ վերջին չորս երգերը, անոնցմէ տուներ առնելով, եթէ կարելի է ըսել, «մէկ» երգի վերածած էր։ Յայտագիրը գրեթէ ամբողջութեամբ նոր երգերէ բաղկացած էր։ Մանաւանդ ազգագրական երգերը, որոնք նորութիւն էին Եգիպտոսի մէջ, մեծ ժողովրդականութիւն գտան, այնքան որ խանդավառ էին, եւ արժանացաւ կրկնութեան։

Ուրախալի երեւոյթ է, որ խմբավար Հայկ Սարգիսեան երիտասարդներու մենակատարի բաժիններ վստահելով, անոնց մէջ ինքնավստահութիւն կ՛արթնցնէ։ Իսկ Անուշքա եւ Քրիստին քոյրերը, ինչպէս անցեալ անգամուն, նաեւ այս անգամ, եղան օրուան հերոսուհիները, իրենց ոչ միայն հմայիչ ձայնով, այլ մանաւանդ առինքնող մեկնաբանութեամբ։

Երգչախումբին բոլոր երգերուն դաշնակի ընկերակցութիւնը կը կատարէր Կասիա Տէօվլէթեանը՝ իր մասնակցութիւնը բերելով օրուան մեծ յաջողութեան։

Այստեղ յիշենք նաեւ, որ Քրիստին Չատրճեանի մէկ վերացական բայց խօսուն գունաւոր նկարով, եւ Պր. Պերճ Թէրզեանի գեղարուեստական տպագրութեամբ, յայտագիր մը պատրաստուած էր։

Մեծապէս երախտապարտ ենք Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Մասնաժողովին, խմբավար Հայկ Սարգիսեանին եւ ընդհանրապէս երգչախումբին, որ հայ երգարուեստի այսպիսի խանդավառիչ երեկոներ մեզի հրամցնելու աշխատանքին լծուած են։

*Արեւ*, 16 Ապրիլ 1984, 68-րդ տարի, թիւ 197010, էջ 1, 4

Երեվան, 22, XII, 1984

Սիրելի Հայկ

Շնորհավորում եմ նոր տարին, սրտանց ցանկանում եմ քեզի, Անահիտին եւ ձեր բոլոր հարազատներուն երկար կյանք, քաջառողջություն, ստեղծագործական հետագա հաջողություններ եւ անշուշտ, երջանկություն։

Հայկ ջան, ըստ Սագոյի[1] պատմածի, որ Եգիպտոսից որոշ եկողներից լսել էր, ոգեվորված աշխատում ես, գործերդ կոնսերվատորիայում շատ լավ են։ Շատ ուրախ եմ, հավատում եմ հաջողությանդ։ Այն պատրաստականությունը, որ ստացար մեզ մոտ եւ սիրածդ գործի նկատմամբ ունեցած սերն ու եռանդը քեզ անպայման կհասցնեն հաջողության։

Ձեր երկրորդ համերգի կասետը շատ մեծ հավանություն է գտնում լսողների մոտ՝ շատերը արտագրել են այն, որոնց թվում եւ Խոլոփյանը եւ արդեն շուրջ 5 կրկնօրինակ ուղարկվել է Ֆրանսիա։ Ի դեպ, Լոս-Անճելեսից մեզ մոտ կոնսերվատորիայում ստաժիրովկա է անցնում Լյուսինե Աղաբաբյանը՝ Անահիտի քրոջ ամուսնու՝ ճարտարապետ Հրանդ Աղաբաբյանի քույրը։ Քու մասին շատ լավ գիտե եւ միտք հայտնեց, որ Լոս-Անճելեսի հայկական գաղութը ցանկություն ունի քեզ հրավիրելու իրենց մոտ Կահիրեյի տիպի երգչախումբ կազմակերպելու եւ համերգ տալու համար. անշուշտ, եթե ժամանակդ ներե եւ հնարավորություն ունենաս։

Մեզ մոտ, տեղական մամուլում, քու մասին հոդվածները արդեն լույս են ընծայվել։ Ս/թ սեպտեմբերի 19-ի *Հայրենիքի ձայն*ի մեջ արդեն կարդացած կլինես։ Եղա ԱՕԿՍ-ում՝ *Հայաստանն այսօր* ժուռնալում նույնպես գեղեցիկ հոդված է տպված։ Հասցեղ տված եմ, քեզի պետք է 5 լեզվով՝ ուղարկէին, եթե չես ստացել, շուտով կստանաս։

Սիրալի համբույրներ բոլորիդ,
Բարի լուրերուդ սպասող՝
Ն. Մնկրյան

1. Սարգիս Սարգիսեան կը հանդիսանայ Հայկ Սարգիսեանի խորթ եղբայրը՝ որ բնակութիւն հաստատած է Երեւան (Հ.Ա.)։

Յայտագիրին հայերէն համառօտ թարգմանութիւնը.

**Կազմակերպիչ**
Արուեստի Կաճառ

**Կատարողներ**
Երաժշտանոցի Երիտասարդներու Երգչախումբ
Հայկ Սարգիսեան (խմբավար)

**Յայտագիր**
Քամալ Սալամա, *Մոհամմէտ Ռասուլ Ալլահ*
Քամալ Ապտէլ Ռահիմ, *Ալ-ուատ տա մալու*
Carl Orff, *Carmina burana*, “O Fortuna”

## ՍԵՊՏԵՄԲԵՐ 1985

Հայկ Սարգիսեան կը սկսի Գահիրէի Երաժշտանոցին մէջ դասաւանդել հարմոնի։

## ՄԱՅԷՏ ՏԱՐՈՒԻՇ ՄՐԱՀ, ԿԻՋԱ (ԳԱՀԻՐԷ)

## ԵՐԵՔՇԱԲԹԻ, 1 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1985

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐՈՒԱՆ

ACADEMY OF ARTS




THE CAIRO CONSERVATOIRE

presents

A CONCERT

Celebrating International Youth Year

8,30 p.m. Tuesday Ist October I985
at the Sayed DarWish Concert
Hall

° THE CAIRO CONSERVATOIRE YOUTH CHOIR

Trained & Conducted by : Haig Sarkissian
Piano Accompaniment : David Hales

- Islami Ya Misr by : Safar Aly

- Marmar Zamani by : Gamal Abdel-Rahim

- Excerpts from"Carmina Burana by : Carl Orff

° SOLO PERFORMING

- Manal Mohey El Din Harp

G.THOMAS Theme & Variations

- Ahmed Hamdi Violin
Manal Mohey El Din Harp
Duet

MASSENET Piece from opera "THAIS"
for Violin & Harp

- Ahmed Hamdi — Violin

BARTOK — Roumanian Dances

Piano accompaniment :

Magdalena Soltysynskaia

- Nader Gamal — Bassoon

G.PIERNE — Solo for Concert

Piano accompaniment :

Tatiana Franova

- Amal El Shahed — Piano

DEBUSSY — Reflets dans l'eau

G.ABDEL-RAHIM — Five Little Pieces

PROKOFIEV — Tentation

---

INTERVAL

---

° THE CAIRO CONSERVATOIRE ORCHESTRA

Conductors

Hassan Sharara

&

Moustafa Naggy

=========

- ROSSINI Overture to the "Barber of Seville"

- SHUBERT Eighth Symphony in B minor

( Unfinished )

- Allegro moderato
- Andante con moto

Leader : Mounir Nar El Din,

أكاديمية الفنون




الكونسرفتوار

يقدم

حفل موسيقى

احتفالا بعام الشباب العالمى

٨ر٣٠ مساء الثلاثاء أول أكتوبر ١٩٨٥

بقاعة سيد درويش بالهرم

* كـــــــورال شـــــباب الكونســـــرفتوار

تدريب وقيادة : هايج سركسيان

مصاحبة البيانو : دافيد هيلــز

- اســــــلمي يا مصــــر — تأليف : صفر علـــــى

- مــرمــر زمــــانى — تأليف : جمال عبد الرحيم

- مقتطفات من " كارمينا بورانا " — تأليف : كارل أورف

* فـــــقرة من العـــــــزف

- نـــــال محي الدين — هـــــارب

ج . تومــــــاس — لحن وتنويعــــــات

- أحمد حمــــــدى — فيوليـــــنه

ثنائى

نـــــال محي الدين — هـــــارب

ماسينيـــــــة — قطعة من أوبرا " تاييس " للفيولينه والهارب

| | |
|---|---|
| - **أحمد حمدي** | فيولينه |
| بارتوك | رقصات رومانية |
| | مصاحبة البيانو : ماجدا الينا سولتيسنسكايا |
| - **نادر جمال** | فاجوط |
| جبرييل بييرنيه | صولو للكونسير |
| | مصاحبة البيانو : تاتيانا فرانوفا |
| - **آمال الشاهد** | بيانو |
| - ديبوسي | انعكاسات الماء |
| - جمال عبد الرحيم | خمس قطع صغيرة |
| - بروكوفييف | اغواء |

---

استراحة

---

* أركـــــــــــــــــــترا الكونســــــــــــــــــرفتوار

قيـــــــــــادة

حـــــــسن شـــــــــــــــــــراة

و

مصطفــــــــــــى نـــــــــــــــــاجى

==================

- روسيـــــــنى            افتتاحية " حلاق أشبيليـــــــــه "

- شـــــــــوبرت            السيمفونية رقم ٨ فى مقام سى الصغيـــــر

( الناقـــــصة )

- سريع باعتدال

- بطــــــــــئ - معتدل

رائد الاركسترا : منير نصر الدين

MINISTRY OF CULTURE
THE ACADEMY OF ARTS

" THE UNITED NATIONS FOR A BETTER WORLD "

THE ACADEMY OF ARTS



Celebrating
The 40th Anniversary of the Foundation

of the
UNITED NATIONS
Presents
A C O N C E R T
by
THE HIGHER INSTITUTE OF BALLET
&

THE CAIRO CONSERVATOIRE

8 p.m. Wednesday 30th October 1985
at the Sayed Darwish Concert Hall

PROGRAMME

- THE CAIRO BALLET COMPANY

one Act from " CAPPELIA "

Choreography : Martinez / A.Kamel

Music : Delibes

Main Characters: Erminia Kamel(Swanilda)
Hani Azmi (Franz )

Soloists

Manal Zakaria : Magdi Saber
Wafaa Ali : Hisham Fahim
Azza Sami : Tarek Riad
Fayrouz Hafez : Abdel-Rahman Ahmed

In collaboration with the Ensemble

====================

- THE CAIRO CONSERVATOIRE YOUTH CHOIR

Trained and Conducted by : Haig Sarkissian
Piano Accompaniment : David Hales

- Mohamed Rasoul Allah : Gamal Abdel-Rahim
- Marmar Zamani : Gamal Abdel-Rahim
- Islami Ya Misr : Safar Aly
- Excerpts from "Carmina Burrana" Karl Orff

=====================

INTERVAL

=========

- Solo performing & Singing

° Taheyya Shams El Din . Soprano

F.Cilea Vocalise

F.Lehar From the "Merry Widow" Vilia

Waltz

° Amal El Shahed Piano

DEBUSSY Reflets dans l'eau

° Nashwa Ibrahim Soprano

BAHIGA SEDKI Serénad

STRAUSS Mein Herr Marquis

Czardas "From Fleder Maus"

° Khaled El Shoueikh Violin

Manal Mohey El Din Harp

MASSENET Duetto from Opera "Thais"

for Violin & Harp

° Iman Moustafa Soprano

PUCCINI "Un Bel di Vedremo"

from Opera "Madama Butterfly"

RACHMANINOV Vocalise

NADER ABBAS "The Canary"

At the Piano : Tatiana Franova & David Hales

- THE CAIRO CONSERVATOIRE ORCHESTRA

Conductor : Moustafa Nagy

- SCHUBERT Symfonia in hminor (Unfinished)
- BRAHMS Hungarian Dance No 1
- BEETHOVEN "Egmont" Overture

Leader : Mounir Nasr El Din

وزارة الثقافة

# أكاديمية الفنون

## "الأمم المتحدة من أجل عالم أفضل"

احتفالا

بمرور أربعين عاماً على إنشاء

الأمم المتحدة

## تقدم

# أكاديمية الفنون



حفلا يشترك فيه معهدا

الباليه والكونسرفاتوار

الأربعاء ١٩٨٥/١٠/٣٠ بقاعة سيد درويش

بالهرم

ԷՈՒԸՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 10 ՆՈՅԵՄԲԵՐ 1985

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Խմբերգային Երեկոյ

Կիրակի, 10 Նոյեմբեր 1985,
երեկոյեան ժամը 8.00 ին

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ
ՊԵՏԵՐՈՒՆ

ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ
ԷՈՒԸՐԹ ՄԷՄՈՐԻԸԼ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

**Կ Ռ Ո Ւ Ն Կ**

ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

ԽՄԲԱՎԱՐ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ

ԿԱՍԻԱ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

*Programme*

Եգիպտական Քայլերգ

| | |
|---|---|
| Երիտասարդական Քայլերգ | Խօսք Վ. ԴԱԻԹԵԱՆ |
| « Քո Զաւակներն Ենք » ※ | Երաժշտ. Է. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ |
| Սիւնեաց Սարեր ※ | Գուսան ԱՇՈՏ |

Մենակատար Հարի Զէյնէնեան

| | |
|---|---|
| Թող Պլպուլ Չերգէ | ԿՈՄԻՏԱՍ |
| Օնախում ※ | Գուսան ԱՇՈՏ |

Մենակատար Քրիստին Զատրնեան

| | |
|---|---|
| Կողքա Ելան Սելերը | ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳ |
| | Մշկմ Ա. Տէր Ղեւոնդեան |
| Երկինքն Ամպ Է Հովն Անուշ | ԱԶԳԱԳՐԱԿԱՆ |
| Լէն Թուփ Ու Կանաչ Տերեւիկ | Մշկմ Է. Յովհաննէսեան |

Մենակատար Զաւէն Ծիզմէնեան

| | |
|---|---|
| Ազգ Փառապանծ | Խօսք Ա. ԳՐԱՇԻ |
| | Երաժշտ. Ա. ՊԱՊԱՋԱՆԵԱՆ |

※ Դաշնամուրի Նուագակցութեամբ

## ԸՆԴՄԻՋՈՒՄ

Զէյթունցիների Քայլերգ
Երժշտ. Տ. Չուխաճեան
Խօսք Հ. Չաքրեան
Մշկմ Ս. Պատմագրեան

Բամ, Փորոտան
Խօսք Հայր Ղ. ԱԼԻՇԱՆ
Մշկմ Բ. ԿԱՆԱՉԵԱՆ

Նանարի Նա
ԱԶԳԱԳՐԱԿԱՆ
Մշկմ Է. Յովհաննէսեան

Մենակատար Սիլվա Մարգարեան

Սարերի Հովին Մեռնիմ
ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
Մշկմ Գ. Սինի

Հովուի Երգ *
Խօսք Լ. ԴՈՒՐԵԱՆ
Երժշտ. Խ. ԱՒԵՏԻՍԵԱՆ

Մենակատար Ռաֆֆի Զէչնէնեան

Բէլէ Լաօ
ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

Մենակատար Սիլվա Մարգարեան

Ծաղկած Պալենի *
Երժշտ. Խ. Աւետիսեան
Խօսք Լ. ԴՈՒՐԵԱՆ
Մշկմ Հ. Սարգիսեան

Մենակատար Անուշա Զատրնեան

Սամավար - Հայ Լոթթի *
ԱԶԳԱԳՐԱԿԱՆ
Մշկմ Հ. Սարգիսեան

Մենակատարներ Ալիս Սիմոնեան, Անուշա Զատրնեան, Ռաֆֆի Զէչնէնեան

Երեւան - Էրեբունի *
Խօսք Պ. ՍԵՒԱԿ
Երժշտ. Է. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

* Դաշնամուրի Նուագակցութեամբ

*Egyptian National Anthem*

*Youth Anthem*

*A song about Sunyatz Mountains*

*Solo H. Tchetchenian*

*Togh Blboul Tchérké ( Nostalgia )*

*Odjakhoum ( Lyric song )*

*Solo Ch. Tchaderdjian*

*Goghpa Yelan Sélére ( Popular song )*

*Folkloric songs*

*Solo Z. Djizmedjian*

*Azk Parabantz ( Patriotic song )*

INTERVAL

*Zeytoun's Anthem*

*Pam, Porodan ( Battle song )*

*Nanari Na ( Folkloric song )*

*Solo S. Markarian*

*Sareri Hovin Mernim ( Popular song )*

*Song of Shepherd*

*Solo R. Tchetchenian*

*Let's return to our Homeland*

*Solo S. Markarian*

*Dzaghgadz Baleny ( Lyric song )*

*Solo A. Tchaderdjian*

*Samavar - Hay Lotty ( Folkloric song )*

*Solo A. Simonian - A. Tchaderdjian - R. Tchetchenian*

*Yerevan - Erepouni ( Patriotic song )*

# ԿՌՈՒՆԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ՝ ԵՐԱԺՇՏԱԿԱՆՈՒԹԻՒՆ, ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹԻՒՆ, ՀԱՅՐԵՆԱԲԱՂՁՈՒԹԻՒՆ

ԱՄԱԼ ՇՈՒՔՐԻ ՔԱԹԹԱ
Թարգմանութիւն՝ ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Կիրակի, 10 Նոյեմբերին, Էուարթ Մեմորիըլ ամբողջութեամբ լեցուն հանդիսասրահին մէջ, եգիպտահայ, աւելի ճիշտ՝ Գահիրէի հայ համայնքին երիտասարդ անդամներէն կազմուած Կռունկ երգչախումբը կու տար իր համերգներէն մին՝ միշտ գեղեցիկ, խորապէս յագեցած երաժշտականութեամբ, անկեղծութեամբ եւ հայրենաբաղձութեամբ: Իր գիտակ եւ զգայուն խմբավարին՝ Հայկ Սարգիսեանի ղեկավարութեան տակ, երիտասարդ երգիչները կը հնչեցնէին եգիպտական հիմնը, որուն կը յաջորդէր երիտասարդական հայկական քայլերգը, անցնելու համար շատ մեղեդիաւոր, յաճախ քնարական, երբեմն ժողովրդական, ֆոլքլորիք կամ հայրենասիրական զանազան երգերու, որոնք այնքան կ՚երգուին, այնքան սիրուած, այնքան երազային, սա երկրին մէջ, որ Հայաստանն է, Կողքիսի, Ճասոնի, Արկոնոթներու եւ Ոսկեգեզմի հազարամեակներու այդ հողը՝ ցանցուած փառաւոր անցեալի մը բեկորներով, ծանր պատմութեամբ եւ անսովոր իրադարձութիւններով:

Նաեւ, այս երիտասարդ երգիչները անոնցմով տոգորուած: Ասիկա կը ցոլանայ կատարողականութեան մէջ, կարգապահութեան մէջ, որուն անոնք կ՚ենթարկուին կամաւորապէս, սիրով եւ զգայնութեամբ, որոնք կը յայտնուին իրենց ընթացքին եւ իրենց ձայնին մէջ:

Պէտք է յիշել մենակատարներ Հ. Չէչճէնեանը, Ք. Չատըրճեանը, Զ. Ճիզմէճեանը, Ս. Մարգարեանը, Ռ. Չէչճէնեանը եւ Ա. Սիմոնեանը՝ ձայնային գեղեցիկ կատարողականութեամբ, ինչպէս նաեւ դաշնակահարուհին, որ ցոյց տուաւ մեծ զգայնութիւն:

Պէտք է յիշել նաեւ *Շամս էլ շամմուսի* արաբական երգը եւ Պախ-Կունոյի *Աւէ Մարիա*ն, զորս երգչախումբը երգեց առ ի գնահատանք բազմաթիւ ոչ հայ ունկնդիրներուն, որոնք այդ երեկոյ սրահին մէջ կը գտնուէին: Այս գեղեցիկ ժեստը, ինչպէս նաեւ երկու երգերը երկարօրէն ծափահարուեցան յուզուած եւ երախտագէտ հասարակութեան կողմէ:

*Աւէ Մարիա*ն, ուր հոյակապ սոփրանօ Ա. Չատըրճեանը մանաւանդ գնահատուեցաւ, մասնաւորապէս ընտիրօրէն ջինջ նոթերուն մէջ, որ կը պահանջէր մասնաւորապէս անդորր եւ ուշադիր սրահ մը:

Դժբախտաբար, եթէ ուշադրութիւնն ու հիացումը կը տիրապետէին, անդորրութիւնը բնաւ չէր տիրապետեր, որովհետեւ, մեծ թիւով մարդիկ ազատ ընթացք տուած էին իրենց խանդավառութեան, եւ անպատեհ չէին նկատեր զայն

բարձրաձայն հաղորդելու իրենց հարեւաններուն, մինչ ուրիշներ՝ անյագ՝ վայելելու կատարողութեան գեղեցկութիւնը մինչեւ վերջ, կը ստիպուէին միւսները լռութեան հրաւիրելու:

Այս անդորրութիւնը, ի դէպ, բաղձալի կը մնար այս գեղեցիկ համերգին ամբողջ տեւողութեան, ոմանք, մղուած կարգ մը խանդավառ կշռոյթներէ, զանոնք կը մրմնջէին կամ չափով կը ծափէին մինչ շաքարներու թուղթերուն ձայնը նեղացուցիչ աղմուկ մը կը հանէր, երբ երգչախումբը կը գտնուէր մեղմ նոթերուն ամենամեղմ մասերուն. բարձրաձայն բացագանչութիւնները, երկսեռ ուսանողներու շատախօսութիւնները, այս բոլորը կը խանգարէին ուշադիր մթնոլորտը եւ կը ցուցաբերէին յարգանքի որոշ պակաս մը կատարողներուն հանդէպ:

Այս չէր, որ գնահատանքն ու հիացումը կը պակսէր, բայց կարելի էր խանդավառութիւնը, շատախօսութիւնը կամ շաքար ուտելու մարմաջը զսպել մինչեւ ընդմիջում կամ համերգին վերջաւորութիւնը, թոյլ տալու համար, որ ամբողջ հասարակութիւնը վայելէր այս համերգը, որ եղաւ ամենագեղեցիկներէն մէկը:
(*Լը Փրոկրէ Էժիփսիէն*, 15 Նոյեմբեր 1985)

*Արեւ*, 18 Նոյեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20170, էջ 1

## ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈ՞Յ ԹԷ ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ՓԱՌԱՏՕՆ

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի ասկէ երեք տարիներ առաջ նորահաս, այժմ երիտասարդ ու առոյգ Կռունկ երգչախումբի յայտարարութիւնները, որ լոյս կը տեսնեն մեր մամուլի էջերէն, արդէն իսկ մեծ խանդավառութիւն կը ստեղծեն մշակութասէր հասարակութեան մօտ, ու բոլորս անհամբեր կը սպասենք այդ օրուան, ներկայ ըլլալու համերգին, ըմբոշխնելու եւ միանգամայն ծանօթանալու մեր հարուստ երգարուեստին:

Կ՚ըսենք ծանօթանալու, որովհետեւ մեր երիտասարդ ու հմուտ խմբավար Հայկ Սարգիսեան իւրաքանչիւր ելոյթի, անպայման գրեթէ նոր երգացանկով մը ներկայացած է հանդիսատեսին, ծանօթացնելով անոր այն երգերը, որոնք կ՚երգըւին հայրենիքի մէջ, բայց դժբախտաբար շատ քիչ անգամներ սփիւռքի մէջ...:

Կռունկ երգչախումբի շնորհիւ, մեր նոր սերունդը ձեւով մը կը վերադառնայ իր արմատներուն, զուտ հայկական երաժշտութեան ու երգին, առանց էպրատայինի մակդիրին տակ պահուած օտարախրումին:

Հետեւաբար, մենք Կիրակի 10 Նոյեմբերի երեկոյեան ժամը 8-ին, ժամադրուած էինք Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մէմորիըլ հանդիսա-

սրահը, ունկնդրելու Կռունկ երգչախումբը, որ իր նոր երգացանկովը հրահրեց մեր հայու սրտերը, յագեցուց երգարուեստի մեր պապակը։

Հանդիսասրահը, բերնէ բերան լեցուած էր, մօտ ութ հարիւր ունկնդիրներու յոգնախուռն բազմութեամբ մը, որոնք, կազմակերպիչ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան պատասխանատուներու օրինակելի եւ շնորհաւորելի կարգապահութեանը շնորհիւ, բոլորն ալ գրաւեցին իրենց յատկացուած թիկնաթոռները։

Աննախընթաց էր երեւոյթը, երբ հանդիսատեսներու շարքին կը տեսնէինք եգիպտացի թէ օտար բազմաթիւ դէմքեր։ Թեմիս Բարեխնման Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Ս. Չինչինեանի կողքին տեղ գրաւած էին Ս. Միութեան դեսպան Տէր եւ Տիկին Ալեքսանդր Միխայլովիչ Պելոնոկովը, դեսպանատան Ա. Խորհրդական Նորիկ Ստեփանեանը, Խորհրդականներ Իկոր Տանիլովն ու Նիքոլայ Քարթուզովը, Թրուտ թերթի թղթակից Տէր եւ Տիկին Զօհրապ Նալբանտեանը, Պուլկարիոյ Դեսպանորդը, եգիպտահայ երեք յարանուանութեանց պատասխանատու եւ ներկայացուցչական բոլոր դէմքերը, եգիպտահայ թէ օտար մշակութային կազմակերպութեանց ներկայացուցիչներ, ինչպէս նաեւ բարեսիրական թէ մարզական հաստատութեանց ու ակումբներու վարչական ներկայացուցիչներ, Ազգային վարժարաններու Տնօրէնը, Ծնողաց Խորհուրդներու եւ Տիկնանց Խնամակալութիւններու անդամները, օտար թէ հայ մամուլի ներկայացուցիչները, եւ եգիպտական հեռուստացոյցի կազմը, որ նկարահանեց համերգը, եւ զայն պատկերասփռեց Շաբաթ 16 Նոյեմբերի երեկոյեան ժամը 8-ին, երկրորդ կայանի յայտագրէն։

Ճիշտ ժամը 8-ին, երգչախումբի անդամ-անդամուհիները բեմ բարձրացան ու գրաւեցին իրենց տեղերը, նոյնպէս խումբի ընկերակցող դաշնակահարուհին՝ Ընկերուհի Կասիա Տէօվլէթեանը, եւ ջերմ ծափողջոյններու ընդմէջէն մուտք գործեց մեր սիրելի խմբավար Հայկ Սարգիսեանը, եւ ձեռքի առաջին շարժումով սկսաւ խումբը իր երեկոն՝ Եգիպտական Հիմնով, որ յոտնկայս ունկնդրուեցաւ։

Երգահանդէսը բաժնուած էր երկու մասերու։ Հիմնի ունկնդրութենէն ետք, խումբը երգեց երիտասարդական քայլերգ *Քո զաւակներն ենք*ը՝ խօսք Վ. Դաւթեանի, երժշտ. Է. Յովհաննիսեանի։

Որքան հաճելի էր վերանալ պահ մը ու բարձրանալ մեր հայրենի զով ու ջինջ սարերը, երբ Գուսան Աշոտի *Միւնեաց սարեր*ը մենակատարեց Հարի Մ. Չէչճէնեանը, այնքան վճիտ ձայնով մը, որ դժուար թէ իջնէինք այդ բարձունքներէն, եթէ մեզ կանչողը չըլլար Կոմիտասը, որուն անմահ յօրինումներէն մենք ունկնդրեցինք *Թող պլպուլ չերգէ*ն, զոր կատարեց խումբը, եւ որուն յաջորդեց Գուսան Աշոտի *Օճախում*ը, մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, որ խլեց ունկնդիրներուն երկարաձիգ ծափերը։

Մեր ժողովրդական եւ ազգագրական հարիւրաւոր երգերէն են *Կողբա ելան սելերը*, մշկմ. Ա. Տէր Ղեւոնդեանի, *Երկինքն ամպ է հովն անուշ*, եւ *Լէն թուփ ու կանաչ տերեւիկ* մշկմ. Է. Յովհաննիսեանի, զորս կատարեց երգչախումբը, իսկ

մեներգի բաժինը այս անգամ վստահուած էր արական նոր ձայնի մը, յայտնութիւն մը բոլորին՝ Ջաւէն Ճիզմէճեանի, որ լաւագոյնս կատարեց, արժանանալով բոլորին գնահատանքին:

Նոր տաղանդներու հրապարակ բերումը, անշուշտ կը պարտինք իր արուեստին հմուտ խմբավար Հայկ Սարգիսեանին:

Համերգի առաջին մասը պէտք էր վերջ գտնէր, խօսք Ա. Գրաշիի, երժշտ. Ա. Պապաջանեանի հայրենական *Ազգ փառապանծ* երգով, զոր ունկնդիրներու որոտընդոստ ծափերուն ընդառաջելով երգչախումբը կրկնեց, եւ ապա Ընկերուհի Կասիա Տէօվլէթեան, արաբերէն եւ անգլերէն շատ սահուն առոգանութեամբ մը, նախ բարի գալուստ մաղթեց եգիպտացի թէ օտար հիւրերուն, ու ապա յայտարարեց, թէ ի պատիւ իրենց, խումբը պիտի երգէ երկու երգ, առաջինը եգիպտական երգարուեստի հիմնադիրներէն Սէյիտ Տարուիշի յօրինումով *Թէլաաթ եա մահլա նուրիէ* եւ արեւմտեան դասական երաժշտութեան հռչակներէն, Պախ-Կունոյի *Աւէ Մարիա*ն, որուն մենակատարները՝ Օրք. Անուշքա Չատըրճեան եւ Սիլվա Մարգարեան, ՊՊ. Ռաֆֆի Չէչճէնեան եւ Վիգէն Ճիզմէճեան հոյակապ կատարումով մը հանդէս եկան, արժանանալով բոլորին անվերապահ գնահատանքին:

Կարճ դադարէ մը ետք, սկսելով յայտագրի երկրորդ բաժնի գործադրութեան, երգչախումբը կրկին հնչեցուց իր ջերմ ու մերթ հանդարտ եւ մերթ ալ զօրեղ ձայնը, հրամցնելով *Զէյթունցիների քայլերգ*ը, խօսք Հ. Չաքրեանի, երժշտ. Տ. Չուխաճեանի, եւ զոր մշակած է Ա. Պատմագրեանը, ապա *Բամ փորոտան*ը խօսք Հայր Ղ. Ալիշանի եւ մշկմ. Բ. Կանաչեանի: Այս զոյգ երգերը ամէն հայու սրտին կը խօսին անտարակոյս, առաւել եւս երբ երգչախումբը հարազատօրէն հրամցուց զանոնք: *Բամ փորոտան*ի վերջին հնչիւնները հազիւ մարած, որոտալի ծափերը թնդացուցին սրահը՝ ստիպելով երգչախումբին, որ կրկնէ զայն:

Ազգագրական երգերու պահաջուած մեկնաբանութեամբ, իր թաւշային ձայնով, Սիլվա Մարգարեանը, այս անգամ Է. Յովհաննիսեանի մշակումներէն մեներգեց *Նանարի նան*:

Կրկին մեր հայրենի սարերն ի վեր կը բարձրանանք, երբ այս անգամ կ՚ունկնդրենք երգչախումբին հրամցուցած *Սարերի հովին մեռնեմ* ժողովրդական երգը, որ մշակումն է Գ. Սիւնիի:

Տարօրինակ սակայն, ինչո՞ւ «մեռնել» բառը ինձ կը յիշեցնէ Պետրոս Դուրեանի հետեւեալ տողերը.

«Եթէ մարդիկ այն մահերգակ<br>
Որք սեւ ունին ու խոժոռ դէմ՝<br>
Համասփռեն խունկ ու աղօթք<br>
Գիտցէք որ դեռ կենդանի եմ»:

Այս մտածումներուս մէջ խորասուզուած, յանկարծ ինձ կը սթափեցնէ

խումբին սիրուած մենակատարներէն Ռաֆֆի Չէչճէնեանի ձայնը, որ յուզուած կը յայտարարէ, թէ *Հովուի երգը*, խօսք Լ. Դուրեանի եւ երժշտ. Խ. Աւետիսեանի, պիտի երգէ իր հօրը յիշատակին, խորապէս յուզելով բոլոր ունկնդիրները։

Յուզման այս պահը կը սկսի հետզհետէ մեղմանալ, երբ դարձեալ ազգագրական *Քէլէ լաօ* երգով ելոյթ կ'ունենայ Սիլվա Մարգարեանը, որուն անունը այլեւս կապուեցաւ այս երգին հմայիչ մեկնաբանութեան հետ։

Ընկերուհի Կասիա Տէօվլէթեան, դարձեալ արաբերէն, անգլերէն եւ հայերէն լեզուներով կը յիշատակէ, երգչախումբի սիրուած մեներգչուհի Օր. Անուշքա Չատըրճեանի պատուաբեր յաջողութիւնը երգարուեստի միջազգային ծիրէն ներս, որուն ատենին անդրադարձած ենք *Արեւ*ին մէջ։ Եւ ահա բոլորին ջերմ ծափերուն ողջոյնով Անուշքան կ'առինքնէ ներկաները իր դիւթիչ ձայնով, մեներգելով *Ծաղկած բալենի* խօսք Լ. Դուրեանի, երժշտ. Խ. Աւետիսեանի եւ մշկմ. խմբավար Հայկ Սարգիսեանի, երգով, որ ելեքտրականացնելով մթնոլորտը եւ ընդառաջելով բոլորին փափաքին, կրկնուեցաւ։

*Սամավար-հայ լոթթի* ազգագրական երգը, որ մշակումն է դարձեալ խմբավար Հ. Սարգիսեանի, ունկնդրուեցաւ խանդավառ մթնոլորտի մը մէջ, զոր ստեղծեցին մեր սիրելի խմբավարն ու մենակատարները՝ Օրք. Ալիս Սիմոնեանը, Անուշքա Չատըրճեանը եւ Պր. Ռաֆֆի Չէչճէնեանը, եւ որ կրկնուեցաւ, ունկնդիրներու խնդրանքին ընդառաջելով։

Աւա՜ղ, արդէն հասած ենք համերգին վերջաւորութեան, եւ երկիւղածութեամբ ու հպարտութեամբ կ'ունկնդրենք *Երեւան-Էրեբունի*ն, որպէս վերջաբանը այդ անմոռանալի երեկոյթին։ Սակայն ծափերու անընդհատ որոտը կը ստիպէ, որ երգչախումբը կրկնէ զայն։

Եթէ վերջին խօսք մը կայ ըսելու, միայն շնորհակալ ըլլալն է, Հ.Բ.Ը.Միութեան վարչութեան, շնորհակալ ըլլալն է նման տաղանդաւոր խմբավարի մը, որ նոր սերունդին մէջ արթնցուց իր պատկանելիութեան գիտակցութիւնը, եւ ի վերջոյ շնորհակալ ըլլալն է հայրենիքին, որ լաւագոյնս թրծած է մեր սիրելի երիտասարդ ու տաղանդաւոր խմբավար Հայկ Սարգիսեանը, որուն ի բոլոր սրտէ կը մաղթենք նորանոր յաջողութիւններ. նաեւ երգչախումբի դաշնակահարուհի Կասիա Տէօվլէթեանի, որ շատ յաջող կերպով ընկերացաւ դաշնամուրով։

Վարձքը կատար բոլորին անխտիր։

Եւ ի վերջոյ, սիրելի ունկնդիրներ, մանաւանդ սիրելի երիտասարդ ունկնդիրներ, ձեր ալ վարձքը կատար, որ այնքան հոծ թիւով ներկայ եղաք նման երաժշտական բարձրարուեստ երեկոյթի մը, զոր գնահատեցիք ձեր ծափերովը... Ա՜խ որքան լաւ պիտի ըլլար եթէ միայն ծափահարութիւն ըլլար, առանց սուլոցներու, որ ընդհակառակը, ժխտական իմաստ ունի։ Այս վերջին տողերը թող ըլլան խնդրանք մը մեր կողմէն՝ մեր սիրելի երիտասարդներուն ուղղուած։

*Արեւ*, 18 Նոյեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20170, էջ 2-3

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՈՒՐԲԱԹ, 29 ՆՈՅԵՄԲԵՐ 1985

ՃԱՇԿԵՐՈՅԹ-ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 65-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

ՃԱՇԿԵՐՈՅԹ-ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

# Ս. ՀԱՅԱՍՏԱՆԻ

# 65-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

# ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ Հ·Ա Հ· ԼՈՒՍԱՆԵԱՆ ՄԱՍ
ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ

Ուրբաթ, 29 Նոյեմբեր 1985, երեկոյեան ժամը 9ին

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ

*Հայ հասարակութիւնը սիրով հրաւիրուած է այն տօնակատարութեան*

Յայտարարութիւն
*Զարթօնք*, 28 Նոյեմբեր 1985, նոր շրջան, թիւ 1033, էջ 5

# ՆՈՅԵՄԲԵՐ 29-Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Մեր մայր հայրենիքին՝ Սովետական Հայաստանի 65-րդ տարեդարձը Գահիրէի մէջ նշուեցաւ փառաշուք կերպով: Այսպէս, Ուրբաթ, 29 Նոյեմբեր 1985, երեկոյեան ժամը 9.30-ին, Հայկական Ընթերցասրահի մէջ, կազմակերպութեամբ երեք քոյր Միութիւններուն՝ Հայկական Ընթերցասրահի, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան եւ Կոկանեան Սրահի, տեղի ունեցաւ հանդիսութիւն-ճաշկերոյթ մը:

Հոծ բազմութեան մը ներկայութեան, մասնաւորապէս մեծ էր թիւը ներկայացուցչական դէմքերու, որոնց շարքին՝ թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, Արժ. Տ. Նարեկ Քհնյ. Ֆրընճեան եւ երէցտիկինը, Թեմական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Բօլ Քիլիտճեան, Քաղաքական Ժողովի Ատենապետ Պր. Անդրանիկ Մեսրոպեան, Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Յանձնաժողովի փոխ Ատենապետ Պր. Պերճ Թէրզեան, Հայկական Ընթերցասրահի ցկեանս նախագահ Տէր եւ Տիկ. Զաւէն Պալաեան, Ատենապետ Տէր եւ Տիկին Եդուարդ Աւագեան, Հայ Գեղ. Միութեան ցկեանս նախագահ ընկեր եւ ընկերուհի Վահագն Տէփոյեան, Ատենապետ ընկեր Եդուարդ Զարդարեան, Կոկանեան Սրահի Ատենապետ ընկեր Կարպիս Եազըճեան, փոխ Ատենապետ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան, Գալուստեան եւ Նուպարեան Ազգային Վարժարաններու Տնօրէն Պր. Նշան Վարդեան, փոխ Տնօրէն Պր. Յակոբ Համբիկեան, եգիպտահայ կաթողիկէ քոյր համայնքի Ատենապետ Պր. Ժորժ Միքայէլեան, սովետական դեսպանատան առաջին խորհրդական Նորիկ Ստեփանեան, Տիկին Անահիտ Նալբանդեան, սովետական Նովոսթի լրատու գործակալութեան աշխատակից Կարէն Սումբատեան, Եգիպտոսի մէջ աշխատող ինժիներներ Տէր եւ Տիկ. Եւրի Ալահվերդեան եւ Տէր եւ Տիկին Գրիգոր Կոջոյեան:

Սրահը զարդարուած էր եգիպտական եւ հայկական մեծադիր դրօշներով, հայրենական լուսանկարներով, որոնց մէջ բազմաթիւ էին տեսարաններ անցեալ Հոկտեմբերին Երեւանի մէջ կայացած սփիւռքահայ հայրենասիրական մամուլի եւ ռատիօհեռուստատեսային ժամերի ներկայացուցիչների հաւաքէն:

Եգիպտական եւ հայկական պետական քայլերգներուն յոտնկայս ունկնդրութենէն ետք, Պր. Ե. Աւագեան բացման գեղեցիկ խօսքով մը ելոյթ ունեցաւ, որմէ ետք, օրուան թամատա Մօ. Եդուարդ Յակոբեան հրաւիրեց Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կոունկ երգչախումբէն խումբ մը, որ իր երգացանկէն երեք խմբերգներով մասնակցեցաւ հայ ժողովուրդին ազգային տօնին, ինչպէս նշեց խմբավար Հայկ

Սարգիսեանը, դաշնակի ընկերակցութեամբ ընկերուհի Կասիա Տէօվլէթեանի։

*Արեւ*, 2 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20181, էջ 1

## Ս. ՀԱՅԱՍՏԱՆԻ 65-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹԵԱՄԲ ՆՇՈՒԵՑԱՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

(հատուած)

Ապա, օրուան հանդիսավարը [Եդուարդ Յակոբեան] հրաւիրեց Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը ունենալու իր ելոյթը։ Խմբավար Հայկ Սարգիսեան խօսք առնելով իր ուրախութիւնը յայտնեց որ երգչախումբն ալ իր մասնակցութիւնը կը բերէ հայ ժողովուրդին ազգային մեծ տօնին։ Ապա, երգչախումբը իր երգացանկէն երեք խմբերգներ կատարեց, դաշնակի ընկերակցութեամբ Օր. Կասիա Տէօվլէթեանի, խլելով երկարատեւ ծափողջոյններ։

*Ջահակիր*, 5 Դեկտեմբեր 1985, նոր շրջան, թիւ 1034, էջ 1-2

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՇԱԲԱԹ, 7 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1985**

**ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԵԼՔՈՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻՆ ԵՒ ՍՐԱՀԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԲԱՐԵԶԱՐԴՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ**

*ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ*

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՄԵԼՔՈՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ
ԵՒ ՍՐԱՀԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆՑ
ԵՒ ԲԱՐԵԶԱՐԴՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

# ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

*Հովանաւորութեամբ*
*Եգիպտահայոց Բարեխնամ Առաջնորդ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Պատուոյ Հիւր Ս. Էջմիածնէն հրաւիրուած*

**ԳԵՐՇ. Տ. ՆԱՐԵԿ ԵՊԻՍԿ. ՇԱՔԱՐԵԱՆ**

*Առաջնորդ Շիրակի Թեմին*

*Նախագահութեամբ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ԼԵՒՈՆ ՔԱՂԹԱՅԵԱՆԻ**

*Շաբաթ, 7 Դեկտեմբեր 1958, երեկոյեան ժամը 9ին*
*Վարժարանի սրահին մէջ*

*ՅԱՅՏԱԳԻՐ*

*Ա. ՄԱՍ*

| | |
|---|---|
| *Բացման խօսք* | *Հոգաբարձութիւն* |
| *Ընթերցում Սրբատառ Կանդակի Աղեքս. Պատ.* | |
| *Թեմական Ժողովի Ատենապետ Պր. Մարտիկ* | |
| *Զարպհանէլեանի Ս. Ներսէս Շնորհալի չքանչանին* | |
| | *տրացման առթիւ* |
| *Խօսք* | *Տօքէն* |
| *Խմբապար* | *Արմէնեան պարախումբ* |
| *Մեներգ* | *Օր. Ցամիկ Տիչչէքէնեան* |
| *Խմբապար* | *Արմէնեան պարախումբ* |
| *Արտասանութիւն* | *Օր. Անի Թիւթիւնճեան* |

*Բ. ՄԱՍ*

| | |
|---|---|
| *Խօսք* | *Ազգ. Իշխանութիւն* |
| *Երգեր՝ «Կռունկ» երգչախումբի մեներգիչներ* | |
| *Խօսք* | *Գեր. Տ. Նարեկ Եպս. Շաքարեան* |
| *Ամունք* | *Տիկին Շաքէ Ցովակիմեան* |
| *Փակման խօսք* | *Գեր. Տ. Զաւէն Արք. Չինչինեան* |

Յայտարարութիւն
*Արեւ*, 2 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20181, էջ 4

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԲԱՐԵԶԱՐԴՄԱՆ ԱՌԹԻՒ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Այս, յատկապէս Գահիրէէն հրաւիրուած, Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբէն վեց հոգիներ ելոյթ ունեցան, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, որ նոյնպէս կը կատարէր դաշնակի ընկերակցութիւնը: Նորութիւն էր դաշնակին հետ, նաեւ Պր. Ռուբէն Թէրզիպաշեանի թմբուկի ընկերակցութիւնը, որ շատ հաճելի տպաւորութիւն մը գործեց: Անոնք, իրենց ծրագիրը աւարտած, «Մնաք բարով»-ի երգ մը երգեցին, բայց... չկրցան մեկնիլ. ժողովուրդը չթողուց, եւ սիրով ընդառաջելով ընդհանուր պահանջին, երգեցին նաեւ չորս երգեր, մինչ հանդիսականները ծաղիկներ բեմ նետելով, իրենց հիացումը կը յայտնէին:

*Արեւ*, 9 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20187, էջ 1, 4

## ԲԱՑԱՌԻԿ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ-ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆՑ ԱՌԹԻՒ

(հատուած)

ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆ

Յատկապէս Գահիրէէն հրաւիրուած, Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբէն վեց հոգիներ ելոյթ ունեցան, ղեկավարութեամբ եւ դաշնակի ընկերակցութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի: Նորութիւն էր դաշնակին հետ, պր. Ռուբէն Թերզիպաշեանի թմբուկի ընկերակցութիւնը, որ լաւ տպաւորութիւն ձգեց: Մեներգներուն մասնակցեցան Օրդք. Քրիստին եւ Անուշքա Չատրճեան եւ Սիլվա Մարգարեան: Եւ սիրով ընդառաջելով ընդհանուրի պահանջին, անոնք երգեցին նաեւ չորս երգեր եւ ստացան երկարատեւ ծափողջոյններ:

*Զահակիր*, 19 Դեկտեմբեր 1985, նոր շրջան, թիւ 1036, էջ 1, 3

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՌԻԱԼԱՍ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 8 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1985

ՎԱՀԱՆ ՏԷՐԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 100-ԱՄԵԱԿԻ
ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ
ՄԻՈՒԹԻՒՆ

Հ. Ա. Հ.
ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ



# ՎԱՀԱՆ ՏԷՐԵԱՆԻ

## ԾՆՆԴԵԱՆ 100 - ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայ Թեմի

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

**ՋՈՅԳ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՄԻԱՑԵԱԼ**
**ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ**

Կիրակի, 8 Դեկտեմբեր 1985, երեկոյեան ժամը 8 - ին

**ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ**
**« ՈՒԱԼԱՍ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ »ԻՆ ՄԷՋ**




*Կենսագրական ծանօթութիւններ*

*սահիկներու ցուցադրութեամբ*

*և ասմունք*

*երաժշտութեան ընկերակցութեամբ*

| | |
|---|---|
| *Թէքսթ* | *Հարի Չէչճէնեան* |
| *Խորքի երաժշտութիւն* | *Հայկ Սարգիսեան* |
| *Ձայնագրութիւն* | *Օննիկ Պըլըքտանեան* |
| | *և Յովսէփ Տէյիրմէնճեան* |
| *Ընթերցում* | *Վանիա Էքսէրճեան* |
| | *և Արեգ Նափուճեան* |

*Տէրեանի քերթուածներով ելոյթ կ'ունենան*

*Սիլվա Մարգարեան*

*Թալին Թուլումպաճեան*

*Սիլվա Սիմոնեան*

*Արմէն Չէչճէնեան*

| | |
|---|---|
| *Կիթառի նուագակցութիւն* | *Յովսէփ Տէյիրմէնճեան* |

ԸՆԴՄԻՋՈՒՄ




# « ՄԻ ՈՒՐԻՇ ԵՂԱՆԱԿ »

*( Միարար թատրերգութիւն քաղուած՝*
*Վ. Տէրեանի « Նամականի » էն )*

| | |
|---|---|
| *Հեղինակ* | *Վարան Ուժ* |
| *Դերակատարներ* | *Արփի Գալընեան* |
| | *և Վազգէն Էքսէրճեան* |
| *Երաժշտական ձևաւորում* | *Հայկ Սարգիսեան* |



*1966 ին. Անթառամ Միսկարեան վերջապէս համաձայնեցաւ հանրութեան սեփականութիւնը դարձնել Վահան Տէրեանի նամակները։*

*Իրենց մտերմութեան սկիզբին իսկ, 1908 ին, Անթառամ խոստացած էր բանաստեղծին, պահել իր նամակները և ոչ ոքի ցոյց տալ։*

*Մինչև 1916 երկարող այս նամակագրութիւնը կը յատկորոշուի անվերապահ անկեղծութեամբ, Տէրեան իր ներաշխարհը. իր յոյզերն ու խոհերը կը պարզէ այս աղջկան։*

*« Մի Ուրիշ Եղանակ » ը կ'օգտուի նամակներու տրամադրած հարուստ նիւթէն։ Իսկ, գործողութիւնը կը ներկայացնէ, առաջին « առանձին » հանդիպումը 23-ամեայ Վանիկի (Վահան Տէրեան) և 17-ամեայ Անտեայի միջև։*

*Թատերախաղը գրուած է և պիտի հրատարակուի արևելահայերէնով, իսկ այսօր կը ներկայացուի արևմտահայերէնով։*

# ՎԱՀԱՆ ՏԷՐԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻ ՓԱՌԱՇՈՒՔ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ

(հատուած)

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Առաջին առթիւ բոլոր ներկաներուն բաժնուած յայտագրի կողքին գծագրութիւնը յղացումն ու գործադրումն է Ռաֆֆի Չէչճէնեանի, որ հաղորդական ձայնին հետ ունի նաեւ զգայուն վրձին մը: Ցուցադրուած սաhիկներէն մաս մը գծագրած էին երիտասարդները: Թատրերգութեան բեմադրութիւնը որ արժանի է ամէն գնահատանքի, վստահուած էր Օր. Վանիա Էքսէրճեանի, որ կատարեց նաեւ բեմադրումը, լուսաւորումը: Անթերի ու յստակ ձայնագրութիւնը կատարած էին Պր. Օննօ Պըլըքտանեան եւ Տոքթ. Յովսէփ Տէյիրմէնճեան, եւ ի վերջոյ մեր երիտասարդ տաղանդաւոր խմբավար Հայկ Սարգիսեան, այս բոլորը երաժշտական ձեւաւորումով համեմած էր՝ իր յօրինումով եւ կատարումով. նոյնպէս իր մշակումն էր Արփիի [Գալընեանի] մեներգը՝ Ռոմանոս Մելիքեանի յօրինումով:

*Արեւ*, 10 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20188, էջ 1, 4

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Գալուստեան Ազգային Վարժարանի աշակերտական «Մաշտոց» պարբերագիրքը, որուն բովանդակութիւնը աշակերտական շարադրութիւններ եւ գծագրութիւններ են, նաեւ անուանի հայ գրողներէ գրական կտորներ: Կողքը պատրաստած Օր. Նայիրի Համբիկեան: Խմբագրական կազմը բաղկացած է Խմբավար Հայկ Սարգիսեանէ, ՊՊ. Յակոբ Համբիկեանէ, Նուպար Տնկճեանէ եւ Նկարչուհի Քրիստին Զարըճեանէ:

Ջերմօրէն կը շնորհաւորենք բոլորն ալ, եւ կը մաղթենք, որ յաջողութեամբ շարունակուի այս գեղեցիկ ձեռնարկը:

Ստացանք
*Արեւ*, 14 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20192, էջ 4

# ՄԱՇՏՈՑ

ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՊԱՐԲԵՐԱԳԻՐԸ
ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ

Մաշտոց պարբերագիրքի կողքը

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԷՈՒԸՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

**ԿԻՐԱԿԻ, 5 ՅՈՒՆՈՒԱՐ 1986**

ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ



ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

*Կիրակի, 5 Յունուար 1986, երեկոյեան*
*ժամը ճիշդ 7-ին*
*ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՔՈՒԼԸՐԹ*
*ՄԵՄՈՐԻԸԼ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

# ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

*Կազմակերպութեամբ Հ.Գ.Մ.ի Երիտ. Յանձնախումբին: Մասնակցութեամբ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մշակութային եւ մարզական միութեանց երիտասարդական մարմիններուն*

*Գահիրէէն՝ Կոկանեան Սրահի, Հայկական Ընթերցասրահի, Հ.Բ.Ը.Մ.ի, Հ.Մ.Ը.Մ. Նուպարի եւ Իսթի, իսկ Աղեքսանդրիայէն՝ Հ.Բ.Ը.Մ.ի, Հ.Մ.Ը.Մ. Նուպարի եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութեան երիտասարդական մարմինները*

*Հովանաւորութեամբ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
*Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց*
*Նախագահութեամբ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**
*Օրուան բանախօս*
*Յատկապէս Լիբանանէն հրաւիրուած*
*երիտասարդ մտաւորական*

**ԴՈԿՏ. ՎԱՉԷ ՂԱԶԱՐԵԱՆ**
*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ*
*որուն ընթացքին ելոյթ կ'ունենայ*

**Հ.Բ.Ը.Մ.Ի «ԿՌՈՒՆԿ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ**
*Ղեկավարութեամբ*

**ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**
*ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ*
*Երեկոյեան ժամը 9.30-էն սկսեալ*

Յայտարարութիւն
*Արեւ*, 30 Դեկտեմբեր 1985, 70-րդ տարի, թիւ 20205, էջ 4

# ՄԻՋԱՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ
(հատուած)

ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Դադարէն ետք, Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբինն էր ասպարէզը եւ ղեկավարութեամբ Հայկ Սարգիսեանի, ան երգեց բազմաթիւ երգեր: Ասիկա անշուշտ համերգային երեկոյ մը չէր, եւ հետեւաբար, երգչախումբը կրնար իր նախկին յայտագրին վրայէն երգերով հանդէս գալ: Բայց ոչ. խմբավար Հայկ Սարգիսեանը պատրաստած էր բոլորովին նոր երգերով յայտագիր մը: Եւ նորութիւն ըլլալով, կազմուած էր փոքրիկ նուագախումբ՝ սրինգ՝ Տիկին Անահիտ Սարգիսեան, դաշնակ՝ ընկերուհի Կասիա Տէօվլէթեան, եւ թմբուկ՝ Պր. Ռուբէն Թերզիպաշեան, որոնք երբեմն առանձին, երբեմն խմբովին, կ'ընկերակցէին երգերուն: Աւելորդ է ըսել, որ, ինչպէս ամէն անգամ, այս անգամ եւս հասարակութիւնը իր ջերմ գնահատանքը յայտնեց, ծափերու կողքին՝ սուլոցներու գռեհիկ արտայայտութեամբ: Կ'երեւի գռեհկութիւնը արմատացած է երիտասարդներուն մօտ, որ նոյնիսկ օտարին ըրած դիտողութիւնը օգուտ չունեցաւ:

*Արեւ*, 18 Յունուար 1986, 70-րդ տարի, թիւ 20220, էջ 2-3

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ԿԻՐԱԿԻ, 26 ՅՈՒՆՈՒԱՐ 1986**

**ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ**

Հ.Բ.Ը.Մ. – ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ – Հ.Մ.Ը.Մ.

ՆՈՒՊԱՐ

*Կիրակի, 26 Յունուար 1986, կ.ե. ժամը 6–ին*

*ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺ.Ի ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

**Խմբերգային Երեկոյ**

*ԱԶԳԱԳՐԱԿԱՆ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՒ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԵՐԳԵՐՈՒ ՅԱՅՏԱԳՐՈՎ*

*Հովանաւորութեամբ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց*

*Նախագահութեամբ*

**ՀԻՒՊԱՏՈՍ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՀԱՆ ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ**

**Հ.Բ.Ը.Մ.Ի "ԿՌՈՒՆԿ" ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ**

*ԵԼՈՅԹ ԿՈՒՆԵՆԱՅ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ*

**ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ԴԱՇՆԱԿԻ՝ ԿԱՍԻԱ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
ՍՐԻՆԳԻ՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆ
ԴՀՈԼԻ՝ ՌՈՒԲԷՆ ԹԵՐԶԻՊԱՇԵԱՆ

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

Յայտարարութիւն
*Արեւ*, 22 Յունուար 1986, 70-րդ տարի, թիւ 20223, էջ 4

# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

ՄԱԿԻ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հայկական Վարժարանին ամբողջովին վերանորոգուած սրահին մէջն է, որ Գահիրէէն եկած հայկական Կոունկ երգչախումբին ելոյթը տեղի ունեցաւ, նախագահութեամբ համաշխարհային հայկական մշակութային, ընկերային, մարզական ամենակարեւոր կազմակերպութեան՝ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան, որուն ենթակայ է Կոունկը պատուոյ նախագահ Պր. Վահան Ալեքսանեանի։

Երգչախումբը կը սպասուէր անհամբերութեամբ, ոչ միայն հայ համայնքին, այլեւ բոլոր անոնց կողմէ, որոնք զայն այնքան ծափահարած էին ասկէ երկու տարի առաջ։ Անվրէպ միատարրութեամբ, այս երգչախումբը կազմուած է միայն երկու տարի եւ քանի մը ամիս առաջ Մօ. Հայկ Սարգիսեանի կողմէ, որ քանի մը տարի Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երեւանի մէջ մնալէ ետք, ստացած է այնտեղի Երաժշտանոցին վկայականը։ Երգչախումբը կազմուած է երեսնեակ մը ուսանող եւ համալսարանական երիտասարդներէ եւ երիտասարդուհիներէ, որոնք մինչ այդ ոչ մէկ գաղափար ունէին երգարուեստի մասին։ Փրոֆեսոր Սարգիսեան զանոնք ձեռք առնելով, անոնց ներշնչեց եռանդ եւ կարգապահութիւն, եւ երգչախումբը շուտով անցաւ համբաւաւորներու շարքին։

Ակնահաճոյ տեսարան մը՝ երբ վարագոյրը բարձրացաւ... երիտասարդուհիները հագած էին պէժ երկար շրջազգեստ մը եւ սրճագոյն թաւշեայ բաճկոնակ՝ ոսկեթելով երիզուած, մինչ երիտասարդները՝ սպիտակ շապիկ եւ սեւ տափատ։

Երբեմն ընկերակցութեամբ խոհական դաշնակի մը (Օր. Կասիա Տէօվլէթեան), նոյնքան խոհական սրինգի մը հնչեղութեամբ (Տիկին Սարգիսեան) եւ դհոլի (Պր. Թերզիպաշեան) թեթեւ հարուածներով, բայց ընդհանրապէս հնչելով երգը իր ամբողջ աւիւնով՝ այնքան ընտանի եւ այնքան գնահատուած պալքանեան երկիրներուն մէջ, հայկական երգչախումբը, Մօ. Սարգիսեանի լուսատու եւ հաղորդական ղեկավարութեան տակ, տուաւ սքանչելի ունկնդրութիւն մը՝ ներկայացնելով ինչ որ ունին ժողովրդական եւ հայրենասիրական երգերը որպէս ամենահրապուրիչ, ամենակենսալի, եւ երբեմն ալ՝ ամենամելամաղձոտ, կամ ընդհակառակը՝ արտայայտելով ուրախութիւն եւ յոյս։

Հին երգեր մշակի, հօտաղի, որոնք իրարու կը պատասխանեն մէկ լեռէն միւսը, զարթուցիչ երգեր, լի սիրով կամ կարօտով՝ հանդէպ հեռաւոր հայրենիքի մը, ռազմական երգեր։ Վերջաւորութեանը այս ունկնդրութեան, որ խանդավառեց ներկաները, երգչախումբը յիշատակեց, բազմաձայն, հայկական շրջաններն ու քաղաքները՝ Տրապիզոն, Վան, Էրզրում, Մուշ, բնութիւնն ու բնապատկերները

այնքան սիրուած այդ հողին...

Սքանչելի համոյթով այս երգչախումբէն կ՚անջատուին քանի մը մենակատարներ, ինչպէս Քրիստին Չատըրճեան՝ արտայայտիչ գեղեցիկ քնթրալթոյով, Սիլվա Մարգարեան, որ կորուսեալ երկրի մը կարօտը արտայայտեց գեղեցկադրոշմ ձայնով մը, Ալիս Սիմոնեան՝ ջինջ սոփրանօ մը՝ երգչախումբին յանկերգներով, Ռաֆֆի Չէճէնեան, Զաւէն Ճիզմէճեան՝ մարզուած ձայներ, եւ Յակոբ Թիւթիւնճեան, որ նոյնպէս յաջողութիւն արձանագրեց։

Յիշենք, թէ ունկնդրութեան սկզբնաւորութեան, եգիպտական քայլերգը հնչեց նորովի՝ երգուած տարբեր ձայներով, որ շատ հետաքրքրեց հասարակութիւնը։ Եգիպտոսի, Եթովպիոյ եւ Սուտանի Առաջնորդ Չինչինեան Սրբազանը, որ ներկայ էր, կարճառօտ խօսքի մը մէջ շնորհակալութիւն յայտնեց երգչախումբին, խօսելով սիրելի հայրենիքին մասին։ Առաջին շարքին վրայ կը գտնուէր նաեւ հայ համայնքին նախագահ Պր. Մարտիկ Զարպհանէլեան։ Յաւալիօրէն բացակայ էին Տէր եւ Տիկին Ալեքսանեանները՝ ընտանիքին մէջ պատահած մահուան մը պատճառաւ։

Շնորհիւ Մօ. Սարգիսեանի՝ այնքան գեղեցիկ համոյթով եւ լաւ ընթացքով այս երգչախումբին կը մաղթենք արժանի յաջողութիւն մը իր ապագայ բոլոր ելոյթներուն, եւ մանաւանդ անոր, որ տեղի պիտի ունենայ այս տարի Երեւանի մէջ, ուր պիտի հաւաքուին ամբողջ սփիւռքի բոլոր երգչախումբերը։

(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 29 Յունուար 1986)

*Արեւ*, 4 Փետրուար 1986, 70-րդ տարի, թիւ 20234, էջ 1

## Հ.Բ.Ը.Մ.Ի ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ՝ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԺԻԶԷԼ ՊՈՒԼԱՏ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հմայիչ է պահ մը անցընել սրտին ու ականջին համար քաղցր զգացողութիւններու հետ։ Այսօր պահը կը պարտինք Հ.Բ.Ը.Մ.ի սքանչելի երգչախումբին, որ ելոյթ ունեցաւ Հայոց Առաջնորդարանին սիրուն սրահին մէջ։ Ան մեկնաբանեց ազգային, ժողովրդական եւ հայրենասիրական եղանակներ՝ սահունութեամբ, զգացումով եւ ուժականութեամբ։

Թէեւ այս անգամ զուրկ բազմաթիւ իր անդամներէն շատերէն - այդ երեկոյ միայն 22 հոգի էին - երգեցողութիւնը նուազ յաջող չէր, առոգանութիւնը յստակ, կշռոյթը ճիշտ։ Կեցցէ մը այն երանգներուն համար, որոնք երգուած բոլոր կտոր-

ներուն փայլ մը եւ մասնայատուկ գոյն մը կու տային։

Այս երգչախումբին մէջ կը զգացուի խելացի աշխատանք մը, եղանակները, պարագային համաձայն, երգուեցան յուզումով կամ բերկրութեամբ, մեկնաբանութիւնը միշտ կը մնայ թարմ եւ զգայուն, մեզի պարգեւելով մեկնաբանուած կտորներուն լաւագոյնը եւ ամենահմայիչը։

Յնծութեամբ է, որ երգչախումբը կ՚արտայայտէ հայ ցեղին հոգիին զգացումներն ու փոփոխութիւնները։ Զանոնք կ՚երգէ եռանդով եւ շնորհալիութեամբ՝ առանց սառնութեան հետքի մը։ Աւելին, երգիչները արուեստը ունին մեկնաբանուած մեղեդիներուն յարմար հնչեղութիւնը, կշռոյթն ու չափը տալու եւ նախադասութիւններուն՝ այն շեշտերը, որոնք կ՚ամբողջացնեն ճաշակը։ Պէտք է պատիւ ընծայենք մասնաւորաբար խմբավարին՝ Մօ. Հայկ Սարգիսեանի։

Ջերմօրէն կը շնորհաւորենք տաղանդաւոր երգիչները, եւ մասնաւորապէս մենակատարները՝ Քրիստին Չատըրճեանը՝ տաք եւ գրաւիչ մեծծօ-սոփրանօ մը, գեղեցկօրէն քօղարկուած, քնքուշ եւ խանդակաթ։

Սիլվա Մարգարեան՝ սոփրանօ գեղեցիկ ձայն մը, ճշգրիտ եւ լաւ տեղադրուած, որ կրցաւ երգել - առանց որեւէ ընկերակցութեան - որպէս մենակատար, այդ դժուարին կտորը։ Աւելի ետքը, երգչախումբը իրեն պատասխանեց՝ երգելով «ա քափելլա»։ Նշենք մեղմ եւ թրթռուն «համինկ»-ին հնչեղ յենքը։ Միւս մեղեդիները տուաւ լաւագոյնս։

Ալիս Սիմոնեան, բաւական ուժեղ սոփրանօ մը, հեշտ եւ հեզասահ արտայայտչականութեամբ մը, սիրուն սրութիւններով։ Երգեց յուզիչ «լամանթօ» մը։ Իր երգած միւս կտորները եւս յաջող էին։ Շունչը լաւ է։

Հարրի Ջէչճէնեան՝ հաճելի եւ լեցուն ձայն մը, կ՚երգէ զգացումով։

Ռաֆֆի Չէչճէնեան՝ հնչեղ երանգով մարտական ձայն մը։

Զաւէն Ճիզմէճեան՝ արու եւ խոր ձայն մը։

Յակոբ Թիւթիւնճեան ունի թենորի սիրուն ուժեղ ձայն մը, ջինջ եւ հմայիչ երանգով մը։ Յակոբը խումբին միակ աղեքսանդրիացին է։

Շնորհաւորենք նաեւ ընկերակցութիւնը՝ Կասիա Տէօվլէթեանը՝ խոհուն եւ ազդու դաշնակահարուհի մը, դհոլը՝ Ռուբէն Թերզիպաշեան, որ կշռոյթի զգացողութիւնը ունի, եւ սքանչելի սրնգահարը Անահիտ Սարգիսեանը, որուն ջինջ եւ սահուն նոթերը գեղեցկօրէն կը հոսէին իր սրինգէն։ Աւելցնենք, թէ այդ երեկոյ երգուած կտորները կը յիշատակէին հմայքները քաղաքներու՝ Էրզրում, Տրապիզոն, Երեւան, Մուշ, Սասուն։

Նշենք երկու սքանչելի երգեր՝ *Սարի եարը* եւ վերջին երգը՝ նուիրուած Հայաստանի մայրաքաղաք Էրեբունի-Երեւանի հիմնադրութեան 2750-ամեակին։

Չենք կրնար աւարտել այս տեղեկատուութիւնը, առանց Կեսարինը մատուցանելու ինչ որ արժանի է իրեն, յիշելով ամենաձեռնհաս Մօ. Հայկ Սարգիսեանը։ Լաւ խմբավարի մը բոլոր անհրաժեշտ տարրերը կը համախմբէ ան. երաժշտա-

կանութիւն եւ հոգեբանութիւն: Ան խումբը կը ղեկավարէ կենսունակութեամբ եւ խելացութեամբ: Կը սիրենք ճշգրտութեան իր շնորհը եւ կշռոյթի իր զգացողութիւնը: Ան մեզի տուաւ մաքուր օդի շունչ մը, որովհետեւ, ան մեզի տուաւ կարելիութիւնը յայտնաբերելու գեղեցկութիւնը արձագանգին ընդմէջէն, արձագանգ՝ զոր մեր մէջ արթնցուց երգչախումբը:

Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի նախագահն է Պր. Վահան Ալեքսանեան: Ան մշակութային, մարզական եւ կրթական մեծագոյն կազմակերպութիւնն է, որուն ղեկավարները նոյնպէս կը շնորհաւորենք ջերմօրէն՝ այս գեղեցիկ ունկնդրութեան համար: Երգիչները երկրորդական վարժարաններու եւ համալսարանի ուսանողներ են եւ կազմուած են Մօ. Հայկ Սարգիսեանի կողմէ, որ իր ուսումը ստացած է Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցին մէջ:

Այս համերգը կը վայելէր հովանաւորութիւնը Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի՝ Առաջնորդը Եգիպտոսի, Եթովպիոյ եւ Սուտանի հայութեան:

Նշենք նաեւ ներկայութիւնը Աղեքսանդրահայ համայնքին նախագահ Պր. Մարտիկ Զարպհանէլեանի:

(*Լը ժուռնալ տ'Էժիփթ*, 30 Յունուար 1986)

*Արեւ*, 6 Փետրուար 1986, 70-րդ տարի, թիւ 20236, էջ 1

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի եւ Հ.Մ.Ը.Մ Նուպարի զոյգ վարչութեանց նախաձեռնութեամբ, Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը, Կիրակի 26 Յունուար 1986-ի երեկոյեան, ելոյթ ունեցաւ Պօղոսեան Ազգային Երկրորդական Վարժարանի Մելգոնեան վերանորոգուած հանդիսասրահին մէջ, բարձր հովանաւորութեամբ թեմիս բարեխնամ Առաջնորդ՝ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ Միութեան Աղեքսանդրիոյ շրջանի նախագահ հիւպատոս եւ տիկին Վահան Ալեքսանեանի, որոնք ցաւալիօրէն բացակայեցան ընտանիքին մէջ պատահած մահուան մը պատճառաւ:

Ներկայ էին հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր քհնյ. Օհանեան, Պատկ. Թեմական Ժողովի ատենապետ՝ տիար Մարտիկ Զարպհանէլեան, Պատ. Քաղաքական Ժողովի եւ վարժարանի հոգաբարձութեան ատենապետ տէր եւ տիկին Վահրամ Թօսունեան, ազգային երեսփոխաններ, մշակութային եւ մարզական միութեանց անդամ-անդամուհիներ, մամլոյ ներկայացուցիչներ եւ հոծ բազմութիւն մը:

Խումբը կը ղեկավարէր բոլորիս ծանօթ երիտասարդ խմբավար Հայկ Սարգիսեանը որ Երեւանի Կոմիտաս երաժշտանոցէն ստացած իր կարողութիւնը եւ կատարելութիւնը կու գար հրամցնել Աղեքսանդրիոյ հայ եւ օտար հասարակութեան։

Երգչախումբին կողմէ երգուած եգիպտական քայլերգի յոտնկայս ունկնդրութենէն ետք, սկսաւ յայտագրի ա. մասը որ կը բաղկանար 11 երգերէ եւ որոնք էին՝ *Սարի սիրուն եար*, *Միւնեաց սարեր*, *Թող պլպուլ չերգէ*, *Օճախում*, *Աղջիկ հորոմ*, *Կողբա ելան սեւերը*, *Հովուի երգ*, *Զէյթունցիների քայլերգ*, *Սարը կեալին*, *Հայ հերոսների երգ* եւ *Ազգ փառապանծ*, իբրեւ նուագարան ունենալով դաշնակ՝ օր. Կասիա Տէօվլէթեանը, սրինգ՝ տիկին Անահիտ Սարգիսեանը եւ դհոլ՝ պր. Ռուբէն Թէրզիպաշեանը, եւ մենակատար՝ օրդք. Քրիստին Չատրճեան, Սիլվա Մարգարեան եւ պպ. Հարի եւ Ռաֆֆի Չէչճէնեաններ եւ Յակոբ Թիւթիւնճեան։

Դադարէ մը ետք սկսաւ բ. մասը որ կը բաղկանար 10 երգերէ եւ որոնք էին՝ *Բարակ ես բարտի ծառեր*, *Կարմիր վարդ*, *Սարերի հովին մեռնիմ*, *Մեր տան ետեւ*, *Քէլէ լաօ*, *Ծաղկած բալեն*, *Բամ փորատան*, *Սամավար-Հայ լոթթի*, *Կարպի ծիրին* եւ *Էրեբունի-Երեւան*, ունենալով իբրեւ մենակատարներ՝ օրդք. Ալիս Սիմոնեանը, Սիլվա Մարգարեանը եւ պր. Ռաֆֆի Չէչճէնեանը։

Եղան սրտաբուխ նուիրատուութիւններ առ ի քաջալերութիւն կազմակերպիչ զոյգ միութեանց։

Երգահանդէսի աւարտին, ի դիմաց կազմակերպիչ միութեանց, շնորհակալական խօսքով հանդէս եկաւ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի փոխ-ատենապետ պր. Վրէժ Սէֆէրեան որ իր խօսքի աւարտին հրաւիրեց Առաջնորդ Սրբազան Հայրը որ իր օրհնութեամբ եւ պահպանիչով փակէ այս յիշատակելի երեկոյթը։

Մենք եւս կը շնորհաւորենք Կոունկ երգչախումբի բոլոր անդամները եւ անոր խմբավար Հայկ Սարգիսեանը եւ կը մաղթենք նորանոր յաջողութիւններ։

**Ծանօթ.**

Ա. Աղեքսանդրահայ հասարակութեան զարմանք պատճառեց հայ հերոսներու նուիրուած երգին մէջ մեր սրբացած, հայ ազատագրման շարժումին նուիրեալներ Սերոբ Աղբիւրի եւ Հայկ Բժշկեանի անուններուն փոխանակուիլը Կոմիտասով եւ Պարոյր Սեւակով, որը բոլորովին չէր համապատասխաներ երգին բառերուն իմաստին։ Եթէ խմբավարին եւ կամ իր շրջանակին մեր ազատագրման պատմութեան հերոսները հաճելի չեն, աւելի լաւ պիտի ըլլար այդ երգը երգացանկին վրայ չդնել։

Բ. Կարելի է պատրաստել երկու կամ երեք լեզուներով յայտագիր մը, որպէսզի օտար հասարակութիւնը կարենայ հետեւիլ եւ տեղեկանալ մեր երգերուն։

Գ. Առ ի երախտագիտութիւն մեր ասպնջական Եգիպտոսի, ինչպէս կը

կատարուի բոլոր արաբական երկիրներու հայ գաղութներուն մէջ, յայտագրին վրայ ունենալ մէկ կամ երկու արաբական ժողովրդային երգեր։

*Զահակիր*, 20 Փետրուար 1986, նոր շրջան, թիւ 1044, էջ 2

## Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

ԳՐԻԳՈՐ ՄԱՐԳԱՐԵԱՆ

Գնա, Կռունկ, հայոց դաշտից ծիլ տար կանաչ՝ պանդուխտներին,
Արարատի ձիւն տար թեւիդ, ջուր Սեւանայ՝ պանդուխտներին,
Ականջիդ մէջ մեր երգն ուրախ, աչքերիդ մէջ լոյսը նոր,
Մի բուռ հող տար ոտիդ կպած, մեր տարագիր պանդուխտներին։
ԳԷՈՐԳ ԷՄԻՆ

Այո, եկաւ Կռունկը։ Եկաւ խինդ ու ծիծաղով, երգով, հայ երգով, ու իր հոյակապ կատարողութեամբ խանդավառեց, յուզեց ու դիւթեց Աղեքսանդրահայ հասարակութիւնը, Կիրակի 26 Յունուար երեկոյեան։

Պօղոսեան եւ Մելգոնեան Ազգային Վարժարաններու նորակերտ, գեղեցիկ հանդիսասրահին մէջ, կազմակերպութեամբ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ. եւ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի, հնչեցին հայ երաժիշտներու յօրինումներն ու երիտասարդ խմբավար Հայկ Սարգիսեանի ղեկավարութեամբ, տողանցեցին Թաթուլ Ալթունեան ու Գրիգոր Սիւնի, Մազմանեան ու Կանաչեան, Կոմիտաս եւ Պապաջանեան, Տէր Ղեւոնդեան ու Էտկար Յովհաննիսեան, եւ որպէս յայտագրի բացում Աղեքսանդրիացի երաժիշտ՝ Սայէտ Տարուիշ։

Անկասկած այդ երեկոյ համախմբուած մեծ, շատ մեծ թիւով հասարակութիւնը, տարածուած մինչեւ սրահի նրբանցքներն ու նախագաւիթը, վայելեցին խմբերգային բարձրորակ երեկոյ մը, հովանաւորութեամբ Գերաշնորհ Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, ու նախագահութեամբ հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեանի։ Ներկայ էին Արժ. Տէր Գրիգոր Քհնյ. Օհաննեան, ազգային իշխանութեան անդամներ, մշակութային, մարզական ու բարեսիրական միութիւններու ներկայացուցիչներ, հիւպատոսներ, օտար մշակութային կեդրոններու տնօրէններ, Աղեքսանդրիոյ երաժշտանոցի տնօրէնուհին ու դասատուներ, եւ թերթերու թղթակիցներ։

Նախապէս՝ վայելած էինք Կասիա Տէօվլէթեանի դաշնակի սահուն ընկերակցութիւնը Կռունկ երգչախումբի ելոյթներուն, ու կրկին ալ Կասիա Տէօվլէթ-

եան ցուցաբերեց նուրբ արուեստագիտուհիի իր տաղանդը։

Օրուան յայտնութիւնն էր Անահիտ Սարգիսեանի ու Ռուբէն Թէրզիպաշեանի սրինգի եւ դհոլի նուագը։ Անահիտ Սարգիսեանի դիւթիչ, ու Թէրզիպաշեանի խրոխտ կատարումները եղան աւելի քան սքանչելի։

Քրիստին Չատրճեան ու Սիլվա Մարգարեան իրենց մեներգի բաժիններով, ներկայացան հասարակութեան որպէս կարծես արհեստավարժ մեներգչուհի, ու իրենց կատարողութիւնը եղաւ լի թէ՛ երաժշտականութեամբ ու թէ զգացումով։

Ալիս Սիմոնեան, ինքնավստահ ու այնքան հաճելի իր ձայնով, ներկայացուց անկեղծ գնահատանքի արժանի մեներգի բաժիններ։

Երիտասարդներ Յակոբ Թիւթիւնճեան, Աղեքսանդրիայէն, Հարի Չէչճէնեան եւ Զաւէն Ճիզմէճեան, իրենց ելոյթներով որպէս Կռունկ երգչախումբի մենակատար՝ եղան անկաշկանդ ու հեզասահ։ Արդարեւ իրենց կը մաղթենք յարատեւութիւն։

Ռաֆֆի Չէչճէնեան, նախապէս ծանօթ աղեքսանդրահայութեան, այդ երեկոյ գերազանցեց ինքզինք Աւետիսեանի *Հովուի երգ*ի իր այնքան պարզ եւ սակայն խոր յուզականութեամբ լեցուն կատարումով։

Այո, եկաւ Կռունկը։

Եկաւ հայ երգով, հայ երաժշտութեամբ, ոչ որպէս «պանդուխտների դարիբ կռունկ», այլ՝ երիտասարդ երգչախումբ, Երեւանի երաժշտանոցի վկայեալ, խմբավար Հայկ Սարգիսեանի ղեկավարութեամբ, եւ որուն միայն ու միայն կարելի է յայտնել մեծ պռաւօ մը, շնորհաւորել երգչախումբի բոլոր անդամուհի-անդամները, գնահատանքի արժանի խօսք ուղղել Հ.Բ.Ը.Մ.ի գիտակից վարչութեան, ու շնորհակալութիւն յայտնել երեկոյի կազմակերպիչ գործունեայ տարրերուն, անխտիր։

*Արեւ*, 21 Փետրուար 1986, 70-րդ տարի, թիւ 20249, էջ 3

ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 6 ՓԵՏՐՈՒԱՐ 1986

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԻՒՆ ԿՈԿԱՆԵԱՆ ՄՐ.

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

*Հինգ. 6 Փետր. 1986, երեկոյեան ժամը 9-ին*

**ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**

*Հ.Գ.Մ.Ի «ԹԷՔԷԵԱՆ» ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

*Հովանաւորութեամբ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆի**

*Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց*

*Օրուան Բանախօս*

**ՏԻԿԻՆ ՎԻՎԻԱՆ ՍԻՄՈՆԵԱՆ**

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ*
*ԱԻԱՆԴԱԿԱՆ ՔԷՇԿԷԿԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ*
*Սիրալիր հրաւէր բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 3 Փետրուար 1986, 70-րդ տարի, թիւ 20233, էջ 4

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ.ի Կոունկ երգչախումբէն խումբ մը երիտասարդ-երիտասարդուհիներ, գլխաւորութեամբ իրենց խմբավարին՝ Հայկ Սարգիսեանի, Վարդանանց երգերը երգեցին՝ խանդավառելով հանդիսականները։

*Արեւ*, 7 Փետրուար 1986, 70-րդ տարի, թիւ 20237, էջ 1

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ
ՊՈՒԼԱՔ

**ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

*Չորեքշաբթի, 26 Մարտ 1986, ժամը 7.30-ին*
*Դպրոցի ներքնայարկի սրահին մէջ*
*Բարձր Հովանաւորութեամբ*
*Եգիպտահայ Թեմի Բարեխնամ Առաջնորդ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Նախագահութեամբ*
*Գաւռ. Թեմական Ժողովի Ատենապետ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԲՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆԻ**

*Շրջանաւարտները կը ստանան իրենց*
*վկայականները եւ աշակերտները իրենց*
*մրցանակները*
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳԻՐ
*Մուտքը հրաւէր կրթական հաստատութեան*

Յայտարարութիւն
*Արեւ*, 24 Մարտ 1986, 70-րդ տարի, թիւ 20273, էջ 4

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏԻՑ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Չորեքշբաթի, 26 Մարտ 1986, երեկոյեան ժամը 7.30-ին, Վարժարանին սրահին մէջ, տեղի ունեցաւ Գալուստեան Ազգային Վարժարանի շրջանաւարտից հանդիսութիւնը, հովանաւորութեամբ թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, եւ նախագահութեամբ Թեմական Ժողովի Ատենապետ, Ազգային մեծ Բարերար Տէր եւ Տիկին Բօղ Քիլիտճեաններու:

Մասնաւորապէս ներկայ էին Գահիրէի սովետական դեսպանատան Բ. քարտուղար Վարդգէս Սարիբիկեան, Արժ. Տ. Նարեկ Քհնյ. Ֆրընճեան, Քաղաքական Ժողովի փոխ Ատենապետ Պր. Երուանդ Թումայեանց, Քաղաքական Ժողովի անդամ Տոքթ. Գէորգ Մազլումեան, Նուպարեան Ազգային Վարժարանի Հոգաբարձութեան Ատենապետ Տէր եւ Տիկ. Յակոբ Մարգարեան, Գալուստեան Ազգային Վարժարանի Հոգաբարձութեան անդամներ ընկեր եւ ընկերուհի Վահագն եւ Ալիս Տեփոյեան, ընկեր եւ ընկերուհի Նորայր եւ Արաքսի Տէօվլէթեան, Տէր եւ Տիկին Գրիգոր եւ Տոքթ. Սիլվիա Մարթայեան, Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Յանձնաժողովի փոխ Ատենապետ Տէր եւ Տիկին Պերճ եւ Սեդա Թէրզեան, Հայկական Ընթերցասրահի ցկեանս նախագահ Տիար Զաւէն Պալաեան, եւ հոծ բազմութիւն մը:

Երգչախումբին կողմէ կատարուած եգիպտական ազգային քայլերգին եւ Գալուստեան Ազգային Վարժարանի Մաղթերգին յոտնկայս ունկնդրութենէն ետք, փոխ տնօրէն Պր. Յակոբ Համբիկեան կատարեց բացման հակիրճ խօսք մը, որմէ ետք, տեղի ունեցաւ գեղարուեստական յայտագրին գործադրութիւնը՝ անթերի եւ արագ յաջորդականութեամբ:

Այսպէս, արտասանութիւններով մէջընդմէջ ելոյթ ունեցան Անի Գրիգորեան՝ Սիլվա Կապուտիկեանի *Հայ լեզուն*, Սիլվա Կապէեան՝ Անդրանիկ Ծառուկեանի *Ուխտ Արարատին*, Արամ Դելփեան՝ Սարմէնի *Ես մի կորած քոյր ունեմ*, Թալին Կապէեան՝ Յովհաննէս Շիրազի *Հրաշք հոգեզալուստի*, Մարկրիթ Թահթապրունեան՝ Սիլվա Կապուտիկեանի *Մասիսի մօտիկ*, Նորա Գոլոյեան՝ Սիլվա Կապուտիկեանի *Ջրահապատ Վարդան զօրավար*: Պէտք է ըսել, որ բոլոր արտասանողներն ալ իրենց ամբողջ զգացումը ու հոգին դրին այս հրաշալի կտորներուն իրենց մեկնաբանութեան մէջ, մէկը միւսին գերազանցելով հայկական ոգիի արտայայտութեամբը:

Աշակերտական երգչախումբը նոյնպէս ելոյթ ունեցաւ մէջընմէջ, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, որ կը կատարէր նաեւ դաշնակի ընկերակցութիւնը, տրուած ըլլալով որ դաշնակահարուհի ընկերուհի Կասիա Տէօվլէթեան հիւանդ էր: Վարժարանէն ներս Հայկ Սարգիսեանի մտցուցած

աննախընթաց շունչին եւ տարած աշխատանքին մասին, զոր տեսանք, զգացինք եւ վայելեցինք երէկ, իսկապէս յուզեց մեզ եւ գնահատանքի խօսք ընելու համար, մեր բառամթերքը անբաւարար կու գայ։ Եւ վստահ ենք, որ մեր այս զգացումները լիովին կը բաժնեն բոլոր անոնք, որոնք երէկ ունկնդիր եղան մանկապատանեկան այդ երգչախումբին կատարողական հմայիչ շնորհին, զոր յայտնաբերեց եւ մարմին տուաւ անոր խմբավար Հայկ Սարգիսեանը։

Երգչախումբին անդամներուն տարիքին հակառակ մեծ տարբերութեան՝ 7-8 տարեկան երեխաներէն մինչեւ 17-18 տարեկան պատանիները, ան ներկայացաւ մեզի միաձոյլ եւ միակուռ։ Մենակատարի բաժինները երբեմն կատարեցին փոքրիկ երեխաներ, այնքան ինքնավստահ, այնքան կորովով, որ իրենք իսկ կ'ուրախանային մանկական իրենց ժպիտներով, իրենց արձանագրած յաջողութեամբ։ Նոյնիսկ դհոլի ընկերակցութիւնը վստահուած էր 7-8 տարեկան տղեկի մը՝ Լեւոն Տէր Յակոբեանի, որ մեծի հովեր առած, նստած աթոռին վրայ, մատներովը խանդավառ կը թմբկահարէր։

Հայկ Սարգիսեանի բերած մէկ նորոյթն ալ այն է, զոր կը կիրարկէ նաեւ Կռունկ երգչախումբին մէջ, որ երկու կամ երեք երգեր իրարու կ'ագուցէ եւ առանց ընդհատումի կը հրամցնէ, անոնց տալով մէկ երգի տպաւորութիւնը, իւրաքանչիւրը սակայն իր մասնայատկութեամբ։ Երէկուան ներկայացուցած երգերը ազգագրական երգերու փունջեր էին, որոնց միջոցաւ, ինչպէս որ ինքը՝ Հայկ Սարգիսեանը ըսաւ, հայ մանուկը կը կապուի իր հայրենի հողին, իր արմատներուն։ Եւ պէտք է ըսել նաեւ, որ Հայկ Սարգիսեանի բոլոր ելոյթները համեմուած են նորութիւններով՝ նոր երգերով, երբեք նոյն յայտագիրը չի կրկնուիր։

Այսպէս, երգչախումբը «մեներգեց» *Երգենք պարենք քոչարի - Լէ լէ - Արեւ բացուեց* փունջը՝ մենակատարներ ունենալով Էտուար եւ Ռոպէր Միլատ փոքրիկ եղբայրները, *Առաւօտեան փչեց հով - Մոկաց շուկէն*՝ Նորայր Մխտիկեան եւ Թալին Կապէեան մենակատարներով, *Ամպի տակից - Համբարձում եայլա*՝ մենակատար Մարի Ժոզէֆ Ֆարակ, Արտ. Խաչատուրեանի *Սարերդ ծաղկել* երգը, *Նիննամ նիննամ*՝ փոքրիկներ Գէորգ Գազազեանի եւ Ռոպէր Միլատի մենակատարութեամբ, որոնք այնպիսի խանդավառութեամբ կը կատարէին որ Գէորգ Գազազեանի նոյնիսկ իր մանկական տոտիկով չափ կու տար... *Հանիք նինար* ազգագրական երգին հատուածներուն իրենց մասնակցութիւնը բերին Թալին Կապէեան, Մարի Ժոզէֆ Ֆարակ, Սիլվա Կապէեան, Նորա Գոլոյեան, Ռուբինա Թապազեան։

Եւ յայտագրին աւարտին, երգչախումբը շարքով մեկնեցաւ երգելով։ Ապրիք տղաք. եւ միշտ այսպէս հայկական երգով ապրիք ձեր ամբողջ կեանքին ընթացքին։ Երէկ, հաւանաբար ամէնէն ուրախ անձը ինքը՝ Հայկ Սարգիսեանն էր, իր աշակերտներուն յաջողութեամբ թեւեր առած։

Գեղարուեստական յայտագրի աւարտին, տեղի ունեցաւ դադար, որուն ընթացքին, ներկաները հիւրասիրուեցան թխուածքներով եւ զովացուցիչներով։

*Արեւ*, 27 Մարտ 1986, 70-րդ տարի, թիւ 20276, էջ 1, 4

ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹԻ ՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ
ՇԱԲԱԹ, 12 ԱՊՐԻԼ 1986

ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ
ԿԻՐԱԿԻ, 13 ԱՊՐԻԼ 1986

ԱՐՄԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
100-ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

ԱՐՄԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ **100**ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

***ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ “ԱՐԵՒ”Ի ՇՐՋԱՆԱԿԻՆ***

| | |
|---|---|
| ՇԱԲԱԹ, 12 ԱՊՐԻԼ 1986 | ԿԻՐԱԿԻ, 13 ԱՊՐԻԼ 1986 |
| ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8-ԻՆ | ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8-ԻՆ |
| ԱՂԵՔՍ. ՏԻԳՐԱՆ ԵՐԿԱԹԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ | Հ.Գ.Մ. ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ |

**ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ-ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ**

***ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳԻՐ***

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ՝ ՊԷՅՐՈՒԹԷՆ ՅԱՏԿԱՊԷՍ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ

***ԸՆԿԵՐ ՓԱՆՈՍ ԹԻԹԻՋԵԱՆ***

ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 12 Ապրիլ 1986, 70-րդ տարի, թիւ 20289, էջ 4

# ԱՐՄԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 100-ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԵՒ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Աղեքսանդրիոյ մէջ, հանդիսութեան բացումը կատարեց ընկեր Գէորգ Փիլիկեան, որ հրաւիրեց ընկեր Վահագն Տեփոյեանը, որ բացման խօսքը կատարէ, որ կրկնուեցաւ նաեւ Գահիրէի մէջ:

Ապա, Աղեքսանդրիոյ թէ Գահիրէի մէջ, տեղի ունեցաւ սլայտներու ցուցադրութիւն, որ պատմականը կ'ընէր հայ ազատագրական շարժման եւ Արմենական Կուսակցութեան Կազմութեան: Յայտագրին այս մասը ամբողջութեամբ պատրաստած էին Գահիրէի Արմենական Շարժման մեր երիտասարդ ընկեր-ընկերուհիները: Այսպէս, սլայտները պատրաստած էր ընկեր Տոքթ. Յովսէփ Տէյիրմէնճեան, քարտէսները պատրաստած էին Օր. Ալին Պըլըքտանեան եւ ընկերուհի Սիլվա Բլատեան, ընթերցումները կը կատարէին ընկերներ Կասիա Տէօվլէթեան, Թալին Թուլումպաճեան, Վահէ Բլատեան եւ Արեգ Եափուճեան, երաժշտական ձեւաւորումը կատարած էր խմբավար Հայկ Սարգիսեան, ձայնագրութիւնը՝ Պր. Օննօ Պըլըքտանեան:

Բաց աստի, Գահիրէի մէջ, բեմին վրայի խորհրդանշանը՝ դափնեպսակի մը մէջ դրուած 100, վերը՝ «Արմենական» եւ ապա Արմենական Կուսակցութեան զինանշանը շատ գեղեցկօրէն կատարած էր ընկեր Գրիգոր Փարթամեան, իսկ նկարչական բաժինը՝ նկարչուհի ընկերուհի Էլիզ Փարթամեան: Օր. Ալիս Սիմոնեան մեներգեց *Յանկամ տեսնել զիմ Կիլիկիա*ն, իսկ Կռունկ երգչախումբէն փոքրաթիւ կազմ մը՝ *Տալվորիկ*ը, դաշնակի ընկերակցութեամբ ընկերուհի Կասիա Տէօվլէթեանի:

*Արեւ*, 14 Ապրիլ 1986, 70-րդ տարի, թիւ 20290, էջ 1, 4

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 20 ԱՊՐԻԼ 1986

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ
ՃԱՇԿԵՐՈՅԹ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՃԱՇԿԵՐՈՅԹԸ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երբ ներկաները ճաշակած էին Տիկիններուն պատրաստած համադամները, Վարժարանին փոխ Տնօրէն Պր. Յակոբ Համբիկեանի բացման խօսքէն ետք, տեղի ունեցաւ կոկիկ յայտագիր մը, զոր աւելի պճնազարդել կարելի չէր եղած, աշակերտները քննութեան մէջ ըլլալով:

Առաջին առթիւ, Արամ Դելփեան կարդաց հայրենասիրական շունչով գրած իր քանի մը ոտանաւորները, ապա՝ Ռոպէր եւ Էտուար Միլատ եղբայրներն ու Ֆրետի Գոլոյեան, դաշնակի ընկերակցութեամբ իրենց երգի ուսուցիչ խմբավար Հայկ Սարգիսեանի, ազգագրական երգեր երգեցին. Յակոբ Սայեան, իր հօր՝ Պր. Էտուարի դաշնակի ընկերակցութեամբ երկու երգ երգեց:

*Արեւ*, 22 Ապրիլ 1986, 70-րդ տարի, թիւ 20297, էջ 1

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՃԱՇԿԵՐՈՅԹԸ
(հատուած)

ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆ

Վարժարանի փոխ-տնօրէն պր. Յակոբ Համբիկեանի բացման խօսքէն ետք, տեղի ունեցաւ կոկիկ յայտագիր մը: Աշակերտ Արամ Դելբեան կարդաց հայրենասիրական շունչով գրած իր քանի մը ոտանաւորները, ապա՝ աշակերտներ Ռոպէր եւ Էտուար Միլատ եղբայրներն ու Ֆրետի Գոլոյեան, դաշնակի ընկերակցութեամբ իրենց երգի ուսուցիչ՝ խմբավար Հայկ Սարգիսեանի, ազգագրական երգեր երգելով խանդավառեցին մթնոլորտը, աշակերտ Յակոբ Սայեան, դաշնակի ընկերակցութեամբ իր հօր՝ պր. Էտուար Սայեանի երկու երգ երգեց:

*Զահակիր*, 1 Մայիս 1986, նոր շրջան, թիւ 1052, էջ 2, 4

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

**ՇԱԲԱԹ, 26 ԱՊՐԻԼ 1986**

ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ

# ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ
# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ

*Նախագահութեամբ*

*ԵՐԵՔ ՀԱՅ ՀԱՄԱՅՆՔՆԵՐՈՒ ՀՈԳԵՒՈՐ*
*ՊԵՏԵՐՈՒՆ*
*ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ*

*Եգիպտահայ բոլոր Հայ Կազմակերպութիւններուն*

*ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

*Շաբաթ, 26, Ապրիլի գիշերը ժամը ճիշդ 9–ին*

**ՅԱՅՏԱԳԻՐ.**

1.— *Նուագ, դաշնամուր* — *Տիկ. Շ. Դարմանեան*
*Մարշ Ֆիւնէպրը, Մահաքայլերգ*

2.— *Բացման Խօսք* — *Տիկ. Սոնիա Պայրամեան*

3.— *Արտասանութիւն* — *Հայկ Աստուրեան*
*Սիամանթօ, Պարը*

4.— *Մեներգ* — *Տիկ. Լիզա Քրէտեան*
*Կոմիտաս Անտունի*
*Հայաստան*

5.— *Խօսք* — *Տիար Զաւէն Պալաեան*

6.— *Արտասանութիւն* — *Օր. Արփի Գալընեան Գ.*
*Էմին Կռունկ*

7.— *Խմբերգներ* — *կատարմամբ Կռունկ*
*Երգչախումբի փոքր խումբին*

8.— *Խօսք* — *Գերպ. Ռափայէլ Պայեան*

9.— *Պահպանիչ* — *Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք.*
*Չինչինեան*

Յայտարարութիւն
*Արեւ*, 22 Ապրիլ 1986, 70-րդ տարի, թիւ 20297, էջ 4

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՅԻՇԱՏԱԿՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Կարգը Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբինն էր, որմէ մաս մը միայն ելոյթ ունեցաւ, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, դաշնակի ընկերակցութեամբ ընկերուհի Կասիա Տէօվլէթեանի, մենակատարութեամբ Օր. Ալիս Սիմոնեանի, Պր. Ռաֆֆի Չէչճէնեանի եւ փոքրիկն Ռոպէր Միլատի, մինչ Պր. Գրիգոր Միքայէլեան իր արտասանութեամբ կ'ընկերակցէր երգչախումբին։

*Արեւ*, 28 Ապրիլ 1986, 70-րդ տարի, թիւ 20301, էջ 1

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ 71-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբէն մաս մը, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի եւ դաշնակի ընկերակցութեամբ օր. Կասիա Տէօվլէթեանի, մենակատարութեամբ Ալիս Սիմոնեանի, Ռաֆֆի Չէչճէնեանի եւ փոքրիկն Ռոպէր Միլատի, յաջորդաբար երգեցին երեք երգեր, որոնց վերջինին՝ *Տէր ողորմիա*յին, խոր ապրումով արտասանութեամբ կ'ընկերակցէր երգչախումբին պր. Գրիգոր Միքայէլեան, որոնք մեծ խանդավառութիւն ստեղծեցին եւ արժանացան ներկաներու գնահատանքին։

*Ջահակիր*, 1 Մայիս 1986, նոր շրջան, թիւ 1052, էջ 1, 4

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 29 ՆՈՅԵՄԲԵՐ 1986

ՃԱՇԿԵՐՈՅԹ-ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ
66-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԻԹԻՒ

ՃԱՇԿԵՐՈՅԹ-ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

# Ս. ՀԱՅԱՍՏԱՆԻ
# 66ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ
# ԱՌԹԻՒ

Կազմակերպութեամբ

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ, Հ.Ա.Հ. ԿՈԿԱՆԵԱՆ ՄՐԱՀԻ
ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ

Շաբաթ, 29 Նոյեմբեր 1986, Երեկոյեան ժամը ճիշդ 9-ին

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ

*Հայ հասարակութիւնը սիրով հրաւիրուած է*
*սոյն տօնակատարութեան*

Յայտարարութիւն.
*Ջահակիր*, 20 Նոյեմբեր 1986, նոր շրջան, թիւ 1071, էջ 4

## ՆՈՅԵՄԲԵՐ 29-Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Խմբավար Հայկ Սարգիսեան, երկու խօսք ըրաւ, թէ Նոյեմբեր 29-ը մեզի համար այն արեւն է, որ կը ջերմացնէ մեր սրտերը 66 տարիներէ ի վեր, եւ մեզի այն գիտակցութիւնը կու տայ, թէ մենք հայրենիք ունինք։ Ապա, իր գլխաւորութեամբ, Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբէն փոքր խումբ մը սկսաւ խմբային երգերու, օրուան խանդավառութեան խնջոյքի բնոյթ տալով։

*Արեւ*, 2 Դեկտեմբեր 1986, 71-րդ տարի, թիւ 20475, էջ 1, 4

## Ս. ՀԱՅԱՍՏԱՆԻ 66-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹԵԱՄԲ ՆՇՈՒԵՑԱՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ
(հատուած)

Ապա, Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբէն փոքր խումբ մը, գլխաւորութեամբ իրենց ղեկավար՝ պր. Հայկ Սարգիսեանի, երգեց ազգագրական երգեր, օրուան տօնակատարութեան խնջոյքի բնոյթ տալով։

*Ջահակիր*, 11 Դեկտեմբեր 1986, նոր շրջան, թիւ 1074, էջ 1-2

ԷՌՈՒԸՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ

ԿԻՐԱԿԻ, 14 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1986

Հ.Բ.Ը.Մ.Ի ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ ԵՒ ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՄԵՐԳ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ ԵՒ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՄԵՐԳ

Կիրակի, 14 Դեկտեմբեր 1986,
երեկոյեան ժամը 8.00 ին

ՆՈՒԻՐՈՒԱԾ

**Հ Բ Ը Մ Ի ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 80 ԱՄԵԱԿԻՆ**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ
ՊԵՏԵՐՈՒՆ

ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ
ԷՈՒԸՐԹ ՄԷՄՈՐԻԸԼ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ

ՏԻԿԻՆ ԱՐԱՔՍԻ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

**Կ Ռ Ո Ւ Ն Կ**

ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ԽՄԲԱՎԱՐ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

*Programme*

| | |
|---|---|
| Եգիպտական Քայլերգ | |
| Հ Բ Ը Մ ի Քայլերգ | |
| Սարերի հովին մեռնիմ | Ժողովրդական<br>Մշկմ. Գ. Սինի |
| Կողքա ելան սելերը | Ժողովրդական<br>Մշկմ. Ա. Տէր Ղեւոնդեան |
| Կարմիր վարդ | Մշկմ. Մ. Մազմանեան |
| Երեւան - Էրեբունի | Խօսք Պ. Սեւակ<br>Երժշտ. Է. Յովհաննէսեան |
| Խօսք | Տիկին Արաքսի Տէօվլէթեան |

## ԸՆԴՄԻՋՈՒՄ

| | |
|---|---|
| Արտասանութիւն | Օր. Վանիա Էքսէրճեան |
| Միանգամից | Պ. Սեւակ |
| Ինչո՞ւ եմ ծնուել | Հ. Յովհաննէսեան |
| Սուրբ - Սուրբ | Մշկմ. Մ. Եկմալեան |
| Լուսնեակ գիշեր | Ժողովրդական<br>Մշկմ. Թ. Ալթունեան |
| Ասա ինչո՞ւ դու լուռ ես | Գուսան Աշոտ |

Մենակատար Քրիսթին Զատրնեան

| | |
|---|---|
| *Ալագեազ* | *Ժողովրդական* |
| *Խնկի ծառ* | *Մշկմ. Գ. Սիւնի* |
| *Քամանչա* | *Սայաթ Նովա* |

Մենակատար Հարի Չէչենեան

| | |
|---|---|
| *Ո՞ւր է* | *Գուսան Աշոտ* |

Մենակատար Ալիս Սիմոնեան

| | |
|---|---|
| *Արաքսի Արտասուքը* | *Մշկմ. Կ. Զաքարեան* |
| *Զարթնիր Լաօ* | |
| *Տաւիղ* | *Խ. Աւետիսեան* |

Մենակատար Անուշկա Զաւրեան

| | |
|---|---|
| *Քեզ հետ իմ սէր* | *Ռ. Ամիրխանեան* |

Անուշկա եւ Քրիսթին Զաւրեան

| | |
|---|---|
| *Աղջի հոռոմ* | *Ազգագրական* |

Մենակատար Արփի Գայինեան

| | |
|---|---|
| *Մշոյ աղջիկ* | *Ազգագրական* |
| *Մեր տան հիտև* | |
| *Սասուն* | |

Մենակատար Ռաֆֆի Չէչենեան



| | |
|---|---|
| *Դաշնամուր* | *Կասիա Ճղալեան* |
| *Սրինգ* | *Անահիտ Սարգիսեան* |
| *Տհոլ* | *Ռուբէն Թերզիպաշեան* |

Egyptian National Anthem
A.G.B.U. Anthem
Sareri Hovin Mernim (Popular Song)
Goghpa Yayli (Popular Song)
Garmir Vart (Popular Song)
Yerevan - Erepouni (Patriotic Song)
Speech — Mrs. Araxie Deuvletian

## INTERVAL

Poem — Miss Vania Exerdjian
Sourp - Sourp (Sanctus)
Lousnag Kisher (Lyric Song)
Assa Intchou Tou Lour Es (Love Song) Solo Christine Tchaderdjian
Alakyaz
Khngui Dzar (Popular Songs)
Kamantcha — Solo Harry Tchetchenian
Our É — Solo Alice Simonian
Araxy Ardassouke (Patriotic Song)
Zartnr Lao (Patriotic Song)
Davigh (Lyric Song) — Solo Anoushka Tchaderdjian
Kez Hed Im Sère — Duett Anoushka & Christine Tchaderdjian
Aghtchi Horom (Folkloric Song) — Solo Arpi Kalinian
Msho Aghtchig / Mer Dan Hidev / Sassoun } (Folkloric Songs) Solo Raffi Tchetchenian

| | |
|---|---|
| Piano | Gassia Djeghalian |
| Flute | Anahid Sarkissian |
| Drum (Dhol) | Roupen Terzibashian |

# Հ.Բ.Ը.Մ.Ի 80-ԱՄԵԱԿՆ ՈՒ ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՀԱՄԵՐԳԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Կիրակի, 14 Դեկտեմբեր 1986, երեկոյեան ժամը 8-ին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուարթ Մեմորիըլ Սրահը բերնէ բերան լեցուած էր հանդիսականներու բազմութեամբ մը, որ ապրեցաւ անմոռանալի ժամեր, որոնք եգիպտահայ տարեգրութեանց մէջ պիտի մնան անջնջելի:

Երէկ երեկոյեան, նշուեցաւ Հ.Բ.Ը.Մ.ի 80-ամեակը, Գահիրէի Մասնաժողովին Կռունկ երգչախումբին մեծ համերգով: Երկու ժամ տեւած յայտագիրը տեղի ունեցաւ հեզասահ, արագ իրարայաջորդականութեամբ մը: Ժամը ճիշտ 8-ն էր, երբ վարագոյրը բացուեցաւ, եւ հանդիսականներուն ծափահարութիւններուն տակ երգչախումբը բեմ ելաւ, եւ յոտնկայս ունկնդրուած եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներէն ետք, սկսաւ իր յայտագրին:

Նախ յիշենք, թէ երեկոն կը վայելէր երեք քոյր յարանուանութեանց պետերուն հովանաւորութիւնը, եւ ներկայ էին թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանը, Հայ Կաթողիկէ համայնքին ղեկավարներէն Տէր եւ Տիկ. Պետրոս Պետիկեան, Հայ Աւետարանական Համայնքի նախագահ Պր. Աւետիս Չագըճեան: Բաց աստի, ներկայ էին հայրենի ականաւոր գրող Սերօ Խանզադեան, Թեմական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Բօղ Քիլիտճեան, Քաղաքական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան, եւ Հ.Բ.Ը.Մ.ի շրջանակին եւ բարեկամ կազմակերպութիւններուն բոլոր ղեկավարները եւ ազգային ներկայացուցչական դէմքեր:

Բացի քայլերգներէն, երգչախումբը, ղեկավարութեամբ արդէն ամբողջ եգիպտահայութեան խոր գնահատանքին արժանացած խմբավար Հայկ Սարգիսեանի, հնչեցուց 19 երգեր՝ ոմանք նախկին յայտագիրներէն, բայց շատեր բոլորովին նոր, ներկաներուն հայու հոգիները խայտացնելով, ցնծութեան աննկարագրելի մթնոլորտ մը ստեղծելով, երբեմն ալ ներկաները թախիծով պատելով, բայց միշտ ալ խլելով անզուսպ ծափահարութիւններ, որոնց որոտը կը դղրդացնէր ընդարձակ սրահը:

Խմբավար Հայկ Սարգիսեան, երգերուն տալով իր սեփական նորովի մեկնաբանութիւնները, անօրինակ խանդավառութիւն մը կը ստեղծէր, ցուցաբերելով, կրկին անգամ, հայրենիքի շունչին տակ փթթած իր անզուգական տաղանդը:

Կարգ մը երգերու մենակատարներն էին Քրիստին Չատրճեան, որ երէկ շուքի մէջ թողուց իր նախկին բոլոր այնքան յաջող կատարումները: Անուշքա Չատրճեան, իր առինքնող սոփրանոյով թրթռացուց հայկական երգով ու շունչով յագեցած մթնոլորտը: Ալիս Սիմոնեան, արդէն կազմաւորուած ձայնով մը, ուղղակի հմայիչ էր: Գիւտ մըն էր Արփի Գալըճեանը, որուն մեղմօրօր ձայնը

ինչեց սիրուն ոլորտներով: Հարի Չէչճէնեան ձայնական անուշ հնչեղութեամբ մեկնաբանեց իր երգը: Իսկ Ռաֆֆի Չէչճէնեանը մեզի մոռցնել տուաւ իր նախորդ ելոյթները, իր անմիջականութեամբ ու սրտագրաւ կատարումով:

Ելոյթներուն կ՚ընկերակցէին՝ դաշնակով՝ ընկերուհի Կասիա Ճղալեան, սրինգով՝ Տիկին Անահիտ Սարգիսեան, եւ դհոլով՝ Պր. Ռուբէն Թերզիպաշեան, ընդհանուր յաջողութեան իրենց անգնահատելի բաժինը բերելով:

Օրուան բանախօսն էր ընկերուհի Արաքսի Տէօվլէթեան, որ կարճառօտ, բայց բովանդակալից ելոյթ մը ունեցաւ ընդհանրապէս Հ.Բ.Ը.Մ.ի եւ մասնաւորապէս Եգիպտոսի մէջ անոր իրագործումներուն մասին, ելոյթ՝ զոր պիտի տանք առանձինն:

Իսկ Օր. Վանիա Էքսէրճեան իր դիւթիչ մեկնաբանութեամբ ասմունքեց Պարոյր Սեւակի *Միանգամից* եւ Հրաչեայ Յովհաննիսեանի *Ինչու եմ ծնուել* քերթուածները, արժանանալով երկարատեւ ծափահարութիւններու:

Յայտագրին աւարտին, խօսք առաւ հայրենի ականաւոր հիւրը՝ Սերօ Խանզադեան, որ գնահատելով Հայկ Սարգիսեանի տաղանդը, շեշտեց, թէ ան եւ իր երգչախումբը, մտքի թռիչքով զինք փոխադրեցին հայրենի հողին վրայ, իսկ հանդիսականներուն ալ՝ դէպի «մորթոտուած» Արեւմտահայաստան: Ան իր ուրախութիւնը յայտնեց, որ կը գտնուի Նեղոսի սուրբ ափերուն վրայ, ուր 4000 տարուան հայեւեգիպտական բարեկամութիւնը ծաղկած է: Յանուն Ազգին, յարգելի հիւրը խոնարհեցաւ արաբ մեծ ժողովուրդին առջեւ, որ փրկութեան ձեռք կարկառեց հայու բեկորներուն՝ անոնց ապրած դաժան օրերուն: Ան իր խօսքը աւարտեց, ուրախութիւն յայտնելով, որ սովետեւեգիպտական բարեկամական կապերը օրըստօրէ կը սերտանան, ընդգծելով, որ այս երկու մեծ երկիրները մէկ բան կը տենչան՝ Խաղաղութիւն:

Երեկոն շարունակուեցաւ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ, ուր ընդունելութիւն մը տեղի ունեցաւ ի պատիւ երգչախումբի անդամներուն, ընդունելութիւն՝ որ վերածուեցաւ հայկական խրախճանքի աննախընթաց երեկոյի մը, մանաւանդ երբ Սերօ Խանզադեան դուրս եկաւ հայկական պարերով՝ ներկայ երիտասարդներն ալ իր հետ առնելով:

Յիշենք նաեւ, որ բեմին յենքը զարդարուած էր «Հ.Բ.Ը.Մ. - 80» ցուցանակով, զոր պատրաստած էր ընկեր Գրիգոր Փարթամեան:

Քիչ կը պատահին այսպիսի օրեր, երբ մարդ տուն կը վերադառնայ հաւաքոյթէ մը, երջանկութեամբ յորդած հոգիով, խանդավառութեամբ զեղուն սրտով, ու լիացած մտքով: Այդպիսի երեկոյ մըն էր երէկ:

Վարձքը կատար բոլորին ալ, բայց մանաւանդ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովին, գլխաւորութեամբ իր Ատենապետին՝ ընկեր Նորայր Տէօվլէթեանի, որոնց աշխատանքին կը պարտինք գլխաւորաբար, այս երեկոն:

*Արեւ*, 15 Դեկտեմբեր 1986, 71-րդ տարի, թիւ 20486, էջ 1

# GROUNG CELEBRE LE 80ème ANNIVERSAIRE DE L'UGAB

AMAL CHOUCRI CATTA

C'est dans le but de fêter les quatre-vingts ans de la fondation de l'union générale arménienne de bienfaisance, UGAB, que la chorale Groung donnait un de ses plus beaux concerts à l'Ewart Memorial Hall de l'université américaine du Caire.

Débutant par l'hymne national égyptien suivi de l'hymne de l'UGAB, les jeunes chanteurs de cette chorale, qui parvint, dans le courant de ces quelques dernières années, à atteindre une belle célébrité en Egypte, anchantaient la très nombreuse assistance par des chants populaires et patriotiques arméniens.

Avant l'intervalle, un discours délivré par Mme Araxie Deuvletian évoqua l'historique de l'UGAB, fondée par Boghos Nubar Pacha, dans sa résidence héliopolitaine de la rue el Ourouba, le 15 avril 1906. Le siège central de cette union, qui groupe, à l'échelon mondial, 22.000 membres, se trouve aux Etats-Unis, et celui responsable du moyen-orient se trouve en Suisse.

Ce soir-là, l'assistance cairote se vit honorée par la présence de M. Sero Khansatian, grand romancier arménien, actuellement en visite en Egypte, qui adressa d'ailleurs une allocution à l'audience, à la fin du concert.

Débutant par un poème récité par Vania Exerdjian, la seconde partie de la représentation musicale fut marquée par un *sanctus* très digne et par une belle chanson lyrique, suivie d'un chant d'amour, que la soliste Christine Tchaderdjian, à la voix grave et émouvante, interprétait avec beaucoup de sensibilité et d'éloquence. *Kamancha*, le solo de Harry Tchetchenian, et *Our é* avec la soprano Alice Simonian, ainsi que la chanson lyrique *Davigh* avec le solo d'Anoushka Tchaderdjian, suscitèrent beaucoup d'admiration; et le duo d'Anoushka et de Christine Tchaderdjian ainsi que les soli d'Arpi Kalinian et de Raffi Tchetchenian finirent par transporter l'audience au point qu'elle n'arrêta ses ovations qu'avec difficulté.

Au piano, Gassia Djeghalian, à la flûte Anahid Sarkissian et Roupen Terzibashian au tambour "Dhol", étaient excellents.

Haig Sarkissian, le maître des choeurs, qui dirige tous les concerts de la chorale Groung et qui est d'ailleurs le responsable de sa formation, vient de faire preuve, une fois de plus, de sa versatilité et de ses capacités indéniables de grand maître.

Il sait s'imposer avec patience, avec énergie et beaucoup de subtilité, car il a non seulement présenté cette fais-ci une série de superchansons nouvelles, mais il a de surcroît permis au public d'apprécier et d'applaudir plusieurs jeunes solistes, aux voix excellentes et certainement dignes des ovations dont ils jouirent ce soir-là.

Ce fut une très belle représentation, sincèrement appréciée par l'assistance arménienne, ainsi que par les nombreux amis égyptiens et étrangers, qui ont chaleureusement applaudi cet inoubliable concert.

*Le Progrès égyptien*, 20 décembre 1986

## ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԿԸ ՏՕՆԱԽՄԲԷ Հ.Բ.Ը.Մ.Ի 80 ԱՄԵԱԿԸ

ԱՄԱԼ ՇՈՒՔՐԻ ՔԱԹԹԱ
Թարգմանութիւն՝ ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ.ի 80-ամեակին տօնախմբութեան նպատակով էր, որ Կռունկ երգչախումբը իր ամենագեղեցիկ համերգներէն մին կու տար Գահիրէի Ամերիկեան Համալսարանին Էուըրթ Մեմորիըլ հանդիսասրահին մէջ։

Սկսելով եգիպտական պետական քայլերգով, որուն յաջորդեց Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգը, երիտասարդ անդամները երգչախումբին, որ վերջին տարիներուն Եգիպտոսի մէջ գեղեցիկ համբաւի մը տիրացաւ, ներկաները հրճուեցուցին հայկական ժողովրդական եւ հայրենասիրական երգերով։

Դադարէն առաջ, Տիկին Արաքսի Տէօվլէթեան իր բանախօսութեամբ տուաւ պատմականը Հ.Բ.Ը.Մ.ի, որ հիմնուած է Պօղոս Նուպար փաշայի կողմէ, Հելիոպոլսոյ իր բնակարանին մէջ, Ուրուպա փողոցին վրայ, 15 Ապրիլ 1906 թուականին։ Այս Միութեան կեդրոնատեղին կը գտնուի Մ. Նահանգներուն մէջ, եւ ունի 22.000 անդամ ամբողջ աշխարհի մէջ, իսկ Միջին Արեւելքի պատասխանատու մարմինը՝ Զուիցերիոյ մէջ։

Այդ երեկոյ, Գահիրէի հայութիւնը պատիւն ունէր իր մէջ ընդունելու հայ մեծանուն վիպասան Սերօ Խանզադեանը, որ այժմ Եգիպտոս կը գտնուի այցելութեամբ, եւ որ համերգին վերջաւորութեան ճառ մը խօսեցաւ ներկաներուն։

Վանիա Էքսէրճեանի արտասանած մէկ քերթուածով սկսաւ համերգին երկրորդ մասը, որ յատկանշուեցաւ քնարական շատ գեղեցիկ երգով մը, որուն յաջորդեց սիրային երգ մը՝ մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, որ իր ծանր եւ յուզիչ ձայնով մեկնաբանեց զգայնութեամբ եւ վարպետութեամբ։ Մեծ հիացում պատճառեցին Հարրի Չէչճէնեանի *Քամանչա*ն, սոփրանօ Ալիս Սիմոնեանի *Ուր է* երգը, Անուշքա Չատրճեանի *Տալիդ* քնարական երգը, ինչպէս նաեւ Անուշքա եւ Քրիստին Չատրճեաններուն զուգերգը, Արփի Գալըճեանի եւ Ռաֆֆի Չէչճէնեանի մեներգները, որոնք ունկնդիրները հասցուցին այնպիսի աստիճանի մը, որ ծափողջոյնները չէին դադրեր։

Կասիա Ճղալեան՝ դաշնակով, Անահիտ Սարգիսեան՝ սրինգով եւ Ռուբէն Թէրզիպաշեան՝ դհոլով սքանչելի նուագակցութիւն մը ունեցան երգերուն։

Խմբավար Հայկ Սարգիսեան, որ կը ղեկավարէ Կոունկ երգչախումբին բոլոր համերգները, եւ որ, բաց աստի, անոր կազմութեան պատասխանատուն է, անգամ մը եւս հաստատեց իր ճկունութիւնն ու մեծ վարպետի իր անվիճելի կարողութիւնները։

Ան գիտէ ինքզինք պարտադրել համբերութեամբ, ուժականութեամբ եւ շատ նրբութեամբ, որովհետեւ, ան այս անգամուն ալ ոչ միայն ներկայացուց նոր հոյակապ երգեր, այլեւ հնարաւորութիւնը ստեղծեց, որ հանրութիւնը գնահատէ եւ ծափահարէ բազմաթիւ երիտասարդ մենակատարներ՝ սքանչելի ձայներով, որոնք որոշապէս արժանի էին այդ երեկոյ իրենց ուղղուած ծափողջոյններով։

Շատ գեղեցիկ համերգ մըն էր, որ անկեղծօրէն գնահատուեցաւ հայ հասարակութեան, իրենց եգիպտացի եւ օտար բարեկամներուն կողմէ, որոնք ջերմօրէն ծափահարեցին այս անմոռանալի համերգը։
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 20 Դեկտեմբեր 1986)

*Արեւ*, 17 Յունուար 1987, 71-րդ տարի, թիւ 20512, էջ 1

## Հ.Բ.Ը.Մ.Ի 80-ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ ԵՒ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՄԵՐԳ

ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ

Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մէմորիըլ հանդիսասրահին մէջ, Կիրակի, 14 Դեկտեմբերին, երեկոյեան ժամը ճիշդ 8-ին, տեղի ունեցաւ Ութսունամեակի յոբելենական հանդիսութիւնը եւ Կռունկ քառաձայն երգչախումբի տարեկան համերգը ղեկավարութեամբ Հայաստանի պետական մրցանակի դափնեկիր, խմբավար Հայկ Սարգիսեանի։

Հանդէսը կը հովանաւորէին Եգիպտահայ յարանուանութեանց պետերը։ Սրահը ամբողջութեամբ լեցուն էր հայ եւ օտար հանդիսականներով, Ազգային Իշխանութեան անդամներով, մամլոյ ներկայացուցիչներով, հոծ երիտասարդութեամբ եւ Հ.Բ.Ը.Մ.-ի տեղական եւ շրջանակային վարչութեանց կազմով, ինչպէս նաեւ Հ.Բ.Ը.Մ.-ի անդամներով եւ համակիրներով։

Հանդէսը սկսաւ եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.-ի քայլերգներու երգչախումբի կատարումով։ Երկու ժողովրդական երգերը, *Սարերի հովին մեռնիմ* եւ *Կողբա ելան սեւերը*, տրուեցան առաջինը թախծոտ եւ երկրորդը եռանդուն կերպով որոնցմէ ետք *Կարմիր վարդ* եւ ի վերջոյ Պ. Սեւակի խօսքով եւ Է. Յովհաննիսեանի

երաժշտութեամբ *Երեւան-Էրեբունի*ն։

Խօսք առաւ տիկին Արաքսի Տէօվլէթեան, որ մեկնելով Ալեքսանտր Վարպետեանի *Արփիական դիւցազներգութեան* մէջ բնորոշուած հայ ժողովուրդի երկու հակադիր գիծերէն պինդ ու փափուկ, կոպիտ եւ նուրբ ըսաւ. «Փոթորիկներէն, եղեռներու եւ հորդաներու արիւնռուշտ նախճիրներէն քարկծուած եւ պնդացած, կոպտացած եւ տառապած, եւ այդ իսկ տառապանքով յղկուած, փափուկ եւ նուրբ հոգիով, ապրելու եւ գոյատեւելու յամառութեամբ թրծուած մեր ազգը իր ծոցէն ծնեցուց հեռատես եւ աչալուրջ ղեկավարներ, որոնք ի տես իրենց ժողովուրդը ճնշող արհաւիրքներուն եւ ահաբեկումին, ապագայ պատասխանատուութեանց խոր գիտակցութեամբ յղացան եւ իրագործեցին Գաղափարը՝ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ մը, որ պիտի մարմնաւորէր հայոց աւանդական ազնուագոյն զգացումները եւ բարեգործութեան այլազան միջոցներով պիտի հետապնդէր ազգապահպանման եւ հայրենաշինութեան իտէալը։» Յարգելի բանախօսուհին տուաւ Բարեգործականի հիմնադրութեան պատմութիւնը, 15 Ապրիլ 1906-ին, Գահիրէի մէջ, ի ներկայութեան Պօղոս Նուպար փաշայի, Եագուպ Արթին փաշայի, Երուանդ պէյ Աղաթօնի, Գրիգոր Եղիայեանի, Կարապետ պէյ Շերիտճեանի, Մկրտիչ Անդրանիկեանի, տոքթ. Նազարէթ Տաղաւարեանի, Մկրտիչ Մարկոսօֆի, Առաքէլ Նուպարի եւ Յովհաննէս Յակոբեանի։

Անդրադարձաւ միութեան խորհրդանիշ ձեռքսեղմումին, հայ ժողովուրդի ընդհանուր շահուն «Շահը վերապրումի, շահը մշակոյթի վերստեղծման, շահը հայ ժողովուրդի լինելութեան» եւ եզրակացուց. «Ոեւէ անհատ կամ կազմակերպութիւն կ՚արդարացնէ իր գոյութիւնը, երբ կ՚օգտուի անցեալի փորձառութենէն, զգոյշ է, հեռատես եւ ուշադիր՝ ժամանակի պահանջներուն։

Թուեց Հ.Բ.Ը.Մ.-ի ութսունամեայ գործունէութեան զանազան փուլերը եւ յանգեցաւ ներկայ կացութեան իր 22 սեփական վարժարաններու ցանցին եւ օժանդակութեան 50 այլ դպրոցներու։ Իր պահած ակումբները, գրադարանները, պարախումբերը, երգչախումբերը, թատերախումբերը, երիտասարդական, մարզական, տիկնանց կազմակերպութիւնները, մշակութային կրթական եւ այլ յանձնախումբերը։ Յիշեց նաեւ իր լոյս ընծայած հայ ժողովուրդի պատմութեան եւ մշակոյթին վերաբերող աշխատասիրութիւնները, հայերէն եւ օտար լեզուներով։

Յիշատակեց Ալեք Մանուկեան Մշակութային Հիմնադրամը։ Հաստատելէ ետք թէ «Բարեգործականը իր 22 հազար հաշուող անդամներուն առատաձեռն նուիրատուութիւններով եւ հայավայել աշխատանքով, իր բարեսիրական, ընկերային եւ մշակութային ազգօգուտ, անշահախնդիր եւ ծաւալուն գործունէութեամբ, կը հանդիսանայ սփիւռքահայ գլխաւոր կազմակերպութիւնը եւ թէ ան՝ իր գործունէութեամբ կը ձգտի որ տարասփիւռ հայ ժողովուրդը ապրի որպէս

հայ, ներշնչարան ունենալով իր վերականգնած հայրենիքը, գոյատեւէ որպէս մէկ եւ անբաժանելի մասնիկը հայրենի ժողովուրդին եւ հասնի իր տեսլականին, հասնի իր դատի բարենպաստ լուծման։» Եւ եզրակացուց հետեւեալ խօսքերով. «Մեր մաղթանքն է որ հայ ժողովուրդին ներկայ եւ գալիք սերունդներուն բնաւորութեանը բնորոշ ըլլայ ոչ միայն հոգիի փափկութիւնն ու նրբութիւնը, այլ նաեւ այդ սերունդները մոռնալով իրենց «վէրքերն ու ոխերը» ձգտին հոգիի վեհութեան, ձգտին հոգիի բարձրութեան եւ հասնին անով ապահովուած Միութեան՝ եւ Զօրութեան»:

Տիկին Արաքսի Տէօվլէթեանի կուռ բանախօսութիւնը խոր ազդեցութիւն գործեց ներկաներուն վրայ։ Յատկանշական էին պարզութիւնը, յստակութիւնը եւ անկեղծութիւնը։

Փոքր ընդմիջումէ ետք օր. Վանիա Էքսէրճեան ապրումով եւ հասկացողութեամբ արտասանեց Պ. Սեւակի *Միանգամից* եւ Հ. Յովհաննիսեանի *Ինչո՞ւ եմ ծնուել* քերթուածները։ Իր ձայնին եւ շեշտին մէջ հարազատութիւն կայ եւ ինքնատրպութիւն։

Երգչախումբը շարունակեց իր համերգը Մակար Եկմալեանի *Սուրբ, Սուրբ*ով, Թաթուլ Ալթունեանի մշակումով ժողովրդական *Լուսնեակ գիշեր*ով։

Օր. Քրիստին Չատրճեան մեներգեց Գուսան Աշոտի *Ասա ինչո՞ւ դու լուռ ես* երգը իր ձայնի եւ հասկացողութեան բարձր որակով որմէ ետք խումբը՝ ժողովրդական *Ալագեազ* եւ Գ. Սինիի *Խնկի ծառ*ը։

Հարի Չէչճէնեան մեներգեց Սայաթ Նովայի *Քամանչա*ն իւրայատուկ ոճով։ Ալիս Սիմոնեան Գուսան Աշոտի *Ո՞ւր է* երգին մէջ արդէն վարժ երգչուհիի մը շնորհը ցուցաբերեց։ Կ. Զաքարեանի *Արաքսի արտասուքը* տրուեցաւ շնորհալի կերպով, մեր ծանօթ մեղեդիին նոր մշակումով *Զարթիր լաօ*ն մեզ բաւարարեց։

Անուշքա Չատրճեան Խ. Աւետիսեանի *Տաւիղ*ին մէջ բարձրաթռիչ ոլորտներու հասցուց երգը ինչպէս իր քրոջ՝ Քրիսթինի հետ Ռ. Ամիրխանեանի *Քեզ հետ իմ սէր* երգը այնքան խանդավառութիւն ստեղծեց որ ներկաները կրկնութիւն խնդրեցին անվերջանալի ծափահարութեան մէջ։

Ազգագրական երգերու շարքին Արփի Գալինեան *Աղջի հոռոմ*ի մենակատարութիւնը կատարեց լրջութեամբ եւ թափանցումով։

*Մշոյ աղջիկ*, *Մեր տան հիտեւ* եւ *Սասուն* ազգագրականները ստեղծեցին անօրինակ եռանդ ժողովուրդին մօտ։ Դեռ մեր հոգիին մէջ կ’արձագանգէ Ռաֆֆի Չէչճէնեանի մենակատարութիւնը։

Դաշնամուրի վրայ Կասիա Ճղալեան, սրինգով Անահիտ Սարգիսեան եւ տհոլը Ռուբէն Թէրզիպաշեանի մասնաւոր փայլ մը տուին հանդէսին։

Խմբավար Հայկ Սարգիսեան իր ղեկավարած քանըմէկ երգերուն ընթացքին եղաւ զուսպ եւ ուշադիր։ Խումբը բաղկացած է 16 աղջիկներէ եւ 12 երիտասարդներէ - թերեւս ասիկա բաւարար չըլլայ դասական մանաւանդ եկեղեցական

երաժշտութեան արտայայտութեան - բամբ ձայներու պակասը զգալի է, զիլերը գոհացուցիչ են։ Երգչախումբին կարգապահութիւնը եւ միասնականութիւնը ինչպէս նրբերանգներու անցումը անթերի է։ Յայտագրին տիրող մթնոլորտը ազգագրական ժողովրդային է ինչպէս նաեւ աշուղական երաժշտութիւնը որ ժողովուրդին սրտին կը խօսի։ Մեծապէս գնահատելի է ճիգը խումբին մաս կազմող անդամ-անդամուհիներուն։ Երգչախումբը իր կարելիութիւններէն աւելին տուաւ, եւ արդէն իր կազմաւորման երրորդ տարին է։

Համերգի վերջաւորութեան Հ.Բ.Ը.Մ.-ի տեղական յանձնաժողովի ատենապետ պր. Նորայր Տէօվլէթեան բեմ հրաւիրեց հայրենի անուանի գրող Սերօ Խանզադեան զինք որակելով մեր օրերու Րաֆֆին։

Սերօ Խանզադեան իր խօսքին մէջ շեշտը դրաւ արաբ եւ հայ ժողովուրդներու բարեկամութեան վրայ որ դարերու, հազարամեակներու աւանդութիւն ունի։ Հաղորդեց Հայաստանի գրողներու եւ հայրենի ժողովուրդին ողջոյնները, վեր առաւ Հ.Բ.Ը.Մ.-ի ութսունամեայ բեղուն, «բացառիկ» առաքելութիւնը, յաջողութիւն մաղթեց իր ղեկավարներուն, իր գոհունակութիւնը յայտնեց Կռունկ երգչախումբի յաղթական ելոյթին համար եւ շնորհաւորեց խմբավար Հայկ Սարգիսեանը։

Խօսելով մեր հայրենիքի մասին, մասնաւորաբար շեշտեց իր աննախընթաց յառաջդիմութիւնը ոչ միայն շնորհիւ հայ ժողովուրդի գերմարդկային ճիգերուն այլ մանաւանդ ռուս մեծ ժողովուրդի եղբայրական օգնութեան։ «Ազգային վերածնունդը, հայրենիքի բարգաւաճումը որքան ձեզ կը հրճուեցնէ, նոյնքան մեզի կարելիութիւնը կու տայ օգնելու սփիւռքահայուն որ ան պահէ իր ինքնուրոյնութիւնը, ազգային դիմագիծը»։ Իր գոհունակութիւնը յայտնեց որ եգիպտահայ գաղութը իր դպրոցները, մամուլը, ակումբները եւ աննման եկեղեցիները շէն եւ պայծառ կը պահէ։ Շեշտեց խաղաղութեան կարեւորութիւնը հայ ժողովուրդին համար եւ եզրակացուց թէ լուսաւոր եւ պայծառ է հայ ժողովուրդին ճանապարհը։

Արժանավայել կերպով տօնուեցաւ Հ.Բ.Ը.Մ.-ի ութսունամեակը Գահիրէի մէջ կենդանի խօսքով, երգով եւ հայրենի անուանի գրող Սերօ Խանզադեանի խօսքով եւ ներկայութեան մանաւանդ։

*Ջահակիր*, 25 Դեկտեմբեր 1986, նոր շրջան, թիւ 1075, էջ 1, 3-4

22 Մարտ 1987
Երևան

Սիրելի Հայկ

Մեծ հաճույքով լսեցի քո երգչախմբի ելույթը, որն ինքնին, ինչքան հասկացա, ազգային երգի շուրջ համախմբվելու մի խանդավառ արարողություն է եղել թե երգողների եւ թե ունկնդիրների համար։ Ինձ մշտապես գերել է արևմտահայերենով երգվող հայ երգի մաքուր ու անզարդ նկարագիրը, որը իհարկե, ամենից առաջ կոմիտասյան հայ երգի հատկանիշ է։ Ահա, արևմտահայերենով երգող հայուհին, որ քո խմբից է, երբ աշուղական երգ է երգում, հակառակ իր ցանկության անգամ, աշուղական երգին պատշաճ զեղեղանք մեջտեղ բերելու, էլի մնում է կոմիտասյան ավանդի երգչուհի, եւ սա, անշուշտ, միայն արևմտահայերենի հարց չէ, նաեւ հոգեւոր հղկվածության, բարձրակիրթ հոգեբանության արտահայտություն է։ Ինչ լավ է, որ քո երգչախումբը այդ տեսակ հայերենով երգելու բնական, բնածին կարողությունն ունի ու ինչ խոսք, դա ձեր հարստությունն է։

Ի՞նչ նոր ծրագրեր ունես։ Ինչպե՞ս է ընթանում քո աշխատանքը։ Վստահ եմ, որ հստակ գիտակցությունն ունես քո գործի կարևորության, քեզ անկոտրում կամք ու եռանդ եմ ցանկանում։ Ջերմ բարևներ քո տիկնոջը՝ Անահիտին, քո հարազատներին։ Ես կարծես թե լավ եմ, աշխատում եմ, բալետ եմ գրում Անդերսենի *Ձյունե թագուհին* հեքիաթի հիման վրա, սա անդրանիկ գործս է այս բնագավառում, որ հույսով եմ, ինձ պիտի օգնի հետագայում ավելի նշանակալի նյութի ձեռք զարնելու։ Մեծ հաճույքով եմ աշխատում այս բալետի վրա, հույսով եմ, շուտով այն կավարտեմ։

Խնդրում եմ, գրիր ինձ, ջերմ սիրով, լավագույն մաղթանքներով

Քո բարեկամ՝

Տիգրան Մանսուրյան

## ՀԵՌԱԿԱՅ ՀԱՐՑԱԶՐՈՅՑ
## ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՀԵՏ

ԱՆԴՐԱՆԻԿ ՏԱՔԵՍԵԱՆ

Նորածին մըն է Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի մասնաճիւղի Կռունկ երգչախումբը, որ կը մէկտեղէ Գահիրէի հայագաղութի երաժշտասէր երիտասարդ ուժերը:

1986 Դեկտեմբերին, ան տուաւ իր տարեկան համերգը՝ Հ.Բ.Ը.Մ.ի հիմնադրութեան 80-ամեակին նուիրուած հանդիսութեան հետ միատեղ:

Քսանութ երիտասարդ-երիտասարդուհիներ հաշուող այս երգչախումբին անդամներուն երգչախմբային կատարումի ունկնդիրներ անմիջապէս կ'անդրադառնան անոր հասունութեան, կատարողական վարպետութեան եւ հոգեպարար ու հարազատ մեկնաբանութեան:

Երգչախումբին ծնունդը եւ գոյատեւումը ամրապնդուած է անդամներուն անձնուիրութեամբ: Ինչպէ՞ս բացատրել այն երեւոյթը, երբ երգչախումբին աղեքսանդրահայ անդամները շաբաթը անգամ մը 200 քիլոմեթր ճամբայ կը կտրեն, մասնակցելու փորձերուն…:

Երգչախումբի կազմին կայունութիւնը յաւելեալ գրաւական մըն է եւ որակին բարձրացման, ըլլալով հաւաստիք մը հոն տիրող նախանձելի մթնոլորտին: Կռունկն ունի իր նուագախումբը՝ Կասիա Ճղալեան (դաշնամուր), Անահիտ Սարգիսեան (սրինգ) եւ Ռուբէն Թերզիպաշեան (դհոլ):

Երգչախումբին ծնունդին մէջ կարեւոր դեր ստանձնած է խմբավարը՝ Հայկ Սարգիսեան, որ ութամեայ երաժշտա-կրթական շրջան մը բոլորելէ ետք Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցին մէջ, վերադարձած է Եգիպտոս: Ան երգի ուսուցիչ է Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ, աշակերտներուն փոխանցելով մանաւանդ հայ ժողովրդական երգին հարստութիւնները՝ խաղիկները:

Սարգիսեան միաժամանակ խմբավարն է Գահիրէի պետական երաժշտանոցի փոքրերու 60 հոգինոց եւ մեծերու 70 անդամ հաշուող երգչախումբերուն, իսկ վերջերս, երիտասարդական կորովով ու խանդավառութեամբ, գործակցելով աղեքսանդրահայ գաղութի երիտասարդներուն հետ, կը ծրագրուի նոր երգչախումբ մը հիմնել Աղեքսանդրիոյ մէջ:

Երգի ու երաժշտութեան՝ արուեստներուն ամէնէն վերացականին մեկնաբանութիւնը դժուար աշխատանք է: Բայց առաւել դժուար է երբ այդ մեկնաբանուող երգը ծնունդ առած է արեւմտահայ հողերուն վրայ եւ ժողովուրդի մը կողմէ, որ հեռու է մեզմէ 70 տարիներու սփիւռքով:

Կռունկ երգչախումբը, այլ հայագաղութներու երգչախումբերուն պէս, կը ճգնի

մե՛րը մեզի վերադարձնել։

Ստորեւ հրատարակուող հարցազրոյցը կ՚արծարծէ հայ երգչախմբային արուեստի եւ կատարման որոշ հարցեր, դիտուած մասնագիտականօրէն։

**ՀԱՐՑՈՒՄ - Ե՞րբ կազմուեցաւ Կռունկ երգչախումբը։**

ՊԱՏԱՍԽԱՆ - Սեպտեմբեր 1983-ին կազմուեցաւ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի մասնաճիւղի երգչախումբը։ Կազմուած ատեն տակաւին չէր որոշուած անունը։ Առաջին ելոյթը ունեցաւ 1983-ի Դեկտեմբերին։ Կարճ ժամանակ ետք, որոշեցինք Կռունկ կոչել երգչախումբը։

**Հ.- Ի՞նչ նպատակ կը հետապնդէր Կռունկին հիմնումը։**

Պ.- Երգչախումբը միջոց եղաւ Հայաստանի մէջ իմ ուսման 8 տարիներս փոխհատուցելու, իսկ անդամներուն համար՝ մեր ծննդավայրին ու երկրորդ հայրենիքին յայտնելու մեր երախտագիտութիւնը եւ երաժշտութիւն ջամբելու հայ մատաղ սերունդին, պատանիներուն եւ երիտասարդներուն։ Մեր մտահոգութիւնը հետեւեալն էր. ինչպէ՞ս սիրցնել հայ երգը, հայ երգարուեստը, հայ մշակոյթը։ Այն մշակոյթը, որ պատճառ եղաւ մեր նախանձելի դիրքերու նուաճումին։ Այդ նրբաթել ասեղնագործութիւնը, որ պատճառ եղաւ որ մենք միշտ աքսորի ենթարկուինք, որովհետեւ տաղանդաւոր ազգ եւ տաղանդաշատ անհատներ էինք։

Կարեւոր մտահոգութիւն էր թէ ինչպէս կարելի էր երգի միջոցով տալ, բացայայտել եւ հասկցնել մեր մատաղ սերունդին թէ մենք հարուստ ենք։ Ճիշդ է որ տարտղնուած ենք սփիւռքի մէջ, բայց մենք ունինք եւ հպարտանքով ալ կ՚ըսենք որ մենք կը տիրանանք գանձերու։

**Հ.- Համառօտակի՝ ի՞նչ է խմբերգային արուեստը։**

Պ.- Խմբերգային արուեստը ծնունդ առաւ 16-րդ դարուն՝ Պախ, Կրիկորիըն, Փալեսթրինա հռչակաւոր երաժիշտներուն կողմէ, Եւրոպայի մէջ։ Հարցեր եղան թէ իբր բազմաձայնութիւնը կը խանգարէ միաձայնութեան կամ խօսքին ու միտքին, բայց երգի այս սեռը մեծապէս զարգացաւ։

19-րդ դարու վերջաւորութեան, հայ ժողովուրդն ալ սկսաւ Կարա Մուրզայի - հայ բազմաձայնութեան նախահօր - միջոցով հայ միօրինակ, միանման մեղեդին դարձնել բազմաձայն։ Երկրորդը Եկմալեանն էր, յետոյ՝ մեր հրաշք վարպետը՝ Կոմիտասը։

Խորհրդային Հայաստանի գոյառումէն ետք, հայ երաժիշտները փորձեցին ու տակաւին կը փորձեն բազմաձայնի վերածել հայ ժողովրդական երգերը եւ բազմաձայն երգեր յօրինել։

Այլ խօսքով, հարիւր տարի է որ բազմաձայն երաժշտութիւն կը յօրինուի հայ ժողովուրդին մէջ։ Նորութիւն է։ Ինչպէ՞ս կարելի է այս նորը ժողովրդականացնել։ Շատ դժուարին հարց է։ Եւ հետեւաբար պէտք է ճիշդ մօտեցում ունենալ։ Ներկայիս, Խորհրդային Հայաստանի մէջ, ճիշդ է որ Չեքիճեան, Էմմա Ծատուրեան եւ

այլ խմբավարներ, ինչպէս նաեւ խմբերգային ընկերութիւնը ունին մեծ թիւով երգչախումբեր, որոնք կ'երգեն դասական, ժողովրդական եւ այլ երգեր, բայց հարց է թէ որքանով ժողովուրդը կրնայ կապուիլ այդ խմբերգային արուեստին։ Այդ պատճառով է որ մայր հայրենիքին մէջ վերջերս ստեղծուեցան ազգագրական երգչախումբեր եւ ունին մեծ ժողովրդականութիւն։ Հիմա կարծէք մրցակցութիւն մը կայ դասականի եւ ազգագրականի միջեւ։

**Հ.- Ի՞նչ է երգչախմբային խմբավարին դերը սփիւռքի մէջ։**

Պ.- Խմբավարը, սփիւռքի մէջ չի կրնար իր երգացանկը պատրաստել լոկ ազգագրական կամ դասական երգերով։ Այս երկու սեռերուն հանդէպ պէտք է շատ ուշադիր ըլլալ, որպէսզի անոնք զուգընթաց ըլլան երգացանկին մէջ, ընդգրկուին դասական հարուստ խմբերգները եւ նաեւ չմոռցուին ժողովրդական, գուսանական, ազգագրական երգերը։ Այս հիմքի վրայ է որ ուզեցինք աշխատիլ։ Սխալ կ'ըլլար եթէ աշխատէինք միայն դասականի կամ ազգագրականի վրայ։

**Հ.- Ի՞նչ հիմամբ ընտրած էք Կռունկի երգացանը։**

Պ.- Չենք կրնար Կոմիտասի *Գարուն ա*ն, *Լոռուայ զութան*ի երգը, կամ զութանի եւ կալի երգերը սորվեցնել նորակազմ երգչախումբի մը. շատ ծանր են, շատ ծանր կը լուին եւ դիւրըմբռնելի չեն ըլլար եւ կարծէք թէ քիչ մը շատ հեռու կ'ըլլայ սփիւռքի հայ երիտասարդին երաժշտական ճաշակէն։ Չենք կրնար շատ հեշտ աժան ձեւով հայ երգերը տալ՝ ինչպէս մեր այսօրուան էսթրատային կարգ մը հայ երգիչները կ'ընեն։ Ասիկա շատ պիտի աժանցնէր մեր երգարուեստն ու մշակոյթը։ Պէտք է մշակուած ծրագիր ունենալ՝ թէ ինչպէս, կամաց-կամաց, սանդուխ առ սանդուխ, հայ երգարուեստը իր ակունքներով՝ նորահաս ու մատաղ սերունդներու միջոցով համերգի ընթացքին թէ ձայներիզներով, վերադարձնել ժողովուրդին։

Այդ ծրագիրը պէտք է ընդգրկէ գուսանական երգեր, որոնք շատ հին են, աշուղական երգերը՝ սիրային երգերը, պէտք է ըլլան նաեւ գեղջկական երգերը, քաղաքային երգերը, հայրենասիրական երգերը, ինչպէս նաեւ ազգագրական երգերը։ Իսկ այս բոլորին համատեղումը շատ դժուար է, որովհետեւ նոյն խումբը պիտի կատարէ տարբեր սեռերու եւ տեսակներու երգեր։

Երանի սփիւռքի մէջ ունենայինք բազմաթիւ երգչախումբեր, որոնցմէ իւրաքանչիւրը կատարէր իր ծիրի մէջ իրեն վստահուած դերը՝ արհեստավարժ մակարդակով եւ ուրոյն մատուցողականութեամբ։ Օրինակի համար, ըստ իս, Միջին Արեւելքի մէջ՝ Սուրիա, Լիբանան, Եգիպտոս եւ այլն, գուսանական երգերը (յատկապէս գուսան Աշոտի, Շերամի) իրենց լատերով (ձայներուն յաջորդականութիւնը, որուն վրայ կը ստեղծուի երգը) շատ մօտ են տեղաբնիկ երգերուն։ Գուսանական լատերը շատ մօտ են միջին արեւելեան երաժշտութեան իրենց հարմոնիք կառուցուածքով, եւ այն անհատը որ կ'ապրի Միջին Արեւելքի մէջ ու կը լսէ արաբական երաժշտութիւնը, արեւելեան երաժշտութիւնը, իրեն համար

շատ դիւրամատչելի կ՚ըլլան գուսանական երգերը։ Վստահաբար ատիկա դժուար ըմբռնելի կ՚ըլլայ ովկիանոսէն անդին։ Առոգանութիւնը եւս օղակող մեծ դեր կը կատարէ։ Միջին Արեւելքի մէջ հայ երիտասարդին առոգանութիւնը այլ է Ֆրանսայի թէ Ամերիկայի մէջ ապրող հայ երիտասարդին առոգանութենէն։ Իսկ առոգանութիւնը կարեւոր դեր կը կատարէ երգարուեստին մէջ. մեր երգերը յօրինուած են բառի-խօսքի ելեւէջներու յաջորդականութեամբ։ Շատ դիւրութեամբ կրնանք *Սարերի հովին մեռնեմ*ը երգել հոս եւ զգալ զայն, բայց շատ դժուար է զայն զգալը Արեւմուտքի երկիրներուն մէջ։

Պէտք է ընտրել ժողովուրդին ազդող երգեր՝ հայրենասիրական երգերը, որոնց ընտրութեան ատեն պէտք է ուշադիր ըլլալ, նկատի առնելով օտար հայրենասիրական երգերուն ազդեցութիւնը եւ ընտրել յարաբերաբար մաքուր եւ անխաթար, անեղծ հայրենասիրական երգերու շունչը տալ։

Ինչ կը վերաբերի ազգագրական երգերուն, ասոնք եւս կարելի չէ աժան ձեւով տալ, պիտի փորձել երկձայն, եռաձայնի վերածել, քիչ մը գոյն դնել անոնց մէջ, որպէսզի պարզունակ չդառնայ ազգագրականի կշիռը եւ չաժանցնէ քու դասական մատուցման վարկդ։ Կարելի չէ միանման կշռոյթի երգեր տալ. չմոռնանք որ սփիւռքի մէջ մենք հեռու ենք ազգագրականէն, քանի որ ազգագրականը հիմնուած է հողի վրայ, իսկ մենք մեր հողերուն վրայ չենք եւ միայն շունչը պահպանուած է։

Կարեւոր է անդրադառնալ նաեւ եկեղեցական երաժշտութեան որ սփիւռքի մէջ իր ծանրակշռութեամբ մեծ դեր կը կատարէ։ Մեր խմբերգային յայտագրերը պէտք է ընդգրկեն զանոնք՝ շատ գեղեցիկ, նուրբ, երկնային ձեւով մատուցելու ժողովուրդին։

**Հ.- Ի՞նչ երգերէ կը բաղկանայ Կռունկի երգացանկը։**

Պ.- Մեր երգացանկ ընդգրկած ենք Գուսան Աշոտի եւ Աշուղ Շերամի երգերը, իբրեւ հայ երիտասարդին դիւրամատչելի լատ։ Քնարական երգերու շարքին, ամէնէն նշանաւորներէն՝ ժամանակակից հայրենի յօրինող Խաչատուր Աւետիսեանի քնարական մեղեդային կառուցուածքի երգերը, ինչպէս նաեւ Տիգրան Մանսուրեանի, Աշոտ Սաթեանի եւ այլ յօրինողներու երգեր։

Երգացանկին մաս կը կազմէ Կոմիտասը (ի դէպ, տակաւին մենք չենք հասած հոն ուր ամբողջութեամբ Կոմիտաս երգենք)։ Չափազանցօրէն օգտագործած ենք Թաթուլ Ալթունեանի ժողովրդական երգերը։ Թաթուլ Ալթունեանի ժողովրդական երգերու տաղանդաւոր մշակողն էր։

Երգացանկ ընդգրկած ենք նաեւ Գուսան Աշոտի երգերը։ Ճիշդ է որ մենակատարումներ կան, բայց ասոնք խմբային յենք ունին, օգտագործած ենք խմբերգը, երկու նպատակով. նախ՝ որպէսզի խումբն ալ սորվի երգը եւ դառնայ խմբերգային երգ, յետոյ՝ «խմբերգային երգեցողութիւնը» ժողովուրդ կը նշանակէ...։ Ժողովուրդ-երգչախումբը միշտ կ՚ընկերակցի մենակատարին։ Գուսան Աշոտէն

երգած ենք *Աստ ինչու դու լուռ ես*, *Ծովաստղիկ*, *Օճախում*, եւ այլն, Շերամէն՝ *Օլոր մոլոր*, ընտրած ենք նաեւ տաղեր՝ *Հաւուն հաւուն*, *Սուրբ սուրբ*, *Քրիստոս ի մէջ*: Փորձած ենք եկեղեցական երգերը աւելի հաճելիօրէն տալ ժողովուրդին:

Ընդգրկած ենք նաեւ հայրենասիրական երգեր՝ *Զարթիր լաօ*, *Բամ փորոտան*, նաեւ ազգագրական շարք մը երգեր՝ *Նինամ-նինամ*, *Քարփի ծէրին*, *Հայ մէրիկ*, *Մշոյ աղջիկ*, *Մեր տան յետեւ*, *Սասունի օլորը*...:

Շարքին մաս կը կազմեն նաեւ խորհրդահայ յօրինողներէն Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի*ն, Կարօ Զաքարեանի *Կարմիր վարդ*, *Մայր Արաքսի ափերով*, ինչպէս նաեւ Առնօ Բաբաջանեանի *Ազգ փառապանծ*ը եւ այլն:

Բայց այս բոլորին մէջ ամէնէն կարեւորը տաղանդն է. հայ անհատը թաքնուած տաղանդ ունի, եւ անոր շնորհիւ է որ մենք այսքան դարեր կը գոյատեւենք:

**Հ.- Ինչպէ՞ս կարելի եղաւ կազմել այս երգչախումբը եւ ի՞նչպիսի դժուարութիւններ ունեցաք:**

Պ.- Մասնագիտական տեսակէտէ նայելով հարցին, իւրաքանչիւր 10 անհատէն մէկուն մէջ կը գտնենք թաքնուած ձայնային տաղանդ մը. եւ ահաւասիկ այս նօսրացած գաղութին մէջ մենք համախմբեցինք այդ ձայնային տաղանդները, որոնք թաքնուած էին: Շատ գեղեցիկ, շատ արտայայտչական ձայներ կան, որոնց պատշաճ ու յարմար երգ պէտք է ընտրել: Ոեւէ մէկը չի կրնար որեւէ երգ երգել, եթէ իր ձայնային տուեալները չթոյլատրեն: Մարդիկ կան, որոնք կրնան միայն գուսանական երգեր երգել, ուրիշներ միայն եկեղեցական, կամ քնարական, հայրենասիրական, ազգագրական եւ այլն:

Դժբախտաբար կը հանդիպինք անհատներու, նոյնիսկ երգիչներու, որոնք ամէն տեսակ երգ կ'երգեն... եւ չեն տպաւորեր բոլոր սեռերուն մէջ: Մխալ երեւոյթ է. ենթական բնազդաբար կ'երգէ այն սեռի երգեր, զորս ինք լաւ կը մեկնաբանէ:

Գահիրէի մէջ մենք հետեւելով այս սկզբունքին, ընտրութիւններ կատարեցինք եւ ունեցանք մենակատարներ. յայտնի են Անուշքա Չատրճեան եւ քոյրը՝ Քրիսթին, ինչպէս նաեւ Ռաֆֆի, Հերի Չէչճէնեաններ, Արփի Գալըճեան, Սիլվա Մարգարեան, Ալիս Սիմոնեան, Լուսի Տէր Ներսէսեան, որոնք ստանալով իրենց ձայնի տուեալներուն համապատասխան յարմարագոյն երգերը, կրցան հռչակ ունենալ եւ տպաւորել եգիպտահայ ունկնդիրները:

Կռունկ երգչախումբին կազմութեան թերեւս միակ խոչընդոտը անդամներու հարցն էր: Հաւանաբար բոլոր գաղութներուն պէս, հոս եւս նոյն տարրերուն կը հանդիպիս ակումբային զանազան յանձնախումբերուն մէջ. պասքէթպոլ, սկաուտութիւն, թատրոն... այս է պատճառը որ չենք կրնար ազատ ու անկաշկանդ աշխատիլ՝ թէ փորձերու ժամանակ եւ թէ այլ պարագաներու: Հաւանաբար այս դժուարութիւնը գաղթօճախին թիւին սահմանափակութենէն է:

Կարեւոր հարց մըն է ուրիշ երգչախումբերու չգոյութիւնը: Նոյնինքն եգիպ-

տացին՝ այս երկրին մէջ երգչախումբեր շատ չունէր, եղածներն ալ բարձրորակ չէն եւ չեն կրնար մեր տղոց նախանձը գրգռել ու մրցակցութիւն յառաջացնել:

Երգչախումբին թեքնիք կողմին գալով, շատ կարեւոր կը գտնենք տխիփլինը, որովհետեւ մենք բծախնդիր ժողովուրդ եղած ենք. ասիկա կ'երեւի մեր խաչքարերէն, եկեղեցիներէն, մանրանկարչութենէն, մշակոյթէն, ընդհանրապէս: Ուշադիր եւ բծախնդիր պիտի ըլլալ համերգի տեւողութեան, յայտագրին կազմութեան, համազգեստներուն... ամէն ինչին, որպէսզի ժողովուրդը զգայ եւ ճաշակէ երգարուեստը:

Այլ տեսակի դժուարութիւն կը ներկայացնեն երգին բառերը, մանաւանդ եթէ բարբառային ըլլան: Երգչախումբին հետ աշխատելու ընթացքին միշտ ի մտի պէտք է ունենալ ժողովուրդը, որ համերգին իբրեւ քննիչ պիտի ներկայանայ, նկատի պէտք է առնել երգերուն ժողովրդականութեան հարցը: Պէտք է ժողովուրդին տալ փունջ մը՝ կազմուած հայ երաժշտութեան բոլոր սեռերէն:

**Հ.- Ինչո՞ւ Կռունկ մկրտեցիք երգչախումբը:**

Պ.- Խումբի կազմութենէն մէկ-մէկուկէս ամիս յետոյ, երբ ձայնախումբերը կազմուեցան, տեսանք որ Կռունկ անուանումը շատ յարմար է իրենց. որովհետեւ կռունկի ձայնը քաղցր-տխուր ձայն է: Չենք անդրադառնար տակաւին կռունկ բառի նշանակութեան մասին: Կռունկը հայ երգարուեստին ու գրականութեան մէջ պանդխտութեան խորհրդանիշն է, իսկ ձայնային առումով տխուր եւ թախծոտ ձայն կը պարզէ: Անկեղծօրէն՝ մինչեւ այսօր, Կռունկ երգչախումբին ձայնը մեզի համար քաղցր ու տխուր ձայն է:

Խմբերգային կատարումները ունին նաեւ դաստիարակչական կողմ: Պէտք է գուրգուրալ ժողովուրդին, որպէսզի բարձրացնէ իր երաժշտական ճաշակը: Պէտք է գիտնան երէց, միջին թէ կրտսեր հայ սերունդները թէ մենք հարուստ ենք, գանձեր ունինք, որոնք պէտք է տալ, ներկայացնել ժողովուրդին:

*Զարթօնք*, օրաթերթ, Պէյրութ, 1 Մարտ 1987, էջ 3-4
*Արեւ*, 28 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20596, էջ 2. 29 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20597, էջ 2

ԷՈՒԸՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՀՈԼ, ԳԱՀԻՐԷ

ԵՐԵՔՇԱԲԹԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1987

ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ
ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ



ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

Երեքշաբթի, 6 Յունուար 1987
երեկոյեան ժամը ճիշդ 6·30–ին
ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ ԱՍԸՐԹ
ՄԵՄՈՐԻԸԼ ՀՈԼԻՆ ՄԷՋ

# ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ Հ·Գ·Մ·Ի
ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ

Մասնակցութեամբ՝ Գահիրէէն՝ Հ·Բ·Ը·Մ·ի, Հ·Մ·Ը·Մ· Նուպարի, Հայկական ընթերցասրահի, Իիր Իսթ, Կալուսեան Սրահի, Աղեքսանդրիայէն՝ Հ·Բ·Ը·Մ·ի, Հ·Մ·Ը·Մ· Նուպարի եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութեան Երիտասարդական մարմիններուն

Հովանաւորութեամբ

**ԳԵՐՇ. Տ· ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց
Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՍԱՐԳԻՍ ՓԱՓԱԶԵԱՆԻ**

Ատենապետ Հայ Ազգային Հիմնադրամի
Օրուան բանախօս

**ԴՈԿՏ. ԴԱՒԻԹ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ**

Երեւանի Համալսարանի Արեւելագիտութեան ֆակուլտէտի դոցենտ

**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ**

որուն մասնակցութիւնը կը բերէ ջութակահար

**ՆԱՅԻՐԻ ՔՐԷՏԵԱՆ-ՓՈՒՉԻԿԵԱՆ**

Դաշնակի ընկերակցութեամբ

**ՏԷՅՎԻՏ ՀԷՅԼՁԻ**

Ինչպէս նաեւ
Հ·Բ·Ը·Մ·Ի «ԿՌՈՒՆԿ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ
Ղեկավարութեամբ

**ԽՄԲԱՎԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 3 Յունուար 1987, 71-րդ տարի, թիւ 20501, էջ 4

ՅԱՅՏԱԳԻՐ

| | |
|---|---|
| Բացման Խօսք | Պր. Սրեգ Եափուճեան |
| Դաշնակ | Օր. Լուսիկ Ծաճուեան |
| Արտասանութիւն | Օր. Անի Օհաննեան |
| Կիթառ | Օր. Ռիթա Փալապըյըքեան |
| Դաշնակ | Պր. Կարէն Լէյլէկեան |
| Հայկական պար | Տիգրան Երկաթի Խումբը |
| Պատմական Հայաստանի մայրաքաղաքները | Հ.Գ.Մ.— Կոկանեան Երիտասարդներ |
| Խօսք | Դոկտ. Դաւիթ Յովհաննիսեան |
| | Դադար |
| Կուինկ Երգչախումբ | Ղեկ. Հայկ Սարգիսեան |
| Ջութակ | Տիկ. Նայիրի Բրէսեան-Փուշիկեան |
| Խօսք | Նախագահ |
| Փակման խօսք | Սրբազան Հայր |

ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ

Յայտարարութիւն (շարունակութիւն)

## Հ.Գ.Մ.Ի ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ 27-ՐԴ ՓԱՌԱՏՕՆԸ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Գեղարուեստական յայտագրին առաջին մասին հիմնական թեման, սակայն, «Պատմական Հայաստանի սահմաններն» էին, զորս ներկայացուցին Հայ Գեղարուեստասիրաց Միութեան եւ Կոկանեան

Սրահի երիտասարդ-երիտասարդուհիները, որոնք ճիգ չէին խնայած իրենց սեփական ջանքերով գլուխ հանելու դժուարին գործ մը։ Այսպէս ուրեմն, լուսապատկերներով ցոյց կը տրուէին պատմական Հայաստանի մայրաքաղաքները՝ համապատասխան քարտէսներու վրայ, մինչ երիտասարդներուն ձայները կը կարդային պատմական տուեալներն ու տեղեկութիւնները՝ յենքի երաժշտութեան մը ընկերակցութեամբ, եւ, ապա, ցոյց կը տրուէին այդ մայրաքաղաքներէն տեսարաններ, որոնք այսօր աւա՜ղ, աւերակներու վերածուած են։

Այս ցուցադրութեան տեքստերը պատրաստած էին ընկերներ Կասիա Ճղալեան եւ Արեգ Եափուճեան, քարտէսները՝ Օր. Ալին Պըլըքտանեան եւ ընկեր Լեւոն Գարակէօզեան, երաժշտութիւնն ու ձայնագրութիւնը՝ խմբավար Հայկ Սարգիսեան, որուն, ձայնագրութեան մէջ օժանդակած էր ընկեր Ռոպէր Թաշճեան։ Իսկ տեքստերը կը կարդային ընկերներ Կասիա Ճղալեան եւ Արեգ Եափուճեան, Օր. Թալին Թուլումպաճեան եւ Պր. Ժորժ Սիմոնեան։

Շատ ուսանելի ցուցադրութիւն մըն էր, միայն թէ, եթէ յենքի երաժշտութիւնը քիչ մը աւելի ցած ձայնասփռուէր, առաւել եւս տպաւորիչ պիտի ըլլար։

Երիտասարդական այս փառատօնները ամէն տարի կը յատկանշուին արտասահմանէն հրաւիրուած բանախօսով մը։ Այս տարի, բարեբախտութիւնը ունեցանք ունկնդրելու մայր հայրենիքէն եկած ձայն մը, յանձին Երեւանի պետական Համալսարանի Արեւելագիտութեան ամբիոնի դոցենտ, դոկտ. Դաւիթ Յովհաննիսեանի, որուն բովանդակալից խօսքը կու տանք կողքի սիւնակին մէջ։

Դադարէ մը ետք, սկսաւ յայտագրին երկրորդ մասը, որ միշտ վերապահուած կ'ըլլայ արհեստավարժ ելոյթներու։ Այս անգամ, ահա քանի տարի է, առաջին առթիւ բեմը գրաւեց Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը՝ ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։ Երգչախումբին ելոյթը, ամբողջական յայտագրով մը, տակաւին երեք շաբաթ առաջ վայելած էինք։ Սակայն, կարծէք ատիկա շա՜տ շատոնց ըլլար. ժողովուրդը այս անգամ ունկնդրեց երգչախումբին ճոխ յայտագրէն փոքրիկ փունջ մը միայն, որ փոխանակ յագեցնելու հասարակութեան երգի պապակը, առաւել եւս սրեց զայն... որովհետեւ, Կռունկ երգչախումբին ելոյթները, պայծառ երկնքի մը վերեւ կամար կապած ծիածանի մը կը նմանին, որուն մէկ ծայրին Եգիպտոսն է, իսկ միւս ծայրին՝ մայր հայրենիքը։

Երգերուն մենակատարի բաժինները կատարեցին Օրք. Ալիս Սիմոնեան եւ Արփի Գալըճեան, եւ Պր. Րաֆֆի Չէչճէնեան, որոնք հիացական ծափեր խլեցին ներկաներէն։ Իսկ երաժշտական ընկերակցութիւնը կը կատարէին, դաշնակով՝ ընկերուհի Կասիա Ճղալեան, սրինգով՝ Տիկին Անահիտ Սարգիսեան, եւ դհոլով՝ Պր. Ռուբէ՜ն Թերզիպաշեան, աւելցնելով հմայքը երգերուն։

Կեցցե՜ս սիրելի Հայկ, եռանդդ անսպառ եւ ճպոտդ միշտ դալար մնան։

*Արեւ*, 24 Յունուար 1987, 71-րդ տարի, թիւ 20518, էջ 2-3




ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱԾ Է՝

"ԿՌՈՒՆԿ" ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՁԱՅՆԵՐԻԶԸ

(4-րդ քասէթ)

Ղեկավարութեամբ՝ խմբավար ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

Դաշնամուր՝ Կատիա Ճղալեան
Սրինգ՝ Անահիտ Սարգիսեան
Դրհոլ՝ Ռուբէն Թէրզիպաշեան

Երգչախումբը կը կատարէ Հայկական ժողովրդական, Եկեղեցական, Ազգագրական եւ ռոհմիկ երգեր։ Մեներգողներ՝ Անչուքա եւ Քրիստին Զատըրճեան, Արփի Գալընեան, Ալիս Սիմոնեան եւ Ռաֆֆի Զէչճէնեան։

ԳՆԵՑԷՔ ԵՒ ՆՈՒԻՐԵՑԷՔ

Դիմել՝
Գրասենեակ — Հեռ. 919636
Պր. Քրիս Միքայէլեան — Հեռ. 748801
Պր. Նորայր Տէօվլէթեան — Հեռ. 741481

Յայտարարութիւն
*Արեւ*, 2 Փետրուար 1987, 71-րդ տարի, թիւ 20525, էջ 4

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ
*Հինգշաբթի, 26 Փետրուար 1987, կ.ե. ժամը 9*
*Հ.Գ.Մ.ի ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

*Հովանաւորութեամբ*
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
*Բարեխնամ Առաջնորդի Եգիպտահայոց*
*ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ*
**ՊՐ. ԿԱՐՊԻՍ ԵԱԶԸՃԵԱՆ**
**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ**
*որուն ընթացքին պիտի ներկայացուի*
*ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԵՐՋԻՆ ՏԵՍԱՐԱՆԸ*
**ԲԵՄԱԴՐՈՒԹԵԱՄԲ**
**ՊՐ. ԳՐԻԳՈՐ ՓԱՐԹԱՄՃԱՆԻ**
*Խաղարկութեամբ ՊՐ. ԺՈՐԺ ՍԻՄՈՆԵԱՆԻ*
*ՕՐ. ԱՐՓԻ ԳԱԼԸՆԵԱՆԻ*
*Տեղի պիտի ունենայ*
*ԱԽԱՆԴԱԿԱՆ ՔԷՇԿԷԿԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ*
*Սիրալիր հրաւէր բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 21 Փետրուար 1987, 71-րդ տարի, թիւ 20542, էջ 3

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Գեղարուեստական յայտագիրը աւարտեցաւ Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբին անդամ-անդամուհիներէն խումբի մը՝ Վարդանանց նուիրուած երգերու խմբովին երգեցողութեամբ, որ չհասկցանք, թէ ինչու տեղի ունեցաւ Սրահին ամէնէն ետեւը հաւաքուած, ոմանք նոյնիսկ կռնակը հասարակութեան դարձուցած, առանց հաղորդուելու անոր հետ։

*Արեւ*, 27 Փետրուար 1987, 71-րդ տարի, թիւ 20547, էջ 1

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ
(ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ
ՎԱՐԺԱՐԱՆ, ՊՈՒԼԱՔԻ ՄԱՄՆԱՃԻՒՂ)

ՇԱԲԱԹ, 21 ՄԱՐՏ 1987

ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆ ԵՒ 1985-1986 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ
ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ – ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ
ՊՈՒԼԱՔԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ
*Շաբաթ, 21 Մարտ 1987 կ.ե. ժամը 7–ին*
*ԴՊՐՈՑԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

# Մայրերու Տօն Եւ Ամավերջի Հանդէս 1985-1986

*Հովանաւորութեամբ*
*Թեմիս Բարեխնամ Առաջնորդ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Նախագահութեամբ*
*Պատկ. Քաղաքական Ժողովի Յարգարժան Ատենապետ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

*Սիրալիր Հրաւէր Բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 14 Մարտ 1987, 71-րդ տարի, թիւ 20560, էջ 3

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԸ ԵՒ 1985-1986 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Անցեալ Շաբաթ, 21 Մարտ 1987, երեկոյեան ժամը 7-ին, Գալուստեան Ազգային Վարժարանի սրահին մէջ, տեղի ունեցաւ 1985-1986 դպրոցական ամավերջի հանդէսը, հովանաւորութեամբ թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, եւ նախագահութեամբ, Քաղաքական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեանի:

Նախ, բացատրութիւն մը տանք, թէ ամավերջի հանդէսը ինչու այսքան ուշ տեղի կ'ունենայ: Ուրեմն, տրուած ըլլալով որ Սենեուիէի պետական քննութիւններուն արդիւնքները կը հրապարակուին երբ արդէն դպրոցական տարեշրջանը վաղուց աւարտած է, մեր ազգային վարժարաններն ալ ստիպուած կ'ըլլան ամավերջի հանդէսները կատարելու յաջորդ տարեշրջանին ընթացքին:

Իսկ այս տարի, այս ամավերջի հանդէսը զուգադիպելով Մայրերու օրուան, հանդիսութիւնը կը նշէր նաեւ գարնանային չխամրող այս տօնը:

Հանդիսութեան ներկայ էր հոծ բազմութիւն մը, որուն մէջ մասնաւորաբար կ'երեւէին Թեմական Ժողովի Ատենապետ Պր. Բօլ Քիլիտճեան, Քաղաքական Ժողովի փոխ Ատենապետ Տէր եւ Տիկին Երուանդ Թումայեանց, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան ցկեանս նախագահ ընկեր եւ ընկերուհի Վահագն Տեփոյեան, Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ ընկեր եւ ընկերուհի Նորայր Տէօվլէթեան:

Ներկաները, երբ դպրոցին շրջափակէն ներս կը մտնէին, արդէն իսկ ականատես կ'ըլլային հանդիսութեան սկզբնաւորութեան: Այսպէս, բակին ձախ կողմը, ճամբուն ամբողջ երկայնքին, շարուած էին պատի թերթեր, որոնց գրութիւնները, գծագրութիւնները պատրաստած էին աշակերտներուն կողմէ կազմուած գեղարուեստական, մարզական եւ այլ յանձնախմբերը:

Ապա, նախքան սրահ մուտքը, նախասրահին պատերը զարդարուած էին աշակերտներուն գծած նկարներով եւ ձեռային աշխատանքներով: Ցուցադրուած էին բազմաթիւ գծագրութիւններ, կաշիէ առարկաներ, մաքրամէներ, լաթով շինուած պուպրիկներ, եւ այլն: Վարժարանին գծագրութեան ուսուցչուհին է Օր. Սիւզան Տէր Ներսէսեան, որ աւարտած է Գեղարուեստասիրաց Ակադեմիան, եւ այժմ նուիրուած է հայ մանուկներուն դաստիարակութեան:

Եւ ահա, վարժարանին աշակերտները եկան տեղ գրաւելու բեմին վրայ, եւ իրենց երգի ուսուցիչը՝ խմբավար Հայկ Սարգիսեանի ձեռքի շարժումներուն տակ, անոնք սկսան երգել եգիպտական պետական քայլերգն ու վարժարանին քայլերգը, զորս հանդիսականները ունկնդրեցին յոտնկայս:

Այնուհետեւ, սկսաւ գործադրութիւնը ճոխ եւ այլազան յայտագրի մը, որ հակառակ իր խճողուածութեան, բնաւ ձանձրալի չեղաւ, այնքան որ արագ մէկ երգը միւսին, մէկ արտասանութիւնը միւսին կը յաջորդէր։

Այսպէս, աշակերտները երգեցին տասնեւեօթը երգեր՝ ժողովրդական, ազգագրական, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։ Բոլոր երգերուն դաշնակով կ՛ընկերակցէր ընկերուհի Կասիա Ճղալեան, իսկ դհոլով՝ աշակերտ Լեւոն Տէր Յակոբեան։

Հայկ Սարգիսեանի մանկավարժական մեթոտին մաս կը կազմէ առիթ տալ բոլոր անոնց, որոնք քիչ թէ շատ ձայնաւոր են, որ մենակատարումներով հանդէս գան։ Այնպէս որ փոքրիկներէն խումբ մը, իրենց մանկական անուշ թոթովանքով, որպէս մենակատարներ ելոյթ ունեցան երգչախումբին հետ, անոնք էին՝ Սազօ Մարթայեան, Ժան-Փիէր Աւագեան, Լոռնա Թրայեան, Գոզօ Գազազեան, Ռոպերթ Միլատ, Արամ Ջէմանեան, Րաֆֆի Պօղոսեան։ Իսկ մեծերէն՝ Անի Պարսում, Թալին Կապէեան, Մարի Ժոզէֆ Ֆարակ։ Իսկ *Այ ֆորկա* կատակ-երգին մէջ ծոյլիկին դերը կատարեց Րաֆֆի Հեղինեան։

Իսկապէս որ գովելի է խմբավար Հայկ Սարգիսեանը, որ աշակերտական երգչախումբ մը պատրաստած է, շարունակելով վարժարանին աւանդութիւնը, բայց անոր տալով իր անհատական, ստեղծագործական կնիքը, յայտագրին մէջ միշտ մտցնելով նորանոր երգեր, մանաւանդ մենակատարներու յայտնաբերումով, մեծ խանդավառութիւն ստեղծելով հասարակութեան մէջ, որոնք անշուշտ մեծաւ մասամբ բաղկացած են ծնողներէ, որոնց համար անհուն բերկրանք է տեսնել իրենց զաւակներուն շնորհները բեմին վրայ։ Վրաձքդ կատար սիրելի Հայկ։

Յայտագրին մաս կը կազմէին նաեւ բազմաթիւ արտասանութիւններ։ Այսպէս, Անի Պարսում արտասանեց Վահան Թէքէեանի *Տաղ հայերէն լեզուի* քերթուածը, Մարկրիթ Թահթապրունեան՝ *Ինչու եմ ծնուել* Հրաչեայ Յովհաննիսեանի, Սիլվա Կապէեան՝ *Գլուխ եմ ծռում լոկ մօրս առաջ* Յովհաննէս Շիրազի, Անի Գրիգորեան՝ *Մայրիկիս* Յովհաննէս Շիրազի, Թալին Կապէեան՝ *Մտորումներ ճանապարհի կէսին* Սիլվա Կապուտիկեանի, Նորա Գոլոյեան՝ *Ներբող մայրենի լեզուին* Վահագն Դաւթեանի։ Անոնք մէկը միւսէն աւելի փայլեցան իրենց առոգանութեամբ, հասկացողութեամբ եւ ապրումով։ Կեցցեն բոլորն ալ։

Յայտագրին գեղարուեստական բաժնին աւարտին, տեղի ունեցաւ դադար մը, որուն ընթացքին բոլոր ներկաներուն բաժնուեցան զովացուցիչներ եւ քաղցրաւենիներ, հիւրասիրութեամբ Ծնողաց Խորհուրդի նուիրեալ անդամ Տէր եւ Տիկին Յովիկ Գազանճեաններուն։

Յայտագրին երկրորդ մասը սկսաւ, երբ շրջանաւարտները, թիւով ութը հոգի, եկան տեղ գրաւեցին բեմին վրայ, եւ ստացան իրենց վկայականներն ու մրցանակները։ Անոնց կողմէ գեղեցիկ ուղերձ մը կարդաց Ռիթա Աւագեան, որմէ ետք տնօրէն Պր. Նշան Վարդեան ըրաւ իր Հուսկ Բանքը, իր հայրական խորհուրդ-

ները տալով անոնց, եւ մանաւանդ յիշատակելով վարժարանին շէնքին փլուզման տխուր պարագաները։

Այստեղ յիշենք, թէ մասնաւոր նուէրներու արժանացան հինգ աշակերտուհիներ, որոնք ամէն առթիւ բեմերէն կը փայլին իրենց գեղեցիկ արտասանութիւններով։ Անոնք էին՝ Անի Գրիգորեան, Սիլվա Կապէեան, Թալին Կապէեան, Նորա Գոլոյեան եւ Մարկրիթ Թահթապրունեան։

Փակման խօսքը կատարեց թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, որ գեղեցիկ պատկերով մը վարժարանին շրջանաւարտներուն հունձքը նմանցուց դաշտին մէջ որայ առ որայ դիզուած ոսկեայ հասկերուն, եւ ապա, Պահպանիչով փակեց հոգեպարար այս երեկոն։

Այս ուրախ առթիւ, ջերմօրէն կը շնորհաւորենք վարժարանին տնօրէնութիւնը, ուսուցչական կազմը, խմբավար Հայկ Սարգիսեանը եւ բոլոր աշակերտներն ու շրջանաւարտները, եւ բոլորին ալ միշտ յաջողութիւն կը մաղթենք։

*Արեւ*, 24 Մարտ 1987, 71-րդ տարի, թիւ 20568, էջ 1

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՊՈՒԼԱՔԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ

(հատուած)

ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

Աշակերտական երգչախումբը երգեց տասնեւեօթը ժողովրդական եւ ազգագրական երգեր ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի եւ դաշնակի ընկերակցութեամբ տիկին Կասիա Ճղալեանի, իսկ կարգ մը երգերու դիոլով կ՚ընկերակցէր աշակերտ Լեւոն Տէր Յակոբեան։

*Ջահակիր*, 2 Ապրիլ 1987, նոր շրջան, թիւ 1089, էջ 2

# ՀԲԸՄ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

# Համերգ

Կիրակի, 5 Ապրիլ 1987,
կ. ե. ժամը 6-ին

ՄԵԼՔՈՆԵԱՆ
ՀԱՄԵՐԳԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՀԱՆ ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ**
Հիւպատոս, Պատուոյ Նախագահ Աղեքս. ՀԲԸՄ-ի

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

ՀԲԸՄ Ի ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ
ԽՄԲԱՎԱՐ
**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ
**ՏԻԿԻՆ ԶՈՒԱՐԹ ԳԱԼԱՅՃԵԱՆ**

## Ա. ՄԱՍ

*Եգիպտական Քայլերգ*

*Հ Բ Ը Մ ի Քայլերգ*

*Կիլիկիա* — *Հայրենասիրական երգ*
*Երժշտ. Գ. Երանեան*
*Մշկ. Կ Մուրզա*

*Հարս եմ գնում* — *Ժողովրդական երգ*

*Այ Փորկա (Վանի երգ)* — *Մշկ. Թ. Ալթունեան*

*Մարալ - Մարալ* — *Ժողովրդական երգ*
*Մշկ. Թ. Ալթունեան*

Կը կատարէ արական երգչախումբը
Մենակատարներ Արա Սրամպօլեան եւ Յակոբ Թիւթիւնճեան

*Սարի սիրուն եար* — *Գուսան Աշոտ*

*Վախենամ քնեմ* — *Ժողովրդական երգ*
*Մշկ Թ. Ալթունեան*

Մենակատար Գարոյին Տիրչէքէնեան

*Թէլլօ* — *Ժողովրդական երգ*
*Մշկ. Թ. Ալթունեան*

## ԸՆԴՄԻՋՈՒՄ

# Բ ՄԱՍ

*Լեպհօ լէ լէ* — *Ժողովրդական երգ*
*Մշկ. Կ. Մուրզա*

*Ամէն Հայր Սուրբ* — *Մշկ. Մ. Եկմալեան*

Մենակատար Յասմիկ Տիւչէրէճեան

*Աչքդ խումար* — *Գուսան Շերամ*

Մենակատար Յակոբ Թիւթիւնճեան

*Բարակ ես* — *Ժողովրդական երգ*
*Բարտի ծառ ես* — *Մշկ Թ. Ալթունեան*

Մենակատար Թալին Կիւրիւնեան

*Երգ Գայի մասին* — *Երժշտ. Ալ. Յարութիւնեան*
*(Հայկ Բժշկեանց)*

Կը կատարէ արական երգչախումբը

*Հոյ իմ Նազան եարը* — *Ժողովրդական երգ*
*Մշկ. Թ. Ալթունեան*

# ԳՈՒՍԱՆ

Հին եւ միջնադարեան Հայաստանի մէջ գուսանները եղած են ստեղծագործող եւ կատարող արուեստագէտներ:

Գուսան կոչուած են երգիչները, նուագողները, պարողները, վիպական երգեր աւանդողները, եւայլն:

Գուսանական արուեստը մեր մշակոյթի ամենակենսունակ ճիւղերէն է, որ մեր ժողովուրդին հետ եղած է ամենավաղ շրջանէն՝ սկսեալ հեթանոսական մշակոյթէն մինչեւ 15րդ եւ 16րդ դարերու միջնադարեան շրջանը, ուր գուսան անունը վերափոխուեցաւ ժամանակաւորապէս աշուղի:

Այս գուսանական երգարուեստը կը շարունակէ զարգանալ ու ամրապնդուիլ բնականաբար Հայկական հողի վրայ Սովետական Հայաստանի մէջ, ուր վերջին տարիներուն վերակազմուած է Հայաստանի Գուսանական ու Ժողովրդական Երգի Պետական Անսամպլը որ նշանակալի աշխատանք կը տանի:

Հայկական երգչախմբային պատմութեան մէջ, ունեցած ենք «Գուսան» անունով տարբեր երգչախումբեր:

Անոնցմէ առաջինն է Կ. Պոլսոյ մէջ, մեծանուն Կոմիտասի կազմած «Գուսան» երկսեռ երգչախումբը որ կը բաղկանար 300 անդամ-անդամուհիներէ: Սոյն երգչախումբը գործած է 1910–1915 տարիներուն, եւ անկրկնելի հանդիսացած է մեր երգարուեստի պատմութեան մէջ:

Նոյնպէս, Գուսան կոչուած է Կոմիտասի սաներէն Բարսեղ Կանաչեանի երգչախումբը որ գործած է Պէյրութի մէջ 1933–1961 թուականներուն:

1911 թուականին, Կոմիտաս իր Եգիպտոս այցելութեան առթիւ, Աղեքսանդրիոյ մէջ կազմած է 190 հոգինոց Գուսան երկսեռ երգչախումբը:

Հակառակ Աղեքսանդրիոյ գաղութին նօսր թիւին, մեր նոր սերունդին մօտ «Գուսան»ական այս աւանդութիւնը վառ պահելու առաջադրութեամբ, Հ.Բ.Ը.Մ.ը Աղեքսանդրիոյ մէջ կազմած է Գուսան երգչախումբը որ կը բաղկանայ 25 երիտասարդ-երիտասարդուհիներէ:

Այսօրուան ելոյթը, սոյն երգչախումբին անդրանիկ ելոյթն է:

# ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԵԼՈՅԹԸ ԽՄԲԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԺԻԶԷԼ ՊՈՒԼԱՏ
Թարգմանութիւն՝ ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Գուսան երգչախումբը բաղկացած է 26 աշակերտներէ եւ ուսանողներէ։ Ան մեծապէս գնահատուեցաւ անցեալ երեկոյ, Պօղոսեան Ազգային Վարժարանի Մելգոնեան հանդիսասրահին մէջ իր ունեցած ելոյթին առթիւ, որ բացայայտ յաջողութիւն մը եղաւ։

Երգահանդէսը կը հովանաւորէր Եգիպտահայոց Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանը, իսկ կը նախագահէր Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի պատուոյ նախագահ, հիւպատոս Պր. Վահան Ալեքսանեանը։

Այս երգչախումբը նոր կազմուած է։ Գոյութիւն առած է միայն վեց ամիսէ ի վեր։ Այնպէս որ, անոր յաջողութիւնը առաւել գնահատելի է։ Խմբավարն է սքանչելի Հայկ Սարգիսեանը։

Վարագոյրը կը բացուի յենքի նկարի մը վրայ, որ կը ներկայացնէ Արարատը։ Բեմին վրայ անբեկանելիօրէն կեցած են երգչախումբին անդամները՝ իրենց սպիտակ եւ կապոյտ համազգեստներով։ Անոնց առաջին ելոյթն է այս։ Սրահը ամբողջովին լեցուն է բերնէ բերան։

Երգչախումբը կազմուած է չորս ձայներէ՝ սոփրանօ, ալթօ, թենոր եւ պաս։ Կ՚ունկնդրենք տասնեւչորս երգեր՝ զանազան տեսակի՝ ժողովրդական, հայրենասիրական, կրօնական եւ սիրային։

Մենակատարներն են՝ Յասմիկ Տիշչէքէնեան, Քարոլին Տիշչէքէնեան, Թալին Կիւրիւնեան, Յակոբ Թիւթիւնճեան եւ Արա Սթամպոլեան։ Դաշնակի ընկերակցութեամբ՝ Տիկին Զուարթ Գալայճեանի։

Յասմիկ Տիշչէքէնեան, սոփրանօ, ունի ջինջ ու արծաթեայ հնչիւն մը։ Ան երբ կ՚երգէ, իր ձայնին մէջ կայ երիտասարդական պայծառութիւն մը, որ հրճուանք կը պատճառէ սրտին։ Ամենասուրբ երրորդութիւն իր մենակատարումը հաճելիօրէն տեղի ունեցաւ։ Ան կ՚երգէ հեշտութեամբ եւ երաժշտականութեամբ։

Քարոլին Տիշչէքէնեան, սոփրանօ, քաղցրութիւն մը ունի եւ պայծառ հնչեղութիւն մը, որոնք կը յարմարին ժողովրդական մեղմ ու հայրենաբաղձ երգերուն։

Թալին Կիւրիւնեան, սոփրանօ, բնական գեղեցիկ ձայն մը ունի, զոր պէտք է մշակէ։ Կը շնորհաւորենք զինք իր դժուարին մենակատարումին (ժողովրդական երգ մը) համար։ Ան պատիւով դուրս եկաւ։ Ան նօթերը կը պահէր համարձակութեամբ եւ տեղին, արժանի ամէն գնահատանքի։ Ան կրցաւ իր շնչառութիւնը պահել սարսափելիօրէն երկար մասերուն մէջ։ Կեցցէ՜։

Արա Սթամպոլեան քնարական եւ արտայայտիչ թենոր ձայն մը ունի։ Յակոբ

Թիւթիւնճեանի հետ կատարած ժողովրդային զուգերգը մեծ յաջողութիւն գտաւ։
Յակոբ Թիւթիւնճեան հաճելի հնչեղութիւն մը ունի, քիչ մը մետաղային։ Իր ձայնը սակայն, հաճելի է ունկնդրել։
Գալով երգչախումբի անդամներուն, մեր ամենաջերմ շնորհաւորութիւնները կ'ուղղենք անոնց, կշռոյթի իրենց գիտակցութեան, մեկնաբանութեան իրենց նրբութեան եւ ներդաշնակ համոյթին համար, որ լաւ կը հնչէ ականջին։
Խմբավար Հայկ Սարգիսեանը երգչախումբի մը երազուած ղեկավարն է։ Իր երաժշտական իմացականութիւնը մեծ է եւ հոգեբանական իր գիտակցութիւնը զայն մատչելի կը դարձնէ այս աշակերտներուն։ Երգիչներ եւ խմբավար, այս ձեւով միեւնոյն հոգիով կ'արտայայտուին։ Շնորհիւ իրեն, սկսնակ այս երգիչները ըմբռնած են, թէ երաժշտութիւնը արտայայտութեան միջոց մըն է, որ կը թարգմանէ ու կը ցոլացնէ զգացումները։
Մեծապէս կը գնահատենք երանգաւորումներու գիտակցութիւնը, ձայնային կարգ մը փոփոխականութիւնները, որ այս երիտասարդ երգիչներուն կը թելադրեն գիտակից քրեսենտօներն ու տիմինիէնտօները, ինչպէս նաեւ դիմաղիր եւ հակադիր նրբերանգները։
Հայկ Սարգիսեան մեզ համոզեց այս երգերուն գեղեցկութեամբ։
Նախագահ Պր. Վահան Ալեքսանեանը, որ այս ելոյթին նախաձեռնողն էր, ինչ որ գրաւագիր մըն էր, կրնայ հպարտ զգալ այս յաջողութեամբ։
(*Լը Ժուռնալ տ'Էժիպթ*, 8 Ապրիլ 1987)

*Արեւ*, 9 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20582, էջ 1

## LA PREMIERE SEANCE MUSICALE DE LA CHORALE ARMENIENNE D'ALEXANDRIE

MAGGIE

La Communauté arménienne d'Alexandrie vient d'avoir sa propre chorale à l'égale de celle constituée au Caire. Une chorale aussi intéressante que son aînée, possédant des voix aussi belles et bien travaillées, ceci grâce au maestro Haïg Sarkissian dont on connaît les hautes qualités musicles et ses dynamiques directives. Rappelons, en effet que Sarkissian a fait ses études musicales à Erivan, en Arménie Soviétique et que sa technique, son allant, son soutien efficace envers chacun des chanteurs ont déjà donné de magnifiques résultats à la chorale de la capitale. Il en a été de même pour la formation de ce jeune ensemble artistique arménien dû, principalement à l'instigation de M. Willy Alexanian, Président d'Honneur de la Société

générale de Bienfaisance arménienne, en collaboration avec le Comité.

En 6 mois, avec des répétitions qui n'avaient lieu qu'une fois par semaine tant le Maestro Sarkissian était pris par ses divers engagements et par ses nouvelles charges à l'Académie Nationale de Musique au Caire, donc en ce court laps de temps, il sut assembler et faire travailler les jeunes artistes les plus qualifiés, formant cette chorale mixte à 3 et 4 voix composée par les élèves de l'Ecole Arménienne et des étudiants universitaires. Une chorale qui suscita l'enthousiasme de la nombreuse assistance au cours de sa séance musicale, lundi dernier, tant elle s'avéra parfaite.

Au programme, 14 chants patriotiques, folkloriques, populaires, religieux, souvent chaleureusement bissés et exprimant avec un amour profond l'attachement à la mère-patrie, que ce soit dans des chants de liesse populaire, ou nostalgiques d'une terre connue seulement par leurs pères et leurs récits ou encore plus graves dans les prières à Dieu.. une Chorale du nom KOUSSAN (troubadour) qui enrichira notre cité d'une très belle nouvelle formation musicale et de qui nous relevons les noms des 5 solistes: Hassmig Distchekenian, voix de soprano d'une plénitude et d'une pureté exceptionnelles. D'une sensibilité profonde, elle communique, par un timbre émouvant, sa propre émotion à toutes les personnes présentes, lors d'un solo de chant religieux. Caroline Distchekenian sa soeur. Contraste de voix par un timbre jeune, plein de fraîcheur rendant avec verve la bonne gaîté paysanne. Taline Gurunian, un soprano léger doux dans un solo patriotique, repris avec ardeur par la Chorale. Agop Tutundjian, ténor au timbre chaud, nuancé, aux notes soutenues et Ara Stamboulian, ténor également; voix maniée avec aisance soit en solo soit en duo avec Agop Tutundjian.

Koussan, une riche chorale sans problèmes et qui, si elle persévère, s'enrichera encore plus au cours des ans.

*Le Progrès égyptien*, 10 avril 1987

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԵԼՈՅԹԸ

ՄԱԿԻ

Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Աղեքսանդրահայ գաղութը ունեցաւ իր սեփական երգչախումբը, նման Գահիրէի: Երգչախումբ մը, նոյնքան հետաքրքրական որքան իր երէցը, նոյնքան գեղեցիկ եւ լաւ աշխատուած ձայներով, շնորհիւ Մօ. Հայկ Սարգիսեանի, որուն երաժշտական յատկութիւններն ու խմբավարական

ուժականութիւնը ծանօթ են:

Արդարեւ, յիշենք, թէ Սարգիսեան իր երաժշտական ուսումը առած է Սովետական Հայաստանի՝ Երեւանի մէջ, եւ թէ իր թեքնիքը, երգիչներէն իւրաքանչիւրին իր աջակցութիւնը արդէն սքանչելի արդիւնքներ տուած են մայրաքաղաքին երգչախումբին: Նոյնն է պարագան այս երիտասարդ երգչախումբին կազմաւորման համար, երգչախումբ՝ որուն կազմութեան մղիչ ուժը հանդիսացաւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի պատուոյ նախագահ Դր. Վահան Ալեքսանեանը, գործակցութեամբը վարչութեան:

Վեց ամսուան ընթացքին, երբ փորձերը տեղի կ'ունենային միայն շաբաթը անգամ մը, այնքան որ զբաղած է Մօ. Սարգիսեանը զանազան յանձնառութիւններով եւ Գահիրէի Երաժշտութեան Ազգային Ակադեմիային մէջ իր նոր պարտաւորութիւններով: Եւ ուրեմն, այսքան կարճատեւ ժամանակի մը ընթացքին, ան կրցաւ ի մի հաւաքել եւ աշխատանքի մղել ամենաօրակաւոր այս երիտասարդ արուեստագէտները, կազմելով երեք եւ չորս ձայներով խառն այս երգչախումբը, որ կազմուած է հայկական վարժարանին աշակերտներէ եւ համալսարանական ուսանողներէ: Երգչախումբ մը, որ բազմամարդ հասարակութեան մօտ խանդավառութիւն յառաջ բերաւ անցեալ Կիրակի՝ երգահանդէսին ընթացքին, որ այնքան կատարեալ ի յայտ եկաւ:

Յայտագրին վրայ կային հայրենասիրական, ժողովրդական, ֆոլքլորիկ, կրօնական տասնեւչորս երգեր, որոնցմէ շատերուն կրկնութիւնը պահանջուեցաւ խանդավառօրէն, երգեր՝ որոնք հայրենիքին հանդէպ սէրը կ'արտայայտէին, ժողովրդային ցնծութեան կամ հայրենաբաղձութեան երգեր, հայրենիք մը՝ զոր ճանչցած էին միայն իրենց հայրերը, կամ պատումներուն մէջէն, կամ առաւել եւս՝ Աստուծոյ ուղղուած աղօթքներով:

Գուսան անունով երգչախումբ մը որ պիտի հարստացնէ մեր քաղաքը՝ երաժշտական շատ գեղեցիկ համոյթով մը, որուն մէջէն վեր առնենք հինգ մենակատարները՝ Յասմիկ Տիշչէքէնեան, լիացած եւ բացառիկ պայծառութեամբ սոփրանօ մը, խոր զգացականութեամբ, յուզիչ հնչեղութեամբ մը ան հաղորդեց իր սեփական յուզումը ներկայ ամբողջ հասարակութեան՝ կրօնական երգի մը մենակատարման ընթացքին: Իր քոյրը՝ Քարոլին Տիշչէքէնեան, երիտասարդական հնչեղութեամբ, լի թարմութեամբ, եռանդով արտայայտեց գեղջկական բերկրանքը: Թալին Կիւրիւնեան, թեթեւ սոփրանօ մը, մեղմ՝ հայրենասիրական մենակատարումի մը ընթացքին, որուն ջերմութեամբ պատասխանեց երգչախումբը: Յակոբ Թիւթիւնճեան, թենոր, տաք հնչեղութեամբ, երանգաւորուած, շեշտուած նոթերով: Արա Սթամպոլեանը, նոյնպէս թենոր, հեշտութեամբ վարելով իր ձայնը՝ որքան մենակատարումի, նոյնքան եւ Յակոբ Թիւթիւնճեանի հետ իր զուգերգին ընթացքին:

Գուսանը՝ հարուստ երգչախումբ մը՝ առանց որեւէ հարցի, որ եթէ յարատեւէ,

առաւել եւս պիտի հարստանայ յառաջիկայ տարիներուն։
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 10 Ապրիլ 1987)

*Արեւ*, 13 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20585, էջ 1

## ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ՆՈՐ ՆՈՒԱՃՈՒՄ (Հ.Բ.Ը.Մ.-Ի ԳՈՒՍԱՆ ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ)

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

Խմբերգային առաջին յաջողութիւնը հանդիսացաւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը. Միութեան նորակազմ Գուսան երգչախումբի 5 Ապրիլ 1987-ի ձեռնարկը, Պօղոսեան Ազգային Վարժարանի եւ Մելգոնեան Մանկապարտէզի համերգասրահին մէջ։ Երեկոյթը կը հովանաւորէր թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան եւ կը նախագահէին տէր եւ տիկին Վահան Ալեքսանեան։

Ներկայ էին Աղեքսանդրիոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Խաչակիր Քհնյ. Օհաննեան եւ երիցուհին, Ազգային Իշխանութեան անդամներ, վարժարանի տնօրէնը, երգչախումբի անդամներուն ծնողքները, մամուլի ներկայացուցիչներ եւ արուեստասէր հոծ բազմութիւն մը, ինչպէս նաեւ Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.-ի խումբ մը երիտասարդներ գլխաւորութեամբ Միութեան Եգիպտոսի Շրջ. Յանձնաժողովի փոխ-ատենապետ պր. Պերճ Թէրզեանի եւ Հ.Բ.Ը.Մ.-ի Գահիրէի մասնաճիւղի ատենապետ պր. Նորայր Տէօվլէթեանի։

Երբ վարագոյրը բացուեցաւ ճիշդ յայտարարուած ժամուն, Գուսան երգչախումբը, որ այժմ կը բաղկանայ 25 հոգիէ, ճաշակօրէն զգեստաւորուած եւ շնորհալի կեցուածքով արդէն գրաւեց հանդիսականներուն հմայքը։

Յայտագիրը սկսաւ երգչախումբին կողմէ երգուած եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.-ի քայլերգներով որոնք յոտնկայս ունկնդրուեցան։

Ապա, երգչախումբը յաջորդաբար երգեց Կարա Մուրզայի *Կիլիկիա*ն եւ Թ. Ալթունեանի *Հարս եմ գնում* ու *Այ ֆորկա* (Վանի երգ), Թ. Ալթունեանի *Մարալ-մարալ* ժողովրդական երգը (արական երգչախումբ) մենակատարութեամբ պպ. Արա Սթամպօլեանի եւ Յակոբ Թիւթիւնճեանի, Գուսան Աշոտի *Սարի սիրուն եարը*, Թ. Ալթունեանի *Վախենամ քնեմ*ը, որուն մենակատարի բաժինը կատարեց Գարոլին Տիշչէքենեան։ Յայտագրին առաջին բաժինը վերջ գտաւ երգչախումբին կողմէ երգուած Թ. Ալթունեանի *Թէլլօ* ժողովրդական երգով։

Փոքր դադարէ մը ետք, յայտագրին երկրորդ մասը սկսաւ եւ երգչախումբը յաջորդաբար երգեց Կ. Մուրզայի *Լեպհօ լէ լէ*ն, Մ. Եկմալեանի *Ամէն հայր սուրբ*,

որուն մենակատարի բաժինը կատարեց Յասմիկ Տիշչէքէնեան, Գուսան Շերամի *Աչքդ խումար*, մենակատարութեամբ Յակոբ Թիւթիւնճեանի, Թ. Ալթունեանի *Բարակ ես բարտի ծառ ես* որուն մենակատարի բաժինը կատարեց Թալին Կիւրիւնեան, Ալ. Յարութիւնեանի *Երգ Գայի մասին* (կատարմամբ արական երգչախումբին) եւ երեկոյթը վերջ գտաւ Թ. Ալթունեանի *Հոյ իմ նազան եարը* ժողովրդական երգով:

Երգերուն դաշնամուրի նուագակցութիւնը ներդաշնակօրէն կատարեց տիկին Զուարթ Գալայճեան:

Երգչախումբը մէկը միւսէն հմայիչ կատարումով ներկայացուց երգերը, քանիցս արժանանալով հանդիսատեսներուն «պիս»-երուն: Երիտասարդ խմբավար Հայկ Սարգիսեան կարճ ժամանակամիջոցի մը մէջ կարողացած էր համախմբել երիտասարդ ուժեր, անոնցմով կազմել երկսեռ երգչախումբ մը եւ մեզի հրամցնել գեղարուեստական այս շատ յաջող երեկոն:

Կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքսանդրիոյ Մասնաճիւղի վարչութիւնը իր այս գեղեցիկ նախաձեռնութեան համար, Գուսան երգչախումբի խմբավար Հայկ Սարգիսեանը եւ բոլոր անդամները եւ կը մաղթենք բոլորին նորանոր յաջողութիւններ:

Երեկոյթէն ետք, Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքսանդրիոյ Մասնաժողովը, ի պատիւ Գուսան երգչախումբին եւ անոր ղեկավար Հայկ Սարգիսեանին, պատուասիրութիւն մը սարքած էր իր կեդրոնատեղիին մէջ, որը տեւեց մինչեւ ուշ գիշեր եւ բոլորը գոհ տրամադրութեամբ մեկնեցան սրահէն:

* * *

Երեկոյթի դադարի ընթացքին, Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքս.ի Մասնաճիւղի վարչութեան գանձապետ եւ օրուան հանդիսավար պր. Նազարէթ Գարթալեան վարչութեան կողմէ շնորհակալութիւն յայտնեց ներկաներուն որոնք բարեհաճած էին խուռներամ ներկայ գտնուիլ համերգին, եւ յետոյ ներկայացուց նորակազմ Գուսան երգչախումբի ղեկավարն ու անդամները: Ապա, ան կարդաց անունները այն ազգայիններուն որոնք խանդավառուած այս յաջող ելոյթէն սրտաբուխ նուիրատուութիւններ կատարած էին:

*Ջահակիր*, 16 Ապրիլ 1987, նոր շրջան, թիւ 1091, էջ 2

# ԲԱՑԱՌԻԿ ՀԱՄԵՐԳ

ՄԿՐՏԻՉ ԱՆԴՐԱՆԻԿ

Կիրակի 5 Ապրիլի երեկոյեան համար ծանուցուած էր Գուսան երգչախումբի համերգը։

Որոշեալ ժամէն մէկ ժամ առաջուընէ սկսած էր գալ ժողովուրդը եւ յ.մ. ժամը 6 չեղած ամբողջութեամբ լեցուած էր Մելքոնեան սրահը։

Աւելի քան 300 հոգի։

Աւանդական հայկական ժամադրութիւնը խախտած էր… Փոքրիկ հրաշք մըն էր պատահածը։

Համերգը տեղի կ՚ունենար հովանաւորութեամբ Գերշ. Տէր Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, եւ նախագահութեամբ Հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեանի։

Ներկայ էին Արժանապատիւ Տէր Գրիգոր Խաչակիր Քհնյ. Օհաննեան եւ Երէցկինը, Քաղաքական Ժողովի փոխ ատենապետ Պր. Վրէժ Սէֆէրեան, Գահիրէէն հիւրեր՝ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան, Տէր եւ Տիկին Նորայր Տէօվլէթեան, քարոզիչ Վահրամ Խունկանեան, Քանատայէն Բենիամին Մամուրեան, ազգային երեսփոխաններ Տէր եւ Տիկին Նուպար Դաւիթեան, Տէր եւ Տիկին Վահան Գավուքճեան, Տէր եւ Տիկին Հայկազ Տէտէեան, Տէր եւ Տիկին Դանիէլ Ճոճռեան, Տէր եւ Տիկին Նուպար Մանուկեան, Պօղոսեան Վարժարանի Տնօրէն Տէր եւ Տիկին Մանուկ Գալփաքճեան, Տէր եւ Տիկին Տոքթ. Օննիկ Սթամպոլեան, Տոքթ. Արմէն Գավուքճեան, Տոքթ. Կարօ Թօսունեան, Տէր եւ Տիկին Եդուարդ եւ Արաքսի Դաւիթեան, Տէր եւ Տիկին Սարգիս Վարձպետեան, Տիար Պարգեւ Մազլըմեան, Տիար Վարուժան Գազանճեան եւ այլ յարգարժան ազգայիններ։

Բեմը կը բացուի ճիշդ յայտարարուած ժամուն։ Եւ ահա 25 նորահաս երկսեռ երիտասարդներ երկու շարքի վրայ կեցած են, շքեղ զգեստաւորումով։ Ղեկավար Հայկ Սարգիսեանի դաշնակահարուհիին ուղղած նշանին վրայ կը սկսի համերգը Եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.եան քայլերգներով, զորս ներկաները կ՚ունկնդրեն յոտնկայս։

Կը շարունակուի հայ երգի խնճոյքը եւ հետզհետէ կը թնդան՝ *Կիլիկիա*, *Հարս եմ գնում*, *Վանի երգ*, *Մարալ-մարալ*, *Սարի սիրուն եար*, *Վախենամ քնեմ*, *Թէլլօ*։ Առաջին մասը աւարտած է հանդիսութեան։ Իւրաքանչիւր երգի լրանալուն, բուռն եւ երկարատեւ ծափահարութիւններ։

Բարեգործականի վարչութեան կողմէ բեմէն կը խօսի Պր. Նազարէթ Գարթալեան, Գուսան երգչախումբի կազմութեան եւ յառաջդիմութեան մասին եւ կը հաւաստէ, թէ այս առաջին համերգը վերջինը պիտի չըլլայ։

Կը սկսի յայտագրին երկրորդ մասը։

Եւ հայ երգի հոսքը կը պարուրէ մարդուն հոգին ու կ՚առինքնէ:

*Լեպօ լէ լէ*, *Ամէն հայր սուրբ*, *Աչքդ խումար*, *Բարակ ես բարդու ծառ ես*, *Երգ Գայի մասին*, *Հօյ իմ նազան եարը*:

Չպիտի տամ մանրամասնութիւններ երգուածներուն մասին: Ղեկավարին կողմէ բոլորը լաւ ընտրուած էին:

Դարձեալ իւրաքանչիւր երգ հազիւ աւարտած, կը պայթին որոտընդոստ ծափերը, միշտ նոյն թափով եւ կը տեւեն երկար րոպէներ:

Վերջին երգին կը լսուին «պիս»եր եւ կը կրկնուի երգը:

Գուսան երգչախումբ մեկնաբանեց իրենց այլազանութեամբ յատկանշուող ժողովրդական երգեր եւ հիացմունքի ժամ մը պարգեւեց: Իսկապէս հոգեպարար մէկ ժամ, որ հմայեց հոգիները:

Երբ աշխարհ ընդհանրապէս երգանման գոռում-գոչումներու ժխորով ողողուած է, Աղեքսանդրահայութիւնը վայելեց ու ըմբոշխնեց հայ երգը:

Նորակազմ երգչախումբին համար ասիկա գեղեցիկ եւ խոստմնալից սկզբնաւորութիւն է:

Ծափերու տարափով ծաղկեփունջեր տրուեցան ղեկավար Հ. Սարգիսեանին եւ դաշնակահարուհիին:

Արժանապատիւ Տէր Գրիգոր Խաչակիր Քհնյ. Օհաննեան հրաւիրուեցաւ փակման խօսքը կատարելու:

Դրուատեց երգչախումբին ելոյթը կուռ խօսքերով, եւ նորանոր յաջողութիւններ մաղթեց: Ապա Պահպանիչով փակեց բացառիկ երեկոն:

Ամէն գնահատանքի արժանի է Հայկ Սարգիսեան, որ կարողացաւ յարաբերաբար կարճ ժամանակի մէջ, ժրաջան աշխատանքով համադրել եւ ներդաշնակել 25 անվարժներ ու զանոնք բեմ հանելով մեծ յաջողութիւն գտաւ: Աննախընթացօրէն խանդավառեց բոլորը:

Բարեբախտաբար Հ. Սարգիսեան ինքզինք չի խեղդեր հացի պայքարին մէջ եւ ունի իբր նեցուկ Հ.Բ.Ը.Մ.ը եւ եգիպտահայութիւնը:

Պարտինք գնահատել Տիկին Զուարթ Գալայճեանը, որ սատարեց երգչախումբին իր անթերի եւ հմուտ նուագակցութեամբը: Այս առթիւ իր կատարողական շնորհը արտայայտեց գերազանցօրէն:

Պր. Յակոբ Թիւթիւնճեան կորիզը հանդիսացած է երգչախումբին, հաւաքելով երկսեռ նորահաս երիտասարդները: Ան մեծ յաջողութեամբ մեներգեց *Մարալ մարալ* եւ *Աչքդ խումար*ի ընթացքին: Պր. Արա Ստամպօլեան եւս շատ հաճելի ձայնով մեներգեց *Մարալ մարալ*ի ատեն: *Բարակ ես բարդի ծառ ես*ին մէջ, Օր. Թալին Կիւրիւնեան մեներգեց անուշ ձայնով: *Վախենամ քնեմ*ի մէջ մեներգեց Օր. Քարոլին Տիշչէքէնեան, զգայուն եւ մեղմ ձայնով: Իսկ Օր. Յասմիկ Տիշչէքէնեան Աղեքսանդրահայութեան սոխակը, հոգեթով ձայնով մեներգեց Եկմալեանի *Ամէն հայր սուրբ*ը, արժանանալով ջերմ ծափերու:

Հ. Սարգիսեան փաստեց, թէ գիտէ ծառայել ազգին:

Աղեքսանդրահայութիւնը շաբաթներէ ի վեր կը սպասէր համերգին: 5 Ապրիլի երգահանդէսը շատ փայլուն եղաւ, որովհետեւ խլեց անցաւ բոլոր նախատեսութիւնները:

Նոր համերգներ կը սպասենք:

*Արեւ*ի սիրելի ընթերցող, ուշադրութիւն յաջորդ նախադասութեան:

Մայր Հայրենիքին մէկ գեղեցիկ պարգեւն է ղեկավար Հայկ Սարգիսեան, որ արժանի է շեշտուելու: Ուրեմն սրտաբուխ կ'ըսենք, շնորհակալութիւն, վերածնած Մայր Հայրենիք հայոց:

*Արեւ*, 17 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20589, էջ 1

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ ԱՂԵՔՍ. Հ.Բ.Ը.Մ.Ի ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԱՆԴԱՄ-ԱՆԴԱՄՈՒՀԻՆԵՐՈՒՆ

ՆԱԶԱՐԷԹ ԳԱՐԹԱԼԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ. Աղեքսանդրիոյ Մասնաժողովը գեղեցիկ գաղափարը ունեցած էր պատուելու երգչախումբին անդամ-անդամուհիները ընդունելութեան մը շուրջ Միութեան Նազարէթ Ջամպաքեան լսարանին մէջ, Կիրակի 5 Ապրիլ 1987, համերգէն անմիջապէս ետք: Խումբը, գլխաւորութեամբ իր անձնուէր խմբավարին՝ Հայկ Սարգիսեանի, ծափողջոյններու տակ յաղթական մուտք գործեց Միութեանս կեդրոնատեղին, բոլորին շնորհաւորանքին արժանանալով, որ այդքան քիչ ժամանակամիջոցի մէջ կրցած էին գեղեցիկ համերգով իրենց անդրանիկ ելոյթը ունենալու, որ յաջողութեամբ պսակուեցաւ:

Ընդունելութեան ներկայ էին բացի երգչախումբի անդամ-անդամուհիներէն եւ իրենց ծնողքներէն, Արժ. Տէր Գրիգոր Խաչակիր Քհնյ. Օհանեանը եւ իր ազնուափայլ Երիցուհին, Հայ Աւետարանական Եկեղեցւոյ քարոզիչ Տիար Վահրամ Խունկանեան, Հայ Կաթողիկէ համայնքի խորհուրդի Ատենապետ եւ Հ.Բ.Ը.Մ. Աղեքս. Մասնաժողովի նախկին Ատենապետ Տոքթ. եւ Տիկին Կարապետ Անսուրեան, Հ.Բ.Ը.Մ. եւ Տիգրան Երկաթ Հայ Մշակութային Միութեան նախկին երկարամեայ Ատենապետ Տիար Բենիամին Մամուրեան, որ Քանատայէն հիւրաբար քաղաքս կը գտնուի, Հ.Բ.Ը.Մ. Եգիպտոսի Շրջանային Յանձնաժողովի փոխ. Ատենապետ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան, Հ.Բ.Ը.Մ. Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ Ընկեր եւ Ընկերուհի Նորայր Տէօվլէթեան, Աղեքս. Հ.Բ.Ը.Մ. պատուոյ նախագահ եւ օրուայ հանդիսութեան նախագահ հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեան եւ անոր կարգին՝ Աղեքս. Մասնաժողովի Անդամները,

Տիգրան Երկաթ Հայ Մշակութային Միութեան վարչութիւնը գլխաւորութեամբ փոխ Ատենապետ Ընկեր եւ Տիկին Մեսրոպ Քիւփելեանի, Աղեքս. Քաղաքական ժողովի եւ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի փոխ Ատենապետ Տիար Վրէժ Սէֆէրեան եւ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի վարչութեան անդամ-անդամուհիները։

Ներկաները շնորհիւ հոյլ մը անձնուէր Տիկիններու մեղուաջան աշխատանքին, հիւրասիրուեցան հայկական համեղ լեհմէճիւնով, եւ քաղցրաւենիներով, հաւաքուած գեղեցիկ սեղաններու շուրջ, մօտաւորապէս 150 հոգի, որոնց բոլորին դէմքին վրայ կը տեսնուէին ուրախութեան նշոյլներ։ Ի դէպ, ընդունելութեան փայլը կ'աւելցնէին Գահիրէի Կռունկ երգչախումբի անդամ-անդամուհիները, որոնք ի մասնաւորի ժամանած էին Աղեքսանդրիա՝ քաջալեր հանդիսանալու այս նորաստեղծ երգչախումբին։

Բաժակ առաջարկուեցաւ Գուսան երգչախումբի անդամ-անդամուհիներուն եւ անոնց կորովի խմբավարին՝ Հայկ Սարգիսեանի կենացը, որ վեց ամսուան սեղմ ժամանակամիջոցի մը մէջ կրցած էր այս գեղեցիկ համերգը մէջտեղ բերել։ Այս 25 հոգինոց երգչախումբը քով քովի հաւաքուեցաւ շնորհիւ Պր. Յակոբ Թիւթիւնճեանի որուն վարչութիւնը վստահած էր այս պաշտօնը։

Խանդավառութիւնը իր գագաթնակէտին հասաւ երբ երկու խումբերը, Գահիրէ եւ Աղեքսանդրիա սկսան թնդացնել հայկական ժողովրդական երգեր եւ մեզի պահ մը զգացնել տուին անցեալի այն փառաւոր օրերը զորս Աղեքսանդրահայ գաղութը վարժուած էր վայելելու։

Գիշերուան ժամը 9.30-ին Գահիրէի խումբը հրաժեշտ առաւ ներկաներէն, վարչութիւնս բարի ճանապարհ մաղթեց եւ շնորհակալութիւն յայտնեց անոր ղեկավարներուն՝ Տեարք Պ. Թէրզեանի եւ Ն. Տէօվլէթեանի որ այս գեղեցիկ գաղափարը ունեցած էին՝ քաջալեր հանդիսանալու Գուսան երգչախումբին։ Խանդավառութիւնը շարունակուեցաւ մինչեւ կէս գիշեր, երբ երգչախումբին անդամները, հաւաքուած իրենց խմբավարին շուրջ, կ'ունկնդրէին այդ օրուան յայտագիրը երիզի վրայ ձայնագրուած։

Բայց ինչպէս ամէն բան վախճան մը ունի, հարկ էր բաժնուիլ եւ բոլոր ներկաները մեկնեցան կրկին շնորհաւորելով երգչախումբի անդամներն ու անդամուհիները, իրենց ժրաջան խմբավարը Հայկ Սարգիսեան եւ դաշնակահարուհի Տիկին Զուարթ Գալայճեանը որ հանդիսութեան փայլը աւելցուց, խումբին մենակատարողները, հիւպատոս Վահան Ալեքսանեանը՝ իր վարչութեան այս յաջող ձեռնարկին համար։

Հոս պարտք կը զգանք մեր շնորհակալութիւնը յայտնելու Եգիպտահայոց Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տէր Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, որ հովանաւորեց հաղիսութիւնը, օրուան հանդիսութեան նախագահ հիւպատոս եւ Տիկին Ալեքսանեանի, Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան որ տրամադրեց Մելգոնեան արդիականացած սրահը, ժրաջան այն հոյլ մը անձնուէր Տիկիններուն որ նպաս-

տեցին այս ձեռնարկին յաջողութեան՝ իրենց բաժինը բերելով զգեստներուն գնման, պատրաստման դժուարին աշխատանքին եւ բոլոր այն աշխատողներուն, որոնք նպաստեցին սոյն ձեռնարկին յաջողութեան։

Բոլորին կ՚ըսենք վարձքերնիդ կատար եւ Աղեքսանդրահայ գաղութը կը սպասէ նորանոր համերգներ Գուսան երգչախումբէն։

Այս առթիւ յիշենք թէ ծաղկեկողովներ ղրկուած էին, Աղեքս. Ազգային Իշխանութենէն, Տիգրան Երկաթ Մշակ. Միութենէն, Հ.Մ.Ը.Մ. Նուպարէն, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.-ի Մասնաժողովներէն, Հ.Բ.Ը.Մ.-ի Կռունկ երգչախումբէն։

*Արեւ*, 21 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20591, էջ 2-3

ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԻՒՆ　　　ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ

*ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԵԱՆ ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

*Կիրակի, 3 Մայիս 1987, կ.ե. ժամը 7.30-ին*

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԱՍՈՒԼԻՍ-ՔՆՆԱՐԿՈՒՄ

*Կազմակերպութեամբ զոյգ միութեանց*

*Մշակութային Միացեալ Յանձնախումբին*

# ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ ԿԱՐԵԼԻ՞ Է ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՈՒԵՍՏ ՄՇԱԿԵԼ

*ԽՕՍՔ ՊԻՏԻ ԱՌՆԵՆ*

*ՎԱՐՈՒԺԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ　　Գրականութիւն*
*ՆԱՅԻՐԻ ՀԱՄԲԻԿԵԱՆ　　Ճարտարապետութիւն*
*ՌԱՖՖԻ ԶԷԶՃԷՆԵԱՆ　　Նկարչութիւն*
*ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ　　Երաժշտութիւն*

*Ատենավար՝ ՊԵՐՃ ՔԵՐՋԵԱՆ*

*Սիրալիր հրաւէր բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 21 Ապրիլ 1987, 71-րդ տարի, թիւ 20591, էջ 4

# ՓՈԹՈՐԻԿ... ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Կիրակի, 3 Մայիս 1987, երեկոյեան ժամը 7.30-ին, Գահիրէի մէջ սքանչելի օդ մը կ'ընէր. պայծառ երկինք, ուր աստղերը սիրազեղ աչք կը քթթէին Երկրի բնակիչներուն, հաճելի զեփիւռ մը կը շոյէր մարդոց դէմքերը: Ոչինչ նախատեսել կու տար, թէ այդ ջինջ երկինքին տակ՝ փոթորիկ պիտի պայթէր Թէքէեան Սրահին մէջ, ուր հաւաքուած հոծ բազմութիւնը պիտի յուզուէր, պիտի բորբոքէր, տեսակէտները շառաչիւնով յաճախ իրարու պիտի բախէին, եւ ատենավար Պր. Պերճ Թէրզեանը հազիւ պիտի յաջողէր սանձերը ձեռքին մէջ պահել, որ կիրքերն ալ չբորբոքին...

Ի՞նչ պատահած էր սակայն:

Պարզապէս, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան եւ Կոկանեան Սրահի Մշակութային Միացեալ Յանձնախումբը երեկոյ մը կազմակերպած էր, նիւթ ունենալով՝ *Սփիւռքի մէջ կարելի՞ է հայկական արուեստ մշակել*: Եւ հրապարակային այս ասուլիս-քննարկումին հրաւիրած էր չորս երիտասարդ ատենախօսներ՝ ներկայացնելու համար իրենց տեսակէտները՝ զանազան նիւթերու ընդմէջէն:

Ուրեմն, երբ ատենավար Պր. Պերճ Թէրզեան հանգամանօրէն ներկայացուցած էր այս չորս երիտասարդները, եւ ապա բացատրած, թէ հարցը կը վերաբերի 1980 թուականէն մինչեւ 2000 թուականը երկարող ժամանակաշրջանի սերունդին, եւ ոչ թէ անցեալին, եւ ըստ այնմ ալ հարազատօրէն բնութագրելով յետեղեռնեան առաջին, երկրորդ եւ երրորդ սերունդները, խօսքը փոխանցած էր ատենախօսներուն, հետզհետէ խօսեցան Օր. Նայիրի Համբիկեան՝ ճարտարապետութեան գծով, Պր. Ռաֆֆի Չէչճէնեան՝ նկարչութեան, խմբավար Հայկ Սարգիսեան՝ երաժշտութեան, եւ Պր. Վարուժան Գազանճեան՝ գրականութեան:

Այսպէս ահա, առաջին երեք ատենախօսները, փաստացի տուեալներով, տրամաբանական մօտեցումով եւ գիտական հիմունքներով հաստատեցին մէկ եւ միակ դրոյթ մը - թէ՝ առանց ոտքին տակը հայրենի հող ունենալու, եւ առանց ազգային միջավայրի մէջ ապրելու, կարելի չէ ազգային արուեստ մշակել: Եթէ երեք ատենախօսները նախապէս քով քովի գային՝ միակ եզրայանգումի մը շուրջ համաձայնելու համար, հաւանաբար առանց համաձայնութեան մը գալու պիտի բաժնուէին իրարմէ... սակայն, այս ձեւով, անոնք անկախաբար իրարմէ, ճիշտ նոյն դրոյթն է զոր ներկայացուցին եւ պաշտպանեցին, քանի որ այդ է ճշմարտութիւնը:

Եւ երբ չորս ատենախօսներն ալ վերջացուցին իրենց խօսքը, ահա փոթորիկը փրթաւ... փոթորիկը պայթեցնողները երէցներն էին, որոնք համաձայն չեղան ատենախօսներուն, թէ, նկատի ունենալով վերեւի իրողութիւնը, կարելի չէ

ազգային արուեստ մշակել սփիւռքի մէջ: Հատուկենտ խօսողներ միայն համաձայն եղան ատենախօսներուն:

Չորրորդ ատենախօսը՝ Պր. Վարուժան Գազանճեանը բաժնեցինք առաջին երեքէն, որովհետեւ միակն էր, որ պաշտպանեց այն տեսակէտը, թէ այո՛, կարելի է գրականութիւն մշակել սփիւռքի մէջ: Անշուշտ ճիշտ է այս տեսակէտը, միայն թէ ճիշտ է առ այժմ: Իսկ վա՞ղը, գրականութիւնն ալ պիտի երթայ միանալու արուեստներուն, քանի որ այսօր, մեր հայ երիտասարդութիւնը տակաւին հայերէն գիտեն՝ հայերէն չեն կարդար. վաղը, երբ հայերէն գիտցող պիտի չըլլայ, որո՞ւ համար հայերէն գրականութիւն պիտի մշակուի, եւ արդե՞օք հայերէն գրականութիւն մշակող պիտի ըլլայ...

Յայտագրին աւարտին, յանուն զոյգ միութիւններուն վարչութեանց, ընկեր Կարպիս Եազըճեան շնորհաւորեց Մշակութային Միացեալ Յանձնախումբին, օրուան ատենավարին, չորս ատենախօսներուն, եւ երեկոն կազմակերպած ընկերուհի Արաքսի Տէօվլէթեանին եւ Պր. Պերճ Թէրզեանին:

Մենք եւս սրտանց կը միանանք այս շնորհաւորութիւններուն: Ինչ լաւ պիտի ըլլար, սակայն, եթէ այս վիճաբանութիւնները շարունակուէին, կամ վերսկսէին թերթին մէջ, վիճաբանութիւններ՝ որոնք երկար ատեն տակաւին շարունակուեցան ընդունելութեան ընթացքին:

Միայն թէ լաւ պիտի ըլլար, որ խօսողները ոտքի ելլէին, որպէսզի ետեւի շարքերուն վրայ նստողներն ալ վայելէին լսողատեսողական դրութիւնը:

*Արեւ*, 4 Մայիս 1987, 71-րդ տարի, թիւ 20600, էջ 1

## ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՈՒԵՍՏ ԿԱՐԵԼԻ՞ Է ՄՇԱԿԵԼ

ԱՐԱՔՍԻ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

Ասուլիսի եւ քննարկումի երեկոյ մըն էր 3 Մայիս 1987-ին տեղի ունեցած երեկոն, Հ. Գ. Միութեան Թէքէեան Սրահին մէջ:

Չորս երիտասարդ ատենախօսներ իրենց տեսակէտները պիտի պարզէին *Սփիւռքի մէջ հայկական արուեստ կարելի՞ է մշակել* նիւթին շուրջ: Ներկայ հասարակութիւնը, երէց թէ երիտասարդ, հրաւիրուած էր իր մասնակցութիւնը բերելու քննարկելի նիւթին:

«Այսօրուան ձեռնարկին նպատակը անպայմանօրէն կտրուկ եզրակացութիւններու յանգիլ չէ, այլ գլխաւորաբար, մտքերը աշխուժացնել եւ մղել է, որ

մտածենք սփիւռքի մեր պայմաններուն մասին, ուսումնասիրենք մեր կարելիութիւնները, որպէսզի մեր աշխատանքները դասաւորենք ըստ այդ պայմաններուն եւ կարելիութիւններուն»:

Օրուան ատենավարը, Պր. Պերճ Թէրզեան վերոյիշեալ խօսքերով ներկաներուն պարզեց երեկոյին բնոյթն ու նպատակը եւ ճշդեց նաեւ, թէ քննարկման նիւթը, *Կարելի՞ է Սփիւռքի մէջ հայկական արուեստ մշակել կամ ոչ* կը վերաբերի Սփիւռքի երրորդ սերունդին, 1980-էն մինչեւ 20-րդ դարու աւարտը երկարող շրջանին:

Այս սահմանումը անհրաժեշտ նկատուած էր, նկատի ունենալով որ հայրենիքէն զաղթած Սփիւռքի առաջին սերունդին եւ անոր շունչին տակ հասակ նետած եւ կազմաւորուած Սփիւռքի երկրորդ սերունդէն յետոյ, իսկական Սփիւռքը կը սկսի, հայրենի հողէն բոլորովին հեռու ծնած եւ օտար միջավայրի մէջ մեծցած երիտասարդ սերունդով, որ 20-րդ դարու վերջին երկու տասնամեակներուն պիտի գտնուի իր ստեղծագործական բարձրակէտին վրայ:

Առաջին ատենախօսն էր Օր. Նայիրի Համբիկեան:

Ո՛չ բոլոր ընթերցողները ծանօթ են երեկոյին ատենախօսներուն:

Ամփոփ գիծերով ներկայացնենք իւրաքանչիւրը իր կարգին:

Նայիրին, 1982-ին աւարտած է տեղւոյս Էյն Շամս Համալսարանի Ճարտարապետական ճիւղը: Որպէս Սթաժէօր յաճախած է Երեւանի Բազմարուեստից Հիմնարկը եւ ուսումնասիրութիւններ կատարած է հայկական ճարտարապետութեան մասին:

Նայիրիին սթաժէօրական թէզը եղած է *Եգիպտահայ գաղութի շինարարական գործունէութիւնը*, որուն մէջ ներկայացուած են.

ա.- Եգիպտահայ ժամանակակից հայկական եկեղեցիները

բ.- Եգիպտահայ գաղութին գործածած հայկական հանրային կեդրոնները (վարժարան, ակումբ, հանգստեան տուն եւ այլն)

գ.- Ֆաթիմեան եւ Այուպեան Եգիպտոսի ծաղումով հայ երեւելիներու շինարարական գործունէութիւնը:

Օր. Համբիկեանի պարագային հարցը հետեւեալն է. «Սփիւռքի մէջ կարելի՞ է հայկական ճարտարապետութիւն մշակել»: Օր. Համբիկեանին համար քննարկելի հարց մը չէ այս. կարելի է ըսել «այո» կամ «ոչ»: Սակայն «քանի որ Սփիւռք ենք» կ՚ըսէ ան, «այս հարցը պէտք է ծեծենք եւ ծեծենք: Ոչ մէկ ազգ նման հարց մը կու տայ ինքզինքին»: Սփիւռքը կը խրտչեցնէ Նայիրին, որովհետեւ ան «տգեղ իրականութիւն» մըն է, եւ մենք՝ Սփիւռքահայերս զայն չենք դասեր հոն ուր որ է, այլ կը ջանանք զայն դնել «աւելի բարձր տեղ մը»: «Համոզուինք սփիւռքով, նոյնիսկ սիրենք Սփիւռք կոչուած իրականութիւնը, սակայն չհպարտանանք անով» կ՚եզրակացնէ ան:

Յուզումով արտայայտուած այս խօսքերէն ետք, Նայիրին տուաւ սպառիչ

բացատրութիւններ, ի վերջոյ յանգելու համար իր անձնական տեսակէտին, որ հետեւեալն էր.

«Ճարտարապետութիւն մշակել կարելի է միայն Ս. Հայաստանի մէջ, ուր կայ հողը, ժողովուրդը, պատմականը եւ խաղաղութիւնը»:

Ինչպէ՞ս Նայիրին հասաւ իր այս եզրակացութեան:

Հետեւինք իր մասնագիտական բացատրութիւններուն:

«Ճարտարապետութիւնը միջոց մը (տարածութիւն իմաստով) ստեղծելն է: Ան տարբեր է միւս արուեստներէն, օգտապաշտ է (այսինքն որոշ գործածութեան մը օգուտին համար) եւ հոգեկան պահանջքէ մը աւելի էական պահանջք մը կը գոհացնէ»:

Ճարտարապետութիւնը արուեստ մը չէ որ ստեղծուած է արուեստի համար: Ճարտարապետական ոճը կը ստեղծուի երբ նոյնանման մարդիկ կ'ապրին նոյն հողին վրայ, ունին նոյն յատկանիշները, նոյն կլիման, բնութիւնը, մշակոյթը եւ ատաղձը: Ոճը կարելի է մշակել այդ նոյն հողին վրայ ուր կայ պատմական փորձառութիւնը, այսինքն՝ հնութիւնները, նախշերը եւ այլն, եւ որոնք պէտք է հասանելի ըլլան ճարտարապետին: Ճարտարապետութիւնը հողին հետ կապ-ւած է, իսկական հայկական ճարտարապետութիւնը՝ հայկական հողին վրայ միայն կրնայ ըլլալ: Սփիւռքի մէջ շինուած եկեղեցիները ժամանակաւոր պայմաններ գոհացնելու համար են: Ճարտարապետութեան մէջ փորձառական եւ մշակման ժամանակաշրջանը երկար է եւ հողի կը կարօտի:

Նայիրին իր խօսքը աւարտեց հետեւեալ հարցադրումներով.

«Ի՞նչ է Սփիւռքը: Ժողովո՞ւրդ ենք Սփիւռքի մէջ: Ժողովուրդ կազմելու բոլոր տուեալները ունի՞նք որ կը պահանջենք արուեստ մշակել»:

«Ինչո՞ւ կայ Սփիւռքը եւ ուրկէ՞ կ'առնէ ան իր ուժը, որպէսզի կարենայ մնալ այնպէս որ է, եւ ոչ թէ արուեստ մշակէ»:

«Սփիւռքի մէջ կարելի՞ է հայկական նկարչութիւն մշակել» հարցին մասին իր տեսակէտները պարզեց Հէլուանի Համալսարանի արուեստագիտական ճիւղին աւարտական դասարանի ուսանող Պր. Ռաֆֆի Չէչճէնեան:

Ռաֆֆին նկարչական եւ արուեստի այլ գործերով մասնակցած է Գահիրէի հայ գաղութին կազմակերպած ցուցահանդէսներուն:

Ռաֆֆին իր խօսքը սկսաւ հարցումով մը:

«Մենք կրնա՞նք այս չորս պատերուն մէջ արուեստ մշակել»: «Ոչ» ըսաւ ան, «որովհետեւ արուեստ մշակելու համար անհատը պէտք է ազդուի եւ ազդէ»: Ապա Ռաֆֆին թուեց այն ազդակները որոնք կ'ազդեն անհատին վրայ ու կը մղեն զայն ստեղծագործելու: «Արուեստը անհատին ենթագիտակցական աշխարհին ար-տայայտութիւնն է: Ամէն անհատ ունի իր գիտակցական եւ ենթագիտակցական աշխարհը: Անհատին արտաքին եւ ներքին միջավայրը եւ բոլոր այն պատահար-ները որոնք տեղի կ'ունենան անոր կեանքին ընթացքին, կ'ազդեն անհատին

աշխարհին վրայ, եւ որովհետեւ կը տարբերին միջավայրերը եւ ազդեցութիւնները, ուրեմն կը տարբերի նաեւ արտայայտութեան ձեւը»:

«Հայ արուեստագէտը որ կ՚ապրի Գահիրէի մէջ կը տարբերի Հայաստանի կամ Անգլիոյ մէջ ապրող արուեստագէտէն»:

«Հայկական արուեստ մշակելու համար պէտք ունինք երկու կարեւոր ազդակներու, հողի եւ ժողովուրդի»: Հոս Ռաֆֆին եզրակացուց իր խօսքը ըսելով՝ «Սփիւռքի մէջ չունինք հող եւ ժողովուրդ, չենք կրնար հայկական արուեստ մշակել»:

«Սփիւռքը հայ ժողովուրդին ամենաողբերգական երեւոյթն է եւ մենք անոր մնացորդն ենք»:

Արտայայտուողը Պր. Հայկ Սարգիսեանն է: Արուեստի իր բնագաւառը երաժշտութիւնն է: Ութը տարի շարունակ երաժշտական ուսումը առած է Հայաստանի մէջ եւ 1983-ին, շրջանաւարտ ըլլալով Կոմիտասի անուան երաժշտանոցէն, վերադարձած է Գահիրէ, ուր մանկավարժական աշխատանքի լծուած է Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարաններու Պուլաքի մասնաճիւղէն ներս: Ան խմբավարն է Բարեգործականի Գահիրէի Կռունկ եւ Աղեքսանդրիոյ Գուսան երգչախումբերուն, նաեւ դասախօս է Գահիրէի Պետական Երաժշտանոցին մէջ եւ խմբավարն է նոյն հիմնարկին պատանեկան եւ երիտասարդական երկու երգչախումբերուն:

«Սփիւռքի երաժշտական լեզուն պանդուխտի երգն է: Սփիւռքը միայն պանդուխտի երգ կրնայ ստեղծել, *Կռունկ* կրնայ ստեղծել, *Քելէ լաօ* կը ստեղծէ: Այս բոլորը ճիչ են, ճիչն է արդարութեան պահանջքին, վերադարձն է դէպի հայրենիք, դէպի հողերը»:

Հողէն կտրուած, հողի կարօտով տագնապով Հայկին ճիչն էր այս, որմէ ետք հանդարտած Հայկը շարունակեց իր խօսքը:

«Սփիւռքի մէջ անհատական արուեստ կարելի է ստեղծել: Հայկական ազգային արուեստ, կարելի չէ մշակել Սփիւռքի մէջ»:

Բացատրելու համար թէ ինչո՞ւ կարելի չէ հայկական ազգային արուեստ մշակել Սփիւռքի մէջ, ան տուաւ զուտ մասնագիտական բացատրութիւններ, երաժշտական ստեղծագործութեան արտայայտչական ընդհանուր սկզբունքներուն մասին, ապա թուեց, ազգային երաժշտութեան ստեղծումին ու մշակումին համար անհրաժեշտ ազդակները:

«Հայկական ազգային երաժշտութեան մշակման անհրաժեշտ ատաղձը, հայկական ժողովրդական, հայկական գեղջկական, գիւղական երաժշտութիւնն է եւ այդ երաժշտութեան ակունքը, գիւղն է: Մեր պարազային, հայկական գիւղը: Սփիւռքի մէջ հայկական գիւղ կա՞յ: Հայկական գիւղը Ս. Հայաստանի մէջ է եւ հոն է որ կարելի է հայկական ազգային երաժշտութիւն մշակել»:

«Սկիզբ եւ աւարտ ունեցող խօսք մը պիտի չըլլայ իմս, պիտի պարզեմ

հիմնաթելեր կամ թեմաներ, որպէսզի ներկայ հասարակութիւնը արտայայտուի անոնց մասին»։

Իր «հիմնաթելերը կամ թեմաները» պարզողը Պր. Վարուժան Գազանճեանն է։

Ան 1979-ին աւարտած է Էյն Շամս համալսարանի անգլիական Գրականութեան ճիւղը։ Այժմ, դասախօս է Թանթայի համալսարանը, ուր 1984-ին ստացած է Մագիստրոսի աստիճան, իր թէզին նիւթ ունենալով *Ազգային ընկերային եւ հոգեբանական հարցերը Ճոն Օզպորնի թատերագրութեան մէջ*։ Ընթացիկ տարուան մէջ Վարուժան կը յուսայ պաշտպանել իր տոքթորայի թէզը որուն նիւթն է *Թատերական մենախօսութիւնը, կառոյցն ու զարգացումը*։

Վարուժան լայն գրական հետաքրքրութիւններ ունի։

Հայերէնով փորձած է հրապարակագրութիւնը, թատերգութիւնը եւ բանաստեղծութիւնը, որ իր նախասիրած ճիւղն է։ Սփիւռքահայ գրական հանդէսներու մէջ լոյս տեսած են իր բանաստեղծութիւնները Վարան Ուժ գրական անունով։

Վարուժան հաղորդավարներէն է նաեւ Գահիրէի հայկական եւ անգլիական ռատիոժամերուն։ Անգլերէն լեզուով ներկայացուցած իր յայտագիրներուն շարքին, ան՝ այժմ կը ներկայացնէ *Եգիպտացի արդի բանաստեղծները եւ անոնց գործերը իմ տեսանկիւնէս դիտուած* հաղորդաշարը։

«Սկիզբ եւ աւարտ չունեցող» իր խօսքը այսպէս սկսաւ Պր. Գազանճեան. «Նախ, հարցումին պատասխանը։ Սփիւռքի մէջ հայկական գրականութիւն կարելի է ստեղծել»։ Այս դրական հաստատումով, ան կը տարբերի նախորդ երեք ատենախօսներէն։ Ապա շարունակեց։ «Կրնա՞ք սպասել որ սփիւռքահայը հայաստանեան գրականութիւն ընէ։ Ոչ։ Այդ դժուար է եւ պահանջուած ալ չէ իրմէ, որովհետեւ հայաստանցի գրողը այդ աւելի լաւ կրնայ ընել»։

Իսկ ի՞նչ է սփիւռքահայ գրողէն պահանջուածը։

Ըստ ատենախօսին, սփիւռքահայ գրողը որպէս գոյութիւն ունեցող անհատ, այս պարագային եգիպտահայ, եթէ կ'ընդունի թէ հայ է եւ ապա եգիպտահայ, կ'ընդունի թէ իր ինքնութիւնը եւ կենցաղը եգիպտական են եւ անոնք ունին իրենց դրոշմը անհատին վրայ, հակառակ այն իրողութեան, որ անձի մը ինքնութեան պատրաստութեան մէջ եղած դրոշմը անպայման միջավայրը չէ, որովհետեւ անձի մը միտքը զանազան այլ բաներ ալ կը ստանայ իր ընթերցումներով, որոնք նաեւ ունին իրենց ազդեցութիւնը, ուրեմն եգիպտահայ գրողէն պահանջուածը հայաստանեան գրականութիւն չէ, այլ իր գրական վկայութիւնը իր գաղութին մասին։

Վարուժան շարունակելով իր խօսքը ըսաւ, թէ գրականութեան մէջ մեր հայկականութիւնը կու գայ գրական աւանդներէն, այսինքն գրաբարի եւ ապա աշխարհաբար գրականութեան երկու ճիւղերէն։ Գրողին համար անհրաժեշտ են միջոցը եւ նիւթը։

Միջոցը լեզուն է, մեզի համար հայերէնը։

Նիւթը կը մատակարարէ գաղութը:

Ի՞նչ նիւթ կը մատակարարէ մեր գաղութը:

Վարուժանին կարծիքը հետեւեալն է.

«Գաղութը հակասական պատկեր մը կը ներկայացնէ:

«Մէկ կողմէ կ'ողբանք թէ գաղութը նօսրացած է, ոչնչացած՝ բան չէ մնացած մեզմէ եւ այլն: Եւ որովհետեւ հաշտուած ենք այդ իրողութեան հետ, բնական է որ ոչ արուեստ, ոչ ալ որեւէ բան կարելի է սպասել մեզմէ:

«Միւս կողմը սակայն այլ պատկեր է:

«Կը խօսինք հպարտութեամբ մեր դպրոցներուն, ակումբներուն, թեմականին եւ այլ կառոյցներուն մասին, եւ ունինք մեծ յաւակնութիւններ, որոնք կրնան միայն երգիծանքի նիւթ հայթայթել գրողին:

«Գրողին պարտականութիւնը նախ եւ առաջ լեզուին հանդէպ է:

«Լեզուն կը զարգանայ գրականութեան ընդմէջէն ստեղծուած ոճով:

«Գրողը գրականութեան ժառանգը ունի, միջոցը ունի, ունի նաեւ նիւթը, ուրեմն անպայման չէ, ըսենք՝ Վանի մէջ ըլլալ, գրականութիւն մշակելու համար»:

Ատենախօսը ապա թուեց սփիւռքահայ գրողին դժուարութիւնները.

«Սփիւռքի մէջ գրողը կը գրէ պարզապէս որովհետեւ գրելը իրեն համար ապրելու, ինքզինք արտայայտելու, բացատրելու կամ փոխուելու ձեւ մըն է, ինչպէս օրինակ՝ նարտ խաղացողին համար նարտ խաղալը, փոխուելու եւ ինքզինք արտայայտելու ձեւ մըն է: Սփիւռքահայ գրողը ունի աւելի մեծ պատասխանատուութիւն, որովհետեւ քիչ ընթերցող ունի, եւ ինք պէտք է իր ընթերցողը ըլլայ եւ ինքզինք սրբագրէ»:

Վարուժանին պարզած «թեմաներէն» էին հետեւեալ հարցադրումները.

«Ի՞նչ է նպատակը Սփիւռքին»:

«Որո՞նք են Սփիւռքի ողբերգութեան կամ ընդմիշտ անկումին պատճառները»:

Ան այս հարցերուն պատասխանները տուաւ իր տեսանկիւնէն: «Սփիւռքը աննպատակ է» ըսաւ ան, «եւ իր ողբերգութեան պատճառը այդ է»:

Վարուժան իր հաստատումը բացատրեց հետեւեալ ձեւով՝

«Սփիւռքահայերս ժամանակ առ ժամանակ նշանաբաններ կը նետենք հրապարակ, ըսենք օրինակ՝ «Վերադառնալ մեր գրաւուած հողերը» եւ ինքզինքնիս կը հանգստացնենք կարծելով թէ մեր պարտականութիւնը կատարած կ'ըլլանք երբ զանոնք յիշենք հանդէսէ հանդէս: Սակայն, երբ մենք նշանաբան մը մէջտեղ կը նետենք, մեր ամբողջ առօրեան պէտք է նուիրենք այդ նշանաբանին: Մենք այդպէս չէ որ կ'ընենք»:

Իսկ ի՞նչ պէտք է ըլլայ նպատակը Սփիւռքին:

Խօսքը դարձեալ ատենախօսին է.

«Սփիւռքի նպատակը մշակոյթ պէտք է ըլլայ: Սփիւռքը ինք իր վկայութիւնը

պէտք է տայ: Ամէն մարդ գիտէ որ պիտի մեռնի, սակայն այդ բանը չեմ կարծեր որ զինք կը ջղագրգռէ, իսկ զիս կ'առաջնորդէ փիլիսոփայական խոհերու:

«Մեր պարագային եթէ Սփիւռքը անկումի մէջ է եւ պիտի մահանայ, անոր հակընդդէմ աշխատանք մը կամ ըմբոռնում մը չկայ: Իմ կարծիքս այն է որ Սփիւռքահայ գրողը որ մասնակից է այդ իրավիճակին, պէտք է որ դրական որեւէ սեռով այդ իրավիճակին պատկերը տայ: Վէպի մէջ օրինակ զարգացնելով եւ մշակելով եղելութիւնները: Իսկ, բանաստեղծութեան մէջ, որ աւելի վերացական է, ջանայ ճշմարտութիւններու հասնիլ:

«Ուրեմն խորհրդանշական այդ մահը ցոյց պիտի տայ, թէ ինչպէս ժողովուրդ մը ուրիշ ափերու վրայ ինկաւ եւ կորսուեցաւ, բայց այդ անկումին յուշարձանները ձգեց»:

Հոս վերջ գտաւ օրուան չորս ատենախօսներուն ելոյթը:

Ատենավար Պր. Պ. Թէրզեան խնդրեց ներկաներէն որ իրենց հարցերը ներկայացնեն ատենախօսներուն եւ երեկոն շարունակուի այդ հարցերուն քննարկումով:

Կրքոտ եւ յուզումնալից քննարկում մըն էր որ տեղի ունեցաւ մասնակցութեամբ երէց թէ երիտասարդ, եգիպտահայ թէ հայրենի ներկաներուն:

Պիտի ջանանք ամփոփել եւ ներկայացնել քննարկման ընթացքին արտայայտուած մտքերը:

- Երբ հայկական ոգին վառ է, հայկական արուեստ կարելի է մշակել:

- Սփիւռքը աննպատակ չէ: Ան պահեստի ուժ մըն է որուն նպատակն է վերադարձ դէպի հողերը:

- Սփիւռքահայուն մէջ հայրենիքէն կտրուած ըլլալու տագնապը կայ: Որքան զօրաւոր ըլլայ այդ տագնապը, որպէս հայ գոյատեւելու մղումը այդքան զօրաւոր պիտի ըլլայ: Ազգային արուեստ մշակելը արդիւնք պէտք է ըլլայ այդ տագնապին:

- Սփիւռքի մէջ կարելի է հայկական արուեստ ստեղծել, սակայն մշակել կարելի չէ:

- Սփիւռքի մէջ ազգային արուեստ մշակել կարելի է, որովհետեւ հիմը, ժառանգը կայ, սակայն եւ այնպէս պէտք է երթալ ակունքին, ապրիլ վայրին մէջ եւ զգալ արուեստը իր վայրին մէջ:

- Ի՞նչ է պարտականութիւնը Հայաստանի մէջ արուեստի որեւէ ճիւղէ մասնագիտացած սփիւռքահայ երիտասարդին: Ինչո՞ւ պիտի չկարենայ արուեստ մշակել:

- Սփիւռքահայ երիտասարդը կ'երթայ Հայաստան հայրենի հողէն հաղորդուելու եւ այդ հաղորդութիւնը փոխանցելու եւ ոչ թէ արուեստ մշակելու:

- Եթէ ես բնութեամբ հայ եմ եւ ցանկանում եմ տեսնել իմ պատմութիւնը, իմանալ իմ ճարտարապետութիւնը եւ գրականութիւնը, ապա ես անցեալի այդ փորձի վրայ ուզում եմ ստեղծել իմը, ես դա կը կարողանամ անել եւ դա

անպայման կ'ունենայ իր հայկական երանգը։ Ի վերջոյ կարելի չէ անդադար Զուարթնոց կրկնել։

- Հայկական ազգային արուեստը մի ընդհանուր գետ է որ ստեղծւում է այն առուակներից եւ գետակներից որ լցւում են այդ գետի մէջ։ Գետը միշտ հոսքի մէջ է եւ հարստանում է այդ տարբեր առուակներից եկած ջրերով։ Հայկական ոգիով եգիպտահայ արուեստը այդ գետակներից մէկն է։

- Նախատեսելու համար գալիքը, անհրաժեշտ է որ ակնարկ նետենք անցեալին վրայ։

Պատմութենէն գիտենք մանաւանդ մենք, հայերս, թէ ժողովուրդները կ'ապրին ու կանգուն կը մնան իրենց մշակոյթով։ Այն ժողովուրդը որ մշակոյթ կամ արուեստ չստեղծագործեր դատապարտուած է մահանալու։ Կարող է միայն նա ապրիլ, որը ոչ միայն լաւ անցեալ ունի, այլ նաեւ շատ լաւ գիտակցում է իր առօրեայ դերը եւ վաղուայ անելիքը, ըսած է Պարոյր Սեւակ։

Սփիւռքահայութիւնը մէկ կարեւոր մասն է մեր ժողովուրդին «առանց որ զայն դնեմ աւելի բարձր տեղ մը»։ Ան պահանջատէրն է իր հողերուն։ Ուրեմն պէտք է ապրիլ։ 1980-ական թուականներէն մինչեւ 20-րդ դարու աւարտը «ապրող հա՛յ արուեստագէտին» դերը պէտք է ըլլայ ոչ միայն մեր հարուստ անցեալը կապել ներկային, այլ ներկան հասցնել վաղուան, իր կարելիութեան սահմաններուն մէջ, անոր տալով հայկականը։ Չէ՞ որ «Սփիւռքահայ երիտասարդը Հայաստան կ'երթայ հայրենի հողէն հաղորդուելու եւ այդ հաղորդութիւնը փոխանցելու Սփիւռքին»։ Սփիւռքահայ արուեստագէտը այդ հաղորդակցութեան պէտք է աւելցնէ իր հայկականութիւնը, իր դրոշմը եւ փոխանցէ զայն որպէս հաւաստիք իր գոյութեան։

Իսկ, թէ ինչո՞ւ պէտք է ապրի Սփիւռքը։

Ան պէտք է ապրի «իր ճիչը հասցնելու արդարութեան պահանջքին, վերադառնալու դէպի հայրենիք, դէպի հողերը»։ Հոգ չէ թէ այդ ճիչը անհատական արուեստի մը ճիչն է։ Ժողովուրդը կը կազմուի անհատներէ, ինչպէս «գետը կը կազմուի իր մէջ թափուող գետակներէն»։

Չկայ ժողովուրդ, չկայ հող։

Իսկ, գալով «Սփիւռքը աննպատակ է» վարկածին, Սփիւռքը աննպատակ չէ եղած եւ չէ։ Այլապէս «Սփիւռքահայ» գոյութիւն չէր ունենար մինչեւ այսօր։

«Սփիւռքահայ գրողին համար գրելը պարզապէս ինքզինք արտայայտելու, բացատրելու կամ փոխուելու» ձեւ մը չէ միայն, «ինչպէս նարտ խաղացողին համար նարտ խաղալը»։ Գրողը իր գաղութին իրավիճակը պարզելով մէկտեղ, ունի գերագոյն պատասխանատուութիւն մը։ Ուրիշներու կարգին եւ ուրիշներէ առաջ, իր պարտականութիւնն է որպէս գրող, ժողովուրդին էութեան փոխանցել «ժամանակ առ ժամանակ մէջտեղ նետուած նշանաբաններ»-ը, ոչ միայն հանդէսէ հանդէս, այլ ամէն օր, «բանիւ եւ գործով», այն «միջոցով» որ հայ գրողինն է եւ այն

«ոգիով» որ պէտք է ըլլայ հայ գրողինը, որովհետեւ այդ նշանաբանները նպատակ ունին եւ «Սփիւռքի անկումին հակընդդէմ աշխատանք» մըն են։

Հ. Գ. Միութեան եւ Կոկանեան Սրահի Մշակութային Միացեալ Յանձնախումբին կազմակերպած այս երեկոն հասած էր իր նպատակին։ Ներկայ հոծ թիւով հասարակութեան մօտ յառաջացած տաք եւ աշխոյժ վիճաբանութիւնը որ շարունակուեցաւ նաեւ երեկոյին աւարտէն ետք եկաւ փաստելու, թէ ոչ միայն երեկոն հասած էր իր նպատակին, այլ եւ «ջրելու այն թիւր կարծիքը, թէ մեր գաղութը այլեւս չէ հետաքրքրուած մշակոյթով եւ աւելի հետաքրքրութիւն ունի պարահանդէսներու եւ կերուխումներու հանդէպ»։

*Արեւ*, 8 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20627, էջ 2. 9 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20628, էջ 2. 10 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20629, էջ 2

ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԻՒՆ ՀԲԸՄ ԿՈՎԿԱՍԵԱՆ ՍՐԱՀ

**Կիրակի, 28 Յունիս 1987, երեկոյեան ժամը 8-ին**

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ "ԷՈՒԸՐԹ ՄԵՄՕՐԻԱԼ" ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

# ԵՐԳԻ ԵՒ ՊԱՐԻ ԵՐԵԿՈՅԹ

**Հովանաւորութեամբ**

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ

**Նախագահութեամբ**

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԲՈԼ ՔԻԼԻՏՃԵԱՆԻ**

ԱՏԵՆԱՊԵՏ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ

**ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՆ**






ԽՄԲԱՎԱՐ՝
**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**



**ՊԱՐԱԽՈՒՄԲԸ**

ՂԵԿԱՎԱՐ ՊԱԼԷԹՄԱՅԷՍԹԷՐ՝
ՀՍՍՀ ՎԱՍՏԱԿԱՒՈՐ ԱՐՏԻՍՏ
**ԼԵՒՈՆ ԳԱՍՈՅԵԱՆ**

ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ՍԻՐՈՎ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ Է

Յայտարարութիւն
*Արեւ*, 12 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20631, էջ 4

# ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՏ ԳԵՂԵՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ

ԱՄԱԼ ՇՈՒՔՐԻ ՔԱԹԹԱ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հայկ Սարգիսեանի երգչախումբն ու Լեւոն Գասոյեանի պարախումբը զգայացունց յաջողութիւն մը արձանագրեցին իրենց ներկայացումներուն ընթացքին, Գահիրէի Ամերիկեան Համալսարանին Էուըրթ Մեմորիըլ հանդիսասրահին մէջ:

Կազմակերպուած Հայ Գեղարուեստասիրաց Միութեան, ինչպէս նաեւ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան կողմէ, երգերու եւ պարերու հմայիչ ներկայացումը տեղի ունեցաւ աւելի քան լեցուն սրահի մը մէջ, ուր հանդիսականներէն շատեր նախընտրեցին ոտքի մնալ, քան թէ զրկուիլ ներկայացումներէն:

Բացումը կատարուեցաւ Սայէտ Տարուիշի եգիպտական ազգային քայլերգով, որուն յաջորդեց Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի*ն, զորս վեհապանծ գեղեցկութեամբ մը կատարեցին Կռունկ երգչախումբին երիտասարդ անդամները: Երեկոյթին առաջին մասը նուիրուած էր երգին:

Միշտ աճող հաճոյքով է, որ մարդ կ'ունկնդրէ ձայներուն մաքրութիւնը, կատարեալ ներդաշնակութիւնը, յատկանշական հաւասարակշռութիւնը եւ գնահատանքի արժանի կարգապահութիւնը այս երգչախումբին, որ կազմուած է եւ ղեկավարուած խմբավար Հայկ Սարգիսեանի կողմէ:

Հայկական ժողովրդական երգեր, քնարական երգեր, ինչպէս նաեւ արաբական *Եա ազիզ էյնի* երգը, իրարու յաջորդեցին մեծ եռանդով եւ գեղեցիկ դաշնաւորումով: Սիլվա Թերզիպաշեան, Ալիս Սիմոնեան եւ Ռաֆֆի Չէչճէնեան մենակատարները, որոնց կ'ընկերակցէին դաշնակով՝ Կասիա Ճղալեանը, սրինգով՝ Անահիտ Սարգիսեանը եւ դհոլով՝ Ռուբէն Թերզիպաշեանը, ցուցաբերեցին երաժշտական մեծ տաղանդ, գեղագիտական ոգի եւ խորապէս բանաստեղծական հոգի, որոնք կը յատկանշեն յատկապէս օժտուած այս երիտասարդութիւնը:

Յայտագրին երկրորդ մասը կը ներկայացնէր Հայկական ժողովրդական պարեր, զորս կատարեց Զանգեզուր պարախումբը, ղեկավարութեանը տակ պալէթմայէսթէր Լեւոն Գասոյեանի: Ընդամէնը ութը պարեր յայտնաբերեցին կատարեալ ներդաշնակութիւնը մեծ կազմերուն, ինչպէս նաեւ ճարտարութեամբ զուգորդուած յատկանշական ճկունութիւնը փոքր կազմերուն եւ մենակատարներուն: Այսպէս, Պրիժիթ Գալընեանի եւ Նորա Կարինեանի *Ուզունդարա* պարը, ինչպէս նաեւ հինգ պարուհիներով *Զով գիշեր*ը, հասարակութեան կողմէ ընդունուեցան նոյնքան ջերմ ծափողջոյններով, որքան այն պարերը, ուր ամբողջ խումբը կը տողանցէր անհուն ուժականութեամբ եւ կենսունակութեամբ:

Այս գեղեցիկ կատարումներուն գագաթնակէտը հանդիսացաւ, երբ Լեւոն

Գասոյեանը՝ շատ նրբիրան, շատ շնորհալի, յայտնուեցաւ բեմին վրայ կարճա-տեւ պարով մը, ուր կարելի էր հիանալ իր շարժուձեւերուն չափազանց զգայնու-թեամբ եւ իր շարժումներուն յատկանշական տիրապետումով:

Ան կու գար Հայաստանէն՝ կազմելու եւ մարզելու համար գահիրէցի երիտա-սարդները, եւ Հայաստանէն էր որ իր հետ ան բերած էր այդ ամբողջ յանկուցիչ խանդը, այդ ջերմ աշխուժութիւնը, այդ պայծառ կենսունակութիւնը, որոնք յատկանշեցին այդ գեղեցիկ երեկոյթին բոլոր պարերը:

Պէտք չէ մոռնալ, որ Կռունկ երգչախումբին բոլոր երգիչներն ու մենակատար-ները, Զանգեզուր պարախումբին բոլոր պարողներն ու մենակատարները սիրողներ են, որոնք, ինչպէս որ բացայայտ է, ունին երգին ու պարին կիրքը: Հասարակութիւնը զանոնք ողջունեց մեծ խանդավառութեամբ:
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 9 Յուլիս 1987)

*Արեւ*, 16 Յուլիս 1987, 72-րդ տարի, թիւ 20657, էջ 1

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԻ ՈՒ ՊԱՐԻ ՅԱՋՈՂ ԵԼՈՅԹԸ

ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆ

Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ հանդիսա-սրահին մէջ, Կիրակի 28 Յունիսի երեկոյեան ժամը 8-ին, տեղի ունե-ցաւ Հայկական Ժողովրդական Երգի եւ Պարի Երեկոյթ մը, կազմակերպութեամբ Հ.Բ.Ը.Մ.-ի, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան եւ Կոկանեան Սրահի վարչութեանց եւ մասնակցութեամբ Կռունկ երգչախումբին խմբավարութեամբ Հայկ Սարգիսեանի եւ Զանգեզուր պարախումբին՝ ղեկավա-րութեամբ ՀՍՍՀ վաստակաւոր արտիստ Պալէթմայէսթեր Լեւոն Գասոյեանի:

Հանդիսութիւնը կը հովանաւորէր թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան եւ կը նախագահէին Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի ատենապետ պր. Փօլ Քիլիտճեան եւ իր ազնուափայլ տիկինը:

Սրահին ու վերնատունը ամբողջութեամբ լեցուած էր հայ եւ օտար հանդիսա-կաններով, որոնց մէջ կը նշմարուէին Առաջնորդ Սրբազան Հօր եւ օրուան նախագահին կողքին, Հայ կաթողիկէ համայնքի Վիճակաւոր Արհի. Ռափայէլ Եպս. Պայեան, նոյն համայնքէն տէր եւ տիկին Պետրոս Պետիկեան, Հայ Աւետա-րանական համայնքի նախագահ պր. Աւետիս Ն. Չագրճեան, Գահիրէի Ս. Միութեան դեսպանատան փրոթոքոլի պետ եւ Բ. քարտուղար Էդիկ Նալբան-դեան, Քաղաքական ժողովի ատենապետ պր. Նուպար Սիմոնեան, Լոնտոնա-բնակ պր. Ճորճ Քիւրքճեան, կրօնաւորներ, ազգային երեսփոխաններ, զանազան

մշակութային եւ մարզական միութեանց ատենապետներ եւ արուեստասէր բազմութիւն մը։

Յայտագիրը սկսաւ երգչախումբին կողմէ երգուած եգիպտական քայլերգով որը յոտնկայս ունկնդրուեցաւ։ Ապա, երգչախումբը յաջորդաբար երգեց Է. Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի*ն, Գ. Սիւնիի մշակած երկու ժողովրդական երգեր *Սարերի հովին մեռնեմ* եւ *Ալագեազ-Խնկի ծառ*ը, Խ. Աւետիսեանի *Ծաղկած բալենի*ն, *Եա ազիզ էյնի* արաբական ժողովրդական երգը, որուն մենակատարի բաժինը իր քնքոյշ ձայնով երգեց Սիլվա Թերզիպաշեան, Գուսան Աշոտի *Սարի սիրուն եարը*։ Երգչախումբը իր բաժինը վերջացուց երգելով երեք ազգագրական երգեր *Սամավար, հայ լոթի* (մենակատար Ալիս Սիմոնեան), *Մշոյ աղջիկ* (մենակատար Ռաֆֆի Չէչճէնեան) եւ *Տօնական*ը։

Երգերուն դաշնակի նուագակցութիւնը ներդաշնակօրէն կատարեց Կասիա Ճղալեան, սրինգի՝ Անահիտ Սարգիսեան եւ տհոլի՝ Ռուբէն Թերզիպաշեան։

Երգչախումբը մէկը միւսէն հմայիչ կատարումով ներկայացուց երգերը, քանիցս արժանանալով հանդիսատեսներուն «պիս»-երուն։

Կը շնորհաւորենք Կռունկ երգչախումբի խմբավար Հայկ Սարգիսեանը եւ բոլոր անդամները եւ կը մաղթենք բոլորին նորանոր յաջողութիւններ։

Բոլորը անհամբեր կը սպասէին Զանգեզուր պարախումբի ելոյթներուն որ հայրենի Պալէթմայէսթէր Լեւոն Գասոյեան կարճ ժամանակամիջոցի մը մէջ կարողացած էր համախմբել 28 երիտասարդ-երիտասարդուհիներ եւ անոնցմով վերակազմել պարախումբը։

Յայտագիրը սկսաւ *Երեւան* տօնական պարով (երժշտ. Ա. Խաչատրեանի) մասնակցութեամբ պարախումբի լրիւ կազմին, եւ որուն յաջորդեցին *Էրզրումի շորոր* հայկական ժողովրդական պար եւ *Ուզունտարա* (մենապարողներ Պրիժիթ Գալինեան եւ Նորա Կարինեան)։ *Վերվերի* հայկական ժողովրդական պարը կատարեց պարախումբը։ *Ջով գիշեր* հայկական ժողովրդական պարը ճկունութեամբ պարեցին Կասիա Ճղալեան, Թերեզ Ժամկոչեան, Աննա Թրայեան, Քրիստին Չատրճեան եւ Կարինէ Տէօվլէթեան։ *Հայոց աղջիկներ* հայկական ժողովրդական պարէն ետք, Կոմիտասի *Շիրանի ծառ*ը Քրիստին Չատրճեանի կողմէ այնքան արտայայտչականօրէն կատարուած մենապարը։

Յայտագրին վերջին պարը եղաւ *Քոչարի*ն մասնակցութեամբ պարախումբին լրիւ կազմին, որուն վերջաւորութեան մենապարով հանդէս եկաւ նոյն ինքն պալէթմայէսթէր Լեւոն Գասոյեանը խանդավառութիւնը հասցնելով իր գագաթնակէտին։

Զանգեզուր պարախումբին այս յաջող ելոյթը մեծ ոգեւորութիւն եւ խանդավառութիւն ստեղծեց՝ մանաւանդ հայ նոր սերունդին մէջ, եւ ա՛յս է մանաւորաբար որ կը գնահատենք, եւ չենք խորանար ու կատարել պարարուեստի անկիւնէն դիտուած քննադատութիւններ։

Կը շնորհաւորենք հայրենի պալէթմայէսթէր Լեւոն Գասոյեանը իր այս

դժուար պարտականութիւնը յաջողութեամբ պսակած ըլլալուն համար։ Նորանոր յաջողութիւններ եւ մանաւանդ յարատեւութիւն կը մաղթենք Զանգեզուր պարախումբին եւ անոր անդամներուն։

*Ջահակիր*, 9 Յուլիս 1987, նոր շրջան, թիւ 1103, էջ 1, 4

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԻ ՈՒ ՊԱՐԻ ԱՆՆԱԽԸՆԹԱՑ ԵՐԵԿՈՅԹԻՆ ՓԱՌԱՒՈՐ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Եթէ լեռը մարգարէին մօտ չերթար, մարգարէն լերան մօտ կ'երթայ։ Այդպէս ալ, եթէ մենք չենք կրնար զանգուածաբար Հայաստան երթալ, Հայաստանը մեզի կու գայ։ Եւ եգիպտահայութիւնը հայրենի անմոռանալի օր մը ապրեցաւ Կիրակի, 28 Յունիս 1987, երեկոյեան ժամը 8-էն, Գահիրէի Ամերիկեան Համալսարանին Էուըրթ Մեմորիըլ հանդիսասրահին մէջ, երբ տեղի ունեցաւ երեք քոյր միութիւններուն՝ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան, Կոկանեան Սրահին եւ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան կազմակերպած Հայկական Ժողովրդական Երգի եւ Պարի երեկոն, որ եգիպտահայ մշակութային տարեգրութեանց մէջ ոսկեայ տառերով անջնջելի հետք մը թողուց։

Երեկոյթին կը հովանաւորէր Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, իսկ կը նախագահէին Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Փոլ Քիլիտճեանները։ Ներկայ էին նաեւ հայրենի ներկայացուցիչ, Գահիրէի սովետական դեսպանատունէն Էդուարդ Նալբանդեանը, եգիպտահայ կաթողիկէ քոյր համայնքի Վիճակաւոր Գերպ. Ռափայէլ Եպս. Պայեանը, եգիպտահայ Աւետարանական քոյր համայնքի նախագահ Տիար Աւետիս Չագըճեանը, մշակութային, մարզական, բարեսիրական միութիւններու բոլոր պատասխանատուները, օտար բազմաթիւ դէմքեր, օտար մամուլի ներկայացուցիչներ, եւ աւելի քան 1500 հոգինոց բազմութիւն մը, որ ոչ միայն լեցուցած էր ընդարձակ հանդիսասրահը իր վերնատունով միասին, այլեւ պէտք եղաւ քովնտի աթոռներ ալ աւելցնել, մինչ սրահին ետեւը շատ շատեր ոտքի մնացին, մինչեւ սրահէն դուրս, ուր անոնք հանդիսութեան կը հետեւէին մասնաւորապէս հոն զետեղուած պատկերասփիւռին միջոցաւ։

Տասնամեակներէ ի վեր, եգիպտահայ ոչ մէկ ձեռնարկ այսքան հոծ բազմութեան ի մի հաւաքած էր։

Յայտագիրը բաժնուած էր երկու մասի։ Առաջին մասին մէջ ելոյթ կ'ունենար Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, զոր հայրենի երաժշտանոցը կոփած, թրծած եւ մեզի վերադարձուցած էր,

որպէսզի Նեղոսի սրբազան ափերուն տեւապէս հնչէ հայկական երգը: Իսկ երկրորդ մասը յատկացուած էր Հայ Գեղ. Միութեան եւ Կոկանեան Սրահի Զանգեզուր պարախումբին, բեմադրութեամբ Հայկական ՍՍՀ վաստակաւոր արտիստ, պալէթմայէսթեր Լեւոն Գասոյեանի. այս պարագային, հայրենիքը մեզի ղրկած էր դարբինը, որ հոս՝ տեղւոյն վրայ կոփէ ու ձեւաւորէ պարախումբ մը, որպէսզի սրբազան Նեղոսի ասպնջական ափերուն միշտ թնդայ հայկական պարը:

Հանդիսութիւնը սկսաւ Կոունկ երգչախումբին կողմէ երգուած եւ յոտնկայս ունկնդրուած եգիպտական ազգային քայլերգով, որուն յաջորդեցին երեք լեզուով բացման խօսքերը, արաբերէն՝ Պր. Ճորճ Սիմոնեան, հայերէն՝ ընկերուհի Զապէլ Տեփոյեան, եւ անգլերէն՝ Օր. Թալին Թուլումպաճեան:

Այնուհետեւ, Կոունկ երգչախումբը, ղեկավարութեամբ Հայկ Սարգիսեանի, առաջին առթիւ թնդացուց *Երեւան-Էրեբունի* երգը Էտկար Յովհաննիսեանի, որուն յաջորդեցին հայկական ժողովրդական երգեր՝ *Սարերի հովին մեռնեմ*, *Ալագեազ - խնկի ծառ*, Խաչատուր Աւետիսեանի *Ծաղկած բալենին*, *Եա ազիզ էյնի* արաբական ժողովրդական գեղեցիկ երգը, զոր նոյնքան գեղեցկօրէն դաշնաւորած էր Հայկ Սարգիսեանը, եւ որուն մենակատարի բաժինը կատարեց Սիլվա Թերզիպաշեանը, Գուսան Աշոտի *Սարի սիրուն եարը*, ազգագրական երգեր *Սամավար, հայ լոթի*, որուն մենակատարի բաժինը վստահուած էր Ալիս Սիմոնեանի, *Մշոյ աղջիկ*, որուն մենակատարն էր Ռաֆֆի Չէչճէնեան, եւ այս բոլորին գագաթնակէտը հանդիսացաւ *Տօնական փօ-փուրին*, որ պայթեցաւ Հայաստանով, սրահը թնդացնելով: Պէտք է յիշենք, որ խմբավար Հայկ Սարգիսեան, իր սովորութենէն հաճելի շեղում մը կատարեց, եւ ընդառաջելով հասարակութեան պահանջին, *Եա ազիզ էյնի* սիրուն երգը կրկին վայելելու պատեհութիւնը ընծայեց մեզի:

Խմբավար Հայկ Սագիսեանը, հակառակ որ վնասուած ծունկով՝ գաճի մէջ, բեմ ելած էր, անգամ մը եւս մեզի ապրեցուց հայկական երգի թովչանքով, մեզի մերթ տանելով Երեւան, մերթ հայրենի սարերուն վրայ, մերթ Ալագեազի լանջերուն, մերթ խնկի ծառի ստուերին տակ, բայց մի՛շտ Հայաստանի մէջ եւ իր առինքնող արուեստին հմայքին տակ պահելով մեզ: Կոունկի յաղթարշաւ երթին մէջ անմոռանալի հանգրուան մը եւս աւելցուց խմբավար Հայկ Սարգիսեանը:

Իսկ երգերուն ախորժալուր նուագակցութիւնները, դաշնակով՝ Կասիա Ճղալեան, սրինգով՝ Անահիտ Սարգիսեան, դհոլով՝ Ռուբէն Թերզիպաշեան, երգահանդէսին յաջողութեան հաճոյքը կրկնապատկեցին:

Հիմա դադար է, ընդմիջում, եւ ներկայ հասարակութիւնը ահաւոր ժխորով մը լեցուցած է մթնոլորտը, ուր քիչ առաջ հայկական երգին քաղցր հնչիւնները կը թեւածէին... Բայց այդ ժխորը հետեւանքն է ժողովուրդին անհամբերութեան: Չէ՞ որ յայտագրին երկրորդ մասը յատկացուած է Զանգեզուր պարախումբին, որ աւելի քան տասնամեակ մը լուռ մնալէ ետք, ահա այսօր, վերջապէս, շնորհիւ հայրենի պարուսոյց Լեւոն Գասոյեանի ճիգերուն, կրկին բեմահարթակ դուրս

պիտի գայ, եւ ամէն ոք վստահ է՝ յաղթականօրէն։ Բայց յաղթանակ, սակայն ժողովուրդը կ'ուզէ վայելել, ըմբոշխնել, ապրիլ հայրենի մշակոյթով։ Եւ անհամբեր է...։

Եւ ահա ի վերջոյ խօսնակը բարձրախօսէն ծանուցանեց, թէ Զանգեզուր պարախումբը հանդէս կու գայ Արամ Խաչատրեանի երաժշտութեամբ՝ *Տօնական Երեւան* պարով։ Եւ Օննիկ Պըլըքտանեանի արձանագրած հայկական հոգեզմայլ երաժշտութեան եւ հանդիսականներուն ծափողջոյններուն տակ, բեմահարթակը կը լեցուի ծիածանի ակնապարար գոյներով, յանձինս քսանեւութը պարողներու՝ տասնեւչորս աղջիկներ եւ տասնեւչորս տղաներ։

Այս առաջինին յաջորդեցին *Էրզրումի շօրօր*, *Վերվերի*, *Հայոց աղջիկներ* հայկական ժողովրդական պարերը, իր աւարտին հասնելով կրակոտ *Քոչարի*ով, երբ հրավառութեան նման պայթեցան ծափողջոյնները, ստիպելով որ պարախումբը կրկնէ զայն։

Բացի այս խմբապարերէն, Պրիժիթ Գալըճեան եւ Նորա Կարինեան զոյգը պարեց *Ուզունդարա* ժողովրդական պարը, իսկ Կասիա Ճղալեան, Թերէզ Ժամկոչեան, Աննա Թրայեան, Քրիստին Չատրճեան եւ Կարինէ Տէօվլէթեան խմբակը, ամբողջովին սպիտակ զգեստաւորուած, պարեց *Զով գիշեր* հայկական ժողովրդական պարը, գիշերուան զովութեան հետ մեզի փոխանցելով պարարուեստին ջերմութիւնը։

Օրուան շողշողուն աստղը հանդիսացաւ Քրիստին Չատրճեանը, Կոմիտասի երաժշտութեան վրայ *Ծիրանի ծառ* մենապարով։ Զինք ճանչցած էինք իբրեւ նկարչուհի, ունկնդրած էինք իր հիանալի մեկնաբանութեամբ մեներգները, եւ ահա հիմա ալ բեմին վրայ կրկին կը շողար, այս անգամ պարարուեստի մարզին մէջ, ներկայացնելով այնպիսի հմայիչ պար մը, որ կարծէք ամբողջ իր կեանքը անցուցած էր բեմահարթակին վրայ պարելով։

Յայտագիրը վերջ գտաւ, երբ պարուսոյցը ինքը՝ Լեւոն Գասոյեանը, բեմահարթակ նետուեցաւ եւ սկսաւ հրաբորբոք պարի մը, որ, աւելորդ է ըսել, առինքնեց հասարակութիւնը։

Վարագոյրը իջաւ, եւ կրկին բացուեցաւ, երբ հազար հինգ հարիւր զոյգ ափեր իրարու կը բախէին՝ թնդացնելով մթնոլորտը, որպէս գնահատանք եւ գոհունակութիւն այն գեղարուեստական անմոռանալի երեկոյթին, որ եղաւ Հայկական Ժողովրդական երգի եւ պարի այս հոյակապ ներկայացումը, որ անցաւ Հրայր Ճղալեանի եւ Խորէն Գալըճեանի լոյսերու ակնախտիղ խաղերուն տակ։

Այստեղ, չենք կրնար չյիշել, թէ բացի քանի մը հոգիէ, պարախումբին բացարձակ մեծամասնութիւնը առաջին անգամն էր, որ ելոյթ կ'ունենար հայկական պարով. եւ սակայն, անոնց քայլերուն եւ շարժումներուն համաչափութիւնը, աղջիկներուն՝ հայկական պարի յատուկ նրբին ու ճկուն ձեռքի շարժումները, այնքան հարազատ էին, որ մարդ կը կարծէր, թէ գէթ կիսաարհեստավարժ խումբի մը ելոյթին ներկայ կ'ըլլայ։ Եւ ասիկա կը պարտինք նախ պարուսոյցին՝ Լեւոն Գասոյեանի մանկավարժական հմտութեան, որ հազիւ քառասուն օրուան

մէջ, եւ այն ալ անշուշտ ոչ ամէն օր փորձեր կատարելով, հասաւ այս գերազանց արդիւնքին: Միւս կողմէն, չենք կրնար մոռնալ անշուշտ մեր տղոց եւ աղջիկներուն գիտակցութիւնը, թէ իրենց ուսերուն վրայ առած են ծանր բեռ մը, զոր պատիւով տեղ պէտք է հասցնէին, եւ հասցուցին: Ապրիք տղաք:

Կ'արժէ ընդգծել, որ այս բոլոր պարերն ալ յօրինումներն են պարուսոյց Լեւոն Գասոյեանի: Ուրեմն, պարի յայտագրին ամբողջական կազմութիւնը իր հեղինակութիւնն էր: Այնպէս որ Լեւոն Գասոյեան ոչ միայն պարուսոյց է, այլեւ ստեղծագործ աշխատանքի վարպետ:

Չենք կրնար լուռ անցնիլ պարազգեստներուն վրայէն, որոնք իրենց գոյներով, նախշերով, ձեւերով զուտ հայկական էին: Արդարեւ, Լեւոն Գասոյեան անձամբ Տիկիններուն հետ քանի մը օր շուկայ իջաւ՝ ընտրելու համար կերպասները, անոնց վրայի նախշերը: Եւ մեր նուիրեալ Տիկինները ամբողջ երկու շաբաթ, տուն տեղ մոռնալով, իրենց ամբողջ ժամանակը յատկացուցին այս զգեստները կարելու: Իսկ աղջիկներուն հիւսք-ծամերը, թագերը, Լեւոն Գասոյեան Հայաստանէն հետը նուէր բերած էր, մինչ տղոց մոյկերը Սփիւռքահայութեան հետ Մշակութային Կապի Կոմիտէն նուէր ղրկած էր:

Այստեղ յիշենք նաեւ, թէ Նուպար եւ Հրաչ Սիմոնեան եղբայրները երեկոյթին գեղարուեստական մակարդակին համարժէք գեղեցիկ յայտագիր մը պատրաստած էին՝ հայերէն, արաբերէն եւ անգլերէն, որուն վրայի գծագրութիւնները գործն էին Գեղամ Թրայեանի:

Այսպէս, հայկական ժողովրդական երգի եւ պարի այս երեկոյթը հանդիսացաւ հաւաքական եւ միասնական աշխատանքի մը քաղցրահամ պտուղը: Ահա թէ մարդ ինչ կրնայ ընել, երբ իր ԵՍ-ը կը միաձուլէ ՄԵՆՔ-ի մէջ:

Ջերմօրէն կը շնորհաւորենք կազմակերպիչ երեք միութիւններուն վարչութիւնները, քուլիսներուն ետեւ անյայտ մնացած աշխատողները, մասնաւորաբար ընկեր Նորայր Տէօվլէթեանը, Տիկինները, խմբավար Հայկ Սարգիսեանն ու մեր Կռունկները, եւ մանաւանդ պարուսոյց Լեւոն Գասոյեանը եւ Զանգեզուրցիները: Բոլորին ալ վարձքը կատար, եւ բոլորին ալ շնորհակալութիւն, այդ անմոռանալի վայելքին համար, զոր ըմբոշխնեցինք Յունիս 28-ի այդ երեկոյին:

*Արեւ*, 13 Յուլիս 1987, 72-րդ տարի, թիւ 20654, էջ 2-4

## ՀԱՅՐԵՆԻՔԻ ՇՈՒՆՉՈՎ ՏՈԳՈՐՈՒԱԾ

ՎԻՎԻԱՆ ՍԻՄՈՆԵԱՆ

Աներեւոյթ ուժ մը մոգական թէ զգայաբանական, չեմ կարող ճշդել, պարուրած էր Գահիրէի Ամերիկեան համալսարանին Էուըրթ Մեմորըլ

սրահին բեմը, Յունիս 28-ի երեկոյեան։

Ներկաները արդէն վայելած էին Հ.Բ.Ը.Մ.եան Կռունկ սիրուած երգչախումբին եւ անոր երիտասարդ, ստեղծագործ ղեկավար Հայկ Սարգիսեանին ելոյթը։

Այո, ստեղծագործ՝ քանի որ մայէսթրօ Սարգիսեանը իր խումբը կազմեց ասկէ մօտ չորս տարիներ առաջ, հայ երաժշտութեան քիչ տեղեակ եւ երգելու գրեթէ ձիրք չունեցող նկատուած պատանի տարրերով։

Յաջորդ բաժինը Զանգեզուր պարախումբին ներկայացումն էր։

Մամուլը բաւականաչափ տեղեակ պահած էր հանրութիւնը եւ հրահրած անոր հետաքրքրութիւնը այս բացառիկ ելոյթին առընչութեամբ։

Հոծ բազմութիւնը անհամբերութեամբ կ'ալեկոծէր։ Գահիրէի ամառնային տաքին հանդիպած էր այս ձեռնարկը։ Յանկարծ լռութիւն տիրեց։

Բեմը շողշողաց ու փայլատակեց։

Պարախումբը մուտք կը գործէր։ Գինեգոյն, կապոյտ, ոսկեգոյն հայկական հարազատ երանգները եւ երաժշտութեան ռիթմիք ու դասական նօթերը հմայեցին հայ զանգուածը, փոխադրելով զայն ժամանակներէ եւ երկիրներէ անդին՝ հայրենիք, դէպի Արարատեան դաշտ։ Հայրենաբաղձ հոգիները պարախումբին խանդով ու եռանդով դիւթուած՝ բեմ եւ սրահ, թաքուն զօրութեամբ մը հաղորդուած, ապրեցան խանդավառութեան բացառիկ վայրկեաններ, որոնք իրենց բարձրակէտին կը հասնէին ամէն պարի աւարտին։ Եզակի երեւոյթ մըն էր պատահածը։

Բոլորիս ծանօթ, պարախումբին անդամները կարծես նոյնացած, միաձուլուած դիմագիծով հայուհին եւ հայորդին էին այդ օր։ Դարերու հոլովոյթը ոչինչ փոխած էր։ Օտար ափերու այս պանդուխտ երիտասարդները այդ պահուն հայ բնազդային, ցեղային եւ հոգեկան բոլոր երեսակներով կը ցոլային, աստղերու պէս պսպղալով։

Անտարակոյս, հայրենիքի շունչն էր այդ անտեսանելի ներկայութիւնը, որ հայրենի հմուտ պալէթմայեսթէր Լեւոն Գասոյեան փոխանցած էր խումբին, պարարուեստի դաստիարակութեան կողքին։ Լեւոն Գասոյեան ոչ միայն ճկուն, շնորհալի եւ գրաւիչ շարժուձեւեր սորվեցուցած է, այլեւ հայ ժողովրդական պարին ակունքէն բխած զգացականին հաղորդակից դարձուցած է մեր երիտասարդները։

Օտար հասարակութիւնը հմայուած խանդավառ ծափերով ողջունեց այս աննախընթաց ելոյթը։

Բայց մենք, հայերս ծափերէ, «Վարձքդ կատար»-ներէ եւ «Կեցցէ»-ներէ անդին անցանք։ Մենք այդ օր պանդխտութեան անապատին մէջ տեսիլքի պէս գէթ պահ մը հայրենիքը տեսանք։

*Արեւ*, 14 Յուլիս 1987, 72-րդ տարի, թիւ 20655, էջ 3

# 3 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1987

# ՆԱՄԱԿ՝ ԳԱՀԻՐԷԻ ԵՐԱԺՇՏԱՆՈՑԻ ՏՆՕՐԷՆՈՒՀԻ ՏՈՔԹ. ՆԻՊԱԼ ՄՈՒՆԻՊԻՆ

Նամակին թարգմանութիւնը.

Գահիրէ, 3 Սեպտեմբեր 1978
Յարգարժան Տոքթ.՝ տնօրէն Գահիրէի Երաժշտանոցի
Ստորագրեալս՝ Հայկ Սարգիսեան, 1986-1987 տարեշրջանի Երաժշտանոցի մանուկներու եւ երիտասարդներու երգչախումբերու խմբավար, իմացայ՝ որ ծրագիր մը կայ Հոկտեմբերի երկրորդ կէսին մանուկներու երգչախումբը ուղարկել Թուրքիա: Ինծի յանձնարարուած է մարզել երգչախումբը եւ զայն ղեկավարելու համար ճամբորդել Թուրքիա:
Այս առիթով կը փափաքիմ տեղեկացնել Ձեզի, թէ թրքական կառավարութիւնը դժուարութիւններ կը յարուցանէ հայ ծագումով ոեւէ մէկուն նկատմամբ՝ անկախ անոր հպատակութենէն:
Թուրքիա կատարած իրենց ճամբորդութեան ընթացքին՝ հայկական ծագումով շատ մը անձեր հանդիպած են դժուարութիւններու: Խուսափելու համար նման դժուարութիւններէ, կը խնդրեմ Ձեզմէ զերծ պահել ինծի այս պարտաւորութենէն: Սակայն պատրաստ եմ մարզել եւ պատրաստել երգչախումբը:
Խորին յարգանքով,
Հայկ Սարգիսեան
[ստորագրութիւն]

Յետագային, Սարգիսեան ինծի պիտի հաղորդէր՝ թէ նամակի յանձնումին ժամանակ, երաժշտանոցի տնօրէնուհիին ըսած է՝ թէ ինք չի կրնար երգահանդէսէն ետք խոնարհութիւն կատարել թուրքերուն առջեւ: Սագիսեանին առաջարկը կը մերժուի եւ ան կը ներկայացնէ իր վերջնական հրաժարականը: (Հ.Ա.)

القاهـرة ٣ سبتمبر ١٩٨٧

السيده الدكتورة عميدة الكونسرفاتور

اكاديمية الفنون

الجيزة

بعد التحيه :ـ

مقدمه هايج سركيسيان قائد كورال الاطفال والشباب بالكونسرفاتور خلال العام الدراسي ١٩٨٦ / ١٩٨٧ ، قد علمت انه هناك مشروع لسفر كورال الاطفال الي تركيا خلال النصف الثاني من شهر اكتوبر القادم ومطلوب مني اعداد الكورال والسفر معه لقيادته ٠

ارجو افادتكم بهذه المناسبة بأن الحكومة التركية تثير العقبات امام أي شخص من أصل أرمني مهما كانت الجنسية التي يحملها ٠

وتفاديا لاية مشاكل قد تحدث لي خلال هذه السفرية مثلما حدث لكثير من الاشخاص من اصل ارمني من قبلي ـ

ارجو اعفائي من هذه المهمة ، علما بأني علي استعداد لتدريب واعداد الكورال ٠

وتفضلـوا بقبـول فـائق الاحـترام ،،

هايج سركيسيان

هايج سركيسيان

Գաhիրէի Երաժշտանոցի տնօրէնութեան ուղղուած նամակը

ՍԻՆԵՄԱ ՕՓԵՐԱ, ԳԱՀԻՐԷ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 21 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1987
(առաջին ցուցադրութեան թուական)

ԵԳԻՊՏԱԿԱՆ ԽԱՂԱՐԿԱՅԻՆ ՖԻԼՄ՝
ՀԱՆՃԱՐԵՂԸ ԵՒ ՍԷՐԸ
(արաբերէն՝ ԱԼ-ԱՊՔԱՐԻ ՈՒԱԼ-ՀՈՊՊ)




*Հանճարեղը եւ սէրը* ֆիլմին ազդագիրը




Ֆիլմին անուանաթերթը՝ «Մասր Ֆիլմ Թագուոր Անթոնեան»




Ֆիլմին անուանաթերթը՝ «Երաժշտութիւն՝ Հայկ Սարգ[իս]եան

ԴԵՐԱԿԱՏԱՐՆԵՐ
Ֆարուք Ալ-Ֆիշաուի (Օմար)
Էլիամ Շաhին (Հանան)
Մահմուտ Ալ-Կէնտի (Մակտի)
Սալուա Օսման (Աշկան)
Հոտա Ռամզի (Մանալ)
Աիտա Ռիատ (Սուզի)
Օլֆաթ Սոքքար
Անժէլ Արամ [Փափազեան]
Սէլֆ Ալլաh Մուխթար
Աhմատ Աքլ
Ապտէլ Սալամ Ալ-Տաhշան

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՍԵՆԱՐԻՕ
Ֆայսալ Նատա

ԲԵՄԱԴՐԻՉ
Աhմատ Սապաաուի

ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ
Հայկ Սարգիսեան

ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ
Մասր Ֆիլմ Թագուոր Անթոնեան

# ՔԷԼԷ ԼԱՕ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Հայաստան այս ուղեւորութիւնս ճիշդ ժամանակին կայացաւ, քանի որ նորոգուելու պէտք ունէի, ծարաւ էի հայ բաբախուն ստեղծագործող սրտերու հետ հանդիպելու, ծարաւ էի մեր փոքրիկ շնչող Հայաստանի վերելքը մօտիկից տեսնելու եւ հպարտ եմ որ փոքրիկ Հայաստանը կը շնչէ առողջ բազկերակներով:

Ծարաւ էի տեսնելու այն աչքերը որոնք կը հաւատան ապագային, եւ անշահախնդիր կը նուիրուին ստեղծագործող աշխատանքին, ամէն ինչ կ'ընեն բարձր պահելու համար հինէն եկած հայ աւանդոյթը: Խոր աչքեր՝ որոնք միաժամանակ պոռթկում են հայ ժողովուրդի իւրայատուկ դառնութեամբ եւ ժպտում են երկիր կերտողի յատուկ ինքնավստահութեամբ: Ցաւերնին տանեմ:

Առաջին հերթին, այցելեցի Կոմիտասի անուան երաժշտանոցը, որ մուտքէն սկսեալ վերանորոգուած տեսայ: Ուսանողութեան դէմքերը նոր էին, եւ իմ մէջս հարց յառաջացաւ, թէ դէպի ո՞ւր պիտի հասնի այս երաժշտական բեղմնաւոր աճը, ի՞նչ լուծումներու պիտի յանգինք... ինչ որ է, երկար նիւթ է:

Այդ ժամանակ լսեցի որ մայրաքաղաքին մէջ կը կատարուի երաժշտական հանգրուանային մրցոյթ, ժողովրդական գործիքներու եւ ձայնի, Սայաթ-Նովայի 275 ամեակի առթիւ, եւ եզրափակիչ հանդիսութիւնը պիտի կատարուի Արամ Խաչատրեանի անուան համերգասրահին մէջ, հարկաւ առիթը չփախցուցի: Այս առթիւ ելոյթ ունեցան դափնեկիրի կոչում ստացած 25 երիտասարդ կատարողներ, որոնք կատարեցին տարբեր նուագարաններու, շուի, դուդուկ, քանօն, քամանչա եւ լարային գործիքներու վրայ, ինչպէս նաեւ ձայնային արուեստ: Մինչեւ այս պահսականջէս չի հեռանար երաժշտանոցի առաջին դասարանի ուսանող 20-ամեայ Երուանդ Յակոբեանի բացառիկ կատարումը, քամանչայի վրայ: Բնական է այս բեղմնաւոր երեւոյթը քանի որ երաժշտական դպրոցներու, ուսումնարաններու ու երաժշտանոցի մէջ մտածող հեռատես արուեստագէտ մանկավարժներն ու ստեղծագործող փորձառու անհատները միշտ կը փորձեն նորարարական մեթոտներ ստեղծել, եւ ուսանողին աւելի յարմար հնարաւորութիւններ ընծայել: Մի խօսքով կայ հետեւող լուրջ մարմին որ կը գուրգուրայ ստեղծագործող մատաղ սերունդին վրայ:

Տեսնելով փոքրիկ Հայաստանի մէջ բոցկլտացող ստեղծագործներու ջահը, ուղեղս կը կացնահարուէր այն մտքով, թէ ինչքա՞ն պիտի բազմապատկուած ըլլար հայ ժողովուրդի ստեղծագործութեան թռիչքը եթէ սփիւռքահայը չմաշուէր օտար երկնքի տակ: Եւ այսօր, Սովետական Հայաստանը մտահոգուած համայն հայութեան ճակատագրով, իր դռները լայն կը բանայ... ի սփիւռս աշխարհի

ցրուած հայորդիներու առջեւ, առիթ ընծայելով իրենց ստանալ հայեցի ուսում, գիտութեան հետ նաեւ իրենց էութեան մէջ ամբարելով հողի անսահման ու անփոխարինելի ոյժը։ Ցաւօք, շատերը այդ ուսանողներէն կը դառնան Նոյի ագռաւներ։ Սակայն ուրախութեամբ կ'ուզեմ նշել իմ հանդիպած մի քանի եգիպտահայ ուսանողներու անունները որոնք նուիրուած ըլլալով հանդերձ իրենց մասնագիտութեան, պատրաստ են օգտակար ըլլալու հայ ժողովուրդին։

Մարալ Տէօվլէթեանը որ իր ուսման վերջին ամիսները կը բոլորէ, եւ անհամբեր կը սպասէ իր մուտքը Գահիրէի հայ վարժարանէն ներս, մանուկներուն փոխանցելու համար իր ստացած մանկավարժական գիտելիքները։ Աշխատասէր, նուիրուած Մարալը միշտ վազվզուքի մէջ էր եւ կ'աշխատէր ամէն առիթէ մի բան քաղել որ օգտակար ըլլայ Գահիրէի համայնքին։ Էհ, վարդագոյն երազներ… թող բարին կատարուի։

Յակոբ Իրատեանը, գերազանցիկ փայլուն ուսանողը, հպարտանքով կը պատմէր իր մասնագիտական մարզին մէջ հայ գիտնականներու օրէ օր զարգացող յայտնութիւններու մասին։ Երեւանի փողոցները զբօսնելու ժամանակ ուրախութեամբ ցոյց կու տար վերջերս կատարուած նոր կառոյցները։ Յակոբի ինքնութիւնը, նման շատերուն, կատարելութեան կը հասնի հայրենիքի մէջ միայն։

Գալով Հայկ Աւագեանին, շուտով իր ծնողքին հետ մէկտեղ եգիպտահայերս հպարտ պիտի ըլլանք իրմով։ Հայկը յարգուած ու սիրուած ուսանող է։ Վստահ կեցուածք ունէր, ու խորխտ աշխարհահայեացք։ Հիմա դաշնամուրի մը ստեղնաշարը այլեւս ստրուկ է իր մատներուն տակ, ոչ թէ միայն կատարելու ժամանակ, այլ նաեւ ստեղծագործելու։ Ստեղծած յօրինումները լի են այն նուրբ պոռթկումներով ու խոր յուզականութեամբ որը թաքնուած էր իր մէջ, եւ կեանք առաւ մայր հողին վրայ, հայրենի մասնագէտների, դասախօսների աջակցութեամբ։ Չեմ մոռնար իր ստեղծագործութեան դասախօս երաժիշտ Երուանդ Երկանեանի խօսքը. «Հայկը աշխատասէր ուսանող է, տաղանդաւոր երաժիշտ»։ Հայկը համբերատար ուսումնասիրող, պրպտող երաժիշտ է, ու իր կատարած աշխատութիւնները ցոյց կու տան խոր երաժշտագէտի մը ծնունդը, որուն ուսումնասիրութիւնները մօտ ապագային օգտակար դեր պիտի ունենան երաժշտապատմութեան մէջ։ Հայկը Երեւանի մէջ, առիթը չէր փախցներ զտնուելու երաժշտական միջոցառումներուն որոնց ծարաւը պիտի զգայ ապագային։

Անկասկած Գահիրէի ազգապատկան մարմինները ուրախ են եգիպտահայ ուսանողների յաջողութիւններով, եւ անհամբեր կը սպասեն իրենց վերադարձին։

* * *

Ժամանակն է որ օտար երկնքի տակ շնչող հայերս գիտակցաբար ըմբռնենք

որ ղեկավարութիւնը հայրենիքի մէջ հեռատես է, եւ ամէն ասպարէզի մէջ, ստեղծագործելու, արտադրելու եւ ուսումնասիրելու հնարաւորութիւններ կ՚ընծայէ հայ ժողովուրդին:

Կարճ ժամանակամիջոցէ մը ետք, վերադառնալով Երեւան տեսայ նոր նուաճումները, ճարտարապետական շէնքերն ու կառոյցները, մեթրոյի նոր կայարաններն ու գետնի անցումները, նոր շքեղ համերգասրահները, զբօսայգիները, նոր յուշարձաններն ու միջազգային սպորտային ռեկորտները, որոնք կենդանի փաստ են հայրենիքին հզօր պետութեան: Այս բոլորին վրայ կ՚աւելնայ, Սովետական Միութեան տարածքին վրայ որդեգրուած «Բացումի» եւ «վերակառուցման» նոր քաղաքականութիւնը որը առիթ կ՚ընծայէ ստեղծագործ հայ ժողովուրդին յառաջընթաց քալել պատմութեան ուղիէն: Ազատ եւ դիպուկ քննադատութիւնը կ՚օգնէ սրբագրել անցեալի վրիպումներն ու թերութիւնները: Ու երբ հոն էի, կը մտածէի թէ ե՞րբ սփիւռքն ալ պիտի համարձակի առնել այսպիսի խիզախ որոշում... ինքնաքննադատում: Հարցը այն է որ, որեւէ որոշում կ՚առնուի նպատակի մը համար, եւ հետեւաբար նախ պէտք է նպատակը յստակօրէն բնորոշուի: Սա արդէն տասնեակ տարիներէ ի վեր սփիւռքի մէջ զարմանալիօրէն հարց դարձած է:

Ալ կը բաւէ հայ «թուրիսթներս» փոքրիկ վերածնուած հայրենիքը խոշորացոյցներով երթանք, այլ մենք մեզի խոշորացոյցներով դիտենք:

Այսօր հայրենիքի մէջ, երկիրը-հողը կերտող ժողովուրդը բացի արտադրական աշխատանքէն, պահանջատիրական կեցուածք որդեգրած է հայկական հողային հարցի առնչութեամբ, ու մեզ կը մնայ միայն անկեղծօրէն զօրավիգ կանգնիլ:

Անցնիմ իմ մասնագիտական ասպարէզին, որ երգչախմբային արուեստն է: Ինձ համար հետաքրքիր էր ըլլալ երգչախմբային ընկերութեան կեդրոնը, եւ Երեւանի մէջ գործող կարգ մը երգչախումբերու փորձերուն:

Նորութիւն է Երեւան կանանց միասեռ բազմաձայն երգչախումբը, որուն ղեկավարն է Յարութիւն Վերանեանը: Երեւան երգչախումբը բաղկացած է մօտաւորապէս 40 անդամուհիներէ, որոնք կը կատարեն բարդ ծրագիր, ժամանակակից ստեղծագործութիւններ: Փորձի պահուն կը նկատուէր անդամուհիներու ունեցած լուրջ մօտեցումն ու սէրը երգարուեստին հանդէպ: Իմ կարծիքով, Երեւան երգչախումբը կարող է միջազգային գետնի վրայ մեծ համբաւ ունենալ:

Մեծ հաճոյքով ներկայ եղայ նաեւ, Երեւանի Կամերային երկսեռ արուեստագէտ երգչախումբի փորձին, որուն ղեկավարն է Տիգրան Հէքէքեանը: Այս երգչախումբը, իր ուսերուն վրայ շալկած է Կոմիտասի հատորներէն չկատարուած ու չձայնագրուած խմբերգները կատարելու ու ձայնագրելու հաճելի պատասխանատուութիւնը, ուր խմբավարը ամէն մի ձայնանիշի վրայ կանգ կ՚առնէր շեշտելով երգի ազգային էութիւնը արտայայտելու կարեւորութիւնը: Յոյսով ենք

մօտ ապագային պիտի ըմբոշխնենք Կոմիտասի թուղթի վրայ մնացած խմբերգները, Կամերային երգչախումբի կատարողութեամբ։

Շատ տպաւորիչ ու ազդեցիկ էր Մարաթուկ ազգագրական երգի-պարի խումբի ելոյթը, որուն բախտաւորութիւնը ունեցայ ներկայ գտնուելու յեղափոխութեան 70-ամեակի առթիւ կատարուած տօնակատարութիւններուն։ Կատարեցին Մշեցիներու ռազմական պարը... հզօր էր։ Մարաթուկ ազգագրական խումբի կատարած այս ռազմական պարը ցոյց տուաւ որ այդ տղոց ու աղջիկներուն առջեւ քարքարոտ պատեր ալ եթէ դրուին, փշրելով ջարդելով պիտի պարեն՝ խրոխտ, վեհ, Մարաթուկ լեռան նման։ Ամբողջ էութեամբ կը պարէին, հագուստի փայլք չկար, կեղծ ժպիտ չկար, խոնարհումի չկար, այլ մենք խոնարհեցանք իրենց առջեւ։

Արդէն չդիմացայ եւ իրենց հետ ողջագուրուած փափաքեցայ իրենց փորձերուն ներկայ ըլլալ. մի քանի անգամ ներկայ եղայ ու ապրեցայ իրենց երգերու ու պարի խրոխտ շարժումներուն հետ, զորս կը ղեկավարէր Մկրտիչ Սարգիսեանը։

Երեւանի ամէն կողմէն կը հնչէին Մշոյ Սասնայ քոչարիները, հայրենասիրական երգերը, Անդրանիկի, Առաքել Մուշեղի եւ այլ հայդուկներու նուիրուած երգերն ու գործիքային մեղեդիները ինչպէս նաեւ հայրենաբաղձ կարօտի երգերը։

Մի կողմէ՝

«Քելէ լաօ, քելէ երթանք մըր էրգիր
Երթանք ըմ ձոր, քաղենք մատղաշ խավրծիլ»

Ուրիշ կողմէ՝

«Կանչէ, կռունկ, կանչէ, բարձր սարերէն,
Գացեր եմ օտար տեղ, վախիմ մեռնելէն,
Մի լար, մերիկ, մի լար ես օտար տեղ եմ,
Երկրիս հողն ու ջրին ես կարօտցեր եմ»։

Շատ են խմբերը Մարաթուկի կողքին, ո՞րը յիշես, Գորանի՞ն, Ուրֆայի՞նը, Սեբաստիա՞ն, Մուշ Սասունի՞ն, Վանա՞ն, Տարօ՞նը։ Պարզ է որ մեծ թափով զարկ առած է մեր գաւառներէն, նահանգներէն բռնագրաւուած Արեւմտեան Հայաստանի այլ շրջաններէն գաղթած հայերուս մշակութային արուեստի վերակենդանացումը։

Վերակենդանացումը այն երգին զոր կ՚երգէր Սասունցին իր սէգ սարերու մէջ, աչքը յառած Մարաթուկին, զոր օգնութեան կը կանչէր երբ դեռ Սասնայ սար ու ձորը չէր ներկուած արեամբ։ Եւ այսօր երբ Մարաթուկ լեռը կը լսէ այդ վերակենդանացած երգը, երբ կը լսէ Արաքսի միւս ափէն հնչող Սասնայ ծռերուն ձայնը, յոյսով կը շողայ եւ կը համոզուի, որ իր միակ ազատագրումը կը գտնուի Արաքսի միւս ափին. եւ այս անգամ Մարաթուկը ինքն օգնութեան կանչելով իր զաւակներուն կոչ կ՚ուղղէ, որ զինք ազատեն բռնաւորի ճնշող լուծէն։

«Արի երթանք սարն ի Սասուն,

Ես եղնիմ ծուխ դու եղի սուն,
Լաճ տնաւեր...»

Իսկ մենք Արաքսի ափերէն ծովեր եւ ովկիանոսներ հեռու, դեռ շնչող հայորդիներս արդեօք մեզ կը հասնի՞ Մարաթուկի կանչը։ Կանչ որուն արձագանգը կու գայ Մարաթուկի երգերուն ընդմէջէն։ Հայոց անդնդախոր ձորերն ու բարձունքները այնպէս կ'արձագանգեն, որ Մարաթուկի սրբազան կոչը բազմապատկուելով կը հասնի աշխարհով մէկ սփռուած հայոց բեկորներուն։

Ձայնը կը հասնի... ականջ տալ է պէտք... հօ, բոլորս ալ խուլ չենք։

«Սասնու սարեր մըջ ամպերուն
Սասնու բերդեր բաց հովերուն
Լաճ տնաւեր.
Սասնու զէնքեր մըջ քարերուն
Հօյ, հօյ, հօյ, հօյ, լաճ տնաւեր»։

Քելէ լաօ, քելէ երթանք մըր երկիր։

*Արեւ*, 12 Դեկտեմբեր 1987, թիւ 20777, էջ 2-3

# Հ.Բ.Ը.Մ

ԳԱՀԻՐԷ



# Խմբերգային Երեկոյ

Ուրբաթ, 25 Դեկտեմբեր 1987,

Երեկոյեան ժամը 8.30 ին

ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ

«ՈՒԱԼԱՍ» ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՈՒՆ

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

## Կ Ռ Ո Ւ Ն Կ

ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ԽՄԲԱՎԱՐ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

# Programme

# Ա. ՄԱՍ

*Երգ ջահելութեան* — *Մարդիկ Մազմանեան*

*Ալագեազ բարձր տեղ ա* — *Կարա Մուրզա*
*Քեզի մեռնիմ*

*Սարերի վրով* — *Կոմիտաս*
*Երի, երի, ջան*

*Եար, առանց քեզ* — *Գուսան Աշոտ*

Մենակատար Քրիսթին Զաւրեան

*Իմ օրորան* — *Գուսան Աշոտ*

Մենակատար Հարի Զէյնէնեան

*Սոնա եար* — *Կոմիտաս*

Մենակատարներ Ալիս Սիմոնեան եւ Թալին Կապէեան

*Բամին կուգայ հով կ'անի* — *Ազգագրական*

Մենակատար Ռաֆֆի Զէյնէնեան

# Բ ՄԱՍ

*Իրիկնային* — *Խաչատուր Աւետիսեան*

*Ջիւն է գալիս* — *Էտկար Յովհաննէսեան*

Մենակատար Լիւսի Տէր Ներսէսեան

*Վուշ, վուշ* — *Գրիգոր Սիւնի*

*Ել, ել, ել* — *Կոմիտաս*

*Իմ եղէք* — *Խաչատուր Աւետիսեան*

Մենակատար Անուշքա Զատրեան

*Դու ինչպէս մի աստղ* — *Ռոպէրթ Ամիրխանեան*

*Առ՝ Կովկասի քաջեր* — *Ազգագրական, Հայրենասիրական*

Մենակատար Ռաֆֆի Չէչէնեան



*Դաշնամուր* — *Կասիա Ճղալեան*

*Տհոլ* — *Ռուբէն Թերզիպաշեան*

*Song of Youth*

*Alakyaz Kezi Mernim (Popular Songs)*

*Sareri Vrov Yeri Yeri (Popular Songs)* — *Komitas*

*Yar Arants Kez (Love Song)* — *Solo Christine Tchaderdjian*

*Im Ororan (Popular Song)* — *Solo Harry Tchetchenian*

*Sona Yar (Komitas)* — *Solos Taline Gabeyan*
*Alice Simonian*

*Kamin Gouka (Folkloric Song)* — *Solo Raffi Tchetchenian*

## INTERVAL

*Irignayin (Lyric Song)*

*Tsun É Kalis (Edgar Hovanessian)* — *Solo Lucy Der Nersessian*

*Voush Voush* — *Krikor Suny*

*Yél Yél* — *Komitas*

*Im Yeghek (Lyric Song)* — *Solo Anoushka Tchaderdjian*

*Tou Inchbes Mi Asdgh (Love Song)*

*Govgassi Katchèr (Patriotic Song)* — *Solo Raffi Tchetchenian*

*Performed by AGBU's Choral*

## GROUNG

*Conductor Mo. Haig SARKISSIAN*

*Piano* — *Gassia Djeghalian*

*Drum (Dhol)* — *Roupen Terzibashian*

# ՀԱՅ ԵՐԳԻ ՓԱՌԱՏՕՆԸ

ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ

Յաղթական իր ելոյթով Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ քառաձայն երգչախումբը վերապրեցուց հայ երգը, իր ձայնական միատարրութեամբ, միասնութեամբ եւ ներդաշնակութեամբ:

Երաժշտական վայելք մըն էր մեզի եւ ճաշակ մը փոխանցուած՝ պատանի եւ պարմանուհի խումբէ մը, որ Հայկ Սարգիսեանի ղեկավարութեան տակ կը գործէ Գահիրէի մէջ չորս տարիէ ի վեր:

Յայտագրին իւրաքանչիւր կտորը կարելի է քննութեան նիւթ դարձնել իր էութեան մէջ եւ կատարողական իր արտայայտութեան մէջ:

Հայ երգը ներկայացուած էր իր քնարական, սիրային, գեղջկական, ազգագրական, հայրենասիրական, աշուղային եւ դասական երեսներով:

Համերգը սկսաւ Մարտին Մազմանեանի *Երգ ջահելութեան* քայլերգով ուր նախ արական եւ յետոյ աղջկանց բաժինը կառուցման, աշխատանքի եւ կերտումի կոչ ուղղեցին խրոխտ շեշտով եւ վճռական, նոյն թեման կրկնելով եւ զայն ճոխացնելով:

Յետոյ Կարա Մուրզային *Ալագեազ բարձր սար ա* եւ *Քեզի մեռնիմ* երգերը մեզ փոխադրեցին հայրենիք, Արագածի լանջքին սիրերգի մը ոլորտներով: Կոմիտասի *Սարերի վրով*ը ձայնական ելեւէջ չունի բայց կայունութիւն մը եւ մեղեդիի երանգաւորում մը որ նախադասութեան վերջաւորութեան հարուստ դաշնաւորում մը ունի: Իր արագ շարունակութեան մէջ *Երի, երի ջան*ը տրուեցաւ համաձայն կշռոյթով: Քրիստին Չատրճեանի, Գուսան Աշոտի *Եար, առանց քեզի*ն դաշնակի վրայ ընկերակցեցաւ խմբավար Հայկ Սարգիսեան: Քրիստին Չատըրճեան հազուագիւտ ձայն մը ունի, խորունկ, զգայուն եւ աշուղական հնչեղութիւն, կարելի չէ առանց յուզումի զինք ունկնդրել: Նոյն հեղինակին Հարի Չէչճէնեան *Իմ օրորան*ը, Ռուբէն Թերզիպաշեանի դհոլով եւ Կասիա Ճղալեանի դաշնակով ինչպէս խումբին պատասխանով մեզ փոխադրեց գիւղական հանդէսի մը մէջ: Հարի Չէչճէնեանի երգը պարզ է, անսեթեւեթ ինչպէս նոյն ինքն երգին բնոյթը:

Կոմիտասի *Սոնա եար*ը առանց դաշնամուրի աղջկանց բաժնին կողմէ եւ մենակատարութեամբ Թալին Կապէեանի եւ Ալիս Սիմոնեանի յաջողապէս տրուեցաւ: Ռաֆֆի Չէչճէնեանի *Քամին կու գայ հով կ'անի*ն իր տեսակին մէջ առանձնայատուկ է, կարծես անտաշ հովիւ մըն է որ արօտավայրին մէջ իր հօտին հետ կը խօսի եւ կը վրդովի:

Խաչատուր Աւետիսեանի *Իրիկնային*ը քնքոյշ երգ մըն է ուր գիշերուան խաղաղութիւնը հակադրուած է հոգեկան խռովքին:

Լիւսի Տէր Ներսէսեան մեներգեց Էտկար Յովհաննիսեանի *Չիւն է գալիս*ի մէջ: Իր ձայնին յստակութիւնը, խումբին միջամտութիւնը ամբողջութիւն մը կը

կազմէր։ Պարզ կ՚երեւի երգը բայց բարդ է դաշնամուրով։

Գրիգոր Սիւնիի *Վուշ, վուշ*ը, ափսոսանքն է, Ղարիպին ցաւն է որ կ՚ընդլայնի, ծով կը դառնայ, սիրտը կը կրծէ, եղերերգ մը, որ ստացաւ իր ամբողջ վեհութիւնը շնորհիւ լաւ տիրապետուած ձայներուն եւ չափին։

Կոմիտասի *Ել, ել, ել*ը, սայլի երգն է, արձագանգային, երբ խումբին բաժինները զատ զատ կը ձայնեն, զանգակի հնչիւնով, ձայնային տարբեր ոլորտներով, մինչ աղջկանց բաժինը կ՚աւետէ իրիկնամուտը, արական խումբը կը կրկնէ իր «Ել, ել, ել»-ները։

Խաչատուր Աւետիսեանի *Իմ եղէգ*ին մէջ Անուշքա Չատրճեան ցոյց տուաւ իր ձայնին առաւելութիւնը երբ ամենաբարձր ձայնանիշները կու տար դիւրութեամբ եւ ճշգրտութեամբ։ Ռոպերթ Ամիրխանեանի *Դու ինչպէս մի աստղ*ը պարային եղանակ մըն է որ երգուեցաւ առանց դժուարութեան։ Եւ ի վերջոյ Կովկասի քաջերունը ուր առասպելական Անդրանիկը կ՚ոգեկոչուի։ Այս վերջինին մէջ մենակատարն էր Ռաֆֆի Չէչճէեան։

Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբը իր Ուրբաթ, 25 Դեկտեմբերի համերգով նոր բարձունք մը նուաճեց։

Խմբավար Հայկ Սարգիսեան որ իր մասնագիտութիւնը ստացած է հայրենիքի մէջ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ իր շուրջ հաւաքեց երիտասարդութիւնը եւ խանդավառեց զայն։ Կանոնաւոր շաբաթափորձերու շնորհիւ, հետեւողական ճիգերով, խումբին իւրաքանչիւր անդամի նուիրումի ոգիով, նամանաւանդ խմբավար Հայկ Սարգիսեանի տաղանդին կը պարտինք Կռունկի յաջողութիւնը։

Կռունկ երգչախումբը պատիւ կը բերէ մեր գաղութին, եւ արժանի է ամէն քաջալերանքի։ Վստահ ենք որ աւելի ու աւելի երիտասարդ-երիտասարդուհիներ պիտի մաս կազմեն խումբին։ Զուր չեն ճիգերը եւ արդիւնքը գոհացուցիչ։

Թող միշտ հայ երգը ինչպէս հայրենիքի մէջ, սփիւռքի մէջ եւս միշտ պայծառ, միշտ յաղթական հնչէ։

*Արեւ*, 29 Դեկտեմբեր 1987, 72-րդ տարի, թիւ 20791, էջ 1

## ԿՌՈՒՆԿ - ԺԱՄԱԴՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՐԵՆԱԲԱՂՁՈՒԹԵԱՆ ՀԵՏ

ԱՄԱԼ ՇՈՒՔՐԻ ՔԱԹԹԱ
Թարգմանութիւն՝ ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Ժողովրդային երգեր, ազգագրական երգեր, քնարական բալլադներ, հայրենասիրական երգեր, կամ պարզապէս սիրային գեղեցիկ երգեր, ահա թէ ինչ կը ներկայացնէր վերջերս Կռունկ երգչախումբը, որ,

ինչպէս իր բոլոր ելոյթներուն, իր բազմաթիւ ունկնդիրներն ու անհամար հիացողները կրկին կը փոխադրէր հայկական մեղեդիին հիանալի աշխարհը: Հայկական մեղեդին, անսովոր է ան, մելամաղձոտ, հմայիչ գեղեցկութեամբ մը եւ թաթաւուն աննկարագրելի հայրենաբաղձութեամբ մը:

Քրիստին Չատըրճեան՝ *Եար առանց քեզ*ով՝ յուզական եւ ջերմութեամբ թրթռուն ձայնով, եւ Հարի Չէչճէնեան՝ *Իմ օրօրան*ով՝ ժողովրդական երգ մը, որ ներկայացուեցաւ յուզիչ զգայնութեամբ մը, *Սոնա եար* Թալին Կապէեանով եւ Ալիս Սիմոնեանով, երկուքն ալ շատ երիտասարդ, թարմ եւ յատկանշական վճիտութեամբ մը: Ռաֆֆի Չէչճէնեան՝ միշտ յառաջապահ, անվրէպ տիրապետողը իր աքին ու ձայնին, աւարտեց համերգին առաջին մասը *Քամին կու գայ* ազգագրական գեղեցիկ երգով:

Այս անգամ, խմբավար Հայկ Սարգիսեան նորարարութեամբ յայտնուեցաւ: Արդարեւ, որոշ եղանակներ տոգորուած էին «ճազով»: Ոչ թէ սա ապազայապաշտ, խլացուցիչ ճազով, այլ իսկական ճազով, այն որ կը յիշեցնէ Մեծն Կերշուինի դասականութիւնը: Քիչ մը անիմանալի՞ է: Քիչ մը համարձա՞կ է: Թերեւս: Սակայն, խորքին մէջ, ինչո՞ւ ոչ: Եղաւ գեղեցիկ, եղաւ աղուոր, եղաւ նոյնիսկ սքանչելի: Միթէ՞ այդ չէ հիմնականը: Անընդհատ ունկնդրել հին մեղեդիները, անշուշտ հաճոյալի է, քանի որ անոնք գեղեցիկ են, ռոմանթիք կամ յանկուցիչ, սակայն, պէտք է նաեւ նորարարել, փոփոխել, զարգացնել, փոխակերպել, որպէսզի որոշ ուժականութիւն մը ներմուծուի կատարումին մէջ, զայն դարձնելով առաւել հետաքրքրական եւ այնքան աւելի «արկածախնդրական»:

Համերգին երկրորդ բաժնին բոլոր մեներգիչները, ինչպէս նաեւ Կասիա Ճղալեան՝ դաշնակի վրայ եւ Ռուբէն Թերզիպաշեան՝ դհոլով - տեսակ մը թմբուկ - յատկանշական եղան: Մարդ չի դադրիր հիանալէ անոնց նրբութեամբ, անոնց ծայրայեղ խանդավառութեամբ, անոնց խոր երաժշտականութեամբ եւ անոնց կատարեալ կարգապահութեամբ:

Ունկնդրել զանոնք, միշտ ալ ախորժալուր է, միշտ ալ հաճոյք է եւ ցնծութիւն: Մանաւանդ, երբ անոնք ժամադրուած են հայրենաբաղձութեան հետ, սա անբաղդատելի հայրենաբաղձութեան, որ ոչ մէկ տեղ այնքան գեղեցիկ է, այնքան տպաւորիչ, այնքան յուզիչ, որքան հայկական երգերուն մէջ: Շատ գեղեցիկ կատարում մը, զոր մարդ պիտի ուզէր աւելի յաճախ ունկնդրել:
(*Լը Փրոկրէ էժիփսիէն*, 20 Փետրուար 1988)

*Արեւ*, 25 Փետրուար 1988, 72-րդ տարի, թիւ 20838, էջ 1

# ԱՐԻ՛, ՆՈ՛Ր ՏԱՐԻ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Հայ ժողովրդին համար, Նոր Տարին նշանակալից տօն մը եղած է հեթանոսական շրջանին։ Այն ժամանակ նոր տարին կապուած էր գարնան, բնութեան զարթօնքը ներկայացնող Բարեկենդան տօնին, որմէ անբաժան էին ծիսական երգերն ու պարերը ինչպէս նաեւ խաղերն ու ժողովրդական թատերական ներկայացումները։ Յետոյ Նոր Տարին կապուեցաւ բերքահաւաքման, Նաւասարդ տօնին, իր բոլոր ուրախ ծիսակատարութիւններով։ Քրիստոնէութեան մուտքէն յետոյ Ամանորը յարմարուեցաւ քրիստոնէական Ծննդեան տօնին։ Բայց հայ ժողովուրդը մինչեւ 18-րդ դարը պահպանեց նոր տարուայ ժողովրդային հեթանոսական ծիսակատարութիւնները թէ՛ գարնան թէ աշնան։

Այս վերջին երկու դարերուն, Կաղանդը կամ Նոր Տարին շատ անշուք տօն էր բաղդատած միւս ժողովրդական տօներուն, օրինակի համար Արեւմտեան Հայաստանի Վանի մօտ Արճակ գաւառի մէջ, այդ օրը սովորականէն աւելի շատ աղանձ կ՚ընէին ու մէջն ալ չամիչ, ընկոյզ եւ կաղինի միջուկ կը խառնէին, ապա իրար հանդիպելու ժամանակ կ՚ըսէին «քյու կաղանդը շնախաւոր ըլնի», միւսը կը պատասխանէ «քյոնն էլ շնախաւոր ըլնի, հմէն տարին բարով էս օրուան խասնենք»։ Եւ այսպէս կը վերջանար նոր տարուայ ամբողջ նշանակութիւնը։ Մշոյ Պուլանըխի մէջ Կաղանդին շնորհաւորական մաղթանքներու կողքին սովորաբար իրարու խմիչքներ եւ մրգեղէն կու տային, որը կը կոչուէր կաղանդոջ։ Իսկ Յունուար ամսուայ սկիզբէն երբ արեւի առաջին շողը կը խփէր գիւղական տան պատին, տան գլխաւոր կինը առանձին հրճուանքով մի քիչ իւղ կը կպցնէր շողքին առաջին անգամ խփած տեղը՝ ողջունելով արեւին վերադարձը՝ արեւադարձը։ Չէ՞ որ Արեւ Աստուածը որ հեռացած էր իր օրհնեալ շողերով, կ՚աւետէր իր վերադարձը։

Դժբախտաբար Ամանորի հետ կապուած ծիսական երգերն ու խաղերը կորստեան մատնուեցան։ Սակայն նոյնը չէ պարագան միւս ժողովրդական տօներուն։ Օրինակի համար պահպանուած ու մեզի հասած են պզտիկ Զատիկ կամ Ծնունդի Աւետիսները։ Համբարձման *Ճան գիւլում*ները, *Համբարձման Երկուշաբթի*ները, Վարդավառի *Նինար*ները։ Հեթանոսական շրջանի Արայի պաշտամունքի երգերու նմոյշները փոխանցուած են քրիստոնէութեան Վարդավառի, Տեառընդառաջի երգացանկի մէջ։ Երբ Բ. դարու վերջաւորութեան քրիստոնէութիւնը մուտք գործեց հայ ժողովրդին մէջ, եւ Դ. դարու սկիզբին 301 թ. պետական կրօնք դարձաւ, եկեղեցականներու մտահոգութիւններէն մէկն էր,

սիրցնել հոգեւոր-եկեղեցական երաժշտութիւնը: Եւ այդ պատճառով դիմեցին դարերէ ի վեր ժողովուրդին մէջ տարածուած հեթանոսական տօնախմբութիւններու երգերուն: Վարդավառը ինքնին հին Արտիշատեան հեթանոսական տօների անփառունակ մնացորդն է, որմէ պահանջուած է միայն իրար վրայ ջուր թափելու անգիտակ սովորոյթը:

Ներկայիս Կաղանդը վերագտած է իր կարեւորութիւնը բայց ափսոս… չկայ այլեւս Նաւասարդեան ոգին:

«Հանճարեղ հայկեան, Նաւասարդեան սա տօներուն արեւափառ,

Ալ վերածնէ փլատակներէն եւ փառաքոչ քնարդ առ…»

Հիմա կան «տինկ-տօնկները»:

«Մէրի քրիսմըս» տինկ-տօնկ

«Պոն անէ»

«Քուլ սանա ու էնթա թաէպ» տինկ-տօնկ:

Եւ կը սկսին անհատական մաղթանքներու տեղատարափը՝ որոնք կը դառնան երջանկութեան շուրջ: Երջանիկ տարի, առողջութիւն, յաջողութիւն, առատութիւն…: Որոնց կողքին չեն պակսիր նաեւ համամարդկային հաւաքական բարեմաղթութիւնները:

«Արի՛, Նոր Տարի,

Բայց… այնպէ՛ս արի,

Որ աւելանայ աշխարհի բարին

Եւ այդ աշխարհի բախտի վրայով

Խեւօրէն ձգուած մետաղալարին

Լարախաղացի ծպտըուած տեսքով Չա՛րը չպարի՝

Ողջ մարդկութեանը դնելով ծաղրածուի տեղ…»

25 տարիներ առաջ գրուած այս տողերուն մաղթանքները դեռ չեն իրականացած եւ այսօր հայ ժողովրդի վատը ցանկացողը Նոր տարուայ առթիւ դեռեւս կը մաղթէ հզօրացած հայրենիքի քայքայումը, ինչպէս նաեւ չգոյութիւնը հայ բազկին որ ժայթքած է ամէնուրեք:

- Կարելի չէ խորհիլ Կաղանդի մասին եւ չյիշել մանուկները: Ամբողջ տարին անձկութեամբ կը սպասեն մանուկները Կաղանդ Պապիկին գալստեան, տօնածառի զարդարման եւ նուէրներուն: Սակայն ո՞ր մէկ սփիւռքահայ ծնողքը, գոնէ վայրկեանի մը համար չ'ափսոսար ու չի մտահոգուիր որ իր երեխան օտար երկնքի տակ զրկուած է Հայկական բարդիներու շշնչիւնը լսելէ, որոնք կաղանդի գիշերը մեղմիկ կը ձայնեն «կաղանդը շնորհաւոր ըլնի»:

Իսկ այսօր Վանի Արճակ գաւառի, ու Մշոյ Պուլանըխի մէջ չի լսուիր,

«Հմէն տարին բարով էս օրուան խասնենք»:

Եւ Արեւմտեան Հայաստանի տարածքին վրայ 72 տարիներէ ի վեր խտացուած են Նոր Տարուայ նոր մաղթանքներու շարք մը. կրնա՞նք հայերս, նոր

տարուայ սեմին կանգնած չգոչել.

«Մատաղ լինեմ այն Նոր Տարուան

Որ կը բերի Մասիսը տուն»։

Արդեօք կա՞ն հայեր, որոնք կը մոռնան ազգային ճակատագրի դաժանութիւնը եւ չմաղթեն որ Նոր Տարին իր հետ բերէ սփիւռքի մեր անբնական գոյութեան վերջը։

Արի՛, Նոր Տարի

Գալուստդ բարի

Եւ արթնացրու քու թնդու քայլքով

Ուշ մնացածին

Քնով տարուածին...

Չեռքից հաւատը փախուստ տուածին

Իբրեւ նոր տարուայ բաղձալի նուէր,

Տո՛ւր նոր հաւատի կապակուռ թեւեր...

Հաւատք՝ որ հայու արիւնը թափուելով անապատի տաք աւազին մէջ չցամքեցաւ այլ ալեկոծ ծով դարձաւ որուն ընդերքէն կը լսուի - Ծնունդին թէ Զատիկին - արդարութիւն պահանջող հայու պոռթկումը։ Մարդկային միտքը դեռ չէ կրցած ըմբռնել թէ անարդարուած հողէն բռնի հեռացուած ժողովուրդ մը ինչեր կրնայ իրագործել, երբ ինքն իր ոյժին կ'ապաւինի խոր հաւատքով։

«Արի՛, Նոր տարի

Գալուստդ բարի»։

*Արեւ*, 31 Դեկտեմբեր 1987, 72-րդ տարի, թիւ 20793, էջ 2, 4

ԿՈՒՄՀՈՒՐԷՅԱ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1988

ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ
ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ



**ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ**

*Չորեքշաբթի, 6 Յունուար 1988, կ.ե. ժամը 6.30*

**ԿՈՒՄՀՈՒՐԻԷ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

# ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

*Կազմակերպութեամբ Հ.Գ.Մ.ի Երիտ.*
*Յանձնախումբին*
*Մասնակցութեամբ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ*
*Մշակութային եւ Մարզական Միութեանց*

*Երիտ. Մարմիններուն*

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց*

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԼԵՒՈՆ ՔԱՂԹԱՅԵԱՆԻ**

*ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍՈՒՀԻ*

**ՏԻԿԻՆ ՎԻՎԻԱՆ ՍԻՄՈՆԵԱՆ**

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ*
*որուն իր մասնակցութիւնը կը բերէ այս անգամ.*
*Լիբանանէն յատկապէս հրաւիրուած երիտասարդ*
*մտաւորական Ասմունքող*

**ՅԱԿՈԲ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ**

*Նաեւ ելոյթ կ'ունենան*

**Հ.Բ.Ը.Մ.Ի «ԿՌՈՒՆԿ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ**

*ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ԽՄԲԱՎԱՐ*

**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

*ԵՒ ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԵԱՆ ԵՒ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԻ*

**ԶԱՆԳԵԶՈՒՐ ՊԱՐԱԽՈՒՄԲԸ**

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 4 Յունուար 1988, 72-րդ տարի, թիւ 20795, էջ 4

**ՑԱՑՏԱԳԻՐ**

*Քայլերգ*
*Բացման խօսք* — *Տոքթ. Գէորգ Երզնկացեան*
*Հայ Դատի ծնունդն ու զարգացումը*
*Հայկական Ընթերցասրահի Ն.Ս.Մ.Մ.*
*Դաշնակ* — *Օր. Արփի Ճանիկեան*
*Արտասանութիւն* — *Օր. Մարի Սէֆէրեան*
*Արդի պար* — *Ղեկավարութեամբ Օր. Ալին Պըլըքտանեանի*
*Խօսք* — *Տիկին Վիլլիամ Սիմոնեան*
*Պար* — *Զանգեզուր պարախումբ Հ.Գ.Մ. – Կոկանեան Սրահ*

**ԴԱԴԱՐ**

*Ամունք* — *Յակոբ Գույումճեան*
*Խմբերգ* — *«Կռունկ» Երգչախումբ Ղեկ. Հայկ Սարգիսեանի*
*Փակման խօսք* — *Գերշ. Սրբազան Հայր*

**ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է – ՈՉ ՈՔԻ ՀՐԱՒԷՐ ՂՐԿՈՒԱԾ Է**

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ 29-ՐԴ ՓԱՌԱՏՕՆԸ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հերթը հիմա Հայկ Սարգիսեանինն էր, որ Գաhիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբին ձայնային հրաշալի ալիքներով ողողեց հանդիսասրահը: Բայց աւա՜ղ, մեր հոգեկան հրճուանքը երկար չտեւեց. հազիւ երեք երգ երգած, վարագոյրը փակուեցաւ... Միայն երեք ե՞րգ... Չէ՛, Հայկ, իրաւունք չունիս... դուն միայն քու ճպոտիդ հնչիւններուն անյագօրէն ծարաւի մեր հոգիներուն պապակը սրեցիր... երբ նոյնիսկ քու ամբողջական յայտագիրներդ այնքա՜ն կարճատեւ կը թուին մեզի ամէն տարի: Ամէն պարագայի տակ, չենք կրնար շնորհակալ չըլլալ Հայկ Սարգիսեանին, Կռունկ երգչախումբի մէն մի անդամին, մենակատարներ Օրք. Ալիս Սիմոնեանի, Թալին Կապէեանի եւ Հարրի Չէչճէն-եանի, որ, թէկուզեւ կարճատեւ, հայ երգը հնչեցուցին Ս. Ծննդեան այդ աւետաբեր օրը, եւ խայտացին հայու մեր հոգիները: Յիշենք նաեւ, թէ երգերուն դաշնակի վրայ կ'ընկերակցէր այնքան շնորհալիօրէն, ընկերուհի Կասիա Ճղալեանը, որուն կ'երթան նաեւ մեր շնորհակալութիւնները:

*Արեւ*, 16 Յունուար 1988, 72-րդ տարի, թիւ 20805, էջ 2-3

ԳԱՀԻՐԷ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 8 ՓԵՏՐՈՒԱՐ 1988
(առաջին ցուցադրութեան թուական)

ԵԳԻՊՏԱԿԱՆ ԽԱՂԱՐԿԱՅԻՆ ՖԻԼՄ՝
ՕՐԷՆՔԻՆ ԴԷՄ ՄԱՐԴԸ
(արաբերէն՝ ՌԱԿՈԼ ՏԷՏՏ ԱԼ-ՔԱՆՈՒՆ)




*Օրէնքին դէմ մարդը* ֆիլմին ազդագիրը




Ֆիլմին անուանաթերթը՝ «Երաժշտութիւն՝ Հայկ Սարգ[իս]եան




Ֆիլմին անուանաթերթը՝ «Արտադրութիւն՝ Թագւոր Անթոնեան»

ԴԵՐԱԿԱՏԱՐՆԵՐ
Մահմուտ Եասին (Ֆարակ)
Մերվաթ Ամին (Լայլա)
Թարէք Տուսուքի (Մոհսէն)
Հայաթէմ (Կամալաթ)
Ապտէլ Հաֆիզ Ալ-Թաթաուի (Ֆաուզի)
Ամալ Իպրահիմ (Ֆարտուս)
Ֆարուք Եուսէֆ (Անթարա)
Ազիզա Հելմի (Օմմ Լայլա)
Հանան Շաուքի (Ամիրա)

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՍԵՆԱՐԻՕ
Հաթէմ Ռատի

ԲԵՄԱԴՐԻՉ
Հաթէմ Ռատի

ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ
Հայկ Սարգիսեան

ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ
Թագուոր Անթոնեան

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԱՄԵՐԳԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ԿԻՐԱԿԻ, 27 ՄԱՐՏ 1988**

ՀԱՄԵՐԳ

# ՀԲԸՄ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

# Համերգ

Կիրակի, 27 Մարտ 1988,
կ. ե. ժամը 7-ին

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ
«ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԱՄԵՐԳԱՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ
ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ԸՆԴՀ. ՀԻՒՊԱՏՈՍ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

ՀԲԸՄ Ի ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ
ԽՄԲԱՎԱՐ
ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

# Programme

# ՅԱՅՏԱԳԻՐ

*Եգիպտական Քայլերգ*

*ՀԲԸՄ ի Քայլերգ*

| | |
|---|---|
| *Սարի Սիրուն Եար* | *Գուսան Աշոտ* |
| *Բարակ Ես* | *Ժողովրդական* |
| *Բարտի Ծառ Ես* | *Մշկ. Թ. Ալթունեան* |

Մենակատար Արա Սթամպօլեան

| | |
|---|---|
| *Հանիկ - Նանար* | *Զուգերգ Ժողովրդական* |
| | *Մշկ. Թ. Ալթունեան* |

Մենակատարներ Լիւսի Ճուռուեան եւ Ռաֆֆի Շղթայեան

| | |
|---|---|
| *Իմ Չինարի Եարը* | *Կոմիտաս* |
| *Սոնա Եար* | *Կոմիտաս* |

Մենակատարներ Անի Արթինեան եւ Արա Սթամպօլեան

| | |
|---|---|
| *Չին Ելար* | *Թ. Ալթունեան* |
| *Սրտիկ Մալուլ Մի Մնայ* | *Թ. Ալթունեան* |
| *Նիննամ - Նիննամ* | *Մշոյ եւ Սասնոյ* |
| | *Ազգագրական Երգ* |

Մենակատարներ

Անահիտ Փափազեան, Լիւսի Քէհեաեան եւ Էսի Պահարեան

# ԴԱԴԱՐ

*Հատուածներ ԱՆՈՒՇ Օպերայէն*

| | |
|---|---|
| *Խօսք* | *Երաժշտութիւն* |
| *Յովհաննէս Թումանեան* | *Արմէն Տիգրանեան* |

*«Ափսոս Անուշ» Երգչ., «Աման Էրեցիր» Սարօ, «Ամպի տակից» Երգչ., «Ախ իմ բախտը» Անուշ, «Ասում է ուռին» Անուշ, «Ախ Անուշ, Անուշ» Սարօ «Համբարձում եայլա» Երգչախումբ*

Անուշի արիաները կը կատարէ Յասմիկ Տիչէքէնեան

Սարոյի արիաները կը կատարէ Յակոբ Թիւթիւնճեան

| | |
|---|---|
| *Ղարաբաղի Եղնիկ* | *Ալեքս. Հէքիմեան* |
| *Կենաց Երգ* | *Թ. Ալթունեան* |

Մենակատար Բաբրիս Ճանճի

| | |
|---|---|
| *Դաշնամուր* | *Տիկին Զուարթ Գալայճեան* |
| *Սրինգ* | *Տիկին Անահիտ Սարգիսեան* |
| *Տհոլ* | *Պր. Ռուբէն Թերզիպաշեան* |

# PROGRAMME

Egyptian National Anthem

A. G. B. U. Anthem

Sari Siroun Yar

Parag Es Pardi Dsar Es

Solo - Ara Stanboulian

Hanig - Nanar

Duet Lucie Djerdjerian, Raffy Sheghtayan

| | |
|---|---|
| Im Chinari Yar | Gomidas |
| Sona Yar | Gomidas |

Solo Ani Artinian, Ara Stanboulian

Tchin Elar

Srdig Maloul Mi Mna

Ninnam - Ninnam

Solo - Anahid Papazian, Lucy Kehyayan and Eddy Baharian

## INTERVAL

Fragments from Opera Anoush

| | |
|---|---|
| Anoush | Hassmig Dishtchekenian |
| Saro | Hagop Tutungian |

Gharabaghi Yeghnig

Genats Yerk

Solo - Patrice Djangy

Performed by AGBU's Choral

**KOUSSAN**

Conductor Mo. Haig SARKISSIAN

| | |
|---|---|
| Piano | Zvart Kalaydjian |
| Flute | Anahid Sarkissian |
| Dhol | Roupen Terzibashian |

# ԳՈՒՍԱՆ

## ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԿԱԶՄԸ

Արթինեան Անի
Թիւթիւննեան Անի
Կորտեան Թալին
Ճռնռեան Թալին
Ճռնռեան Լիւսի
Վարժապետեան Վանիա
Վարժապետեան Քրիսթին
Տիրչէֆլէնեան Յասմիկ
Փափազեան Անահիտ
Քէհեաեան Լիւսի
Օհանեան Անի
Ցաուզի Մարիամ

Թիւթիւննեան Յակոբ
Ճաննի Բաթրիս
Կորտեան Յակոբ
Մանուկեան Ժիրայր
Շղթայեան Ռաֆֆի
Պահարեան Էտի
Սթամպոլեան Արա
Օհանեան Նշան

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Հ.Բ.Ը.Մ.Ի ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՓԱՌԱՒՈՐ ԵԼՈՅԹԸ

Երէկ, Կիրակի, 27 Մարտ 1988, երեկոյեան, Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Վարժարանի Մելգոնեան հանդիսասրահին մէջ, տեղի ունեցաւ Հ.Բ.Ը.Մ.ի Գուսան երգչախումբին տարեկան ելոյթը, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, արձանագրելով փառաւոր յաջողութիւն մը: Ասիկա Գուսան երգչախումբին երկրորդ տարին է, որ ելոյթ կ'ունենայ:

Համերգին կը հովանաւորէր թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գեր. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, իսկ կը նախագահէին Ընդհանուր Հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեան՝ Պատուոյ նախագահ Աղեքս. Հ.Բ.Ը.Մ.ի:

Ջերմօրէն կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ Մասնաժողովը, Գուսան երգչախումբն ու խմբավար Հայկ Սարգիսեանը:

*Արեւ*, 28 Մարտ 1988, 72-րդ տարի, թիւ 20865, էջ 1

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ՆՈՐ ՆՈՒԱՃՈՒՄԸ

[ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ]

Խմբերգային երկրորդ յաջողութիւնը հանդիսացաւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Միութեան Գուսան երգչախումբի անցեալ Կիրակի, 27 Մարտի ձեռնարկը, Պօղոսեան Ազգային Վարժարանի Մելգոնեան հանդիսասրահին մէջ: Երեկոյթը կը հովանաւորէր թեմիս բարեխնամ Առաջնորդ Գեր. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան եւ կը նախագահէին տէր եւ տիկին Վահան Ալեքսանեան:

Ներկայ էին Աղեքսանդրիոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Խաչակիր Քհնյ. Օհաննեան եւ Երէց կինը, Հայ Աւետարանական համայնքի հովուապետ Պատուելի եւ տիկ. Վահրամ Խունկանեան, Հայ Կաթողիկէ համայնքի կրօնաւորներ, Ազգային Իշխանութեան անդամներ, վարժարանի տնօրէնը, երգչախումբի անդամներուն ծնողքները, մամուլի ներկայացուցիչներ եւ արուեստասէր հոծ բազմութիւն մը, ինչպէս նաեւ Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Շրջ. Յանձնաժողովի անդամ պր. Օննիկ Ալիքսանեան, Գահիրէի մասնաճիւղի ատենապետ պր. Նորայր Տէօվլէթեան եւ անդամ պր. Միսաք Չէչճէնեան եւ այլ հիւրեր:

Հակիրճ խօսքերով հանդիսութեան բացումը կատարեց վարչական պր. Մինաս Պանտոյեան:

Երբ վարագոյրը բացուեցաւ, Գուսան երգչախումբը, որ այժմ կը բաղկանայ 20 հոգիէ, ճաշակօրէն զգեստաւորուած եւ շնորհալի կեցուածքով արդէն գրաւեց հանդիսականներուն հմայքը:

Յայտագիրը սկսաւ երգչախումբին կողմէ երգուած եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներով որոնք յոտնկայս ունկնդրուեցան:

Ապա, երգչախումբը յաջորդաբար երգեց Գուսան Աշոտի *Սարի սիրուն եարը*, Թ. Ալթունեանի *Բարակ ես բարտի ծառ ես* ժողովրդական երգը մենակատարութեամբ Արա Սթամպօլեանի, դարձեալ Թ. Ալթունեանի *Հանիկ-նանար* ժողովրդական զուգերգը մենակատարութեամբ Լիւսի Ճռճռեանի եւ Ռաֆֆի Շղթայեանի: Այս զուգերգը երկարատեւ ծափերով պահանջուեցաւ կրկնումը: Կոմիտասի *Իմ չինարի եարը* եւ *Սոնա եար*ը մենակատարութեամբ Անի Արթինեանի եւ Արա Սթամպօլեանի ունկնդրուեցան հաճոյութեամբ: Երգչախումբը յաջորդաբար երգեց Թ. Ալթունեանի *Չին ելարը* եւ *Սրտիկ մալուլ մի մնայ* երգերը: Յայտագրին առաջին բաժինը վերջ գտաւ *Նիննամ-նիննամ*, Մշոյ եւ Սասնոյ ազգագրական երգով, մենակատարութեամբ Անահիտ Փափազեանի, Լիւսի Քէհեաեանի եւ Էտի Պահարեանի:

Փոքր դադարէ մը ետք, յայտագրին երկրորդ մասը սկսաւ *Անուշ* օփերայէն հատուածներով (խօսք՝ Յովհ. Թումանեան եւ երաժշտ.՝ Արմէն Տիգրանեան): Երգչախումբը երգեց «Ափսոս Անուշ»-ը, «Ամպի տակից»-ը եւ «Համբարձում եայլա»-ն: Սարոյի արիաները՝ «Աման էրեցիր» եւ «Ախ Անուշ, Անուշ» կատարեց Յակոբ Թիւթիւնճեան իսկ Անուշի արիաները՝ «Ախ իմ բախտը» եւ «Ասում են ուռին» կատարեց Յասմիկ Տիշչէքէնեան: Չենք կրնար անցնիլ առանց մասնաւոր շնորհաւորութիւն յայտնելու օր. Յասմիկ Տիշչէքէնեանի, իր ունեցած հոյակապ ելոյթին համար: Ապրի՛ս: Երգչախումբը երգեց Ալեքս. Հէքիմեանի *Ղարաբաղի եղնիկ*ը եւ երեկոյթը վերջ գտաւ Թ. Ալթունեանի *Կենաց երգ*ով, որուն մենակատարն էր Բաթրիս Ճանճի:

Երգերուն դաշնամուրի նուագակցութիւնը ներդաշնակօրէն կատարեց տիկին Զուարթ Գալայճեան: Հոյակապ էր տիկին Անահիտ Սարգիսեանի սրինգի նուագակցութիւնը, իսկ պր. Ռուբէն Թերզիպաշեանի տհոլը մասնաւոր փայլ մը տուաւ կարգ մը երգերու:

Երգչախումբը մէկը միւսէն հմայիչ կատարումով ներկայացուց երգերը: Երիտասարդ խմբավար Հայկ Սարգիսեան կարճ ժամանակամիջոցի մը մէջ կարողացած էր համախմբել երիտասարդ ուժեր, անոնցմով կազմել երկսեռ երգչախումբ մը եւ մեզի հրամցնել գեղարուեստական այս շատ յաջող երեկոն:

Երեկոյթի դադարի եւ աւարտի ընթացքին, Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքս.ի Մասնաճիւղի վարչութեան կողմէ պր. Վարդերես Յարութիւնեան շնորհակալութիւն յայտնեց այն ազգայիններուն՝ որոնք զանազան կերպով օժանդակած էին այս համերգի յաջողութեանը: Ապա, ան կարդաց անունները այն ազգայիններուն որոնք

խանդավառուած այս յաջող ելոյթէն սրտաբուխ նուիրատուութիւններ կատարած էին: Այս առթիւ ծաղկեկողովներ ղրկած էին Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնները, Կոկանեան Սրահը, Հայկական Ընթերցասրահը, Տիգրան Երկաթ Մշակ. Միութիւնը, Կռունկ երգչախումբը, Հ.Մ.Ը.Մ.-Նուպարը (Աղեքս.) եւ Հ.Բ.Ը.Մ.-ը (Աղեքս.):

Ծաղկեփունջեր տրուեցան դաշնակահարուհիին, սրնգահարուհիին եւ խումբին լաւագոյն մեներգչուհի օր. Յասմիկ Տիշշէքէնեանի:

Կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքսանդրիոյ Մասնաճիւղի վարչութիւնը իր այս գեղեցիկ նախաձեռնութեան համար, Գուսան երգչախումբի խմբավար Հայկ Սարգիսեանը եւ բոլոր անդամները եւ կը մաղթենք բոլորին նորանոր յաջողութիւններ:

* * *

Երեկոյթէն ետք, Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքսանդրիոյ Մասնաժողովը, ի պատիւ Գուսան երգչախումբին եւ անոր ղեկավար Հայկ Սարգիսեանին, ճոխ պատուասիրութիւն մը սարքած էր իր կեդրոնատեղիին մէջ, որը տեւեց մինչեւ ուշ գիշեր եւ բոլորը գոհ տրամադրութեամբ մեկնեցան սրահէն:

*Զահակիր*, 31 Մարտ 1988, նոր շրջան, թիւ 1134, էջ 2

## CHORALE ARMENIENNE KOUSSAN
## CHEF DE COEUR: HAIG SARKISSIAN

GISELE BOULAD

La chorale arménienne Koussan est en réel progrès. Félicitons donc immédiatement, Chef de Choeur et Choristes.

Ces derniers sont composés de 20 personnes dont les voix commencent à être à l'aise dans toutes les partitions.

La musique et les chants entendus ce soir-là, sont bien arméniens. C'est à dire que le patriotisme – à juste titre – est joliment exalté, le folklore brillamment enlevé.

Quelle admirable musique et quel merveilleux instrument que ce choeur dont les voix s'associent, se fondent et s'unissent.

Ces choristes chantent de tout leur coeur, avec amour et musicalité: ils paient de leur personne, c'est donc à leur personne que nous devons nous adresser. Nous les félicitons chaleureusement et bravo, encore et encore.

Nous félicitons également les solistes, particulièrement ceux qui ont fait, dans ce spectacle, leurs premiers essais sur scène, qui furent d'ailleurs un coup de maître: nous

nommons: Lucie Djerdjérian et Raffy Shegtayan.

Un grand bravo à la flûtiste Anahid Sarkissian dont les accents champêtres de son instrument étaient harmonieusement rendus. Nous n'oublions pas Roupen Terzibashian et son "Dhol" (Tambour) dont les sons rustiques aidaient à la magnificence du choeur. Le pianiste Zvart Kalaydjian a été un bon accompagnateur discret et efficace.

Nous signalons qu'Ara Stamboulian est en réel progrès et qu'Ani Artinian, bien que possédant une voix assez agréable devrait la travailler davantage afin de "l'arrondir".

Et nous arrivons à la pièce de résistance: *Anoush*, opéra composé par Armen Dikranian et dont nous avons entendu quelques extraits. Les solistes étaient accompagnés au piano et dirigés par le Mo. Sarkissian.

Cet opéra est basé sur le poème du poète Hovaness Toumanian et raconte l'amour tragique d'Anoush et du berger Saro.

Hassmig Dishtchékénian est une soprano à la voix pure et douce. Elle atteint sans effort aux notes élevées qui sont souvent difficiles à rendre aussi joliment. Sa voix est bien timbrée et elle recherche l'expression mélodique. Elle a de jolis liés.

Hagop Tutungian possède une belle voix énergique et d'une belle sensibilité. Son souffle est bon. Cependant, Hagop devrait se débarrasser de quelques notes nasales qui portent préjudice à la qualité de sa voix. Avec des exercices appropriés, il y arrivera.

Saluons le chef de choeur Haig Sarkissian pour sa grande compétence et son grand savoir. On ne peut craindre de dire qu'il a du génie. En plus de son intelligence musicale, nous constatons qu'il a beaucoup d'intuition et un goût sûr. A chacune de ses manifestations, nous l'admirons chaque fois davantage.

*Le Journal d'Egypte*, 14 avril 1988

## ԳՈՒՍԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԽՄԲԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԺԻԶԷԼ ՊՈՒԼԱՏ
Թարգմանութիւն՝ ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հայկական Գուսան երգչախումբը իսկական յառաջդիմութեան մէջ է: Ուրեմն, անմիջապէս շնորհաւորենք խմբավարն ու երգչախումբին անդամները: Այս վերջինները թիւով քան են, որոնց ձայները հեզահնչիւն են բոլոր մասերուն մէջ:

Այդ երեկոյ ունկնդրուած երաժշտութիւնն ու երգերը զուտ հայկական էին: Այս կը նշանակէ, թէ հայրենասիրութիւնը, արդարօրէն, գեղեցկօրէն վեր առնուած է եւ ֆոլքլորը փայլուն կերպով արտայայտուած է: Ի՜նչ հիանալի երաժշտութիւն է

եւ ի՜նչ սքանչելի գործիք, որ այս երգչախումբն է, ուր ձայները կը հաղորդուին իրարու, կը միաձուլուին եւ կը միանան։

Երգչախումբին անդամները կ'երգեն իրենց ամբողջ սրտով, սիրով եւ երաժըշտականութեամբ։ Անոնք կու տան իրենց անձէն, եւ հետեւաբար, իրենց անձին է, որ մենք պէտք է մեր խօսքը ուղղենք։ Զանոնք կը շնորհաւորենք ջերմօրէն, եւ կ'ըսենք՝ կեցցէ՛ք, կրկին ու կրկին։

Կը շնորհաւորենք նաեւ մենակատարները, մասնաւորաբար զանոնք, որոնք, այս առթիւ, իրենց առաջին յայտնութիւնը կատարեցին բեմին վրայ, եւ որոնք, ի դէպ արտայայտուեցան վարպետօրէն. զանոնք կոչենք իրենց անուններով՝ Լիւսի Ճոճռեան եւ Ռաֆֆի Շղթայեան։

Մեծ կեցցէ՛ մը սրնգահարուհի Անահիտ Սարգիսեանի, որուն գործիքին դաշտային հնչիւնները ներդաշնակօրէն արտայայտուեցան։ Չենք կրնար մոռնալ Ռուբէն Թերզիպաշեանն ու իր դհոլը, որուն գեղջկական հնչիւնները օժանդակեցին երգչախումբին հիասքանչութեան։ Դաշնակահարուհին՝ Զուարթ Գալայճեան, եղաւ յաջող ընկերակցութիւն մը՝ խոհական եւ ազդու։

Նշենք, թէ Արա Սթամպօլեան իսկական յառաջդիմութեան մէջ է, իսկ Անի Արթինեանը, որ թէեւ բաւական հաճելի ձայն մը ունի, պէտք է առաւել եւս աշխատի՝ զայն «կլորցնելու» համար։

Կը հասնինք գլխաւոր կտորին՝ Արմէն Տիգրանեանի *Անուշ* օփերային, որմէ ունկնդրեցինք քանի մը կտոր։ Մենակատարներուն դաշնակով կ'ընկերակցէր եւ կը ղեկավարէր Հայկ Սարգիսեանը։ Այս օփերան հիմնուած է բանաստեղծ Յովհաննէս Թումանեանի պոէմին վրայ, որ կը պատմէ ողբերգական սէրը Անուշի եւ հօտաղ Սարոյի։

Յասմիկ Տիչչէքէնեան անուշ ու ջինջ ձայնով սոփրանօ մըն է։ Ան առանց ճիգի կը հասնի բարձր ձայնանիշներուն, զորս յաճախ դժուար է արտայայտել այսքան գեղեցկօրէն։ Ձայնը լաւ երանգաւորուած է եւ կը փնտռէ մեղեդիական արտայայտութիւնը։ Ան գեղեցիկ կապակցութիւններ ունի։

Յակոբ Թիւթիւնճեան ուժական գեղեցիկ ձայն մը ունի, եւ գեղեցիկ զգայնութիւն մը։ Շունչը լաւ է։ Սակայն, Յակոբ պէտք է ձերբազատուի ռնգային քանի մը նօթերէ, որոնք կը վնասեն իր ձայնի որակին։ Յարմար մարզումներով՝ կրնայ հասնիլատոր։

Ողջունենք խմբավար Հայկ Սարգիսեանը իր մեծ ձեռնհասութեան եւ իր ընդարձակ գիտելիքին համար։ Չենք վախնար ըսելու, որ ան հանճարեղ է։ Բացի իր երաժշտական հմտութենէն, կը նշմարենք, որ ան ունի մեծ յայտնատեսութիւն եւ վստահ ճաշակ։ Իր իւրաքանչիւր ելոյթին, մենք առաւել եւս կը հիանանք իր վրայ։ (*Լը Ժուռնալ տ'Էժիփթ*, 14 Ապրիլ 1988)

*Արեւ*, 15 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20879, էջ 1

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ՆՈՐ ՆՈՒԱՃՈՒՄԸ

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի Վարչութիւնը կու գար այս երկրորդ տարին ըլլալով կազմակերպել իր նորակազմ Գուսան երգչախումբի տարեկան ելոյթը, որ տեղի ունեցաւ Պօղոսեան Ազգային Երկրորդական Վարժարանի Մելքոնեան համերգասրահին մէջ Կիրակի 27 Մարտ 1988-ի երեկոյեան ժամը 7-ին, հովանաւորութեամբ Եգիպտահայոց Բարեխնամ Առաջնորդին՝ Գերշ. Տ. Զաւէն Սրբ. Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ Միութեան Պատուոյ նախագահ Ընդհ. Հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեանի։ Հրաւիրեալներուն մէջ կը նշմարուէր ներկայութիւնը համայնքիս հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Գրիգոր Խչկր. Քհնյ. Օհանեանի եւ երիցուհիին, Հայ Աւետարանական համայնքի հովիւ՝ Պատուելի Վահրամ Խունկանեանի եւ երիցուհիին, Հայ Կաթողիկէ համայնքի հոգեւոր ներկայացուցիչ Վենսան Վրդ. Մուսթարիհի՝ ընկերակցութեամբ Լատին հոգեւորականներու։

Ներկայ էին նաեւ Աղեքսանդրիոյ Հայոց Ազգային Իշխանութեան անդամներ գլխաւորութեամբ Պատ. Քաղաքական Ժողովոյ փոխ-ատենապետ Տիար Վրէժ Սէֆէրեանի, Հայ Կաթողիկէ համայնքի ատենապետ Տոքթ. եւ Տիկին Կարօ Անսուրեան, Հայ Աւետարանական Եկեղեցւոյ Խորհուրդի քարտուղար Տէր եւ Տիկին Յակոբ Տիշչէքէնեան, Պօղոսեան Ազգային Վարժարանի Տնօրէն եւ Տիկին Մանուկ Գալփաքճեան։

Իսկ Գահիրէէն յատկապէս ժամանած էին Հ.Բ.Ը.Մ.-ի Եգիպտոսի Շրջ. Յանձնաժողովի անդամ Տիար Օննիկ Ալիքսանեան, Գահիրէի Մասնաճիւղի Ատենապետ Տիար Նորայր Տէօվլէթեան, եւ անդամ Պր. Միսաք Չէչճէնեան։

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը կը ներկայացնէր Պատկ. Քաղաքական Ժողովոյ անդամ, Հայկական Ընթերցասրահի ցկեանս նախագահ եւ *Ջահակիր* շաբաթաթերթի խմբագիր Տէր եւ Տիկին Զաւէն Պալաեան։

Ինչպէս նաեւ մշակութային, մարզական, բարեսիրական միութիւններու վարչական անդամներ, հայ եւ օտար մամուլի ներկայացուցիչներ, ծնողք եւ երաժըշտասէր հասարակութիւն մը որ ամբողջապէս լեցուցած էր մեծ համերգասրահը։

Որոշեալ ժամուն օրուայ հանդիսավար եւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.-ի վարչութեան խորհրդական Պր. Վարդերես Յարութիւնեան բեմ հրաւիրեց Հ.Բ.Ը.Մ.-ի Աղեքսանդրիոյ Մասնաճիւղի Ատենադպիր Տիար Մինաս Պանտոյեանը որ բացման խօսքը ըսէ (խօսքը կու տանք առանձին)։

Վարագոյրի բացուելուն Գուսան երգչախումբը որ այժմ կը բաղկանայ 20 հոգիէ, ճաշակով զգեստաւորուած եւ շնորհալի կեցուածքով արդէն գրաւեց

հանդիսականներուն հմայքը։

Յայտագիրը սկսաւ երգչախումբին կողմէ երգուած եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.-ի քայլերգներով, որոնք ունկնդրուեցան յոտնկայս։

Երգչախումբը յաջորդաբար երգեց Գուսան Աշոտի *Սարի սիրուն եարը*, Թ. Ալթունեանի *Բարակ ես բարդի ծառ ես* ժողովրդական երգը մենակատարութեամբ՝ Արա Սթամպօլեանի, դարձեալ Թ. Ալթունեանի *Հանիկ-նանար* ժողովրդական զուգերգը մենակատարութեամբ Լիւսի Ճոճոեանի եւ Ռաֆֆի Շղթայեանի։ Զուգերգը երկարատեւ ծափերով կրկնել պահանջուեցաւ։ Կոմիտասի *Իմ չինարի եարը* եւ *Սօնա եարը* ունեցան իբր մենակատար Անի Արթինեանը եւ Արա Սթամպօլեանը։ Երգչախումբի յաջորդ երգերը եղան Թ. Ալթունեանի *Չին ելար* եւ *Սրտիկ մալուլ մի մնայ* երգերը։ Յայտագիրի առաջին բաժինը վերջ գտաւ՝ *Նիննամ-նիննամ* Մշոյ եւ Սասնոյ ազգագրական երգը մենակատարութեամբ Անահիտ Փափազեանի, Լիւսի Քէհեաեանի եւ Էտի Պահարեանի։

Յայտագրի առաջին բաժնի աւարտին տեղի ունեցաւ կարճ դադար մը, որուն ընթացքին օրուան հանդիսավարը կարդաց ցանկը այն անձերուն, որոնք առ ի գոհունակութիւն եւ քաջալերանք կատարեցին սրտաբուխ նուիրատուութիւններ։

Յայտագիրի երկրորդ մասը առաւելաբար յատկացուած էր *Անուշ* օփերայի հատուածներու ունկնդրութեան։ (Խօսք Յովհ. Թումանեանի եւ երաժշտութիւն Արմէն Տիգրանեանի)։

Երգչախումբը երգեց «Ափսոս Անուշ»-ը, «Ամպի տակից»-ը եւ «Համբարձում եայլա»-ն։ Սարոյի արիաները՝ «Աման էրեցիր» եւ «Ախ Անուշ, Անուշ»-ը կատարեց Յակոբ Թիւթիւնճեան, իսկ Անուշի արիաները՝ «Ախ իմ բախտ»-ը եւ «Ասում են ուռին» կատարեց Ս. Պօղոս Պետրոս Եկեղեցւոյ եւ Հայ Աւետարանական Եկեղեցւոյ երգչախումբերու սիրուած մենակատար երգչուհի՝ Յասմիկ Տիշչէքէնեանը որ իր այս ելոյթով գերազանցեց ինքզինքը։

Երգչախումբը աւարտեց յայտագիրը երգելով Ալեքս. Հէքիմեանի *Ղարաբաղի եղնիկ*ը եւ Թ. Ալթունեանի *Կենաց երգ*ը, որուն մենակատարն էր Բաթրիս Ճանճի։

Երգերուն դաշնամուրով իր մասնակցութիւնը բերաւ Տիկին Զուարթ Գալայճեան, սրինգով Տիկին Անահիտ Սարգիսեան եւ դհոլով Պր. Ռուբէն Թէրզիպաշեան տալով մասնաւոր փայլ մը կարգ մը երգերու։

Իսկ յայտագիրի աւարտին՝ հանդիսավար Վարդերես Յարութիւնեան շնորհակալութիւն յայտնեց բոլոր այն ազգայիններուն որոնք զանազան կերպով օժանդակած էին այս համերգի յաջողութեանը։ Ապա կարդաց այս ուրախ առթիւ անունները այն պաշտօնական մարմիններուն որոնք առ ի շնորհաւորութիւն գեղեցիկ ծաղկեկողովներ էին ղրկած՝ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնները, Կոկանեան Սրահ, Հայկական Ընթերցասրահ, Տիգրան Երկաթ Մշակ. Միութիւն, Կոունկ երգչախումբը, Հ.Մ.Ը.Մ Նուպար (Աղեքսանդրիա) եւ Հ.Բ.Ը.Մ. Աղեքսանդրիա։

Ծաղկեփունջեր տրուեցան դաշնակահարուհիին, սրնգահարուհիին եւ խումբին լաւագոյն մեներգչուհի Օր. Յասմիկ Տիշչէքէնեանի:

Ապա հրաւիրեց Առաջնորդ Սրբազան Հայրը որ փակման խօսքով եւ Պահպանիչով փակէ օրուայ հանդիսութիւնը:

Սրբազան Հայրը իր խօսքի աւարտին հրաւիրեց բոլոր ներկաներէն որ միաբերան երգուի Տէրունական Աղօթքը:

Երեկոյթէն ետք Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ Մասնաժողովը ի պատիւ Գուսան երգչախումբին եւ անոր ղեկավարին՝ խմբավար Հայկ Սարգիսեանի ճոխ պատուասիրութիւն մը սարքած էր իր կեդրոնատեղիին մէջ, որուն հրաւիրուած էին երգչախումբի անդամներէն եւ ղեկավարէն զատ նաեւ անոնց ծնողները, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Մասնաճիւղերու վարչութեանց, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեանց ներկայացուցիչները իրենց համեստափայլ Տիկիններով:

Երգչախումբի կազմաւորման 2-րդ տարեդարձին առթիւ՝ վարչութիւնը գեղեցիկ գաղափարը ունեցած էր տարեդարձի մեծ եւ շնորհալի կարկանդակով մը՝ շնորհաւորելու Գուսան երգչախումբի անդամ-անդամուհիները եւ ղեկավարը, զոր կտրելու հրաւիրուեցան Առաջնորդ Սրբազան Հայրը, նախագահ Ընդհ. Հիւպատոս Տիար Վահան Ալեքսանեան, Պատուելի Վահրամ Խունկանեան եւ խմբավար Հայկ Սարգիսեան:

Այդ ընդունելութեան ընթացքին խօսք առաւ Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ Վարչութեան երկարամեայ անդամ եւ գանձապահ Տիար Նազարէթ Գարթալեանը, որ յանուն վարչութեան շնորհակալական խօսք ուղղեց ներկայ հրաւիրեալներուն՝ մաղթելով անոնց քաջառողջութիւն, իսկ Միութեան յառաջիկայ գործունէութեան ալ՝ յաջողութիւն: Մինչեւ ուշ գիշեր տեւած այս ընդունելութեան ներկաները գոհ տրամադրութեամբ շնորհաւորելէ յետոյ վարչութեան անդամները մեկնեցան սրահէն իրենց հետ տանելով հայկական անմոռանալի երեկոյի մը յուշը:

Մեր շնորհաւորութիւնները կը ներկայացնենք Գուսան երգչախումբի անդամ-անդամուհիներուն եւ իրենց ղեկավարին՝ խմբավար Հայկ Սարգիսեանի, Հ.Բ.Ը.Մ. Աղեքսանդրիոյ Մասնաժողովի վարչական անդամներուն եւ իրենց նախագահին Ընդհ. Հիւպատոս Տիար Վահան Ալեքսանեանի, իսկ բոլոր անոնց որոնք իրենց նիւթական եւ բարոյական աջակցութեամբ օգտակար եւ քաջալեր հանդիսացան երեկոյթի յաջողութեան, կ’ըսենք՝ «Վարձքերնիդ կատար»:

*Արեւ*, 5 Մայիս 1988, 72-րդ տարի, թիւ 20894, էջ 2

# ԲԱՑՄԱՆ ԽՕՍՔ ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ 27 ՄԱՐՏ 1988-Ի ԵԼՈՅԹԻՆ

Խօսուած Աղեքս. Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան Ատենադպիր
ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆի կողմէ

Գերաշնորհ Սրբազան Հայր, Արժանապատիւ Հայրեր, Մեծայարգ Տիար Նախագահ, Մեծարգոյ Տիար՝ Ատենապետ եւ անդամք Պատկառելի Թեմական Ժողովոյ: Մեծայարգ Տիար՝ Փոխ Ատենապետ եւ անդամք Պատուարժան Քաղաքական Ժողովոյ: Մեծայարգ Տեարք ներկայացուցիչներ Գահիրէի Ազգային Իշխանութեանց, Բարեսիրական, Մշակութային, Մարմնամարզական Միութեանց, Մամլոյ ներկայացուցիչներ, ծնողք եւ յարգելի ներկաներ:

Այս երեկոյ դուք հաճոյքը պիտի ունենաք ունկնդրելու Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի Գուսան երգչախումբը որ ելոյթ պիտի ունենայ յաջորդական երկրորդ տարին ըլլալով:

Ազգի մը ինքնուրոյնութիւնն ու արժէքը կը կայանայ կամ կը յատկանշուի անոր մշակոյթի գոյութեամբ արձանագրուած ազգաց պատմութեան ակորնչելի էջերուն նշելով այն բոլոր լաւ եւ արժէքաւոր գործերը որ ազգ մը տուած է թէ՛ իր ժողովուրդին եւ թէ ալ համայն մարդկութեան:

Հայը իր գոյութիւնը կը պարտի երկու անմար կանթեղներու, որոնցմէ մին անշէջ կերպով կախեալ է Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Ս. Խորանին առջեւ ձեռամբ Հայոց Մեծ Լուսաւորիչին Սրբոյն Գրիգորիոսի, ապահովցնելու համար հաւատքն ու հոգիի յաւերժութիւնը: Իսկ միւսն ալ անմար կը մնայ Հայ Վարժարանի բեմին զետեղուած Հայոց Լեզուի, Գրականութեան եւ Արուեստի ինքնուրոյնութեան մեր երկրորդ Լուսաւորիչին՝ Սուրբ Մեսրոպ Մաշտոցէ:

Եւ ահա մենք այսօր այդ երկրորդ անշէջ կանթեղի լոյսով պիտի լուսաւորւինք եւ արբենանք ունկնդրելով Գուսան երգչախումբի ճոխօրէն պատրաստուած երգացանկը որ ոչ միայն մեզ հաճելի երեկոյ մը պիտի պարգեւէ այլ նաեւ մեզ պիտի շաղկապէ անցեալէն եկող մեր ազգային եւ տոհմիկ երգերուն եւ երաժըշտութեան:

Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան նպատակներէն մին եղած է հովանաւորել Հայ երիտասարդութիւնը, քաջալերել հայկականը անոր մէջ, օգտակար ըլլալ անոր հայանպաստ ծրագիրներու իրագործման, սատարել անոր հայեցի դաստիարակութեան:

Քաջալեր հանդիսանալ երիտասարդութեան, կը նշանակէ ապահովել ապագան: Ապահովել ապագան՝ կը նշանակէ ծառայել հայ մշակոյթի զօրեղացման, ինչ որ կը նշանակէ սատարել հայապահպանման սրբազան գործին:

Կը փափաքէինք հոս փոքր յիշեցում մը ընել, թէ այս երգչախումբը բաղկացած

է երկսեռ երիտասարդներէ, որոնք իրենց ուսման սուղ ժամանակէն մաս մը զոհած եւ նուիրած են հայ երգին եւ անոր պանծացման: Իսկ իր ղեկավարին յանձին, խմբավար Հայկ Սարգիսեանի մասին պէտք չենք տեսներ խօսք ընելու, որովհետեւ ան ձեզ քաջածանօթ է իր ելոյթներով Գահիրէ թէ Աղեքսանդրիա:

Եզրափակելով մեր խօսքը վարչութեանս շնորհակալութիւնները կը ներկայացնենք Առաջնորդ Սրբազան Հօր, Միութեանս եւ օրուայ հանդիսութեան նախագահին, Ազգային Իշխանութեանց, Միութեանց, Մամուլին եւ բոլոր անոնց որոնք իրենց քաջալերութեամբ եւ ներկայութեամբ կը գնահատեն Գուսան Երգչախումբը՝ յարատեւելու եւ պանծացնելու հայ անունը:

Շնորհակալութիւն:

*Արեւ*, 5 Մայիս 1988, 72-րդ տարի, թիւ 20894, էջ 3

# ԷՈՒԱՐԹ ՄԵՄՈՐԻԸԼ ՀՈԼ–ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 3 ԱՊՐԻԼ 1988, Կ. Ե. ԺԱՄԸ ՃԻՇԴ 6.30ԻՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԾԱՂԿԱՏՕՆ

*Հովանաւորութեամբ*

*Եգիպտոսի Հայոց Բարեխնամ Առաջնորդ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Նախագահութեամբ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

*Կազմակերպութեամբ*

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ
ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ

*Մասնակցութեամբ*

**ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ, ՅՈՒՍԱԲԵՐ ԱԿՈՒՄԲԻ, ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԻ, Հ.Բ.Ը.Մ.-Ի (ԳԱՀԻՐԷ), Հ.Բ.Ը.Մ.-Ի (ԱՂԵՔՍ.) ՆԻԲԸՐ ԻՍԹ ՀԱՅԿ. ԱԿՈՒՄԲԻ Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻ (ԳԱՀԻՐԷ ԵՒ ԱՂԵՔՍ.) ԵՒ «ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ»Ի ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐՈՒՆ**

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍՈՒՀԻ

ՏԻԿԻՆ ՄԱՅՏԱ ՃՌՃՌԵԱՆ

***ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ***

## Ա· ՄԱՍ

1.– Եգիպտական Քայլերգ

2.– Բացման Խօսք — ԱԻԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

3.– Արտասանութիւն — ՎԱՐԴԵՐԵՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
*«Մէկ Ենք Մենք» - Ժագ Յակոբեանի* (Հ.Բ.Ը.Մ. – Աղեքս.)

4.– Սարտարապատի ճերոսամարտը 70 տարեկան — Հայկական Ընթերցասրահի Ն. Ս. Մ. Մ.

5.– Դաշնակ — Օր. ՍՕՍԷ ՊԱՅՐԱՄԵԱՆ

6.– Խորհրդապատկեր *«Հայրենականք»* — Հ. Գ. Մ.-ի եւ ԿՈԿԱՆԵԱՆԻ Երիտ. Մարմիններ

7.– Խմբերգներ
Ղեկ. Խմբավար՝ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ — «ԳՈՒՍԱՆ» Երգչախումբ (Հ. Բ. Ը. Մ. – Աղեքս.)

8.– Խօսք — Տիկ. ՄԱՅՏԱ ՃՈՃՈԵԱՆ

# Բ· ՄԱՍ

1.– Սարտարապատի հաւատքն
ու պատգամը — ՅՈՒՍԱԲԵՐԻ Երիտ. Մարմին

2.– Խմբերգներ — «ԿՌՈՒՆԿ» Երգչախումբ
Ղեկ. Խմբավար՝ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ (Հ. Բ. Ը. Մ. – Գահիրէ)

3.– Արտասանութիւն — ՀԱՅԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ
*«Պարը» Սիամանթոյի*

4.– Խօսք Նախագահի

5.– Մենապար — ՍՈՆԻԱ ՍԱՐԳԻՍ
(ՉԱՄԲԵՐԹԷՆԵԱՆ
(Եգիպտոսի Պալէի պետական խումբին մենակատարուհիներէն)
*«ՏՈՆ ԲԻՇՈԹ» պալէթէն հատուածներ*

6.– Փակման խօսք — ԱՌԱՋՆՈՐԴ ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐ

## ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԾԱՂԿԱՏՕՆԸ
(հատուածներ)

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Դարձեալ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի, այս անգամ Գուսան երգչախումբը ելոյթ ունեցաւ *Անուշ* օփերայի հատուածներով։ Անուշի դերը ստանձնած էր Օր. Յասմիկ Տիշչէքէնեան, իսկ Սարոյի դերը՝ Յակոբ Թիւթիւնճեան, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, որ ընկերակցե-ցաւ նաեւ դաշնակով, իսկ Տիկին Անահիտ Սարգիսեան եւ Պր. Ռուբէն Թերզի-պաշեան ընկերակցեցան սրինգով եւ դհոլով։ Այս ելոյթը հմայեց բոլոր ներկաները անխտիր, երգչախումբ թէ մենակատարները ունեցան գերազանց ելոյթ մը։

[...]

Յայտագրի վերջին ելոյթը ապահովուած էր Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբին, եւ խմբային երգերով, եւ մէջընդմէջ մեներգներով ելոյթ ունեցան Օրք. Քրիստին Չատրճեան, Թալին Կապլեան, Լիւսի Տէր Ներսէսեան, եւ ՊՊ. Ռաֆֆի Չէչճէնեան եւ Հարի Չէչճէնեան, որոնք առինքնեցին ներկաները անխտիր. երգերուն կ'ընկերակցէին Տիկին Կասիա Ճղալեան դաշնակով, եւ Պր. Ռուբէն Թերզիպաշեան դհոլով։

*Արեւ*, 2 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20876, 1էջ 1, 4

## ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԾԱՂԿԱՆՏՕՆԸ
(հատուած)

ԱԼԵԻՌՐ Ժ.

Խմբավար Հայկ Սարգիսեան, որդի՛ երգիչ Պարոյրի, հպա՛րտ եմ՝ որ քու մտաւորական հոգեհայրը եղած եմ դէպի Կիպրոսի Մելգոնեանն եւ դէպի Արարատ - Աղբիւրը Լոյսի։ Հարուստ կ'ըլլայ հայրենիքի պտուղը՝ նաեւ արուեստի արշաւադաշտին մէջ։ Ամէն ոք կը յիշէ, որ եօթը տարե-կանէդ՝ աշակերտն եղար արժանաւոր-վաստակաւոր դաշնակահար-ուսուցչու-հի Նուարդ Տամատեանին։ Ամէն ոք կը յիշէ, որ տասներկու տարեկանիդ, դաշնամուրի առջեւ, դուն մեզ կը յուզէիր կ'ապրեցնէիր քու իսկ դաշնաւորած կտորով, երկա՛ր նուագածումով...։ Իսկ այժմ, Գահիրէի ՀԲԸՄ Կռունկ եւ

Աղեքսանդրիոյ Գուսան երգչախումբերովդ կը հիփնոսացնես, ու կը վերացնես մեզ դէպի արուեստի բարձունքները: Առատ քնարականութեան հետ՝ կարգապահ եւ ժուժկալ աշխուժութիւնը մեներգողներուդ եւ խմբերգող երիտասարդներուդ՝ մեր կորովը կը բազմապատկեն:

*Ջահակիր*, 21 Ապրիլ 1988, նոր շրջան, թիւ 1136, էջ 1-2

## 3 ԱՊՐԻԼ 1988-Ի ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԾԱՂԿԱՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ (ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ)

(հատուած)

Ա. Թ.

Մեծապէս խանդավառեց մեզ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.-ի Գուսան երգչախումբը քանի որ ան առաջին անգամն ըլլալով ելոյթ կ'ունենար Գահիրէի մէջ, մանաւանդ *Անուշ* օփերայէն տրուած հատուածները նորութիւն էին, յաջող կատարողութեամբ Յասմիկ Տիշչէքէնեանի եւ Յակոբ Թիւթիւնճեանի:

Յայտագրին վերջին ելոյթը ապահովուած էր Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.-ի Կռունկ երգչախումբին: Ինչպէս միշտ, այս անգամ եւս ան խանդավառեց ներկայ հասարակութիւնը իր խմբերգներով եւ մեներգներով:

*Ջահակիր*, 28 Ապրիլ 1988, նոր շրջան, թիւ 1137, էջ 2

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

---------

ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

1986 - 1987 Շրջանի

------------

Յ Ա Յ Տ Ա Գ Ի Ր

---------

- Եգիպտական քայլերգ
- Գալուստեան Ազգ. Վարժարանի մաղթերգ
- Ազգագրական Երգ Երգենք Պարենք Քոչարի
- Պար - Մանկապարտէզի փոքրիկներու կողմէ
- Արտասանութիւն - Մեր դպրոցը - Ժագ Յակոբեան — Րաֆֆի Հեղինեան
  Պանդուխտ Հայ Մայրերին - Սարմէն - Քրիստին Աւագեան
- Ուղերձ շրջանաւարտներու կողմէ — Մուրատ Յարութիւնեան
- Մրցանակաբաշխութիւն
- Հուսկ Բանք - Տնօրէն Նշան Վարդեան

Դ Ա Դ Ա Ր

------

- Ա. Բ. Գ. Դասարանները կը կատարեն
  Ազգագրական Երգ. Ճիւ - ճիւ
  Ազգագրական Երգ. Աղուէս Չալիկը
  Արտասանութիւն Մայրիկս — Արեւիկ Սարգիսեան, Ռուպինա Նալպանտեան
  Արտասանութիւն Ծնողասէր — Լորնա Թրայեան
- Արտասանութիւն Տաղ Հայերէն Լեզուին . Վահան Թէքէեան - Վիվեան Սէմիզեան
- Արտասանութիւն Սայաթ-Նովա- Յովհ. Շիրազ — Տիանա Աւագեան
- Ազգագրական Երգ - Աստղիկն ու Լուսինը
- Արտասանութիւն - Մօր Ձեռքերը - Պարոյր Սեւակ — Անի Պարսում

Արտասանութիւն - Գովք Հայաստանի․ Եղիշէ Չարենց - Գէորգ Գազանճեան

Ազգագրական Երգ - Աղուէսն ու Սագը

Ազգագրական Երգ - Հանիք Նանար

- Դ. Ե. Զ. Է. դասարանները կը կատարեն

Ազգ. Երգ - Հոյնարէ

- Արտասանութիւն- Մենք - Գէորգ Էմին  Թալին Կապէեան

- Երգ - Հաբրբան - Կոմիտաս

- Երգ - Շողեր ծան - Կոմիտաս

- Արտասանութիւն - Մեր Սէրը. Սիլվա Կապուտիկեան - Մարկրիթ Թաշթապրունեան

- Նանար - Սրինգի Խումբ - Կոմիտաս

- Հայրենասիրական Երգ - Կովկասի Քաջեր

- Հայրենասիրական Երգ - Կռունկ Բարով Եկար

- Արտասանութիւն ․ Երգ Կռունկի Մասին. Գէորգ Էմին-Նորա Գոլոյեան

- Երգ - Տինկ-Տոնկ - Երաժշտութիւն . Ռոպերթ Ամիրխանեան

- Երգ Խուտուտ-Մուտուտ-Երաժշտութիւն. Տիգրան Մանսուրեան

- Արտասանութիւն- Անլռելի Զանգակատուն- Պարոյր Սեւակ-Սիլվա Կապէեան

- Փակման Խօսք - Առաջնորդ Սրբազան Հայր

Գերշն. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան

Շաբաթ, 9 Ապրիլ 1988

# ՀԱՄԵՐԳ ԵՒ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Անցեալ շաբաթավերջը գրաւած էր՝ Գալուստեան Ազգային Վարժարանի աշակերտութիւնը:

Այսպէս, Ուրբաթ, 8 Ապրիլ 1988, յետմիջօրէի ժամը 6-ին, օրուան նախագահներ Տէր եւ Տիկին Անդրօ Մեսրոպեան բացումը կատարեցին աշակերտական նկարչութեան եւ քանդակագործութեան ցուցահանդէսին: Ցուցադրուած էին ջրանկրներ, կաւէ քանդակներ, կերպասի վրայ տպագրութիւններ, հիւսուածքներ:

Այս բաժնին ուսուցիչն է նկարիչ Ռաֆֆի Չէչճէնեանը, երիտասարդ, խանդավառ եւ եռանդուն, որ նուիրուած է վարժարանին աշակերտութեան գեղարուեստական ճաշակը զարգացնելու առաքելութեան: Ան հեքիաթներ եւ ազգային պատմութենէն դրուագներ կը պատմէ, երաժշտութիւն ունկնդրել կու տայ, եւ ապա, աշակերտներուն կը թելադրէ իրենց երեւակայութեամբ գծագրել նկարներ:

Ռաֆֆի Չէչճէնեան իր դասերով կ՚ազնուացնէ մանուկին ու պատանիին հոգին, կը նրբացնէ անոնց ճաշակը, թռիչք կու տայ անոնց երեւակայութեան: Աւելին ըլլալով, ան չի սահմանափակուիր իր նիւթին մէջ, ուր որ օգնութեան կարիքը կայ, Ռաֆֆի Չէչճէնեան անսակարկ նուիրումով հոն է: Ջերմօրէն կը շնորհաւորենք զինք:

Շաբաթ, 9 Ապրիլ 1988, երեկոյեան ժամը 7-ին, վարժարանին հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ համերգ եւ վկայականներու բաշխում, նախագահութեամբ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեանի: Ներկայ էին մասնաւորաբար թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, բացի Տնօրէնէն՝ նաեւ փոխ Տնօրէն Պր. Յակոբ Համբիկեանը, Քաղաքական Ժողովի Ատենադպիր եւ վարժարանին Հոգաբարձութեան անդամ ընկեր եւ ընկերուհի Նորայր Տէօվլէթեան, Հ.Բ.Ը.Մ.ի Շրջանակային Յանձնաժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան, Թեմական Ժողովի փոխ Ատենապետ Տէր եւ Տիկին Զաւէն Պալաեան:

Եգիպտական քայլերգին եւ վարժարանին մաղթերգին յոտնկայս ունկնդրութենէն ետք երգչախումբին կատարումով, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, վարժարանին բարձրագոյն կարգի աշակերտուհիներէն Նորա Գոլոյեանի հանդիսավարութեամբ, սկսաւ յայտագրին գործադրութիւնը:

Նախ երգչախումբը ելոյթ ունեցաւ երգով մը, որուն յաջորդեց մանկապարտէզի փոքրիկներուն հայկական հիանալի պարը: Ռաֆֆի Հելինեանի եւ Քրիստին Աւագեանի արտասանութիւններէն ետք, շրջանաւարտներուն կողմէ անկեղծ ուղերձ մը կարդաց Մուրատ Յարութիւնեանը, որմէ ետք, տեղի ունեցաւ

վկայականներու եւ մրցանակներու բաշխումը, եւ յայտագրին առաջին մասը աւարտեցաւ Տնօրէն Պր. Նշան Վարդեանի յուզիչ Հունկ Բանքով:

Բարձրագոյն կարգի շրջանաւարտները 1986-1987 տարեշրջանինն էին, տրուած ըլլալով, որ պետական քննութիւններուն արդիւնքը կը հրապարակուի միայն Օգոստոսին, ուրեմն շրջանաւարտները իրենց վկայականները կը ստանան յաջորդ տարին: Անոնք էին՝ Մուրատ Յարութիւնեան, Արմէն Պալթայեան, Մարլէն Աւագեան եւ Անի Գրիգորեան: Իսկ մանկապարտէզի 1988 տարեշրջանի շրջանաւարտներն էին՝ Նայիրի Հեղինեան, Թինա Նալպանտեան, Ժագ Աւագեան, Ռոպէր Էմիլեան, Վաչէ Արթինեան, Մարի Գասապեան, Էտնա Թրայեան եւ Թալին Բերշոշեան:

Դադարէ մը ետք, որուն ընթացքին ներկաները հիւրասիրուեցան քաղցրաւենիներով եւ զովացուցիչներով, սկսաւ յայտագրին երկրորդ մասը: Այսպէս, Ա. Բ. Գ. դասարաններուն աշակերտներուն երգչախումբը, միշտ ղեկավարութեամբ եւ դաշնակի ընկերակցութեամբ, նաեւ աշակերտ Լեւոն Տէր Յակոբեանի դհոլի ընկերակցութեամբ, երգեց հինգ երգ, մենակատարութեամբ փոքրիկներ Գէորգ Գազազեանի եւ Ռոպէր Միլատի: Ապա, Դ. Ե. Զ. Է. դասարաններու աշակերտներուն երգչախումբը կատարեց նոյնպէս հինգ երգ, որոնցմէ միոյն սրինգով ընկերակցեցաւ բարձրագոյն կարգի աշակերտուհիներէն Կարինէ Տէօվլէթեանը: Այս բաժնին մէջ մենակատարներն էին Էտուար Միլատ եւ Հերմին Լութֆի: Երգերու բաժինը աւարտեցաւ զոյգ երգչախումբերուն կատարած երկու երգերով:

Հայկ Սարգիսեանը հիանալի աշխատանք մը կը տանի վարժարանէն ներս, ստեղծելով միատարր ու գիտակից երգչախումբեր, որոնք մշակութային որեւէ հիմնարկի գեղարուեստական յայտագիրներուն զարդը կրնան կազմել: Ան մասնաւորաբար զարկ կու տայ ազգագրական երգերուն, անոնցմէ ընտրելով նոյնիսկ փոքրիկներուն յարմար երգեր: Կը համբուրենք իր հայու պայծառ ճակատը:

Արտասանութիւններով ելոյթ ունեցան յաջորդաբար՝ Արեւիկ Սարգիսեան, Ռուբինա Նալպանտեան, Լորնա Թրայեան, Վիվիան Սէմիզեան, Տիանա Աւագեան, Անի Պարսում, Գէորգ Գազանճեան, Թալին Կապէեան, Մարկրիթ Թահթապրունեան, Նորա Գոլոյեան՝ երկիցս, Սիլվա Կապէեան:

Ելոյթ ունեցաւ նաեւ Տիկին Անահիտ Սարգիսեանի կազմած սրինգի Նանար սքանչելի խումբը՝ Կոմիտասեան յայտագրով մը: Անահիտին կենարար շունչն էր, որ այդ պահուն կը թեւածէր սրահին վրայ: Վարձքդ կատար, Անահիտ:

Ապա, Տնօրէն Պր. Նշան Վարդեան հասարակութեան առջեւ հանեց վարժարանին չորս գերազանց արտասանողները՝ Մարկրիթ Թահթապրունեան, Սիլվա Կապէեան, Նորա Գոլոյեան եւ Թալին Կապէեան, եւ անոնց շնորհեց դրուատական խօսքեր, յուզելով բոլորն ալ: Նախապէս կային նաեւ ուրիշներ, որոնք այսօր շրջանաւարտ են, մօտ ատենէն, այս չորսն ալ պիտի թռին երթան. բայց վստահ

ենք, որ անոնց պիտի յաջորդեն այլ շնորհալի դէմքեր։ Պր. Տնօրէնը իր դրուատանքները շատ իրաւամբ շռայլեց նաեւ Սարգիսեան ամոլին։

Յիշենք նաեւ, որ բեմին յենքը սիրուն զարդարանքով մը պատած էր նկարիչ Ռաֆֆի Չէչճէնեանը։

Այս փառաւոր հանդիսութիւնը աւարտեցաւ Առաջնորդ Սրբազան Հօր փակման խօսքով, երբ արդէն ծաղկեփունջերով մեծարուած էին օրուան նախագահուհի Տիկին Տիանա Սիմոնեանն ու Տիկին Անահիտ Սարգիսեանը։

Ջերմօրէն կը շնորհաւորենք վարժարանին Տնօրէնութիւնը, ուսուցչական կազմը եւ աշակերտութիւնը, ինչպէս նաեւ ծնողները, որոնք բոլորն ալ այդ օր անհուն երջանկութեան պահ մը ապրեցան՝ տեսնելով իրենց կատարած աշխատանքին արգասաբեր պտուղը։

*Արեւ*, 14 Ապրիլ 1988, 72-րդ տարի, թիւ 20878, էջ 1

## ՀԱՅԿԸ ԵՒ ԱՆԱՀԻՏԸ

ԿԱՐԱՊԵՏ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ

Նկարագրով համեստ է Հայկ Պարոյրի Սարգիսեանը։ Բաւարար է մի քանի րոպէ զրուցել իր հետ՝ իսկոյն կարողանալ շօշափելու անոր զուարթ, զգայուն եւ բարի հոգին։

Եւ նման վսեմ արժանիքներով անձի մէջ, բնութիւնն, ինչ-խօսք որ գեղեցկօրէն սերմանած է երաժշտական կայծեր, անոր հոգին օժտած՝ տաղանդի հասնող երաժշտական նուրբ զգացողութեամբ։

Շատոնց, դեռ իր պատանեկութեան շրջանին, հարազատ Գալուստեան Վարժարանէն՝ ապա Կիպրոսի Մելգոնեան Հաստատութենէն ներս, երաժշտութեան մեծ սիրահար էր Հայկ Սարգիսեանը, անով մեծապէս կը զբաղուէր։

Անմոռանալի է ինձ համար, 1972-ին, Նիկոսիոյ մէջ, դաշնամուրի վրայ պատանի Հայկօ-ի առաջին ելոյթը՝ հանրութեան առաջ։ Այդ ժամանակ դեռ դողդոջուն եւ մելամաղձոտ Հայկ Սարգիսեանը, իր ճկուն եւ սլացիկ կատարողութեամբ սքանչելի տպաւորութիւն թողեց բոլորի վրայ։

Յետագային, Հայկը գերազանց որոշում ընդունեց՝ երաժշտական բարձրագոյն ուսումն ստանալ մայր հայրենիքի մէջ։ Իր ընդունակութեան եւ տաղանդի յղկումն ու մշակումը ան բացարձակապէս վստահեցաւ հայրենի հիանալի մասնագէտներուն, ուրկէ եւ շրջանաւարտած երիտասարդ խմբավարը, 1982-ին վերադարձաւ իր բոյնը՝ Գահիրէ։

Եւ Հայկը վերադարձաւ... զոյգ, իր հետ բերելով նոյնպէս շնորհալի եւ համեստ

հայուհի մը, նոյնպէս երաժիշտ Տիկին Անահիտ Սարգիսեանը։

Եւ Գահիրէի մէջ իսկոյն ծնունդ առաւ Կռունկ երգչախումբը։ Նախ դեռատի, ապա աստիճանաբար վարպետութիւն ձեռք բերած երաժշտական ներդաշնակ այդ խմբակը, Հայկի, Անահիտի առաջնորդութեամբ, հոն բոլորի ժրաջան աշխատանքով եւ յարատեւութեամբ, շուտով մեծ ժողովրդականութիւն վայելեց Եգիպտահայ մեր գաղութէն ներս. մտաւ ու թափանցեց դհոլը, սրինգը, հայ երգն ու երաժշտութիւնը՝ նօսրացող մեր գաղութի համայն օճախներէն ներս։

Յաջորդեց եւս նուաճում։ Վերջին շրջանին ամէն շաբաթավերջի արձակուրդին, սեփական միջոցներով եւ հետեւողականօրէն ճանապարհորդելով դէպի Աղեքսանդրիա, Պարոյրի-որդի-Հայկը ամիսներ շարունակ զրկեց իր ազնիւ տիկինն ու սիրասուն զաւակները հայրական հոգատարութենէ եւ գուրգուրանքէ։ Շուտով երեւան եկաւ Հայկի երկրորդ սիրածը՝ Գուսանը, երբ ընդամէնը ինը հարիւր մարդահամարով Աղեքսանդրահայութիւնն ունեցաւ հայ պարման-պարմանուհիներէ բաղկացած քնքոյշ եւ գեղեցիկ երգչախումբ։

Վերջապէս, անցեալ ամիս Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանի փոքրիկներու հանդէսն էր։ Եւ այդ դեռատի փոքրիկներու բազմաթիւ խանդավառ ու ոգեւորող երգերու, նաեւ աշխոյժ եւ եռանդուն պարերու դժուարագոյն ուսուցման եւ յաջող ներկայացման ետին կանգնած էին նոյն-իրենք՝ շնորհալի երաժիշտներ Հայկ եւ Անահիտ Սարգիսեանները։

Վերջին մի քանի տարիներու ընթացքին, Եգիպտահայ գաղութէն ներս տարած այսքան անձնուէր եւ անզուգական աշխատանքի համար, եկէք, յարգելի ընթերցողներ, բոլորս միատեղ ողջունենք Հայկ-Անահիտ Սարգիսեանները, եւ համայն ընտանիքը, անոնց ցանկանք առողջութիւն եւ ստեղծագործական բեղմնաւոր գործունէութիւն։

*Արեւ*, 9 Մայիս 1988, 72-րդ տարի, թիւ 20897, էջ 3

## 1988

Անուշքայի (Անուշքա Չատրճեան) ալպոմը, ուր տեղ գտած է
Հայկ Սարգիսեանի յօրինած երգը։

Ալպոմի վերնագիր՝ *Հապպէթաք*
Պիտակ՝ Էլ-Տաուլէյա, 836930-4
Ձեւաչափ՝ Երիզ (քասէթ)
Ձայնագրութիւն՝ Սոթ Էլ-Հոպպ Սթուտիոներ
Արտադրութիւն՝ Ալ-Աութար Ալ-Ջահապէյա

Երգի վերնագիր՝ *Լամմա հանէպ՚ա էթնէն*
Խօսք՝ Մետհաթ Ալ-Կամմալ
Եղանակ՝ Հայկ Սարգիսեան
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

ՄԻՋՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ՁԵՌՆԱՐԿ

Ելոյթ կ՚ունենայ՝

ԳԱՀԻՐԷԻ Հ. Բ. Ը. Մ.ի ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ՝

« ԿՌՈՒՆԿ »

Ղեկավարութեամբ խմբավար՝

ՏԻԱՐ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

Նախագահութեամբ

ԳԵՐՇ. Տ. ՍՈՒԿԻԱՍ Ս. ԵՊՍ. ԳԱԼՖԱՔԵԱՆի

Առաջնորդ Դամասկոսի Թեմի

Տեղի կ՚ունենայ Հինգշաբթի 19 Յունուար 1989 երեկոյեան ժամը 8:30-ին՝ 8 Մարտ սրահին մէջ։

Ելոյթի հասոյթը կը յատկացուի Մայր Հայրենիքի երկրաշարժի աղէտեալներուն։

Ծանօթ. — Կը խնդրուի ժամադրութիւնը յարգել։

Ձեռնարկին հրաւիրատոմսը

ՀԲԸՄ-ի ՍՐԱՀ, ՀԱԼԷՊ

ՇԱԲԱԹ, 21 ՅՈՒՆՈՒԱՐ 1989
ԿԻՐԱԿԻ, 22 ՅՈՒՆՈՒԱՐ 1989
ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ, 23 ՅՈՒՆՈՒԱՐ 1989

ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ

Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԿՈՒԻՍԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ 21-22 ՅՈՒՆՈՒԱՐ 1989,
ՇԱԲԱԹ ԵՒ ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅԵԱՆ ՅԱՅՏԱԳԻՐԸ- ՀԱԼԷՊ, ՀԲԸՄ.ի ՍՐԱՀԸ

------------

## Ա. ՄԱՍ

| | | |
|---|---|---|
| 1- Ով Հայոց Աշխարհ | | Երաժշ. Մակար Եկմալեան |
| 2- Տէր կեցո | Մենկտ.Յասմիկ Տիշչէքէնեան | Մշկբ. ,, ,, |
| 3- Քրիստոս ի մէջ | | Կոմիտաս |
| 4- Սուրբ, Սուրբ | | Մակար Եկմալեան |
| 5- Իմ Օրօրան | Մենկտ. Հարի Չէչճէնեան | Գուսան Աշոտ |
| 6- Մէրս Գաղտնի քող մնայ | | Երաժշ. Վլատիմիր Պալեան |
| | մենկտ. Քրիստին Զատրեան | Մշկբ. Հայկ Սարգիսեան |
| 7- Եգիպտական ժողովրդական երգ | | Երաժշ. Սայիտ Տարուիշ |
| 8- Ալագեազ եւ Խնկի ծառ | | Մշկբ. Գրիգոր Սիւնի |
| 9- Իմ Եղէգ | | Երաժշ. Խաչ.Աւետիսեան |
| | Մենկտ. Անուշքա Զատրեան | Մշակբ. Հայկ Սարգիսեան |
| 10- Սոնա Եար | ,, Բալին Կապէեան | Կոմիտաս |
| 11- Քելէ Լաօ | ,, Սիլվա Բերզիպաշեան | Ազգագրական երգ |
| 12- Հատուածներ Անոյշ Օպերայէն | | Երաժշտ.Արմէն Տիգրանեան |
| ա. Ամպի Տակից | մենկտ. | |
| բ. Այս իմ բախտը | ,, Յասմիկ Տիշչէքէնեան | |
| գ. Այս անոյշ, անոյշ | ,, Յակոբ Բիւթիւնճեան | |
| դ. Համբարձում Եայլա | | |

## Բ. ՄԱՍ

| | | |
|---|---|---|
| 1- Իրիկնային | | Երժշտ. Խաչ. Աւետիսեան |
| 2- Կուշ, կուշ | | ,, Գրիգոր Սիւնի |
| 3- Հաւուն--Հաւուն | Միջնադարեան Տաղ<br>մենկտ. Անուշքա Զատրեան | Գր. Նարեկացի |
| 4- Կողքա Եայլի | | Մշկբ. Ա.Տէր Ղեւոնդեան |
| 5- Օճախում | մենկտ. Քրիստին Զատրեան | Գուսան Աշոտ |
| 6- Քամանչա | ,, Հարի Չեչճէնեան | Սայաթ Նովա |
| 7- Ծաղկած Բալենի | ,, Անուշքա Զատրեան | Երժշտ.Խաչ. Աւետիսեան<br>Մշկբ. Հայկ Սարգիսեան |
| 8- Ատանայի Ողբը | ,, Սիլվա Բերզիպաշեան | |
| 9- Աղջի Հոռոմ | ,, Ալիս Սիմոնեան | Ազգագրական Երգ |
| 10- Դու ինչպէս մի պատղ | | Երժշտ Ռ. Ամիրյանեան |
| 11- Քեզ հետ իմ սէր Զուգ. | Անուշքա Զատրեան և<br>Քրիստին Զատրեան | ,, Ռ. Էմիրխանեան<br>Մշկբ.. Հայկ Սարգիսեան |
| 12_ Ղարաբաղի Եղնիկ | մենկտ. Յասմիկ Տիշչէքէնեան | Երաժշ.Ալբերտ Հեքիմեան<br>Մշկբ. Հայկ Սարգիսեան |
| 13_ Հիմի՞ էլ Լռենք | | |

Խմբավար՝ Հայկ Սարգիսեան
Դաշնամուր՝ Կասիա Ճղալեան-Տէօվլէթեան
Սրինգ՝ Անահիտ Սարգիսեան-Ճեպէճեան
Դհոլ՝ Ռուբէն Բերզիպաշեան

# Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՅԱՋՈՂ ՀԱՄԵՐԳՆԵՐԸ ՀԱԼԷՊԻ ՄԷՋ

ՎԱՐԴԱՆ ՍՎԱՃԵԱՆ

Ուրբաթ, 20 Յունուարին Հալէպ կը ժամանէր Գահիրէի Կռունկ Երգչախումբը: Պանդոկին առջեւ խումբը կը դիմաւորէր քաղաքիս ՀԲԸՄ-ի ՀԵԸ-ի պատասխանատու վարչականներէ եւ երիտասարդներէ կազմուած հիւրամեծար հալէպցիներու խումբի մը կողմէ:

Փոխադարձ ծանօթացումէն ետք, հիւրերուն կը տրուի իրենց յայտագիր-ժամանակացոյցը: Նոյն գիշեր ՀԵԸ-ի ակումբի սրահին մէջ ի պատիւ անոնց կը տրուի ընթրիք մը: Յաջորդ օրը, Շաբաթ, 21 Յունուարին խումբը կ'ունենայ իր առաջին ելոյթը ՀԲԸՄ-ի սրահին մէջ:

Հայաստանի աղիտալի երկրաշարժէն ետք առաջին գեղարուեստական ձեռնարկն էր այս: Խումբին մասին լսած ու կարդացած էինք նախապէս: Մեզի հետ ձեռնարկին ներկայ եղող հարիւրաւոր երաժշտասէրները դէմ յանդիման գտնուեցան սիրողի մակարդակէն շատ աւելի բարձր՝ գրեթէ արհեստավարժի մակարդակին հասած փոքրաթիւ, սակայն եւ այնպէս իսկապէս որակաւոր խումբի մը ելոյթներուն: Խմբավարն է երիտասարդ արուեստագէտ, Երեւանի Կոմիտասի Անուան Երաժշտանոցէն շրջանաւարտ, Պարոն Հայկ Սարգիսեան, որ հազիւ 25 հոգինոց այս փոքրաթիւ խումբով՝ երգերու բծախնդիր ընտրութեամբ, դաշնակի, սրինգի եւ դհոլի ընկերակցութեամբ կրցաւ հմայել բոլոր ունկնդիրները, իր տուած յաջորդական երեք ելոյթներով:

Կռունկի ելոյթները երգարուեստի իսկական երեւոյթներ էին հալէպահայութեան համար: Երեւոյթ՝ ան առումով, որ երիտասարդ խմբավարը եկաւ ապացուցելու, թէ երգչախումբի մը կազմութեան մէջ էականը ոչ թէ երգողներուն քանակն է, այլ որակը: Իսկ կատարողական գետնի վրայ ոչ թէ բարձրագոչ երգեցողութիւնը, այլ ձայնային առումով մեղմութիւնը եւ երանգաւորումը:

Խմբավարն ու իր երգիչ-երգչուհիները զիրար լաւ ճանչցած են: Եւ, այդ իսկ պատճառաւ կրցած են յաղթահարել ու հասնիլ կատարողական վարպետութեան: Այս հաստատումները կ'ընենք, նկատի ունենալով ընտրուած երգացանկի բարդութիւնը: Բայց հակառակ անոր՝ խումբին առաւելութիւնը կը կայանայ գեղարուեստական բարձր ճաշակի եւ ապրումով ու ըմբռնումով կատարումին մէջ:

Խումբը օժտուած էր որակաւոր մեներգողներով, որոնց վրայ խմբավարին տարած աշխատանքը ակներեւ էր ու յայտնի: Իրենց հերթին մենակատարները շնորհիւ իրենց երգիչի զգացականութեան, լաւագոյնս ներկայացուցին իրենց բաժինները՝ արդարօրէն արժանանալով ունկնդիրներու ջերմ ու երկարատեւ ծափահարութեանց եւ յաճախակի լսուող «Պիսերուն»: Խմբավարը, ինչպէս վերը

ըսինք, կրցած էր իր խումբին ձայներուն յարմար ու ժողովուրդին սիրտին խօսող կտորներ ընտրել, նաեւ իր շնորհին ու դրոշմը դնել մշակելով երգեր՝ ինչպէս, Խ. Աւետիսեանի *Ծաղկած բալենին*, *Իմ եղէգը*, եւ Ռ. Ամիրխանեանի *Քեզ հետ իմ սէրը*։ Աւելցնենք, որ Անուշքա եւ Քրիսթին Չատըրճեան քոյրերը խիստ յաջող կերպով մեկնաբանեցին այս վերջին երգը սքանչելի զուգերգով մը, որ խոր տպաւորութիւն ձգեց բոլոր ունկնդիրներուն մէջ։ Եւ տակաւին միջնադարեան *Հաւուն հաւուն* շարականը, *Սուրբ սուրբը*, *Քելէ լաօ*ն եւ այլ կտորներ, որոնք բոլորն ալ խորապէս ազդեցին ներկաներուն վրայ։

Բնական է, որ արուեստի մէջ, նոյնիսկ տասնամեակներու փորձառութիւն ու վաստակ ունեցող արհեստավարժ խումբեր, հեռու կը մնան կատարելութենէ։

Հետեւաբար մեր խումբն ալ նմանապէս, ունէր իր խոցելի կէտերը։ Այս նշումը սակայն որ կ'ընենք, յանուն ճշմարտութեան, ոչինչ կը պակսեցնէ երգչախումբին կատարողական վարպետութենէն։ Կը կրկնենք վերեւ ըրած մեր հաստատումը։ Հայկ Սարգիսեան լրիւ յաջողութեան հասած է այս խումբով։ Կը մնայ մաղթել, որ անոնք անխափան շարունակեն իրենց ուղին, ծառայելով մեր երաժշտութեան։ Ապրիք երիտասարդներ։

Գահիրէի ՀԲԸ Միութեան Կոունկ երգչախումբին այս այցելութիւնը, կը մտնէ Բարեգործականի Արեւելեան Միջերկրականի Երիտասարդական Յանձնախումբի նախատեսած միջ-մասնաճիւղային հանդիպումները աշխուժացնելու ծրագրի ծիրէն ներս։ Հալէպի ՀԲԸՄ-ի Տեղական Մասնաժողովն ու ՀԵԸ Գործադիր Մարմինը ձեռք-ձեռքի տալով յաջողցուցին այս ձեռնարկը։ Խումբին ի պատիւ շքեղ ճաշկերոյթ մըն ալ տրուեցաւ Նետի Ուրուպէի սրահին մէջ, ուր յաջորդաբար խօսք առին Բժ. Թորոս Թորանեան եւ Յակոբ Միքայէլեան։

Կիրակի, 22 Յունուար կէսօրէ ետք քաղաքիս ԹՄ. Միութիւնը թէյասեղան մը սարքեց ի պատիւ Կռունկին եւ անոր պատասխանատուներուն։ ԹՄՄ-ի կողմէ բարի գալուստ մաղթեց Տք. Գրիգոր Ատանալեան, իսկ հիւրերուն կողմէ խօսք առաւ Տիար Նորայր Տէօվլէթեան։

ՀԵԸական երիտասարդներու առաջնորդութեամբ եգիպտահայերը այցելեցին քաղաքիս պատմական բերդը, Փակ Շուկան, ԼՆԳԿ վարժարանը եւ այլ տեսարժան վայրեր։

Երկուշաբթի 23 Յունուարի գիշերը ակումբիս սրահին մէջ կազմակերպուեցաւ ողջերթի հաւաքոյթ մը։ Յաջորդ կէսօրին երգչախումբը հրաժեշտ առաւ հալէպցիներէն ու Դամասկոս-Ամմանի ճամբով վարադարձաւ Գահիրէ։

Հալէպ, 27 Յունուար 1989

*Արեւ*, 14 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21116, էջ 3

# Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՅԱՋՈՂ ՀԱՄԵՐԳՆԵՐԸ ՀԱԼԷՊԻ ՄԷՋ

ԹՈՐՈՍ ԹՈՐԱՆԵԱՆ

Երգչախումբը կու գար Եգիպտոսէն։ Մաս կազմողները Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Բարեգործականի տղաքն էին, իսկ խմբավարը՝ Հ. Սարգիսեան, յայտնօրէն երիտասարդ, եռանդուն, նուիրեալ ուժ մը, որ շրջանաւարտներէն է Երեւանի Կոմիտասի անունը կրող երաժշտանոցէն։

Կռունկ՝ այս էր անունը երգչախումբին։

Ո՛վ չի գիտեր որ նօսրացած է եգիպտահայ գաղութը։ Շնորհիւ Բարեգործականի թափած ճիգերուն, շնորհիւ մանաւանդ Հայկ Սարգիսեանի նուիրումին, իր Կռունկով իսկապէս բարի լուրեր բերաւ մեզի, հայ երգը բերաւ հալեպահայութեան եւ ունեցաւ երեք յաղթական ելոյթ։

Ինչպէս հոն, Եգիպտոսի մէջ, խումբին կազմակերպիչը Բարեգործականն էր, նոյնպէս հոս, Հալէպի մէջ, յաջորդական երեք ելոյթները, որոնց ունկնդիրները եղան շուրջ երկու հազար հոգի, դարձեալ Բարեգործականի Տեղական Մասնաժողովն էր, օժանդակութեամբը Հայ Երիտասարդաց Ընկերակցութեան, որոնք չորս օր ամբողջ, եղբայրական հիւրասիրութեան մը վայել ամէն ճիգ անթերիօրէն կատարեցին։

Կռունկի տղաքը իրենց տան մէջ էին, յիշեցնելով մեզի Էմինի բանաստեղծութիւնը. «Ես էնպէս եմ ելնում իմ տնից, կարծես թէ մտնում եմ իմ տունը»։

Ամբողջ չորս օր Կռունկի տղաքը շրջապատուած էին ջերմութեամբ. եւ ահա իրենք եւս, իրենց կարգին, ջերմացուցին հալեպահայ ունկնդիրներուն սիրտերը հայ երգի ջերմութեամբ։

Ահա բեմին վրա՛ է իսկայ, սպիտակ Կռունկ մը։ Մարդուն բացագանչելը կու գայ. «Կռունկ, ուստի՞ կու գաս»։ Այս կռունկները կու գան Նեղոսի ափերէն. երկիր, ուր կեանքի կոչուեցաւ Հ.Բ.Ը.Միութիւնը 1906 թուականին։

Հայաստանի երկրաշարժը այնքան ահաւոր էր, որ կարծես պիտի խլէր մեզմէ ամէն հարստութիւն, ե՛ւ երգ, ե՛ւ բանաստեղծութիւն։ Բայց հայը երբեք պիտի չվերածուի եղերամայրերու խումբի։

Լսեցէք Երեւանի ձայնասփիւռը։ Կարդացէք մեր նոր բանաստեղծութիւնները, նայեցէք աչուկներուն փլատակներու մէջ իսկ ծնող մեր երեխաներուն, որոնք յստակօրէն կ'ըսեն. «Մենք կա՛նք, պիտի լինե՛նք»։

Ու լսեցէք, ականջ դրէք սփիւռքի սիրտին, որ կ'երգէ ու պիտի երգէ աչքը յառած Արարատի սէգ կատարին։ Ու լսեցէք եգիպտահայ Կռունկ երգչախումբը, որ կ'երգէ յանուն երկրաշարժէն տառապողներուն, այսինքն յանուն կեանքի, վերաշինութեան, վերածաղկումի։ *Ով հայոց աշխարհ*ը Եկմալեանի կը հնչէ ուժգին։ Ապա՝ *Տէր, կեցո*ն, Յասմիկ Տիշչէքէնեանի մենակատարութեամբ։ *Սուրբ-*

*սուրբ*ը կը լսենք երկիւղածութեամբ։ Սրահը ջերմեռանդ նայուածքներով, հազար աչքով ու հազար լսելիքով կը հետեւի բեմին, կը հետեւի Հայկ Սարգիսեանի ճարտար շարժումներուն։

Կը մեներգէ Հ. Չէչճէնեանը *Իմ օրօրան*։ Կը մեներգէ Քրիստին Չատըրճեանը *Մէրս զաղտնի թող մնայ*ն, միշտ երգչախումբին հետ, կատարեալ ներդաշնակութեամբ։ Ապա կը հնչէ արաբական ժողովրդական երգ մը, երաժշտութիւն՝ Սայիտ Տարուիշի։

Կը լսենք *Ալագեազ*ն ու *Խնկի ծառ*ը, իսկ *Իմ եղէգ*ը կը լսենք Անուշքա Չատըրճեանի մենակատարութեամբ։ *Սոնա եար*ն է ապա, մենակատար Թալին Կապէեան, իսկ Սիլվա Թերզիպաշեանի *Քելէ, լաօ*ն կը մագնիսացնէ ամբողջ սրահը։ Այնքան քնքուշ, այնքան մեղմ, այնքան խորունկէն եկող ձայնով մը կ'երգէ Սիլվան, որ ամբողջ սրահը կը բռնկի ծափահարութիւններու բոցով։ Ելոյթին երկրորդ մասին մէջ Սիլվան, նոյն ջերմութեամբ, նոյն մեղմութեամբ, նոյնքան ապրումով պիտի երգէր *Ատանայի ողբը*, կրկին արժանանալով որոտընդոստ ծափերու։

Անուշքա եւ Քրիստին Չատըրճեան քոյրեր պիտի մագնիսացնէին սրահը, Ալիս Սիմոնեանը *Աղջի հոռոմ*ի եւ Յակոբ Թիւթիւնճեանը *Անոյշ*ի մէկ արիայով դարձեալ սրահը պիտի պահէին բեմին գամուած։

Փոքր խումբ մը, ընդամէնը 24 հոգիէ բաղկացած, որ կը բերէր հայ երգի մակընթացութիւն։ Խմբավար՝ Հայկ Սարգիսեան այնքան ջանասէր է, այնքան նուիրուած ու գիտակ իր գործին, որ կրնայ մեծագոյն խումբեր ղեկավարել։

Հապա դաշնակահա՛րը, Կասիա Տէօվլէթեան-Ճղալեան, կարծէք Կասիան ու դաշնամուրը երկուորեակներ ըլլային։

Նորութիւն էր Անահիտ Ճեպեճեան-Սարգիսեան սրինգը։ Պեշկէօթիւրեանի *Եկ իմ սրինգ*ը յիշեցնող։ Նազելի կեցուածք եւ անտառի խորերէն կամ լեռան մը կողէն, կամ խոր ձորերէ եկող սրինգի ձայն։ Ի՞նք էր շիկացած, թէ՞ սրինգը Անահիտին շրթներուն վրայ։ Պարզապէս հոյակապ էր։

Դհոլ մըն ալ կ'ընկերանար երգչախումբին։ Կարծէք հայ գիւղին ձայնն էր երգչախումբին միացողը, աշխատաւոր գիւղին, վար ու ցան ընող, այգի էտող, խնձոր քաղող, հեքիաթ պատմող եւ պարել գիտցող հայ գիւղին։

Ի դէպ, Սիլվա եւ Ռուբէն Թերզիպաշեանները Գահիրէէն մինչեւ Հալէպ, իրենց հետ բերած էին իրենց առջինեկ զաւակը՝ վեցամսեայ Գեղամիկը։ Հայ երգի համար ի՜նչ նուիրում։ Անշուշտ թէ Գեղամիկը գիրկէ գիրկ անցաւ ու միշտ խնդաց, ըսելու համար, յուշելու համար, որ հայը պիտի շարունակէ ապրիլ ու երգել։

*Երեւան-Էրեբունի*, *Հիմի էլ լռենք*, այս երգերով վերջացան Կոունկի երեք համերգները, ուրախութեան արցունքներ խլելով պայթելու աստիճան լեցուած սրահէն։ Սրա՞հն էր բեմի վրայ, թէ՞ բեմը սրահ էր իջած։ Բեմ ու սրահ միացած էին։

Հալեպահայութիւնը քիչ անգամ երգով այսքան զինովցած էր։ Բայց ինչպէս չզինովնալ երբ գինիին փարչը Կռունկն էր, իսկ մատռուակողը՝ Հայկ Սարգիսեանը։

Օրուան բեմավարը Մեսրոպ Մաշտոցի ոսկեայ շքանշանով պատուեց խմբավարը։

*Արեւ*, 29 Մարտ 1989, 73-րդ տարի, թիւ 21151, էջ 2

## ՖԻԼԱՏԵԼՖԻԱ ՍԻՆԵՄԱՍՐԱՀ, ԱՄՄԱՆ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 26 ՅՈՒՆՈՒԱՐ 1989

## ՅՈՐԴԱՆԱՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻ ՀԱՄԱԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՁԵՌՆԱՐԿ

ՅՈՐԴԱՆԱՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻ ՀԱՄԱԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՁԵՌՆԱՐԿ

Հովանաւորութեամբ ԳԵՐԱՇ. Տ. ՎԱՀԱՆ ԵՊՍ. ԹՕՓԱԼԵԱՆԻ
Ելոյթ կ'ունենայ ԳԱՀԻՐԷԻ Հ.Բ.Ը.Մ.ի ԿՈՌԻՆԿ ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ
Խմբավարութեամբ Տ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ
ՀԻՆԳՇԱԲԹԻ, 26 ՅՈՒՆՈՒԱՐ 1988 ԱՄՄԱՆ – ՅՈՐԴԱՆԱՆ

## ՅԱՅՏԱԳԻՐ

### Ա. ՄԱՍ

| | | | |
|---|---|---|---|
| 1- Ով Հայոց Աշխարհ | | Երաժշ. | Մակար Եկմալեան |
| 2- Տէր Կեցո | Մենկտ. Յասմիկ Տիշչէքէնեան | Մշկմ. | Մակար Եկմալեան |
| 3- Քրիստոս ի մէջ | | | Կոմիտաս |
| 4- Սուրբ, Սուրբ | | | Մակար Եկմալեան |
| 5- Իմ Օրօրան | Մենկտ. Հարի Չէչճէնեան | | Գուսան Աշոտ |
| 6- Սէրս Գաղտնի Թող Մնայ | | Երաժշ. | Վլատիմիր Պալեան |
| | Մենկտ. Քրիստին Զատըրճեան | Մշկմ. | Հայկ Սարգիսեան |
| 7- Եգիպտական Ժողովրդական Երգ | | Երաժշ. | Սայիտ Տարուիշ |
| 8- Ալագեազ եւ Խնկի Ծառ | | Մշկմ. | Գրիգոր Սիւնի |
| 9- Իմ Եղէգ | | Երաժշ. | Խաչ. Աւետիսեան |
| | Մենկտ. Անուշքա Զատըրճեան | Մշկմ. | Հայկ Սարգիսեան |
| 10- Սոնա Եար | Մենկտ. Թալին Կապէեան | | Կոմիտաս |
| 11- Քելէ Լաօ | Մենկտ. Սիլվա Թերզիպաշեան | | Ազգագրական երգ |
| 12- Հատուածներ Անոյշ Օպերայէն | | Երաժշ. | Արմէն Տիգրանեան |

ա. Ամպի Տակից
բ. Ախ իմ բախտը Մենակատարներ- Յասմիկ Տիշչէքէնեան
գ. Ախ Անոյշ, Անոյշ Եւ Յակոբ Թիւթիւնճեան
դ. Համբարձում Եայլա

### Բ. ՄԱՍ

| | | | |
|---|---|---|---|
| 1- Իրիկնային | | Երաժշ. | Խաչ. Աւետիսեան |
| 2- Վուշ, Վուշ | | Երաժշ. | Գրիգոր Սիւնի |
| 3- Հաւուն - Հաւուն | Միջնադարեան Տաղ | | Գրիգոր Նարեկացի |
| | Մենկտ. Անուշքա Զատըրճեան | | |
| 4- Կողքա Եայլի | | Մշկմ. | Ա.Տէր Ղեւոնդեան |
| 5- Օճախում | Մենկտ. Քրիստին Զատըրճեան | | Գուսան Աշոտ |
| 6- Քամանչա | Մենկտ. Հարի Չէչճէնեան | | Սայաթ Նովա |
| 7- Ծաղկած Բալենի | Մենկտ. Անուշքա Զատըրճեան | Երաժշ. | Խաչ. Աւետիսեան |
| | | Մշկմ. | Հայկ Սարգիսեան |
| 8- Ատանայի Ողբը | Մենկտ. Սիլվա Թերզիպաշեան | | |
| 9- Աղջի Հոռոմ | Մենկտ. Ալիս Սիմոնեան | | Ազգագրական երգ |
| 10- Դու ինչպէս մի աստղ | | Երաժշ. | Ռ. Ամիրխանեան |
| 11- Քեզ հետ իմ սէր | Զուգ. Անուշքա Զատըրճեան | Երաժշ. | Ռ. Ամիրխանեան |
| | Քրիստին Զատըրճեան | Մշկմ. | Հայկ Սարգիսեան |
| 12- Ղարաբաղի Եղնիկ | Մենկտ. Յասմիկ Տիշչէքէնեան | Երաժշ. | Ալէքսէյ Հեքիմեան |
| | | Մշկմ. | Հայկ Սարգիսեան |
| 13- Հիմի՞ էլ Լռենք | Խմբավար------ Հայկ Սարգիսեան | | |
| | Դաշնամուր--- Կասիա Ճղալեան-Տէօվլէթեան | | |
| | Սրինգ-------- Անահիտ Սարգիսեան-Ճեպէճեան | | |
| | Դհոլ--------- Ռուբէն Թերզիպաշեան | | |

-----------------

# Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՅԱՋՈՂ ՀԱՄԵՐԳԸ ԱՄՄԱՆԻ ՄԷՋ

ՆԵՐՍԷՍ ՆԵՐՍԷՍԵԱՆ

Յորդանանահայ գաղութը անմոռանալի երեկոյ մը վայելեց Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբին ելոյթով, որ տեղի ունեցաւ Հինգշաբթի, 26 Յունուար 1989-ին։

Վերջին քառորդ դարը նկատի ունենալով, իրաւացի է որ ձեռնարկը կը կրէր աննախընթաց բնոյթ եւ անվիճելի մակարդակ։

Ձեռնարկը որ կը վայելէր գաղութիս առաջնորդ Գերաշն. Տ. Վահան Եպիս. Թօփալեանի հովանաւորութիւնն ու նախագահութիւնը, կազմակերպուած էր հայրենիքի երկրաշարժէն վերապրող մեր հարազատներուն համար, յորդանանահայ գաղութին մէջ կազմուած հանգանակիչ յանձնախումբին կողմէ, նախաձեռնութեամբ Ամմանի Ազգային Մարզական Միութեան։

Ձեռնարկը գաղութիս համար բացառիկ նկատուեցաւ եւս անոր համար, որ հայրենիքի երկրաշարժին զոհուած մեր եղբայրներուն ի յարգանք, 40 օրուայ սուգի եւ անգործունեայ շրջանէն ետք, շատ պատշաճ երեկոյով մը նոր էջ բացուեցաւ մեր գաղութային եւ միութենական ընթացիկ գործունէութեան մէջ։

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի քառաձայն Կռունկ Երգչախումբի երգահանդէսը տեղի ունեցաւ Ամմանի արդիական Ֆիլատելֆիա թատերասրահին մէջ, աւելի քան 500 արուեստասէր հանդիսատեսներու ներկայութեան։ 27 անձերէ բաղկացած երգչախումբը եւ նուագախումբը, խմբավար Հայկ Սարգիսեանի ղեկավարութեամբ ամբողջ երկու ժամուայ տեւողութեամբ ելոյթով, կեանքի բերին Կոմիտասն ու Սայաթ Նովան, Մակար Եկմալեանն ու Արմէն Տիգրանեանը։

Երգչախումբն ու իր խմբավարը, իրենց բեմային հարուստ փորձառութեամբ ու իրենց իւրացուցած բեմային անվրէպ կարգապահութեամբ, գրաւեցին բոլոր ներկաներուն ուշադրութիւնն ու զմայլանքը։ Անկասկած, որ բոլոր հանդիսատեսներու լսողութեան եւ յիշողութեան մէջ երկար տարիներ պիտի հնչեն ու արձագանգեն Յասմիկ Տիշչէքէնեանի, Հարի Չէչճէնեանի, Քրիստին Չատըրճեանի, Թալին Կապէեանի, Սիլվա Թէրզիպաշեանի, Յակոբ Թիթիւնճեանի, ու Ալիս Սիմոնեանի դիւթող ու հրապուրող ձայները, որոնք բոլորն ալ անխտիր արժեւորեցին հայ երգն ու երաժշտութիւնը, հայ բանաստեղծն ու երաժիշտը։

Երգահանդէսը իր կատարելութեան հասնելուն մեծապէս նպաստեցին դաշնակով՝ Տիկին Կասիա Ճղալեանը, սրինգով՝ Տիկին Անահիտ Սարգիսեանը եւ դհոլով՝ Պր. Ռուբէն Թէրզիպաշեանը, որոնք արժանացան հանդիսատեսներուն բարձր գնահատանքին եւ բուռն ծափահարութեան։

Երեկոն կազմակերպող յորդանանահայ գաղութի բոլոր կազմակերպու-

թեանց եւ ի մասնաւորի Ազգային Մարզական Միութեան կողմէ, անչափ երախտագիտական արտայայտութիւններ կը փոխանցենք Հ.Բ.Ը.Մ.ին որ նման ձեռնարկներով, սփիւռքի տարբեր տարածքներուն վրայ, ազգային եւ հոգեկան կամուրջներ կը ստեղծէ հայկական գաղութներու միջեւ:

Փառք Հ.Բ.Ը.Մ.-ին, պատիւ Հ.Բ.Ը.Մ.-ի հայրենանուէր եւ ազգանուէր գործունէութեան:

Ամման, 3 Փետրուար 1989

*Արեւ*, 16 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21118, էջ 3

## ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՍՈՒՐԻՈՅ ԵՒ ՅՈՐԴԱՆԱՆԻ ԵԼՈՅԹՆԵՐԷՆ 17-26 ՅՈՒՆՈՒԱՐ 1989

ԱՐԱՔՍԻ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

Սուզ էր, մթութիւն:

Ու քար լռութիւն

Եւ յանկարծ լոյսերու մէջ կանչն էր Հայորդիներուն:

«Ով հայոց աշխարհ» -

Ապա, աղերսն էր ուղղուած Աստուծոյ

«Տէր կեցո դու զհայս» եւ երգերու մէջ պատմութիւնն էր հայոց աշխարհի, Քրիստոսի յայտնութենէն մինչեւ Երեւան դարձած իմ Էրէբունին:

Երգն էր այնտեղ:

Երգը մեր օրօրանին, երգը սիրահարուած մատղաշ աղջկան, երգը հայրենի *Ալագեազ*ի, *Խնկի ծառ*ին եւ *Եղէգ*ին:

Կոմիտասն էր այնտեղ իր *Սոնա եար*ով եւ Սփիւռքը իր կորսնցուցած երկրով:

«Քելէ լաօ, քելէ երթանք մըր երկիր»: Ապա սիրահարուած Անուշն ու Սարոն էին իրենց ընկերներով եւ երգ ու ծիծաղով:

«Համբարձում եայլա, եայլա ջան եայլա,

Լաւ օրեր եայլա, եայլա ջան եայլա»:

Ու յետոյ...

Կրկին տաղ եւ երգ: Տաղ միջնադարեան *Հաւուն հաւուն* եւ երգեր գուսանական:

Սայաթ Նովան էր իր *Քեամանչա*յով եւ Գուսան Աշոտը, իր եարը տուն կանչող երգով.

«Դէ արի՛ շորորա, տաղ ասեմ նազելիս,

Օճախս տխուր է, առանց քեզ նազելիս»:

Ժամանակակից երգերն էին Խաչատուր Աւետիսեանի եւ Ռոպէրթ Ամիրխանեանի:

Ողբն էր:

*Ողբ Ատանայի* ու ողբին ընդմէջէն պատգամը,

«Օտարին տունը ալ չի ապահով,

Հայ հողերուն վրայ մեռնինք մենք փառքով»:

Ղարաբաղի եղնիկը տուն կանչող հայորդիներն էին այնտեղ, վճռակամ:

Հայորդիները հպարտ, Երեւան դարձած մեր Էրէբունիի:

Լոյս էր:

Կռունկներ էին եւ ծաղիկներ:

Ծափ էր եւ ծափողջոյն:

Երգն էր թեւածած, երգն էր կլանած, ժողովուրդն ամբողջ:

Յնծութիւն էր:

*Արեւ*, 6 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21109, էջ 3

ԵԳԻՊՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐՈՒ
ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԱՂԷՏԵԱԼՆԵՐՈՒՆ

*Կէօթէ Գերմանական Մշակութային Կեդրոնին մէջ*
*Բացում Հինգշաբթի* 16 *Փետրուար*
1989, *ժամը* 18-*ին*
*Բացումը կը կատարեն Գահիրէի Կառավարիչ*

**Տ.Վ. ԵՈՒՍԷՖ ՍԱՊՐԻ ԱՊՈՒ ԹԱԼԷՊ**

*Եգիպտոսի մէջ Դաշնակցային Գերմանիոյ Դեսպան*

**Ն.Վ. Մ ԷԼՋԵՍԷՐ**

*Ցուցադրութիւնը կը տեւէ Փետրուար* 14–*էն* 24
*ամէն օր ժամը* 11–*էն* 21
*Պիտի ներկայացուի*
*Ցայտագիրներու շարք մը նուիրուած*
*Հայ Մշակոյթին*
*Ուրբաթ* 17 *Փետրուար մինչեւ Հինգշաբթի*
25 *Փետրուար* 1989
*Հետեւեալ կարգով*

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 13 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21115, էջ 4

– Ուրբաթ, 17 Փետրուար 1989

Հայ դասական երաժշտութիւն – Կռունկ Երգչախումբ

– Շաբաթ, 18 Փետրուար 1989

Հայ արուեստի Պատմութիւն (Անգլիերէնով)

– Կիրակի, 19 Փետրուար 1989

Ս. Փարաջանեանի «Նռան Գոյնը» շարժապատկերի ցուցադրութիւն

– Երկուշաբթի, 20 Փետրուար 1989

Լենինականը երկրաշարժէն առաջ եւ վերջ – կը ներկայացնէ Ն. Համբիկեան անգլիերէնով -

– Երեքշաբթի, 21 Փետրուար 1989

Հայոց Պատմութիւն - սահիկներով - (Անգլիերէն)

– Չորեքշաբթի, 22 Փետրուար 1989

Հայ դասական բանաստեղծութիւն

– Հայերէն – Արաբերէն եւ Գերմաներէն լեզուներով զուգընթաց նմոյշներ Հայկական մանրանկարչութենէն սահիկներով

– Հինգշաբթի, 23 Փետրուար 1989

Հայկական ժողովրդական երաժշտութիւն

Կռունկ երգչախումբ եւ Նաիրի նուագախումբ.

Ցուցադրութիւնները կը սկսին երեկոյեան ժամը 18–ին

Սիրալիր հրաւէր բոլորին.

Հասցէ :– Կէօթէ – 5 Ապտէլ Սալամ Արէֆ – նախկին Պուսթան – Գահիրէ

ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

ԱՐԵՒ.– Ուրեմն, կը տեղեկանանք, թէ այս ձեռնարկը կազմակերպողը Գահիրէի Ազգային Իշխանութիւնն է, որ Հայկական թերթերուն հաղորդելու համար լուրը, ապահոված է, որ ամբողջական յայտագիրը ընդհանուր ձեռնարկներուն, կարգադրուի :

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՀԱՅ ԴԱՍԱԿԱՆ ԵՐԳԻ ԵՐԵԿՈՅ

ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Արեւմտագերմանական Կէօթէ մշակութային կեդրոնին մէջ, երէկ, Ուրբաթ, 17 Փետրուար 1989-ին, երեկոյեան ժամը 6.30-ին, տեղի ունեցաւ Հայաստանի երկրաշարժին զոհերուն նուիրուած հայ մշակոյթի շաբաթուան երկրորդ ձեռնարկը։ Ելոյթ ունեցաւ Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբէն տասը հոգինոց խումբ մը, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։

Հակառակ նախորդ օրուան, երբ ցուցասրահը խռնուած էր օտար հոծ բազմութեամբ մը, այս անգամ, իբրեւ նմուշ օտարական մը անգամ չկար. փոքր դահլիճը լեցուած էր հայ հասարակութեամբ միայն, դժբախտաբար։

Յայտագիրը կազմուած էր հայ դասական ութը երգերէ - Մակար Եկմալեանի *Տէր կեցո*ն, *Սուրբ սուրբ*ը եւ *Ով հայոց աշխարհ*ը, Կոմիտասի *Քրիստոս ի մէջ*ը, Գրիգոր Սիւնիի *Վուշ-վուշ*ը, եւ ազգագրական երեք երգ՝ *Ատանայի ողբը*, *Քելէ լաօ* եւ *Կռունկ բարով գնա*։

*Ատանայի ողբ*ին մէջ, մենակատարուհին էր Սիլվա Թերզիպաշեանը, որ նաեւ կատարեց *Քելէ լաօ* մեներգը։ Այս վերջին երգը այլեւս Սիլվա Թերզիպաշեանի մենաշնորհը եղած է, այնքան որ յուզականութեամբ կը մեկնաբանէ զայն։ Իսկ Ռաֆֆի Չէչճէնեան կատարեց *Կռունկ բարով գնա* ազգագրական երգը՝ խոր ապրումով։

Երգերուն դաշնակով կ'ընկերակցէր Կասիա Տէօվլէթեան, իսկ սրինգով՝ Անահիտ Սարգիսեան։

Ամբողջ յայտագիրը տեւեց ընդամէնը քսան վայրկեան, որ սակայն խոր տպաւորութիւն թողուց ներկայ հասարակութեան վրայ։

Եթէ օտարականներ ըլլային դահլիճին մէջ, չենք գիտեր թէ ինչ հակազդեցութիւն պիտի ունենային, սակայն, ներկայ հայ հասարակութեան համար սրտայոյզ յայտագիր մըն էր, որ ընդունուեցաւ սրտառուչ յուզումով։

*Արեւ*, 8 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21120, 1էջ 1

## ԿԼՕԹԷ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 23 ՓԵՏՐՈՒԱՐ 1989

## ՅԱՅՏԱԳԻՐՆԵՐՈՒ ՇԱՐՔ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻՆ

ԵԳԻՊՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐՈՒ
ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԱՂԷՏԵԱԼՆԵՐՈՒՆ

*Կէօթէ Գերմանական Մշակութային Կեդրոնին մէջ*
*Բացում Հինգշաբթի 16 Փետրուար*
1989, *ժամը 18-ին*
*Բացումը կը կատարեն Գահիրէի Կառավարիչ*

**Ն.Վ. ԵՈՒՍԷՖ ՍԱՊՐԻ ԱՊՈՒ ԹԱԼԷՊ**

*Եգիպտոսի մէջ Դաշնակցային Գերմանիոյ Դեսպան*

**Ն.Վ. Մ ԷԼԶԵՍԷՐ**

*Ցուցադրութիւնը կը տեւէ Փետրուար 14-էն 24*
*ամէն օր ժամը 11-էն 21*
*Պիտի ներկայացուի*
*Յայտագիրներու շարք մը նուիրուած*
*Հայ Մշակոյթին*
*Ուրբաթ 17 Փետրուար մինչեւ Հինգշաբթի*
25 *Փետրուար* 1989
*Հետեւեալ կարգով*

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 13 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21115, էջ 4

– Ուրբաթ, 17 Փետրուար 1989

Հայ դասական երաժշտութիւն – Կառնիկ Երգչախումբ

– Շաբաթ, 18 Փետրուար 1989

Հայ արուեստի Պատմութիւն (Անգլիերէնով)

– Կիրակի, 19 Փետրուար 1989

Ս. Փարաճանեանի «Նռան Գոյնը» շարժապատկերի ցուցադրութիւն

– Երկուշաբթի, 20 Փետրուար 1989

Լենինականը երկրաշարժէն առաջ եւ վերջ – կը ներկայացնէ Ն. Համբիկեան անգլիերէնով –

– Երեքշաբթի, 21 Փետրուար 1989

Հայոց Պատմութիւն – սահիկներով – (Անգլիերէն)

– Չորեքշաբթի, 22 Փետրուար 1989

Հայ դասական բանաստեղծութիւն

– Հայերէն – Արաբերէն եւ Գերմաներէն լեզուներով զուգընթաց նմոյշներ հայկական մանրանկարչութենէն սահիկներով

– Հինգշաբթի, 23 Փետրուար 1989

Հայկական ժողովրդական երաժշտութիւն

Կառնիկ երգչախումբ եւ Նանար նուագախումբ.

Յայտագիրները կը սկսին երեկոյեան ժամը 18-ին

Սիրալիր հրաւէր բոլորին

Հասցէ :– Կէօթէ – 5 Ապտէլ Սալամ Արէֆ – նախկին Պուսթան – Գահիրէ

## ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

ԱՐԵՒ.– Ուրեմն, կը անդրադառնանք, թէ այս ձեռնարկը կազմակերպողը Գահիրէի Ազգային Իշխանութիւնն է, որ Հայկական Թերթերուն հաղորդելու համար լուրը, ապահով է, որ ամբողջական յայտագիրը ընդհանուր ձեռնարկներուն, կարգադրուի:

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՀԱՅ ԵՐԳԸ ՀՆՉԵՑ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿԱՄԱՐՆԵՐՈՒՆ ՏԱԿ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Հինգշաբթի, 23 Փետրուար 1989, երեկոյեան ժամը 6.30-ին, Գահիրէի Արեւմտագերմանական Կէօթէ Մշակութային Կեդրոնին մէջ, հնչեցին հայ երաժշտութիւնն ու երգը, շնորհիւ Նանար սրինգի խումբին, ղեկավարութեամբ Անահիտ Սարգիսեանի, եւ Կռունկ երգչախումբին, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։

Հայ արուեստի շաբթուան ձեռնարկներուն, առաջին անգամն էր, որ այսքան հոծ բազմութիւն մը ներկայ կ'ըլլար, չհաշուած անշուշտ ցուցահանդէսին բացման օրը, մանաւանդ ներկայութեամբը հոծ թիւով օտարներու, որոնք դժբախտաբար, առաւելապէս ուշ հասնելով, մէջտեղ մնացած էին, սակայն, երիտասարդները ամէն ճիգ թափեցին եւ բոլորն ալ տեղաւորեցին սրահին մէջ, որ այնքան փոքր էր, տրուած ըլլալով, որ մեծ սրահին մէջ այդ օր սեմինար մը տեղի կ'ունենար։

Նախ ելոյթ ունեցաւ սրինգի Նանար խումբը, երգերով, դհոլի, թմբուկի, եռանկիւնի եւ բամբիռի ընկերակցութեամբ։ Անահիտ Սարգիսեանի նախաձեռնութեամբ կազմուած այս նոր խումբը, պէտք է ըսել, որ օր ըստ օրէ կը յառաջդիմէ, անդամները հետզհետէ ինքնավստահութիւն ձեռք կը բերեն, եւ հայու մեր հոգիները կը հրճուեցնեն, իսկ օտարներուն ալ գնահատանքին կ'արժանանան։ Այս անգամ, Անահիտ Սարգիսեան նորութիւն մըն ալ մտցուցեր էր. զանազան քանակութեամբ ջուր լեցուած շիշերով ալ նուագեցին խումբին անդամները, նոր հնչեղութիւն մը ստեղծելով։

Ապա ելոյթ ունեցաւ Կռունկ երգչախումբէն մաս մը, հայկական ժողովրդական եւ ազգագրական երգերու փունջով մը, խանդավառութիւնը իր գագաթնակէտին հասցնելով սրահին մէջ, եւ ոչ միայն հայերուն մօտ։ Երգերուն մենակատարներու բաժինները կատարեցին Լիւսի Տէր Ներսէսեան, Արփի Գալըճեան, Թալին Կապէեան եւ մանաւանդ՝ ժողովրդական Ռաֆֆի Չէչճէնեանը։

Մօտ ժամ մը տեւող այս յայտագրէն ետք, ներկաները չէին ուզեր ելլել իրենց տեղերէն, կը սպասէին, որ յայտագիրը անվերջանալիօրէն տեւէր, հայկական երգն ու երաժշտութիւնը անվերջ ըմբոշխնէին։ Սակայն, ափսոս որ յայտագիրը աւարտած էր, եւ երգչախումբը դուրս ելած՝ առանց կարեւորութիւն տալու «պիս» կանչերուն... Ամէն պարագայի տակ, այս յայտագիրը պիտի կրկնուի յառաջիկայ Երեքշաբթի, 28 Փետրուար 1989 երեկոյեան ժամը 6-ին, նոյն վայրին մէջ։

Ըսենք նաեւ, որ երգերուն սրինգով ընկերակցեցաւ Անահիտ Սարգիսեան, եւ դհոլով Ռուբէն Թերզիպաշեան։

Ջերմօրէն կը շնորհաւորենք Հայկ եւ Անահիտ Սարգիսեան ամոլը, որ անգամ մը եւս հրճուեցուցին հայու մեր հոգիները, եւ օտարներուն ալ խանդավառեցին մեր երգ ու երաժշտութեամբ։

*Արեւ*, 24 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21125, էջ 1

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐՈՒ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆԸ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՂԷՏԵԱԼՆԵՐՈՒՆ

*Երկարաձգուած է մինչեւ*
**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ 1989**
*Գերմանական Կէօթէ Մշակութային Կեդրոնին վարչութեան փափաքին համաձայն։*
*Այս առթիւ ԿՌՈՒՆԿ Երգչախումբը*
*ելոյթ կ'ունենայ*
**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ 1989**

Յայտարարութիւն
*Արեւ*, 24 Փետրուար 1989, 73-րդ տարի, թիւ 21125, էջ 4

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՄԵԼՔՈՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԿԻՐԱԿԻ, 19 ՄԱՐՏ 1989

ՀԱՄԵՐԳ

Հ Ա Մ Ե Ր Գ

-------------

Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւնի

Գ ո ւ ս ա ն երգչախումբի

Կիրակի, 19 Մարտ 1989, կ.ե ժամը 6.30

Ղեկավարութեամբ

Խմբավար Հայկ Սարգիսեանի

Դաշնամուրի ընկերակցութեամբ

Տիկին Ջուարդ Գալայճեանի :

-------------

## Ա. ՄԱՍ

-
- Եգիպտական քայլերգ
- Հ.Բ.Ը.Մ ի քայլերգ
- Երգ բարեկամութեան — Խօսք՝ Հ.Ղուկասեան, Երժշտ. Ճ.Կէոզալեան
- Տէր կեցո — Մշկ. Մակար Եկմալեան
- Քրիստոս ի մէջ — Կոմիտաս
- Կարոտ և Քելէր ցոլէր — Ժողովրդական երգ, Մշկ. Սպ. Մելիքեան
  - Մենակատարներ — Օր. Յասմիկ Տիշչէքէնեան, Օր. Լիւսի Քէհեաեան
- Իմ չինարի եարը — Կոմիտաս
- Հանիկ նանար — Ժողովրդական երգ, Մշկ. Թ.Ալթունեան
  - Մենակատարներ — Օր. Լիւսի Ճոճոեան, Պր. Ռաֆֆի Շղթայեան
- Լոեց — Երժշտ. Մակար Եկմալեան
  - Մենակատար — Պր. Հարի Չէչճէնեան
- Նարո ճան — Ժողովրդական երգ, Մշկ. Բ.Կանանչեան
  - Մենակատարներ — Օր. Յասմիկ Տիշչէքէնեան, Պր. Յակոբ Թիւթիւնճեան, Պր. Բաթրիս Ճանճի

-------------------

## Բ . ՄԱՍ

| | |
|---|---|
| - Սրտիկ մալուլ մի մնայ | Ժողովրդական երգ |
| | Մշկ. Թ.Ալթունեան |
| - Ջուլո | Ժողովրդական երգ |
| | Մշկ. Ա.Մայիլեան |
| - Հաւուն, հաւուն | Միջնադարեան տաղ |
| | Գրիգոր Նարեկացի |
| Մենակատար | Օր. Յասմիկ Տիշչէքէնեան |
| - Ալագեազ | Ժողովրդական երգ |
| և Մեր դրանը խնկի ծառ | Մշկ. Գր. Սիւնի |
| - Օսաննա | Ժողովրդական երգ |
| | Մշկ. Թ.Ալթունեան |
| Մենակատար | Օր. Ալին Ազնաւուրեան |
| Կ՝ընկերակցի | Պր. Ռաֆֆի Շղթայեան |
| - Ձայն մը հնչեց | Հայրենասիրական երգ |
| և կտրիճ լաո | |
| Մենակատար | Պր. Յակոբ Թիւթիւնճեան |
| - Երեւան-Երէբունի | Խօսք՝ Պ.Սեւակ |
| | Երժշտ. Է.Յովհաննեսեան |

Երգերու դաշնամուրի ընկերակցութեամբ
Տիկին Ջուարդ Գալայճեանի:

---

Երգչախումբի Անդամներ:-

- Անի Արթինեան
- Յասմիկ Տիշչէքէնեան
- Անի Թիւթիւնճեան
- Անի Օհանեան
- Թամար Ազնաւուրեան
- Լիւսի Քէհեաեան
- Թալին Ճոճոեան
- Թալին Կորտեան
- Սօնա Դարմանեան
- Ալին ազնաւուրեան
- Լիւսի Ճոճոեան

- Յակոբ Թիւթիւնճեան
- Հարի Չէչճէնեան
- Բաթրիս Ճանճի
- Ժիրայր Մանուկեան
- Արա Սթանպոլեան
- Էտի Պահարեան
- Ռաֆֆի Շղթաեան
- Նշան Օհանեան

----------

# ՀԱՄԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

Կիրակի 19 Մարտ 1989, կ. ե. ժամը 6.30-ին, տեղի ունեցաւ այնքան սպասուած Համերգային երեկոյթը Պօղոսեան Ազգային Վարժարանի Մելքոնեան հանդիսասրահին մէջ տրուած Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.-ի Գուսան երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի եւ դաշնամուրի ընկերակցութեամբ Տիկին Ջուարթ Գալայճեանի:

Օրուան հանդիսութիւնը դրուած էր եգիպտահայոց բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի բարձր հովանաւորութեան ներքեւ իսկ նախագահութիւնն ալ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.-ի ցկեանս պատուոյ նախագահ, ընդհանուր հիւպատոս տէր եւ տիկին Վահան Ալեքսանեանի:

Սրահը ամբողջութեամբ լեցուած էր արուեստասէր եւ հայրենասէր հայութեամբ, ըլլան անոնք Ազգային Իշխանութեան, մշակութային, մարզական եւ բարեսիրական միութեանց ներկայացուցիչներէ կամ անդամներէ եւ այլ անձնաւորութիւններէ:

Եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.-ի քայլերգներէն ետք, երգչախումբը կատարեց 8 երգեր որոնք էին՝ *Երգ բարեկամութեան*, *Տէր կեցո*, *Քրիստոս ի մէջ*, *Կարօտ եւ Քելէր ցոլէր*, *Իմ չինարի եարը*, *Հանիկ նանար*, *Լոռեց* եւ *Նարո ճան*, մենակատարներ ունենալով օրդք. Յասմիկ Տիշչէքէնեան, Լիւսի Ճոճոեան եւ պպ. Ռաֆֆի Շղթայեան, Հարի Չէչճէնեան, Յակոբ Թիւթիւնճեան եւ Բաթրիս Ճանճի:

Իսկ երկրորդ մասը բաղկացած էր 9 երգերէ, որոնք էին *Մրտիկ մալուլ մի մնայ*, *Ջուլո*, *Հաւուն, հաւուն*, *Ալագեազ եւ Մեր դրանը խնկի ծառ*, *Օսաննա*, *Ձայն մը հնչեց եւ կտրիչ լաո*, եւ *Երեւան-Էրէբունի*, մենակատարներ ունենալով՝ օր. Յասմիկ Տիշչէքէնեան, օր. Ալին Ազնաւուրեան, ընկերակից ունենալով պր. Ռաֆֆի Շղթայեան, պր. Յակոբ Թիւթիւնճեան:

Երգչախումբը եւ մենակատարները հիբնոսացած խմբավար Հայկ Սարգիսեանի ճպոտէն տուին իրենց կարելիէն աւելին որ ներկայ հասարակութիւնը ըմբոշխնէ ճշմարիտ երաժշտական երեկոյթ մը եւ յագեցնէ իր ականջներու ծարաւի պապակը լսելով ազգային եւ կրօնական այս երգերու փունջը:

Օրուան հանդիսավարն էր պր. Նազարէթ Գարթալեան որ դադարին կարդաց անուանացանկը այն անձնաւորութեանց որոնք իրենց սրտաբուխ նուիրատըւութիւններով արտայայտեցին իրենց քաջալերանքն ու գնահատանքը: Իսկ համերգի վերջաւորութեան, հանդիսավարը շնորհակալութիւն յայտնեց հովանաւորող Առաջնորդ Սրբազան Հօր, օրուան նախագահին, երգչախումբին, խմբավարին, դաշնամուրը նուագողին, Ազգային Իշխանութեան եւ բոլոր անոնց որոնք իրենց բարոյական եւ նիւթական աջակցութեամբ յաջողեցուցին սոյն համերգը:

*Ջահակիր*, 6 Ապրիլ 1989, նոր շրջան, թիւ 1177, էջ 2

ԿՈՒՄՀՈՒՐԻԷ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՇԱԲԱԹ, 25 ՄԱՐՏ 1989

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ



# Խմբերգային Երեկոյ

**Շաբաթ, 25 Մարտ 1989,**

**երեկոյեան ժամը 7.30 ին**

**ԿՈՒՄՇՈՒՐԻԷ ԹԱՏԵՐԱՍՐԱՀ**



## ՀԲԸՄ - ՀԵԸԻ 12ՐԴ ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆ ԽԱՂԵՐՈՒՆ ԱՌԹԻՒ

**( ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ )**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ԿՐՕՆԱՊԵՏԵՐՈՒՆ**

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՀԲԸՄ Ի ՑԿԵԱՆՍ ՆԱԽԱԳԱՀ

**ՏԻԱՐ ԱԼԵՔ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ**

**ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՆ**

**ՀԲԸՄ ի Կահիրէի «ԿՌՈՒՆԿ» եւ Աղեքսանդրիոյ «ԳՈՒՍԱՆ»**

**երգչախումբերը առանձին եւ ապա միացեալ**

ԽՄԲԱՎԱՐ

**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

# ԿՌՈՒՆԿ Երգչախումբ

| | |
|---|---|
| Եգիպտական Քայլերգ | |
| ՀԲԸՄ ի Քայլերգ | |
| Ով Հայոց Աշխարհ | Մշկ. Մակար Եկմալեան |
| Սուրբ, Սուրբ | » » |
| Իրիկնային | Խաչատուր Աւետիսեան |
| Սէրս գաղտնի թող մնայ | Վ. Պալեան |
| | Մշկ. Հայկ Սարգիսեան |

Մենակատար Քրիսթին Զատրնեան

| | |
|---|---|
| Քամանչա | Սայաթ Նովա |

Մենակատար Հարի Չէչնէնեան

| | |
|---|---|
| Թէլէլէթ եա մահլա նուրհա | Սայէտ Տարուիշ |
| Ատանայի ողբը | Ազգագրական |

Մենակատար Սիլվա Թերզիպաշեան

| | |
|---|---|
| Կռունկ, բարև տար | Ազգագրական |

Մենակատար Ռաֆֆի Չէչնէնեան

| | |
|---|---|
| Վուշ, վուշ | Գրիգոր Սիւնի |
| Կողբա ելան սելերը | Մշկ. Անուշաւան Տէր Ղեւոնդեան |
| Ծաղկած բալենի | Խաչատուր Աւետիսեան |
| | Մշկ. Հ. Ս. |

Մենակատար Անուշկա Զատրնեան

| | |
|---|---|
| Դու ինչպէս մի աստղ | Ռոպէրթ Ամիրխանեան |
| Քեզ հետ իմ սէր | » » |
| | Մշկ. զուգերգի Հ. Ս. |

Մենակատարներ Անուշկա եւ Քրիսթին Զատրնեան

Փունջ մը Ազգագրական երգեր

Մենակատարներ Ալիս Սիմոնեան եւ Լիւսի Տէր Ներսեսեան

| | |
|---|---|
| Առաքել Մուշեղ | Հայրենասիրական |
| Հիմի էլ լռենք | » » |

| | |
|---|---|
| Դաշնամուր | Կասիա Ճղալեան |
| Սրինգ | Անահիտ Սարգիսեան |
| Տհոլ | Ռուբէն Թերզիպաշեան |

# ԳՈՒՍԱՆ Երգչախումբ



| | |
|---|---|
| Երգ Բարեկամութեան | Ջէյմս Կէօզէլեան |
| Կարօտ, Քէլեր ցոլեր | Մշկ. Սպ. Մելիքեան |

Մենակատարներ Յասմիկ Տիշչէքէնեան եւ Լիւսի Քէհեաեան

| | |
|---|---|
| Իմ Չինարի եարը | Կ· միտաս |
| Նարօ ճան | Մշկ. Բարսեղ Կանաչեան |

Մենակատարներ Յասմիկ Տիշչէքէնեան եւ Յակոբ Թիւթիւնճեան

ընկերակցութեամբ Լիւսի Քէհեաեանի եւ Բարրիս Ճանճիի

| | |
|---|---|
| Ճանս մրմուռ | Սահառունի |
| Ովսաննա | Մշկ. Թաթուլ Ալթունեան |

Մենակատար Ալին Ազնաւուրեան

| | |
|---|---|
| Ձայն մը հնչեց | Հայրենասիրական |

Մենակատար Յակոբ Թիւթիւնճեան

Դաշնամուր Տիկին Զուարթ Գալայճեան



## « ԿՌՈՒՆԿ » ԵՒ « ԳՈՒՍԱՆ » ՄԻԱՑԵԱԼ ԵԼՈՅԹ

| | |
|---|---|
| Տէր կեցոյ | Մշկ. Մակար Եկմալեան |
| Քրիստոս ի մէջ | Մշկ. Կոմիտաս |
| Ալագեազ և Խնկի ծառ | Մշկ. Գ. Սիւնի |
| Երեւան – Էրեբունի | Էտկար Յովհաննէսեան |

# ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ.-Հ.Ե.Ը.ի 12-րդ Նաւասարդեան խաղերուն առընթեր, կազմակերպուած էր նաեւ գեղարուեստական՝ խմբերգային երեկոյ մը, Շաբաթ 25 Մարտ 1989, երեկոյեան ժամը 8-ին, Գահիրէի Կումհուրիէ ընդարձակ հանդիսասրահին մէջ, որ ամբողջութեամբ լեցուած էր։ Ներկայ էին ոչ միայն արտասահմանեան հիւրերը, այլեւ հայրենի զբօսաշրջիկները, որոնց ժամանումը կը զուգադիպէր այս երեկոյեան։ Ելոյթ կ'ունենային Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Կռունկ եւ Աղեքսանդրիոյ Գուսան երգչախումբերը, իւրաքանչիւրը առանձինն եւ վերջաւորութեան՝ միասնաբար։ Երեկոն կը վայելէր հովանաւորութիւնը եգիպտահայ երեք յարանուանութեանց կրօնապետերուն, պատուոյ նախագահութեամբ Հ.Բ.Ը.Մ.ի ցկեանս նախագահ Պր. Ալեք Մանուկեանի։

Բեմը երբ բացուեցաւ՝ Կռունկի մանչերը արդէն շարուած էին իրենց տեղերը, մինչ աղջիկները յետոյ եկան գրաւելու առաջին շարքը, որմէ ետք, ծափերը, որոնք սկսած էին վարագոյրին բացումէն, զօրեղացան՝ երբ երեւցաւ խմբավար Հայկ Սարգիսեանը։

Առաջին առթիւ, երգչախումբը հնչեցուց եգիպտական ազգային քայլերգն ու Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգը, որոնցմէ ետք, սկսաւ յայտագրին գործադրութիւնը։ Այսպէս, յաջորդաբար երգչախումբը երգեց Մակար Եկմալեանի *Ով հայոց աշխարհ*, *Սուրբ, սուրբ*ը, Խ. Աւետիսեանի *Իրիկնային*ը, Վ. Պալեանի *Մէրս գաղտնի թող մնայ*՝ մենակատարութեամբ Քրիստին Չատրճեանի, Սայաթ-Նովայի *Քամանչան*՝ մենակատարութեամբ Հարի Չէչճէնեանի, Սայիտ Տարուիշի *Թէլէթ եա մահլա նուրիա*ն, *Ատանայի ողբը*՝ մենակատարութեամբ Սիլվա Թերզիպաշեանի, *Կռունկ* մենակատարութեամբ Ռաֆֆի Չէչճէնեանի, Գ. Սիւնիի *Վուշ-վուշ*ը, Ա. Տէր Ղեւոնդեանի *Կողքա ելան սեւերը*, Խ. Աւետիսեանի *Ծաղկած բալենի*ն՝ մշակութեամբ Հայկ Սարգիսեանի եւ մենակատարութեամբ Անուշքա Չատրճեանի, Ռ. Ամիրխանեանի *Դու ինչպէս մի աստղ*, նոյնպէս Ամիրխանեանի *Քեզ հետ իմ սէր*, զոր զուգերգի համար մշակած էր Հայկ Սարգիսեան, կատարողութեամբ Անուշքա եւ Քրիստին Չատրճեաններուն, փունջ մը ազգագրական երգերու՝ մենակատարութեամբ Ալիս Սիմոնեանի եւ Լիւսի Տէր Ներսէսեանի, եւ յայտագիրը վերջ գտաւ *Առաքել Մուշեղ* եւ *Հիմի էլ լռենք* հայրենասիրական երգերով։

Անուշքա եւ Քրիստին Չատրճեանները արդէն Կռունկի առաջին ելոյթէն իսկ գրաւեցին հասարակութեան սիրտերը եւ այսօր անոնք այլեւս պաշտելի երգչուհիներ են ունկնդիրներուն համար։ Անոնց զուգերգը այնքան չքնաղ մեկնաբանութեամբ տեղի ունեցաւ, որ խմբավար Հայկ Սարգիսեանը, որ ընդհանրապէս «հակառակորդ» է պիսերու, այս անգամ տեղի տուաւ, եւ թոյլատրեց, որ գէթ

վերջին տունը կրկնուի։ Ամէն պարագայի տակ, այն որոտընդոստ ծափահարութիւնները, որոնք կը թնդացնէին սրահը, կ՚երթային նաեւ հեղինակին՝ Հայկ Սարգիսեանի։

Հարի Չէչճէնեանը ցոյց տուաւ, որ աշուղական երգերու մեկնաբանութեան մէջ եւս նոյնքան յաջող է, որքան ժողովրդական երգերու մէջ։ Մինչեւ հիմա, Սիլվա Թերզիպաշեանը իրեն մենաշնորհի ըրած էր *Քելէ լաօ* երգը, հիմա, անոր վրայ աւելցուց նաեւ *Ատանայի ողբը*։ Ռաֆֆի Չէչճէնեանին այսուհետեւ պիտի դիմենք՝ երբ ուզենք կռունկին միջոցաւ բարեւ ղրկել հայրենիքին, իր շահած ժողովրդականութիւնը միշտ վառ պահելու կարողութիւնը ունի ան։ Ալիս Սիմոնեան եւ Լիւսի Տէր Ներսէսեան իրենց քնքուշ ձայնով ունկնդիրներուն ականջները շոյելու կարողութիւնը ունին։

Իսկ երգչախո՞ւմբը. համատարր, կուռ, Հայկ Սարգիսեան կրցաւ այդ երիտասարդ սիրող տարրերէն ստեղծել գրեթէ արհեստավարժ մակարդակի համոյթ մը, որուն յաջողութեան մեծապէս սատարեցին դաշնակահարուհի Կասիա Ճղալեանը, սրնգահարուհի Անահիտ Սարգիսեանը եւ դհոլահար Ռուբէն Թերզիպաշեանը։

Յայտագրին երկրորդ մասին մէջ ելոյթ ունեցաւ Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ Գուսան երգչախումբը, միշտ ղեկավարութեամբ Հայկ Սարգիսեանի։ Առաջին անգամն էր, որ կ՚ըմբոշխնէինք զայն Գահիրէի մէջ՝ հաճելի տպաւորութիւն մը թողլով, թէեւ միշտ միատարր, սակայն Կռունկի մակարդակին հասնելու համար տակաւին ժամանակի կը կարօտի։

Գուսան երգչախումբը երգեց Ջ. Կէօզլեանի *Երգ բարեկամութեան*ը, Սպ. Մելիքեանի *Քէլեր ցոլեր*ը՝ մենակատարութեամբ Յասմիկ Տիշչէքէնեանի եւ Լիւսի Քէհեաեանի, Կոմիտասի *Իմ չինարի եարը*, Բ. Կանաչեանի *Նարօ ճան*ը՝ մենակատարութեամբ Յասմիկ Տիշչէքէնեանի եւ Յակոբ Թիւթիւնճեանի, ընկերակցութեամբ Լիւսի Քէհեաեանի եւ Փաթրիս Ճանճիի, Սահառունիի *Ճանս մրմուռ*ը, Թ. Ալթունեանի *Ովսաննա*ն՝ մենակատարութեամբ Ալին Ազնաւուրեանի, եւ ի վերջոյ՝ *Ձայն մը հնչեց* հայրենասիրական երգը՝ մենակատարութեամբ Յակոբ Թիւթիւնճեանի։

Երգչախումբին կ՚ընկերակցէր ծանօթ դաշնակահարուհի Տիկին Զուարթ Գալայճեանը։ Յասմիկ Տիշչէքէնեանը Աղեքսանդրահայութեան սոխակն է արդէն շատոնց՝ իր յղկուած, բիւրեղեայ ձայնով։ Յակոբ Թիւթիւնճեանը պատանի տարիքէն արդէն ելոյթներ կ՚ունենար, հիմա արդէն հասնելով մշակուած մեներգիչի մը մակարդակին։ Գահիրէցիներուն համար յայտնութիւններ էին Լիւսի Քէհեաեանը եւ Ալին Ազնաւուրեանը, որոնք իրենց ետին հաճելի տպաւորութիւն թողլով մեկնեցան։

Յայտագրին երրորդ մասին ելոյթ ունեցան երկու երգչախումբերը միասնաբար, երգելով Մ. Եկմալեանի *Տէր կեցո*ն, Կոմիտասի *Քրիստոս ի մէջ*, Գ. Սիւնիի

*Ալագեազ եւ Խնկի ծառ*, եւ երեկոն փառաւորապէս վերջ գտաւ Էտկար Յովհաննիսեանի *Երեւան-Էրեբունի*ով:

Յայտագրին աւարտին, Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ ընկեր Նորայր Տէօվլէթեան ողջունեց հայրենի հիւրերուն ներկայութիւնը եւ հրաւիրեց խումբին ղեկավար Կիմ Գալոյեանը, որ յուշանուէրներ յանձնեց վարչութեան:

Վստահ ենք, որ արտասահմանեան եւ հայրենի մեր հիւրերը մեկնեցան, եւ ոչ միայն այդ օր, յիշատակելի օրուան մը անջնջելի տպաւորութեամբ, շնորհիւ խմբավար Հայկ Սարգիսեանի, որուն ճակտէն կը համբուրենք յանուն բոլորին:

*Արեւ*, 31 Մարտ 1989, 73-րդ տարի, թիւ 21153, էջ 1

## ԿՌՈՒՆԿ ԵՒ ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԵՐ

ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ

Առաջինը հինգ տարեկան եւ երկրորդը երկու: Մին Գահիրէի եւ միւսը Աղեքսանդրիոյ մէջ, ղեկավարութեամբ երիտասարդ դափնեկիր, Հայաստանէն շրջանաւարտ, Հայկ Սարգիսեանի: Երկու խումբերն ալ երիտասարդ տարրերէ կազմուած, Կռունկը՝ 23 եւ Գուսանը 18 անձ համախմբած են:

Կումիուրիէ թատերասրահը Շաբաթ, 25 Մարտին, լեցուած էր յոգնախուռն բազմութեամբ, նոյնիսկ վերնատան մէջ տեղ չէր մնացեր: Այս զոյգ եւ միացեալ խումբերը հանդէս եկան բազմաձայն կատարումով խանդավառ մթնոլորտի մը մէջ: Յայտագիրը, խումբը, ղեկավարը թէ հասարակութիւնը նկարագրելու հաճոյքը եւ պարտականութիւնը կը կարծենք թէ նուազագոյն տուրքն է ոչ միայն մամուլին այլ երաժշտագէտներուն, երբ մանաւանդ նկատի ունենանք թէ ի գին ինչ զոհողութեան կը կատարուին այսպիսի ձեռնարկներ նախ զայն կազմակերպող Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ վարչութեանց - երգչախումբի մէն մի անդամին եւ դաշնակի, սրինգի եւ տհոլի ընկերակցողներուն եւ մանաւանդ խմբավար Հայկ Սարգիսեանի որ յանձն առած է ամէն շաբաթ փոխադրուիլ Աղեքսանդրիա փորձերուն համար:

Այդ գիշեր ներկայ էր հայ երգը իր անցեալով եւ ներկայով, իր փառքով, ճոխութեամբ, հարազատութեամբ եւ անիկա փոխանցուեցաւ ներկաներուն, փոխանցուեցաւ 12-րդ Նաւասարդեան խաղերուն մասնակցող երիտասարդ մարզիկներուն որոնք եկած էին ոչ միայն իրենց մարզական եղբայրութիւնը յայտնելու այլ ծանօթանալու մեր երիտասարդներուն եւ միանալու հայ երգար-

ւեստին մէջ։

Երգահանդէսին կը հովանաւորէին եգիպտահայ յարանուանութեանց կրօնապետները գլխաւորութեամբ Եգիպտահայ Թեմի բարեջան Առաջնորդ, Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի։ Պատուոյ նախագահութեանը տակ Հ.Բ.Ը.Մ.ի ցկեանս նախագահ Տիար Ալեք Մանուկեանի։ Ներկայ էին Բիւրականի գիտնական աստղաբնագէտ փրոֆ. Լուդվիկ Միրզոյեան, յայտնի լեզուաբան, բանասէր - մատենագէտ, Երեւանի Պետական համալսարանի դասախօս, փրոֆ. Ռաֆայէլ Իշխանեան եւ տասնեակ մը հայաստանցի զբօսաշրջիկներ։

Դեսպաններու շարքին ըլլայ Սովետական թէ Աւստրիոյ ընդհանուր հիւպատոս մեծայարգոյ Վահան Ալեքսանեան եւ Գահիրէի Քաղաքական Ժողովի ատենապետ տէր եւ տիկին Անդրանիկ Մեսրոպեան, Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի անդամներ եւ օտարներ եւ հայեր, հայեր ընտանեօք կամ առանձինն։

Երգչախումբի մը գլխաւոր յատկանիշը իր երգի եւ երգելու ըմբռնումն է։ Կրօնքները լայնօրէն օգտագործած են երաժշտութեան գաղափարա-յուզական ուժը։ Տարածական թէ ժամանակի կամ միջոցի արուեստները կը ձգտին այդ գաղափարա-յուզական մթնոլորտը ստեղծելու, այսինքն յուզումնախառն մտածումը փոխանցելու։

Հայ երգը ունի իր կերպարային եւ լեզուական իւրայատկութիւնները։ Կատարողական ոճին բնորոշ է բովանդակութեան խոր եւ ճշմարտացի մեկնաբանութիւն - ընդհանուր միաձուլում, միախառնութիւն եւ գեղեցիկ ձեւաւորում։ Ձայներու ճշգրտութիւնը, ելեւէջները, մեղեդիին գեղեցկութիւնը, շեշտը, չափը եւ մանաւանդ երաժշտական նախադասութիւններու կապը կը կազմեն երգչախումբի մը իսկական արժէքը։

Ինչպէս թատրոնի մէջ բեմադրիչը, նոյնպէս եւ երգչախումբի պարագային խմբավարը պիտի բացատրէ, պիտի պարզէ ոչ միայն երաժշտական իւրաքանչիւր թեմա այլ գաղափարական, մտածողական այն շարահարումը որ երգ կը կոչուի։

Յայտագիրը կազմուած էր 29 կտորներէ որոնցմէ մին, *Քրիստոս ի մէջ*ը չերգուեցաւ։ Մնացեալ 28-էն 11-ը ունէին մենակատարներ եւ այս վերջիններէն մին զուգերգ մըն էր Անուշքա եւ Քրիստին Չատրճեան քոյրերու կողմէ, որոնք զիրար կը լրացնեն եւ երգչախումբի ողնայարը կը կազմեն։

Հետաքրքրական պիտի ըլլար իւրաքանչիւր կտորի վերլուծումը - մեր գրեթէ բոլոր նկարագրութիւնները պայմանադրական եւ անձնական տպաւորութիւններ են եւ ոչ թէ արուեստա-գիտական արժէքներու տեսական մեկնաբանութիւն - Վ. Պալեանի *Մէրս գաղտնի թող մնայ* Հայկ Սարգիսեանի մշակումով երգը, Քրիստին Չատրճեան տուաւ ձայնի եւ յուզումի տիրապետութեամբ։ Սայաթ-Նովայի ծանօթ *Քամանչա*յին մէջ Հարի Չէչճէնեան աշուղական թռիչք ունեցաւ։

Ռաֆֆի Չէչճէնեանի *Կռունկ, բարեւ տար*ը եղաւ շատ հաղորդական քանի իր քով ապրումը տիրապետող տարր է։

Խաչատուր Աւետիսեանի *Ծաղկած բալենի* զոր վերամշակած էր Հայկ Սարգիսեան եւ ուր բարձր ոլորակութիւն (Թօնալիթէ) առած էր երգը դիւրութեամբ Անուշքա Չատրճեան կրցաւ տիրապետել։

Ալիս Սիմոնեանի եւ Լիւսի Տէր Ներսէսեանի եղանակները պարզ են եւ անոնք բնական ընդունակութիւն ունին զանոնք ընկալելու։ Տակաւին ականջիս եւ սրտիս մէջ է արձագանգը Սիլվա Թերզիպաշեանի *Ատանայի ողբ*ին ամբողջ թախիծը։

Գուսանի մենակատարուհի Յասմիկ Տիշչէքէնեան երկար շունչ ունի։ Լիւսի Քէհեաեան, Ալին Ազնաւուրեան արդէն վարժ երգողներ եղած են։ Շնորհաւորելի են Բաթրիս Ճանճի եւ Յակոբ Թիւթիւնճեան, այս վերջինը Գուսանի սիւներէն կը նկատուի։

Շնորհակալութիւն ընկերակցող Կասիա Ճղալեանի, Անահիտ Սարգիսեանի, Ռուբէն Թերզիպաշեանի եւ Զուարթ Գալայճեանի։

Գոհունակութիւն խմբավար Հայկ Սարգիսեանի իր տարած շնորհալի աշխատանքին համար։ Իրմէ կը սպասենք ղժուարին երգերու խմբային երեկոներ։ Հայ երաժշտութեան դասականները, ժողովրդականներուն կողքին մասնաւոր ուշադրութեամբ ուսումնասիրուած էին։

Երգը աւելի արժէք ունի քան խօսքը, որովհետեւ երգին մէջ թէ խօսք կայ եւ թէ մեղեդի - հոն է սրտի եւ մտքի զուգորդութիւնը։ Հայկ Սարգիսեան այս երիտասարդներուն հոգիին մէջ երգին թեւերով դրաւ հայրենիքի սէրը։ Ո՞ւր են միասնականութեան ջատագովները։ Ահա աշխատանքի դաշտ մը ուր անշահախնդիր բոլոր հայերը կրնան միանալ առանց գաղափարական խտրութեան։

Քաջալերենք հայ երգը, զօրավիգ ըլլանք երիտասարդ խմբավարին եւ մեր նոր սերունդը առաջնորդենք իրար հասկացողութեան, հայրենասիրութեան ուղիով։

*Զահակիր*, 6 Ապրիլ 1989,նոր շրջան, թիւ 1177, էջ 1-2

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

**ՇԱԲԱԹ, 8 ԱՊՐԻԼ 1989**

ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**Ամավերջի Հանդէս**

**ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆԻ ԵՒ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ**

*Շաբաթ*, 8 *Ապրիլ* 1989 *կ.ե. ժամը* 8–ին
*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

*ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՄԻ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ*

**ԳՐԵՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ*

*ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ ԺՈՂՈՎԻ ԱՏԵՆԱՊԵՏ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

1987 – 1988 *դպրոցական տարեշրջանի շրջանաւարտները կը ստանան իրենց վկայականները*. *Մուտքը ազատ*. *Ընտանեկան ձեռնարկ*

*Սիրալիր հրաւէր բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 7 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21159, էջ 4

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Ապա, բեմը գրաւեցին Ա.Բ.Գ. դասարաններուն աշակերտները, մինչ դաշնակին առջեւ անցաւ վարժարանին երգի ուսուցիչ, Կռունկ երգչախումբի ղեկավար Հայկ Սարգիսեան: Յայտագրին այս բաժնին մէջ Վաչէ Արթինեան ելոյթ ունեցաւ արտասանութեամբ, մինչ բոլորը հանդէս եկան երգերով, որոնց բառերը գրած էր վարժարանին նախկին աշակերտներէն, եգիպտական ձայնասփիւռի հայկական բաժնի խօսնակներէն Հարրի Չէչճէնեանը, իսկ երաժշտութիւնը՝ Հայկ Սարգիսեանի յօրինումներն էին:

*Արեւ*, 13 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21164, էջ 1

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

(հատուած)

ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆ

Ա.Բ.Գ. դասարաններու աշակերտները, դաշնակի ընկերակցութեամբ վարժարանին երգի ուսուցիչ, խմբավար Հայկ Սարգիսեանի, երգեցին ազգային եւ հայրենասիրական շարք մը երգեր, մէջ ընդ մէջ կատարուեցան արտասանութիւններ: Այս բաժնին մէջ Վաչէ Արթինեան ելոյթ ունեցաւ արտասանութեամբ, մինչ բոլորը հանդէս եկան երգերով, որոնց բառերը գրած էր վարժարանին նախկին աշակերտներէն Հարրի Չէչճէնեանը, իսկ երաժշտութիւնը՝ Հայկ Սարգիսեանի յօրինումներն էին:

*Զուարթնոց*, 20 Ապրիլ 1989, նոր շրջան, թիւ 1179, էջ 2

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

**ՇԱԲԱԹ, 22 ԱՊՐԻԼ 1989**

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ
**74-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 74-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ

# 1915–1989

*Հովանաւորութեամբ*

ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ

*Նախաձեռնութեամբ*

ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

*Եգիպտահայ բոլոր հայ կազմակերպութիւններուն հրաւիրուած է բանախօսելու*

## ՏՕՔԹ. ԱԳԱՊԻ ՆԱՍԻՊԵԱՆ – ԷՔՄԷՔՃԵԱՆ

*Տոքթ. Պատմական գիտութիւններու*
*Նախկին Տնօրէնուհի Մելգոնեան*
*Կրթական Հաստատութեան*
*Շաբաթ*, 22 *Ապրիլ* 1989, *երեկոյեան*
*ժամը* 8·30–*ին*
*Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան»*
*Հանդիսարահին մէջ*

ՅԱՅՏԱԳԻՐ

1.– *Բացման Խօսք* — *Տոքթ. Արմէն Մազլումեան*
2.– *Ասմունք* — *Օր. Մարալ Տէօվլէթեան*
3.– *Կաունիկ Երգչախումբ*
4.– *Արտասանութիւն Սիամանթօ Հայկ Ասատուրեան*
5.– *Նանար աղեղնահարներու խումբ*
6.– *Բանախօսութիւն Պատմ. Գիտ.* — *Տոքթ. Աղաւնի Նասիպեան*
7.– *Մեներգ* — *Տիկին Շաքէ Ցովակիմեան*
8.– *Օրհնութիւն եւ Պահպանիչ* — *Գեր. Տ. Զաւէն Արքեպսկ.*

ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

Յայտարարութիւն
*Արեւ*, 19 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21169, էջ 4

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբի իգական խումբէն վեց հոգի ելոյթ ունեցաւ, երգելով *Լոյս-լոյս* եւ *Տէր կեցո* երգերը, դաշնակի ընկերակցութեամբ ընկերուհի Կասիա Ճղալեանի: Առաջին խմբերգին մենակատարն էր Օր. Ալիս Սիմոնեան, իսկ երկրորդ երգինը՝ Օր. Քրիստին Չատրճեան: Խմբավար Հայկ Սարգիսեանի մշակումով այս հոգեպարար երգերը ունկնդիրներուն վրայ թողուցին խոր տպաւորութիւն, եւ արդէն տխուր մթնոլորտը լեցուցին առաւել մելամաղձութեամբ:

*Արեւ*, 24 Ապրիլ 1989, 73-րդ տարի, թիւ 21173, էջ 1

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ 74-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

(հատուած)

Հ.Բ.Ը.Մ.ի Կոմիտաս երգչախումբի անդամուհիներէն վեց հոգի երգեցին *Լոյս-լոյս* եւ *Տէր կեցո* երգերը, մենակատարութեամբ օրդք. Ալիս Սիմոնեանի եւ Քրիստին Չատրճեանի եւ դաշնակի ընկերակցութեամբ տիկին Կասիա Ճղալեանի: Խմբավար Հայկ Սարգիսեանի մշակումով այս հոգեպարար երգերը ունկնդիրներուն վրայ թողուցին խոր տպաւորութիւն:

*Ջահակիր*, 4 Մայիս 1989, նոր շրջան, թիւ 1180, էջ 1, 4



ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

*Կիրակի, 19 Նոյեմբեր 1989, կ.ե. ժամը 8*
*ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ

**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**
*ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ*

**Խմբերգային Արուեստը**

*ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ ՎԻՏԷՈՅ-ԵՐԻԶՆԵՐՈՒ*
*Սիրալիր հրաւէր արուեստասէր հասարակութեան*
***

Յայտարարութիւն
*Արեւ*, 11 Նոյեմբեր 1989, 74-րդ տարի, թիւ 21330, էջ 4

# ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԱՐՈՒԵՍՏԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Կիրակի, 19 Նոյեմբեր 1989, երեկոյեան ժամը 8-ին Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան սրահին մէջ հաւաքուած բազմութիւնը գեղարուեստական հաճելի ժամ մը ապրեցաւ, շնորհիւ խմբավար Հայկ Սարգիսեանի, որ մեզի ներկայացուց խմբերգային արուեստը:

Վարչութեան Ատենադպիր ընկեր Գրիգոր Մարգարեանի բացման խօսքէն ետք, յարգելի բանախօսը իր տեղը գրաւելով, նախ հակիրճ պատմականը ըրաւ միաձայն խմբերգէն անցումը բազմաձայնի, անշուշտ հայ երգարուեստի մարզին մէջ: Ապա, վիտէոյի վրայ ժամ մը ցուցադրուեցաւ հայրենի զանազան երգչախումբերու խմբերգային ելոյթներէն հատուածներ, որոնց կողքին, խմբավար Հայկ Սարգիսեան անհրաժեշտ մեկնաբանութիւնները ըրաւ եւ բացատրութիւնները տուաւ:

Այսպէս, ան ներկայացուց եկեղեցական, աշուղական, ազգագրական, երգիպարի համոյթին, ակադեմիական երգչախումբին, ժողովրդային երգերու խմբերգային արուեստը, զոր, բացի ընկալելէ անոնց բնոյթը, վայելք մը եղաւ նաեւ ունկնդրութիւնը:

Ուսանելի եւ ըմբոշխնելի երեկոյ մըն էր, որուն փակումը կատարեց Միութեան ցկեանս նախագահ ընկեր Վահագն Տէփոյեանը՝ վեր առնելով խմբավար Հայկ Սարգիսեանի երաժշտական արժանիքները, որոնց դրսեւորումները մենք կը տեսնենք Գահիրէի թէ Աղեքսանդրիոյ մէջ՝ Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ եւ Գուսան երգչախումբերուն ելոյթներով:

Պիտի ուզէինք, որ խմբավար Հայկ Սարգիսեան, երաժշտական իր հմտութեան կողքին, մեզի աւելի յաճախ պարզէր նաեւ երաժշտական իր գիտելիքները, որպէսզի զարգանայ մեր երաժշտական ըմբռնողութիւնը:

*Արեւ*, 20 Նոյեմբեր 1989, 74-րդ տարի, թիւ 21337, էջ 1

## 1989

Անուշքայի (Անուշքա Չատրճեան) ալպոմը, ուր տեղ գտած են Հայկ Սարգիսեանի յօրինած եւ մշակած երկու երգեր։

Ալպոմի վերնագիր՝ *Նատանի*
Պիտակ՝ Էլ-Տաուլէյա
Ձեւաչափ՝ Երիզ (քասէթ)
Ձայնագրութիւն՝ Սոթ Էլ-Հոպպ Սթուտիոներ
Արտադրութիւն՝ Ալ-Աութար Ալ-Զահապէյա

Երգի վերնագիր՝ *Ասա՛ապ պուքա՛*
Խօսք՝ Ռետա Ամին
Եղանակ՝ Հայկ Սարգիսեան
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Երգի վերնագիր՝ *Լաhզըթ լըքա՛*
Խօսք՝ Անուշքա
Եղանակ՝ Անուշքա
Մշակում՝ Հայկ Սարգիսեան




Անուշքայի ալպոմին անուանաթերթը

# أنوشكا ** نداني

## الوجه الأول :

| | تأليف | تلحين | توزيع |
|---|---|---|---|
| ١- على بـال | بهاء الدين محمد | فتحى سلامة | فتحى سلامه |
| ٢- قلب بهية | رضا أمين | فاروق الشرنوبى | فتحى سلامه |
| ٣- جواب | عاطف شاهين | محمد هلال | محمد هلال |
| ٤- قالوا | بهاء الدين محمد | فتحى سلامة | فتحى سلامه |

## الوجه الثانى :

| | | | |
|---|---|---|---|
| ١- أصعب بكاء | رضا أمين | هايك ساركسيان | هايك ساركسيان |
| ٢- بحبك ياما | بهاء الدين محمد | رياض الهمشرى | فتحى سلامة |
| ٣- لحظة لقاء | أنوشكا | أنوشكا | هايك ساركسيان |
| ٤- نداني | بهاء الدين محمد | رياض الهمشرى | فتحى سلامة |

تم التسجيل باستديوهات صوت الحب

مهندس الصوت : خالد رؤوف

**الإنتاج الفنى: شركة الأوتار الذهبية**



الشركة الدولية لإنتاج الصوتيات والمرئيات

١٠ ش عبد الحليم النجار - م. نصر القاهرة ت : ٦٠٦٧٣٨

تصميم وتنفيذ الغلاف : وكالة آرت للإعلان/ كريستين    ت.ر ٨٩/٣٥٥١

Անուշքայի ալպոմին բովանդակութիւնը

*Սա՛ապ պուքա՛* երգի նուազագրութեան (orchestral score) առաջին էջը Հայկ Սարգիսեանի ձեռագիրով



70ԱՄԵԱԿԻ Ա. ՁԵՌՆԱՐԿ

ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ

ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

Շաբաթ, 6 Յունուար 1990, կ.ե. ժամը 6.30
«ՉԱՅՔՈՎՍՔԻ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ
127 ԹԱՀՐԻՐ ՓՈՂՈՑ, ՏՈՔՔԻ
ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ ԵՐԻՏ. ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ

Մասնակցութեամբ՝ Գահիրէի՝ Հ.Բ.Ը.Մ.ի, Յուսաբեր Ակումբի, Հայկական ընթերցասրահի Նոր Սերունդ, Կալուստեան Սրահի, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան, Նիր Իսթի, Աղեքսանդրիայէն՝ Հ.Բ.Ը.Մ. եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութեան երիտասարդական մարմիններուն։

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐՇ Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՍԱՐԳԻՍ ՎԱՐԶՊԵՏԵԱՆԻ

Ատենապետ Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքս. Մասնաճիւղին

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ

Ամերիկայէն հիւրաբար քաղաքս գտնուող

ՊՐ. ԵՐՈՒԱՆԴ ԱԶԱՏԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԱՆԻՆ ՅԱՅՏԱԳԻՐԸ
ՅԱՅՏԱԳՐԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

ՀԱՅԿ ԵՒ ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆ

ԴԱՇՆԱԿՈՎ ԵՒ ՍԻՐԻՆԳՈՎ

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 5 Յունուար 1990, 74-րդ տարի, թիւ 21375, էջ 4

ՅԱՅՏԱԳԻՐ

Քայլերգ

Բացման Խօսք — Տիկ. Թալին Երզնկեան

Խորհրդապատկեր — Հայկ. Ընթերցասրահ Ն Ս Մ Մ

Արտասանութիւն — Նիւ Իորք Հայկ. Ակումբ Ռաֆֆի Չեղլիեան

Զուգերգ — Անի Գասպարեան, Հերմինէ Նաւէր

Արտասանութիւն — Հայկ Ասատուրեան

«Մենք» - Գէորգ ԷՄԻՆ

Օրուան Բանախօս — Գրաքննադատ ԵՐՈՒԱՆԴ ԱԶԱՏԵԱՆ

Խմբերգ — ՀԲԸՄ-ի «ԿՌՈՒՆԿ» Քառաձայն Երգչախումբ

Խմբավար՝ Հայկ Սարգիսեան Դաշնակ՝ Կասիա Ծղալեան

Խորհուրդ Արցախեան — ՀԳՄ - ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ

Կը ներկայացնեն Նայիրի եւ Ժորժ Սիմոնեան

Մասնակցութեամբ «Զանգեզուր» Պարախումբին

Ղեկավար՝ Պալէթ Մայէսթըր Ալպէրթ Կիւլիւեան

Սրինգ եւ Դաշնամուր Անահիտ եւ Հայկ Սարգիսեան

Երգախառն Պարեր — Յուսաբեր Սրահի Երիտ. Մարմին

Խմբապար — «Զանգեզուր» Պարախումբ ՀԳՄ - ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ

Քոչարի - Վերվերի

Փակման Խօսք — Առաջնորդ Ս. Հայր

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ 30-ՐԴ ՓԱՌԱՒՈՐ ՓԱՌԱՏՕՆԸ

(հատուածներ)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ քառաձայն երգչախումբը ելոյթ ունեցաւ ղեկավարութեամբ, այլեւս Գահիրէի թէ Աղեքսանդրիոյ մէջ մեծ ժողովրդականութիւն վայելող խմբավար Հայկ Սարգիսեանի։ Երգչախումբը երգեց Կոմիտասի *Ալզգային օրհներգը*, Թաթուլ Ալթունեանի *Քնարական երգը*, եւ Ճէյմս Կէօզէլեանի *Լիրիկականը*, դաշնակի ընկերակցութեամբ ընկերուհի Կասիա Ճղալեանի, որուն նուագածութիւնը յաջողութեան ազդակ մըն է երգչախումբին ելոյթներուն։ Երրորդ երգին մենակատարուհին էր Օր. Թալին Կապէեան, որ իր քնքուշ ձայնով միշտ գրաւած է իր ունկնդիրները։ Բաց աստի, դաշնակին հետ, երգին սրինգով ընկերակցեցաւ Տիկին Անահիտ Սարգիսեան, եւ դհոլով՝ Պր. Ռուբէն Թերզիպաշեան, որ այլեւս արհեստավարժի մակարդակի մը հասած է։ Ելոյթի աւարտին, ծաղկեփունջ մը մատուցուեցաւ դաշնակահարուհի ընկերուհի Կասիա Ճղալեանի։

[...]

Գեղարուեստական յաջորդ ելոյթն էր Հայկ եւ Անահիտ Սարգիսեան ամոլին համարը՝ առաջինը դաշնակով եւ երկրորդը սրինգով։ Անոնք նուագեցին Խաչատուր Աւետիսեանէն փունջ մը քնարական մեղեդիներ եւ ապա՝ հատուած մը *Կտոր մը երկինք* կինոնկարին Տիգրան Մանսուրեանի երաժշտութենէն, որ, ընդհանուրին փափաքին վրայ, կրկնուեցաւ։ Աւարտին՝ ծաղկեփունջ մը մատուցուեցաւ Տիկին Անահիտի։ Խմբավար Հայկ Սարգիսեանը եւ սրնգահար Անահիտ Սարգիսեանը, երկուքն ալ սրատգին ողջոյնի կ՚արժանանան միշտ, ինչպէս եւ այս անգամ։

*Արեւ*, 20 Յունուար 1990, 74-րդ տարի, թիւ 21387, էջ 2-3

# ԱՄԵՐԻԿԵԱՆ ՔՈԼԷՃ, ԳԱՀԻՐԷ

# ՇԱԲԱԹ, 3 ՄԱՐՏ 1990

# ԶԱՆԳԵԶՈՒՐ ՊԱՐԱԽՈՒՄԲ ԵՒ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵԼՈՅԹ

## ԶԱՆԳԵԶՈՒՐ ՊԱՐԱԽՈՒՄԲԻ ՉՈՐՐՈՐԴ ԵԼՈՅԹԸ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Տիկին Թալին Երզնկացեանի բացման խօսքէն ետք, համոյթը սկսաւ իր ելոյթը *Տօնական պար*ով ու շարունակեց համաձայն անցեալ յայտագրին, եւ այս անգամ եւս, երկրորդ բաժնին մէջ ելոյթ ունեցաւ երաժշտագէտ ամոլը՝ խմբավար եւ Տիկին Հայկ եւ Անահիտ Սարգիսեանները՝ դաշնամուրի եւ սրինգի նուագածութեամբ։

*Արեւ*, 8 Մարտ 1990, 74-րդ տարի, թիւ 21426, էջ 1, 4

ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՔՈԼԷՃ - ՏԵԿԼԱ - ՄԷԱՏԻ

Շաբաթ, 3 Մարտ 1990, Երեկոյեան ժամը 7.30-ին

ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ եւ Հ.Ա.Հ. ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԻ

**Զանգակներ ՊԱՐԱԽՈՒՄԲԻ**

ՉՈՐՐՈՐԴ ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԵԼՈՅԹԸ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

**ՊԱԼԷԹՄԱՅՍԹԷՐ ԱԼԲԵՐԹ ԿԻՉԻՐԵԱՆ**

ՆԱԵՒ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵԼՈՅԹՈՎ ՄԸ, ԻՐԵՆՑ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՊԻՏԻ ԲԵՐԵՆ

**ՀԱՅԿ ՍԱՐԳՍԵԱՆ, ԴԱՇՆԱՄՈՒՐ ՏԻԿԻՆ ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳՍԵԱՆ ՍՐԻՆԳ**

ԾԱՆՕԹ.- ԲՈԼՈՐ ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ԿԸ ՓԱՓԱՔԻՆ ՆԵՐԿԱՅ ԸԼԼԱԼ, ՊԱՐՏԻՆ ԻՐԵՆՑ ԱՆՈՒՆՆԵՐԸ ԿԱՆԽԱՒ ՏԱԼ՝ ՀԵՌԱՁԱՅՆԵԼՈՎ ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ, ՀԵՌԱՁԱՅՆ՝ 742282, ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ, ՀԵՌԱՁԱՅՆ՝ 667172, «ԱՐԵՒ»Ի ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ, ՀԵՌԱՁԱՅՆ՝ 754703:

Յայտարարութիւն
*Արեւ*, 26 Փետրուար 1990, 74-րդ տարի, թիւ 21417, էջ 4

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

ՈՒՐԲԱԹ, 30 ՄԱՐՏ 1990

ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ – ՊՈՒԼԱՔ

**Ամավերջի Հանդէս**

*Հովանաւորութեամբ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ.*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Նախագահութեամբ Թեմական Ժողովի Ատենապետ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

*Ուրբաթ*, 30 *Մարտ* 1990, *կ.ե. ժամը* 8

*Սիրալիր Հրաւէր Բոլորին*

Յայտարարութիւն

*Արեւ*, 28 Մարտ 1990, 74-րդ տարի, թիւ 21443, էջ 4

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Երէկ, Ուրբաթ, 30 Մարտ 1990, երեկոյեան ժամը 8-ին, Գալուստեան Ազգային Վարժարանի հանդիսասրահին մէջ, տեղի ունեցաւ 1988-1989 ուսումնական տարեշրջանի ամավերջի հանդէսը, հովանաւորութեամբ թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ Թեմական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեանի:

Ներկայ էին մասնաւորապէս Արժ. Տ. Սարգիս Խաչակիր Քհնյ. Մելքոնեան, Քաղաքական Ժողովի Ատենապետ Պր. Տիգրան Պօղոսեան, Նուպարեան Ազգային Վարժարանի Տնօրէն Տէր եւ Տիկին Մարտիկ Պալաեան, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան ցկեանս նախագահ ընկեր եւ ընկերուհի Վահագն Տեփոյեան, Ատենապետ ընկեր Եդուարդ Զարդարեան, Կոկանեան Սրահի Ատենապետ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան, Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ ընկեր եւ ընկերուհի Նորայր Տէօվլէթեան եւ հանդիսականներու ու ծնողներու հոծ բազմութիւն մը:

Վարժարանին բարձրագոյն կարգի աշակերտներուն երգչախումբը, ղեկավարութեամբ եւ դաշնակի ընկերակցութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, նուագեց եգիպտական պետական եւ վարժարանին քայլերգները, որմէ ետք, անցեալ տարեշրջանի շրջանաւարտները բեմ ելան, եւ անոնցմէ Թալին Չիմէնեան գեղեցիկ ու հոգեշունչ ուղերձ մը կարդաց յանուն շրջանաւարտներուն, որոնք ստացան իրենց վկայականներն ու մրցանակները: Այդ շրջանաւարտներն էին՝ Սոնա Թերզեան, Մարի Ժորժ, Ժանէթ Կնքապապեան, Մարի Տէր Ներսէսեան, Թալին Չիմէնեան եւ Կարինէ Տէօվլէթեան:

Ապա, վարժարանին վաստակաւոր Տնօրէն Պր. Նշան Վարդեան արտասանեց իր յուզիչ Հուսկ Բանքը, զոր աւելի ուշ պիտի տանք: Հանդիսութեան պաշտօնական այս մասին աւարտէն ետք, տեղի ունեցաւ գեղարուեստական ճոխ յայտագիր մը՝ երգերով, արտասանութիւններով եւ նուագով: Երգերու բաժինը կը ղեկավարէր եւ անոր դաշնակով կ՚ընկերակցէր խմբավար Հայկ Սարգիսեան, իսկ նուագի բաժնին՝ նոյն ձեւով՝ Տիկին Անահիտ Սարգիսեան: Իսկ դհոլով եւ եռանկիւնով կ՚ընկերակցէին աշակերտներէն Լեւոն Տէր Յակոբեան եւ Էտուար Միլատ:

Ա. Բ. Գ. դասարանները երգեցին *Լորիկ ջան*, *Գծագրութեան տետրակին մէջ*, խմբային արտասանութիւն մը տեղի ունեցաւ՝ *Փունջ մը մայրիկին* եւ անգլիերէն արտասանութիւն մը: Զուգերգներ տեղի ունեցան՝ *Սասունի ոլորը* Լորա

Գասապեան եւ Պարոյր Սարգիսեան, *Կովիկի երգը* Քրիստին Սոլոմոն եւ Վաչէ Արթինեան։

Գ. Ե. դասարանները *Մոկաց շուկէն*, *Կաքաւիկը* Ռոպէր Միլատ, արտասանութիւն մը՝ Սարգիս Մարթայեան, եւ սրինգի նուագածութիւն Ժան-Փիէռ Աւագեան։

Միջնակարգի աղջիկները կատարեցին փունջ մը հայկական մեղեդիներ՝ նուագի ընկերակցութեամբ։ Յովհաննէս Շիրազի *Հայրենիքիս* քերթուածը արտասանեց Գէորգ Գազանճեան, նոյնպէս արտասանութիւններով հանդէս եկան Շիրազի *Երանի* քերթուածով՝ Քարոլին Տէր Յակոբեան, *Մօր ձեռքերը* Պարոյր Սեւակի՝ Վիվիան Սէմիզեան, որուն ըմբռնումով ու գիտակցութեամբ արտասանութիւնը բոլորին ուշադրութիւնը գրաւեց, կրկին Շիրազի *Մի ծաղիկ չի տար* քերթուածը՝ Արամ Ջէմանեան։ Տեղի ունեցաւ *Գարուն բացուեց* եւ *Կուրտիկ ունիմ* խմբերգները, երկրորդին՝ մենակատարութեամբ Հերմինէ Նատիրի, *Երկինքն ամպել ա* խմբերգը, եւ ի վերջոյ՝ ազգագրական *Առաքել Մուշեղ* զուգերգը կատարեցին Էտուար եւ Ռոպէր Միլատները։

Արաբերէն լեզուով երկու հայրենասիրական խմբերգներ տեղի ունեցան, որոնցմէ երկրորդին մենակատարի բաժինը կատարեց Ռոպէր Միլատ։ Ռաֆֆի Հեղինեան Գեղամ Սարեանի *Իմ Հայաստան* քերթուածին արտասանութեամբ հանդէս եկաւ։ Գեղարուեստական յայտագիրը աւարտեցաւ չորս խմբերգներով՝ *Տինկ-տոնկ*, *Կովկասի քաջեր*, *Արդեօք ովքեր են* եւ *Զարթիր լաօ*, որուն զուգերգի բաժինը կատարեցին Անի Պալթայեան եւ Ռաֆֆի Պօղոսեան։

Այս առթիւ, երկու գեղեցիկ ծաղկեփունջեր մատուցուեցան, մին՝ օրուան նախագահուհիին՝ Տիկին Նուարդ Մեսրոպեանի, եւ միւսը՝ Տէր եւ Տիկին Հայկ եւ Անահիտ Սարգիսեաններուն։

Խանդավառուած օրուան հանդիսութեան գտած փայլուն յաջողութենէն, եղան բազմաթիւ սրտաբուխ նուիրատուութիւններ։ Ըսենք նաեւ, որ դադարին տեղի ունեցաւ զովացուցիչներով եւ քաղցրաւենիներով ճոխ հիւրասիրութիւն մը։

Փակման խօսքը կատարեց Առաջնորդ Սրբազան Հայրը, որ շեշտեց, թէ շրջանաւարտից հանդիսութիւնը մասնաւոր նշանակութիւն մը ունի գաղութին համար եւ երջանկութիւն է մեզի համայնքին տօնն է ան։ Սրբազան Հայրը վեր առաւ Պր. Տնօրէնին կիսադարեան դաստիարակչական նուիրեալ աշխատանքը, եւ թելադրեց, որ յոբելինական հանդիսութեամբ մը պատիւ ընծայուի անոր։ Սրբազան Հայրը մասնաւորաբար ընդգծեց նաեւ օրուան նախագահ, Թեմական Ժողովի յարգարժան Ատենապետ Պր. Անդրանիկ Մեսրոպեանի աննկուն ջանքերը՝ վարժարանին բարօրութեան ի նպաստ։

Սրբազան Հայրը յայտնեց, թէ Եգիպտոսի կրթական նոր օրէնսդրութեան համաձայն, երկրին տարածքին կը ջնջուէին բոլոր համայնքային վարժարանները, սակայն, Ազգային Իշխանութեան տարած բացատրողական աշխատանքին

շնորհիւ՝ Կրթական նախարար Ն. Վ. Աիմէտ Սուրուրի մօտ, հայկական ազգային վարժարանները բացառութեան կարգով պահեցին իրենց գոյութիւնը: Ուրեմն, Սրբազան Հայրը եգիպտահայ համայնքին զգացումներուն թարգմանը հանդիսանալով, երախտագիտութիւն յայտնեց Պր. Նախարարին, մեր սիրելի նախագահ Մոհամէտ Հոսնի Մուպարաքի, եգիպտական կառավարութեան եւ արաբ ազնիւ ժողովուրդին:

Սրբազան Հայրը իր խօսքը աւարտեց շրջանաւարտներուն ուղղուած բարեմաղթութիւններով, եւ հանդիսութիւնը վերջ գտաւ խմբովին երգուած Տէրունական աղօթքով եւ Պահպանիչով:

Վարձքը կատար Տնօրէնութեան եւ ուսուցչութեան, որոնց նուիրեալ ջանքերուն շնորհիւ վարժարանը բոլորեց արդիւնաւէտ տարի մը եւս: Վարձքը կատար Տէր եւ Տիկին Հայկ եւ Անահիտ Սարգիսեաններուն, որոնք մեզի հրամցուցին գեղարուեստական յայտագիր մը, որ վեր է ամէն հիացումէ: Վարձքը կատար օրուան նախագահներուն՝ Տէր եւ Տիկին Անդրանիկ եւ Նուարդ Մեսրոպեաններուն, որոնց համար մեր ազգային վարժարաններուն բարգաւաճումը առաջնահերթ հարց է: Եւ ի վերջոյ, վարձքը կատար մեր սիրելի Առաջնորդին՝ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանին, որ իր հայրական հովանին միշտ կը տարածէ մեր համայնքին բոլոր կազմակերպութիւններուն վրայ:

*Արեւ*, 31 Մարտ 1990, 74-րդ տարի, թիւ 21446, էջ 1

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ «ՓԱՌԱՏՕՆ»-Ը

Ն. Մ.

Ուրբաթ, 30 Մարտ 1990-ի երեկոյեան Գալուստեան Ազգային Վարժարանի հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ 1988-89 ուսումնական տարեշրջանի ամավերջի հանդէսը՝ հովանաւորութեամբ թեմիս Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ Թեմական Ժողովի Ատենապետ Տէր եւ Տիկ. Անդրանիկ Մեսրոպեանի:

Վարժարանին բազմաջան տնօրէն Պր. Նշան Վարդեանի արտասանած Հուսկ Բանքէն ու վկայականներու եւ մրցանակներու բաշխումէն ետք գործադրուեցաւ գեղարուեստական յայտագիր մը:

Ամավերջի այսօրինակ հանդիսութիւններէն նկատեցինք որ գեղարուեստական յայտագիրները, վերջին շրջանին, տարուէ տարի կը գերազանցեն զիրար: Իսկապէս զմայլեցանք մանաւանդ այս տարուան գեղարուեստական «փառա-

տօն»-էն, որ հակառակ աշակերտութեան նուազած թիւին եւ հակառակ գաղութին նօսրացած վիճակին (ինչպէս որ այլ ղեկավարներ կու լան, յուսալքուած՝ «գաղութը նօսրացա՜ծ է» յանկերգը կրկնելով, փոխանակ մտածելու թէ ինչպէս կարելի է գաղութին ամէն մէկ անդամը, երեխայէն մինչեւ տարեցը օգտագործել, որ իր բաժինը բերէ, որեւէ ձեռնարկի ընթացքին կամ որեւէ աշխատանքի մէջ, ի շահ գաղութիս բարօրութեան)։

Ամբողջ աշակերտութիւնը խանդավառուած, իւրաքանչիւր ուսանող կարծէք պարտաւորութիւն կը զգար իր բաժինը բերելու ձեռնարկին։ Հայրենասիրական զգացումով տոգորուած՝ այդ պատանին կա՛մ կ՚արտասանէր, կամ կ՚երգէր, կա՛մ կը նուագէր, կա՛մ կը պարէր կամ երգչախումբին մաս կը կազմէր։ Վերջապէս գրեթէ ամբողջ աշակերտութիւնը բարի մրցակցութենէ առաջնորդուած կու տար իր լաւագոյնը։

Սակայն այս բոլորը որո՞ւ կը պարտինք։ Առանց ընկրկելու ըսենք, թէ առաջին գիծի վրայ կը դրուի վարժարանին տնօրէն Պր. Ն. Վարդեանը, որ լաւ արուեստասէր մըն է եւ գիտէ ինչ կը նշանակէ գեղարուեստական ճաշակ։ Ապա կու գայ ուսուցչական կազմը, յատկապէս հայերէն լեզուի դաստիարակները, որոնցմէ չենք կրնար չյիշել վարժարանին փոխ-տնօրէն Պր. Յակոբ Համբիկեանը, որ կարեւոր դեր կը կատարէ ընդհանրապէս, միաժամանակ ազգային ոգի ներշնչելով աշակերտին։ Պր. Նուպար Տընկճեանը՝ մեծ ժամանակ կը յատկացնէ զանոնք մարզելու։ Գալով երաժշտական բաժնին, այդ ալ կը պարտինք երգի ուսուցիչ խմբավար Հայկ եւ Անահիտ Սարգիսեան արուեստագէտ ամոլին։ Այս երաժշտագէտ զոյգը յուսալքում չի ճանչնար եւ գիտէ մօտենալ ուսանողին, որովհետեւ չի հաւատար որ հայ աշակերտ մը կրնայ իր մէջ չունենալ գեղարուեստական ճաշակ։

Մեր դաստիարակները այսպէս, ներքին գոհունակութիւն մը ստանալով կը յաջողին համեմատաբար մեծ թիւով աշակերտներ բեմ հանելու եւ եռուզեռ մը ստեղծելու վարժարանէն ներս, որը մեծապէս կը նպաստէ հայապահպանման նուիրական գործին։

Ուրեմն կարելի է ըսել, թէ այնքան ատեն որ նոր սերունդին մէջ ընդունակ տարրեր կը պատրաստուին եւ աշխատանք կը տարուի հայկական վարժարաններուն մէջ, մենք կրնանք լաւատես ըլլալ վաղուան համար։

*Ջահակիր*, 19 Ապրիլ 1990, նոր շրջան, թիւ 1205, էջ 1, 3-4

## ՉԱՅՔՈՎՍՔԻ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ՇԱԲԱԹ, 7 ԱՊՐԻԼ 1990

## ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

# Հ.Բ.Ը.Մ

ԳԱՀԻՐԷ



## Թմբերգային Երեկոյ

**Շաբաթ, 7 Ապրիլ 1990,**
**Երեկոյեան ժամը 8.30 ին**

**« ՋԱՅՔՈՎԱՔԻ » ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

127, ԹԱՀՐԻՐ ՓՈՂՈՑ - ՏՈՔՔԻ, ԳԱՀԻՐԷ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՑԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՈՒՆ

**ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ**

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

## Կ Ռ Ո Ւ Ն Կ

**ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ**

ԽՄԲԱՎԱՐ

**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

## *Programme*

# Ա ՄԱՍ

*Եգիպտական Քայլերգ*

*Հ Բ Ը Մ ի Քայլերգ*

*Ով Հայոց Աշխարհ* — *Մակար Եկմալեան*

*Կիւլվերանից Ելանք* — *Ժողովրդական*
*Մշկ․ Էտկար Յովհաննէսեան*

Մենակատար Լիւսի Տէր Ներսէսեան

*Տաւիղ* — *Խաչատուր Աւետիսեան*

Մենակատար Սիլվա Թերզիպաշեան

*Եիս Քու Ղիմէթն* — *Սայաթ Նովա*

Մենակատար Հարի Չէչենեան

*Արի Նար Ջան* — *Ժողովրդական*
*Մշկ․ Թաթուլ Ալթունեան*

Մենակատար Թալին Կապէեան

*Էլ Հէննա* — *Արաբական Ժողովրդական Երգ*

Մենակատար Լիւսի Տէր Ներսէսեան

*Լիրիքական* — *Ճէյմզ Կէօզէլեան*

Մենակատար Կատիա Մասղաշեան

*Հարի Հարալօ* — *Արմէն Տիգրանեան*

# ԸՆԴՄԻՋՈՒՄ

# Բ. ՄԱՍ

**Ազգային Օրհներգ** — **Կոմիտաս**

**Մնաք Բարով** — **Արամ Մերանկիւլեան**

Մենակատար Սիլվա Թերզիպաշեան

**Ջանս Մումուռ** — **Սահառունի**

**Սարերի Հովին Մեռնեմ** — **Երգտ. Յովհաննէս Պատալեան**
**Մշկ. Թաթուլ Ալթունեան**

**Ասում են թէ մոռացել ես** — **Խաչատուր Աւետիսեան**

**Աշնան Մեղեդի** — **Ռոպէրթ Ամիրխանեան**

Մենակատար Կասիա Մատղաշեան

**Դոնիկ, Դոնիկ** — **Ազգագրական**

Մենակատարներ Սեդա Ալեքսանեան, Մարի Տէր Ներսեսեան
Լեւոն Յովակիմեան, Արմէն Չէչնէնեան

**Հանայ Նար Նար, Նինո** — **Ազգագրական**



| | |
|---|---|
| *Դաշնամուր* | *Կասիա Ճղալեան* |
| *Սրինգ* | *Անահիտ Սարգիսեան* |
| *Տհոլ* | *Ռուբէն Թերզիպաշեան* |

Egyptian National Anthem

A. G B. U. Anthem

Ov Ha.ots Ashkhar ( Patriotic Song )

Gulveranitz Yelank (Popular Sad Song) Solo Lucy Der Nersessian

Davigh ( Lyric Song ) Solo Sylva Terzibashian

Yis Kou Ghimetn SAYAT NOVA Solo Harry Tchetchenian

Ari Yar Djan ( Popular Love Song ) Solo Talin Gabeyan

El Henna ( Arabic Popular Song ) Solo Lucy Der Nersessian

Lirikagan ( Lyric Song ) Solo Gassia Madghashian

Hari Haralo (Patriotic Song )

## INTERVAL

Azkayin Orhnerk ( Liturgy ) KOMITAS

Mnak Parov ( Lyric - Patriotic Song ) Solo Sylva Terzibashian

Djanes Mrmour ( Lyric Song)

Sareri Hovin Mernem ( Popular - Love Song )

Asoum En Te Moratsel Es ( Love Song )

Ashnan Megheti ( Love Song ) Solo Gassia Madghashian

Tonig, Tonig ( Folkloric Song )

Solo Seta Alexanian, Mary Der Nersessian
Levon Hovagimian, Armen Tchetchenian

Hanay Nar Nar, Nino ( Folkloric Song )

Performed by AGBU's Choral

## GROUNG

Conductor Mo. Haig SARKISSIAN

| | |
|---|---|
| Piano | Gassia Djeghalian |
| Flute | Anahid Sarkissian |
| Drum ( Dhol ) | Roupen Terzibashian |

# ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԴԱՐՁԵԱԼ ԼՈՒՍԱՐՁԱԿՆԵՐՈՒ ՏԱԿ

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Այլեւս աւելորդ է ըսել, թէ Կռունկ երգչախումբի ելոյթները կը դասուին բարձրորակ մակարդակի մը վրայ։ Եւ սակայն պէտք է խոստովանիլ, որ իւրաքանչիւր ելոյթ փառատօն մըն է, եւ դեռատի աստղերու ծնունդը։

Այս անգամ եւս մենք ներկայ եղանք Կռունկ երգչախումբի բարձրորակ արուեստի երեկոյին, որ տեղի ունեցաւ անցեալ Շաբաթ 7 Ապրիլ 1990-ի երեկոյեան ժամը 8.30-ին, Չայքովսկի հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ Եգիպտահայ Յարանուանութեանց Պետերուն։

Համերգին ներկայ էին, Կաթողիկէ համայնքէն՝ Անդրանիկ Վարդապետ Աղամեան, Տէր Սարգիս Խաչակիր Քհնյ. Մելքոնեան եւ Երէցտիկինը, Պատկ. Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Անդրանիկ Մեսրոպեան, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան ցկեանս նախագահ Ընկեր Վահագն Տեփոյեան, Ատենապետ Ընկեր եւ Տիկին Եդուարդ Զարդարեան, Կոկանեան Սրահի ցկեանս նախագահ Ընկեր Կարպիս Եազըճեան, կազմակերպիչ Հ.Բ.Ը. Միութեան Յանձնաժողովի Ատենապետ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան, Գահիրէի Մասնաժողովի Ատենապետ Ընկեր եւ Ընկերուհի Նորայր Տէօվլէթեան, գաղութիս հանրածանօթ երաժշտագէտ Մօ. եւ Տիկին Եդուարդ Յակոբեան, եւ երաժշտասէր ստուար բազմութիւն մը թերեւս եթէ վայրը հեռու չըլլար, շատ աւելի կրնար ըլլար թիւը ներկաներուն։ Երանի կազմակերպիչ յանձնախումբը գաղափարը ունենար օթօպիւսի սպասարկութիւն հաստատելու՝ դիւրացնելու համար երթեւեկը մանաւանդ Հելիոպոլսաբնակներունը։

Ուրեմն, անցնելով յայտագրի գործադրութեան, վարագոյրը կը բարձրանար ու մեր դէմը կը պարզուէր Կռունկ երգչախումբը իր քանվեց անդամ-անդամուհիներով, վայելուչ ու ճաշակաւոր զգեստաւորումով...։

Նոր էր երգացանկը, եւ ինչպէս իւրաքանչիւր համերգի, այս անգամ եւս Մօ. Հայկ Սարգիսեան հրամցուց շատ հաճելի անակնկալ մը, որ կու գայ փաստելու որ եգիպտահայ գաղութը հակառակ իր նօսրացմանը, կրնայ տակաւին մշակոյթին տալ տաղանդաւոր նոր երիտասարդ-երիտասարդուհիներ, որոնք իրենց վստահուած պատասխանատուութիւնը պատուաբերօրէն կը տանին. կենսականը զանոնք մէջտեղ հանելն է։

Յոտնկայս ունկնդրելէ ետք Եգիպտական եւ Հ.Բ.Ը. Միութեան հիմները, յայտագրի առաջին մասը կը սկսի երգչախումբի ներդաշնակ կատարումով Մակար Եկմալեանի *Ով հայոց աշխարհ* ազգագրական երգով, որ կը զօտեպնդէ

հայրենիքի գոյութիւնը առյաւէտ։

Լիւսի Տէր Ներսէսեան, ներկայ ունկնդիրը յաւերժութեան խոկումէն դուրս կը հանէ պահ մը, իր թաւշային ձայնովը մեներգելով *Կիլվերանից ելանք* ժողովրդական երգը, որ մշակումն էր Էտկար Յովհաննիսեանի։

Զանազան մեկնաբանութիւններով ունկնդրուած, Խաչատուր Աւետիսեանի *Տալիղ* երգը, քնքշօրէն կը մեներգէր Տիկին Սիլվա Թէրզիպաշեան, ինքնայատուկ մեկնաբանութեամբ, արժանանալով ունկնդիրներուն ջերմ գնահատանքին։

*Եիս քու դիմէթն* երգը եւ անմահին Սայաթ Նովան մեկնաբանողը եղաւ Հարի Չէչճէնեան, որ իր աշուղական ձայնովը առինքնեց ներկաները, փոխադրելով զանոնք Սայաթ Նովայի վիպապաշտութեան շրջանը ուր գոյութիւն ունէր անկեղծ սէրը։

Ու ահա կրկին կը հնչէր մեր ժողովրդական երգերէն *Արի եար ջան դու նազով արի* երգը, որ մշակումն էր Թաթուլ Ալթունեանի, զոր նազով երգեց Թալին Կապէեանը, երգչախումբի ընկերակցութեամբ։

Նոյնքան հարուստ էր եւ արաբական երգարուեստը, որմէ նմուշ մը ներկայացուց Լիւսի Տէր Ներսէսեանը, ընկերակցութեամբ երգչախումբին, *Էլ հէննա* ժողովրդական երգը, զոր կ'երգեն հարսանեկան օրը, երբ հարսը կը գեղեցկացնեն բնական բոյսէ պատրաստուած շպարով։ Լիւսի Տէր Ներսէսեան եղաւ այս երգին լաւագոյն մեկնաբանուհին։

Ճէյմզ Կէօզէլեանի *Լիրիքական*ը կատարեց երգչախումբը, երբ օրուան առաջին անակնկալն էր որ կը հրամցնէր խմբավար Հայկ Սարգիսեան, մենակատարի բաժինը վստահելով Կասիա Մատղաշեանի, որ եղաւ օրուան նորածին աստղը, սկիզբը շատ երկչոտ, բայց յաջող կերպով դուրս եկաւ ստանալով ներկաներուն ծափողջոյնները։ Յայտագրի առաջին մասը աւարտեցաւ Արմէն Տիգրանեանի *Հարի հարալօ*ով, զոր կատարեց երգչախումբը։

Կարճ ընդմիջումէ մը ետք տեղի ունեցաւ յայտագրի երկրորդ մասի գործադրումը, որ սկսաւ Կոմիտասի *Ազգային օրհներգ*ով (Հայրապետական մաղթերգ) կատարուած երգչախումբին կողմէ, որ յոտնկայս ունկնդրուեցաւ։

Թէեւ հզօր, ամուր կամքի տէր, բոլոր փոթորիկներուն դիմացող ազգ մըն ենք, սակայն մեր երգերուն մէջ զգալի է թախիծը, այդպիսիներէն էր Արամ Մերանկիւլեանի հրաժեշտի երգը *Մնաք բարով*ը, զոր մեներգեց Տիկին Սիլվա Թէրզիպաշեան յուզելով ներկաները. Սիլվա, ինչպէս միշտ այս անգամ եւս գերազանց էր իր կատարողութեանը մէջ։

Երգչախումբը հետեւելով խմբավար Հայկ Սարգիսեանի չափերուն, երգեց Սահառունիի *Ջանս մռմուռ*ը, Յովհաննէս Բաղալեանի երաժշտութեամբ եւ Թաթուլ Ալթունեանի մշակումով *Սարերի հովին մեռնեմ*ը, եւ Խաչատուր Աւետիսեանի *Ասում են թէ մոռացել եսը*, որ քառաձայն անթերի ելոյթ մըն էր։

Ռոպէրթ Ամիրխանեանի *Աշնան մեղեդի*ն մեներգեց Կասիա Մատղաշեան

օրուայ նորահաս աստղը, որ առաջին մասին մէջ դեռ երկչոտ, սակայն ահա այս երգին մէջ կը յայտնուէր Կասիայի ձայնին հարստութիւնը, թախծոտ երգ մը զոր նոյնքան թախիծով կատարեց ան, որ աւարտին որոտընդոստ ծափողջոյններով դիմաւորուեցաւ, եւ մինչեւ որ Կասիա չկրկնեց իր երգը ծափերը չդադրեցան: Կասիա Մատղաշեան ոչ միայն հրապուրիչ ձայնով օժտուած է, այլ նաեւ համեստ ու հեզ բնաւորութեամբ մըն ալ որուն ի բոլոր սրտէ նորանոր յաջողութիւններ կը մաղթենք, շնորհաւորելով զինքը, եւ շնորհակալ ըլլալով խմբավար Հայկ Սարգիսեանի, որ երիտասարդ աստղերու ստեղծագործ մըն է անտարակոյս:

Յայտագրին երկրորդ անակնկալը ապահովուած էր ազգագրական *Դոնիկ դոնիկ* երգով, որուն մենակատարներն էին Սեդա Ալեքսանեան, Մարի Տէր Ներսէսեան, եւ որոնց կողքին կու գային յայտնուելու արական նոր դէմքեր որպէս մենակատար Լեւոն Յովակիմեանը եւ Արմէն Չէչճէնեանը, որոնք թէեւ երգչախումբին սիւներէն են, եւ սակայն որպէս մենակատարներ պատուաբեր ելոյթ մը ունեցան:

Ակամայ, արդէն հասած էինք յայտագրի վերջին երգին, որ եղաւ *Հանայ նար, նար նինո* ազգագրական խմբերգը:

Աւելորդ է կրկնել շատ յաջող, զգլխիչ երգարուեստի երեկոյ մակդիրը, որովհետեւ Կոռնկի առաջին ելոյթը չէ այս մէկը. անոր բոլոր ձեռնարկները պսակուած են յաջողութեամբ, շնորհիւ խմբավար Հայկ Սարգիսեանի յարատեւ աշխատանքին, երգչախումբի հեւասպառ փորձերուն, եւ նուագի կազմին՝ դաշնամուրով ընկերուհի Կասիա Ճղալեանի, սրինգով Տիկին Անահիտ Սարգիսեանի, դհոլով Ռուբէն Թերզիպաշեանի խղճամիտ օժանդակութեանը. հոս աւելցնենք, թէ նուագող այս երրեակին կու գար աւելնալու նոր դէմք մը, յանձին Էտուար Միլատի, որ կը նկատուի երգչախումբի փոքրագոյն անդամը. այս անգամ Էտուար դհոլով մասնակցեցաւ *Էլ հէննա* արաբական երգի կատարմանը:

Այսպէսով վերջ կը գտնէ այս խմբերգային երեկոն, եգիպտահայ մշակոյթի պատմութեան աւելցնելով պատուաբեր էջ մը եւս:

Վերջացնելէ առաջ կ՚ուզէինք փոքր ակնարկութիւն մը կատարել, թէ յետայսու ջերմօրէն պիտի խնդրուէր, որեւէ կազմակերպիչ հաստատութենէ, թերթին մէջ լոյս տեսնող ծանուցումին աւելցնել, նման որակաւոր հանդէսներու Փոքրերու Մուտքը Բացարձակապէս Արգիլուած է..., անհաճոյ կացութեան չմատնելու համար ծնողները, ունկնդիրները, եւ բեմին վրայ կատարողները. նաեւ խուսափելու համար յայտագրին զբօսապտոյտի բնոյթ տալու երեւոյթէն...:

Ասկէ զատ, վարձքը կատար բոլորին, կազմակերպիչ յանձնախումբ թէ մասնակցող: Կեցցես Հայկ Սարգիսեան: Շատ ապրիք տղաք:

*Արեւ*, 12 Ապրիլ 1990, 74-րդ տարի, թիւ 21456, էջ 1, 4

Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐ

**ԿԻՐԱԿԻ, 22 ԱՊՐԻԼ 1990**

ՄԵԾ ԵՂԵՌՆԻ 75-ԱՄԵԱԿԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԻ
ՍՐԲԱԶԱՆ ՀԱՄԵՐԳ

Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐ

*Կիրակի, 22 Ապրիլ 1990, երեկոյեան ժամը 8-ին*

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ*

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ա. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ*

**ՄԵԾ ԵՂԵՌՆԻ 75-ԱՄԵԱԿԻ**

**ՈԳԵԿՈՉՈՒՄԻ**

**ՍՐԲԱԶԱՆ ՀԱՄԵՐԳ**

*ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ*

**"ՇՆՈՐՀԱԼԻ" ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ**

*եւ անոր*

*ՄԵՆԱԿԱՏԱՐՆԵՐՈՒՆ ու ԱՍՄՈՒՆՔՈՂՆԵՐՈՒՆ*

*ԽՄԲԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ*

**ՄՕ. ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆԻ**

*ԵՐԳԵՀՈՆԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԵԱՄԲ*

**ՄՕ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 7 Ապրիլ 1990, 74-րդ տարի, թիւ 21452, էջ 4

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻ
ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ
ՅԱՅՏԱԳԻՐ
ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ – ԺԱԳ ՅԱԿՈԲԵԱՆ
ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ – ԿՈՄԻՏԱՍ ԱՂՑԵՑԻ
ԿԱԹՈՂԻԿՈՍ – ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ – ՄԱԿԱՐ
ԵԿՄԱԼԵԱՆ – ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ – ԵՂԻՇԷ
ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆ – ՊԵՏՐՈՍ ԱՖՐԻԿԵԱՆ – ՏԻԳՐԱՆ
ՉՈՒԽԱՃԵԱՆ – ԼԻՊԱՐԻՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ – ՎԱՐԴԱՆ
ՍԱՐԳԻՍԵԱՆ – ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ – ԱԼԵՔՍԱՆԴՐ
ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ – ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ
ՈՉ ՈՔԻ ՀՐԱՒԷՐ ԿԸ ՂՐԿՈՒԻ

Յայտարարութիւն (շարունակութիւն)

## ՍՐԲԱԶԱՆ ՀԱՄԵՐԳ
(հատուած)

ԱԻԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Չենք կրնար մոռնալ խմբավար Հայկ Սարգիսեանի երգեհոնի ընկերակցութիւնը, որ իր փայլուն կատարումով օժանդակեց Սրբազան այս Համերգին աներկբայօրէն փայլուն յաջողութեան։

Բայց հոս չենք կրնար չյիշել նաեւ վաստակաւոր դաշնակահարուհի Տիկին Շամիրամ Դարմանեանը, որ տարիներով, երգեհոնի իր ընկերակցութեամբ ապահոված էր նոյնպէս յաջողութիւնը Մօ. Եդուարդ Յակոբեանի բոլոր համերգներուն։ Ճիշտ է որ Հայկ Սարգիսեան մեզի փնտռել չտուաւ Տիկին Շամիրամ Դարմանեանը, բայց երգեհոնին առջեւ անոր բացակայութիւնը յուզիչ պահն էր այս համերգին։

*Արեւ*, 2 Մայիս 1990, 74-րդ տարի, թիւ 21467, էջ 1

## ՍՐԲԱԶԱՆ ՀԱՄԵՐԳ
(հատուած)

ՊԵՏՐՈՍ ԳՈԳՈՐԵԱՆ

Շնորհաւորելի է Մօ. Հայկ Սարգիսեանը որ երգեհոնի նուագակցութեամբ, իր անթերի օժանդակութիւնը բերաւ բոլոր երգերուն՝ դժուարին ընկերակցութեամբ։

*Զաւակիր*, 3 Մայիս 1990, նոր տարի, թիւ 1206, էջ 1, 3

## ՓԱՌԱՏՕՆ, ՊՈՒԼԿԱՐԻԱ

## 28 ԱՊՐԻԼ 1990

Երգչուհի Անուշքա (Անուշքա Չատրճեան) կը տիրանայ
Լաւագոյն Երգին (Best Song)

Երգի վերնագիր՝ *Թիկի նըղաննի*
Խօսք՝ Ռետա Ամին
Եղանակ՝ Մոհամմէտ Մուկի
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

# ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ՝ ՄՇԱԿՈՒՄԻ ԻՒՐԱՅԱՏՈՒԿ ՈՃ ՄԸ

Թարգմանութիւն արաբերէնէ՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Սիրելի ընթերցող.

Կը գտնուին երկու տեսակ արուեստագէտներ. մէկը ընդունակ է արտայայտուիլ իր արուեստին մասին, միւսը կը բաւարարուի լաւ արուեստի արտադրութեամբ՝ լրատուամիջոցներուն թողելով արտայայտուիլ իր մասին։ Այս շաբաթ *Ալ-'Ալամ եուղաննի* հանդիպեցաւ եգիպտացի արուեստագէտ, երաժշտութիւն մշակող Հայկ Սարգիսեանի հետ։ Հարցուցի՝ ո՞վ ես դուն։ Պատասխանեց. «Քաղաքացիութեամբ եգիպտացի, ծագումով հայ արուեստագէտ մըն եմ։ Ուսանած եմ [Գահիրէի] երաժշտանոցի դաշնակի բաժինը, ապա ճամբորդած եմ Կիպրոս՝ ուր ստացած եմ Երաժշտութեան Ռոյալ Աքատեմիքի վկայականը։ Ուսումս շարունակած եմ Խորհրդային Միութեան մէջ, մասնագիտանալով խմբավարութեան, մշակումի եւ հարմոնիի մէջ։ Մագիստրոսի աստիճանը ստանալէս ետք, 1983-ին վերադարձած եմ Եգիպտոս։ Ներկայիս Արուեստի Կաճառին մէջ կը դասաւանդեմ երաժշտական տեսութիւն»։

Եգիպտոսի մէջ գործադրուող երաժշտական մշակումին մասին կ'ըսէ. «Եգիպտոսի մէջ երաժշտական մշակումը կը զարգանայ արագօրէն եւ գիտական հիմքերու վրայ եւ ունինք բարձր ձիրքերու եւ ընդունակութիւններու տէր երիտասարդ մշակողներ։ Ոմանք կը կարծեն թէ երաժշտական մշակումը կը հանդիսանայ բազմաթիւ երաժշտական նուագարաններու կուտակում, նուագարանային միջնանուագներու երկարում կամ մենանուագներու կրկնութիւն։ Այս տեսութիւնները եւս գիտական զարգացում ապրեցան՝ ընթանալով դէպի երաժշտական թեքնիքի պարզեցում։ Ամէն պարագայի, երաժշտական մշակումը չի սահմանափակուիր դասականով կամ արեւելեանով։ Ան խիստ կարեւոր նշանակութիւն ունի երիտասարդական երգերուն մէջ, ուր իր պարտականութիւնն է երեւան հանել պարզ եղանակները, ինչպէս նաեւ եղանակներուն փոխանցելով յստակ բայց ոչ միամիտ, այլեւ գունաւոր ու հաղորդական ոճ մը, զանոնք մատչելի դարձնել մարդկային զգացմունքներուն»։

Հարցուցի թէ ո՞ր երիտասարդին կը հաւանի։ Արուեստագէտ Հայկ Սարգիսեան պատասխանեց. «Շատ կը հաւանիմ արուեստագէտ Համիտ Ալ-Շաէրիին։ Ան կը գերազանցէ իր սերունդը որովհետեւ ունի իւրայատուկ ոճ մը եւ յստակ դրոշմ մը, ինչպէս նաեւ կը տիրապետէ իր փոխանցելիք խօսքին։ Իսկ անոնք որոնք կը կարծեն թէ ընդունակ են իր նման ստեղծագործել, պէտք է նախ եւ առաջ կարողանան այդ ընդունակութիւնը փաստել գործով եւ ոչ խօսքով։ Գործ ըսելով

նկատի ունիմ ոչ միայն զուտ երաժշտական ստեղծագործութիւնը, այլեւ երաժշտութիւն մը՝ որ հարազատ է երիտասարդներուն եւ որուն կ՚ընդառաջէ հանդիսատեսը»:

Հարցուցի թէ ի՞նչ է կարծիքը Անուշքայի ձայնին մասին:

Ըսաւ. «Շատ երջանիկ եմ Անուշքայի հետ ունեցած փորձառութենէս, քանի որ ասիկա առիթ մը եղաւ ինծի հասարակութեան ներկայացնել եգիպտացի մեծ երգահաններու գործերու մշակումներս: Կը կարծեմ որ Անուշքայի լայն յաջողութիւնը լաւագոյն գրաւականն է իմ գնահատական արտայայտութիւններուս: Նորութիւն մը աւելցուցած չեմ ըլլար եթէ ըսեմ որ Անուշքա տակաւին չէ բացայայտած իր բոլոր կարողութիւնները: Ան ունի խիստ ուժեղ ձայն մը՝ ընդարձակ ձայնածաւալով, եւ ընդունակ է անկաշկանդ կերպով կատարել բոլոր մաքամները: Իբրեւ մշակող, միշտ դիւրին եղած է համագործակցիլ իր հետ, քանի որ ան կրնայ երգել որեւէ պահանջուած ձայնամասի մէջ»:

Հարցուցի. «Չե՞ս կարծեր՝ որ Անուշքայի ձայնը պատշաճ է միայն քնարական-ռոմանթիք երգերու»:

Պատասխանեց. «Այո, համաձայն եմ: Իր ձայնը մարդուն կը ճախրէ երեւակայական աշխարհին մէջ որովհետեւ խիստ թափանցիկ է եւ խորապէս զգայուն: Բայց հարցը այստեղ կանգ չ՚առներ: Իր քնարականութիւնը կը կրէ նաեւ մարտահրաւէր, վճռականութիւն եւ կ՚ընդգրկէ կեանքի գեղեցիկ իրականութիւնը:

«Անուշքա չի վախնար դիմել փորձերու: Ան անընդհատ կը փորձէ իսկ փորձը կը հանդիսանայ յաջողութեան միակ ճիշդ ճամբան: Ան պէտք է շարունակէ փորձել, քանզի միայն երիտասարդութիւնն է որ ընդունակ է փոխել եւ վերածնել երաժշտութիւնը»:

*Ալ-՚Ալամ եուղաննի*, հանդէս, Գահիրէ, հատոր 19, Օգոստոս 1990

## ՍԱԼԱՀ ԷԼ-ՏԻՆԻ ՄԻՋՆԱԲԵՐԴ, ԳԱՀԻՐԷ

## ԵՐԵՔՇԱԲԱԹԻ, 14 ՕԳՈՍՏՈՍ 1990

## ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԵՐԳԻ ՓԱՌԱՏՕՆ



# مهرجان الموسيقى والغناء
# بقلعة صلاح الدين

الثلاثاء ١٤ أغسطس
Tuesday August 14 th

9.30 PM: String Quartet.

| | |
|---|---|
| Ahmed Ramzy | ( Violin ) |
| Fawzy Ibrahim | ( Violin ) |
| Alaa Khalil | ( Viola ) |
| Alaa Abdallah | (Cello ) |

Including works by Mozart and Atteya Sharara, as well as a song of the Lebanese artist Fayruz, specially arranged for the quartet by H. Sarkissian .

٩٫٣٠ م : الرباعى الوترى

| | |
|---|---|
| أحمد رمزى | "كمان" |
| فوزى أبراهيم | "كمان" |
| علاء خليل | "فيولا" |
| علاء عبد الله | "تشيللو" |

يضم البرنامج أعمالا لموتسارت وعطية شرارة بالأضافة الى أغنية للفنانة الكبيرة فيروز والتى قام بتوزيعها خصيصا لهذه المجموعة الفنان هايك ساركيسيان .

ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

**"ԱՐԵՒ"Ի 75 ԱՄԵԱԿԻ ՇՔԵՂ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**

**ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**

**ԳԵՐԱՇՆՈՐՀ ՏԷՐ ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

**ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ ԱՅՍ ԱՌԹԻՒ ՅԱՏԿԱՊԷՍ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ**

**ԸՆԿԵՐ ՀԱՅԿԱՇԷՆ ՈՒԶՈՒՆԵԱՆ**

**ՄՈՒՏՔԸ ՀՐԱՒԷՐՈՎ**

ԳԱՀԻՐԷ՝ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՇԱԲԱԹ, 22 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1990

ԺԱՄԸ 9-ին՝ ՔՈՔԹԷՅԼ

ԺԱՄԸ 10-ԻՆ՝ ՃԱՇԿԵՐՈՅԹ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳԻՐ

ԱՂԵՔՍ. «ԼԱՒ–ՊՕԹ» ՃԱՇԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**Հանդիսաւոր Ճաշկերոյթ**

ԿԻՐԱԿԻ, 23 ՍԵՊՏ. 1990, Կ.Ե. ԺԱՄԸ 8-ԻՆ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԻՒՊԱՏՈՍ ԵՒ ՏԻԿԻՆ
**ՎԱՀԱՆ ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳԻՐ

Յայտարարութիւն
*Արեւ*, 11 Սեպտեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21570, էջ 4

## *ԱՐԵՒ* ՕՐԱԹԵՐԹԻ 75-ԱՄԵԱԿԸ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

Գեղարուեստական յայտագրին իրենց բաժինը բերին խմբավար Հայկ Սարգիսեան՝ դաշնամուրով եւ իր տիկինը՝ ֆլիւթով, որոնք նուագեցին երկու հայկական կտորներ, ներկաներուն ջերմ գնահատանքին արժանանալով:

*Զահակիր*, 4 Հոկտեմբեր 1990, նոր շրջան, թիւ 1214, էջ 1, 3

## *ԱՐԵՒ* ՕՐԱԹԵՐԹԻ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 75 ԱՄԵԱԿԻ ՓԱՌԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԳԱՀԻՐԷԻ ԵՒ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ԵԱՓՈՒՃԵԱՆ

Գահիրէի մէջ, տեղի ունեցաւ գեղարուեստական հակիրճ յայտագիր մը, որուն ընթացքին, Օր. Մարալ Տէօվլէթեան խոր ապրումով եւ հիանալի մեկնաբանութեամբ արտասանեց Վահան Թէքէեանի *Լեզուն որով գրեցի* եւ Պարոյր Սեւակի *Նախանձում եմ* քերթուածները: Իսկ երաժիշտ ամոլը՝ Հայկ եւ Անահիտ Սարգիսեանները, առաջինը դաշնակի վրայ եւ երկրորդը սրինգով, միասնաբար նուագեցին Ռոմանոս Մելիքեանի *Վարդը* եւ Ռոպերթ Ամիրխանեանի *Ես միշտ ուրախ եմ լինում* երգերը՝ արհեստավարժ կատարեալ մեկնաբանութեամբ, եւ աւարտին՝ Տիկին Սարգիսեանի մատուցուեցաւ ծաղկեփունջ մը:

*Արեւ*, 20 Հոկտեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21602, էջ 2-3

# ԿՈԿԱՆԵԱՆ ՄՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

# ՀԻՆԳՇԱԲԹԻ, 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1990

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԾՆՆԴԵԱՆ 125 ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

## ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԾՆՆԴԵԱՆ 125 ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

(հատուած)

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Առաջին առթիւ Զօրավար Անդրանիկի կեանքն ու հերոսութիւնները ներկայացուեցան սահիկներու ցուցադրութեամբ, որուն պատրաստութիւնը կատարած էր ճարտարապետ Նայիրի Համբիկեան, թէքստը պատրաստած էին Պր. Յակոբ Համբիկեան եւ Արմին Երանոսեանը, եւ որուն ընթերցումը շատ յաջող կերպով, յստակ առոգանութեամբ ներկայացուց Մարալ Տէօվլէթեանը:

Պահ մը Զօրավար Անդրանիկի հետ ապրելէ ետք, ու անոր սպիտակ ձիուն վրայ, միասնաբար սաւառնելէ ետք մեր հայրենի լեռներն ու ժայռերը, վերադառնալով սրահ, մենք ունկնդրեցինք, Կռունկ երգչախումբի մենակատարներէն Ռաֆֆի Չէչճէնեանի եւ Սիլվա Թերզիպաշեանի Անդրանիկի մասին հայրենասիրական երկու երգեր, որոնց կ'ընկերանային Հայկ Սարգիսեան դաշնամուրով, եւ Ռուբէն Թերզիպաշեան դհոլով, այս շատ յաջող ելոյթը ընդունուեցաւ բուռն ծափերով:

*Արեւ*, 26 Նոյեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21633, էջ 1




*Հինգշաբթի 22 Նոյեմբեր 1990-ի երեկոյեան ժամը 8*

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ

ԾՆՆԴԵԱՆ 125 ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

*ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ*

**ՊՐ. ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՅԱՅՏԱԳԻՐ
*Մասնակցութեամբ*

*ՏԻԿԻՆ ՍԻԼՎԱ ԹԵՐՋԻՊԱՇԵԱՆԻ*

*ՊՐ. ՌԱՖՖԻ ՉԷՉՃԷՆԵԱՆԻ*

*ՊՐ. ՌՈՒԲԷՆ ԹԵՐՋԻՊԱՇԵԱՆԻ (տհոլ)*
*ՊՐ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ (դաշնամուր)*

*Զօրավար Անդրանիկի կեանքը պիտի ներկայացուի սահիկներու ցուցադրութեամբ, զոր պատրաստած է*

*ՕՐ. ՆԱՅԻՐԻ ՀԱՄԲԻԿԵԱՆ*

*Թեքստը պիտի ներկայացնէ*
*ՕՐ. ՄԱՐԱԼ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ*

*Սիրալիր հրաւէր հայ հասարակութեան անխտիր*

Յայտարարութիւն
*Արեւ*, 19 Նոյեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21627, էջ 4

## ՉԱՅՔՈՎՍՔԻ ՄՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 6 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1990

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ՝ ՉԱՅՔՈՎՍՔԻ ԾՆՆԴԵԱՆ 150-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ

The Soviet Cultural Centre

127, Tahrir Street

IN COLLABORATION WITH

THE MUSICAL YOUTH SOCIETY

&

THE CAIRO CONSERVATOIRE

presents

a C O N C E R T

in commemoration of the birthday of the great russian composer

TCHAIKOVSKY

7 p.m. Thursday 6th December 1990

at the Tchaikowsky Hall

P R O G R A M M E

* Khaled Abdallah cello

TCHAIKOVSKY Nocturne

* Magdi Ibrahim trumpet

P.G.VIVIANOWSKY Sonata A4

G.ABDEL-RAHIM Rhumba Trumpet

* <u>Group of four Bassoons of the Conservatoire</u>

Fawzi El-Shami

Ahmed El-Hennawi

Sherine El-Sherbini

Tamer Kamal-Eldin

- J.W.H Ertel Sonata a quattro
  - Largo
  - Minuetto
  - Vivace

I N T E R V A L

* Magdi Ibrahim trumpet

TCHAIKOVSKY Napolitan Song

BOZZA Caprice

* <u>Group of Four Bassoons of the Conservatoire</u>

- Folk Song Bent El Shalabyya arr. by Haik Sarkissian

PROKOFIEF Scherzo humoristique

A.Ridout Pigs for Four Bassoons

at the piano : David Hales



## مجدى ابراهيم

البرنامج

| | | |
|---|---|---|
| – خالد عبد الله | شيللو | |
| تشايكوفسكى | ليلية | |
| – مجدى ابراهيم | طرومبيت | مصاحب البيانو : دافيد هيلز |
| فينيافسكى | صوناتا فى مقام لا ٤ | |
| – جمال عبد الرحيم | رومبا طرومبيت | |

**رباعى الفاجوط بالكونسرفتوار**

فوزى الشامى
احمد الحناوى
شيرين الشربينى
تامر كمال الدين

هيرتيل — **صوناتا لاربعه آلات فاجوط**

**عريض – منيوبتو – بحيوية**

**استراحه**

| | | |
|---|---|---|
| – مجدى ابراهيم | طرومبيت | |
| تشايكوفسكى | اغنية نابوليتانيه | |
| بوتزا | كابريس | |
| – **رباعى فاجوط الكونسرفتوار** | | |
| أغنيه شعبيه | بنت الشلبية | اعداد : هايك سركسيان |
| بروكوفييف | سكيرتزو | |
| آلان ريدو | الخنازير ( لاربعه آلات فاجوط ) | |

# المركز الثقافى السوفيتى

١٢٧ شارع التحرير

بالتعاون مع جمعية الشباب الموسيقى المصرى

والمعهد العالى للموسيقى

( الكونسرفتوار )

يقدم

حفل موسيقى

بمناسبه ذكرى ميلاد الفنان الكبير

تشايكوفسكى

# ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՀՆՉԷ

ԱՐԱՔՍԻ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

Չայքովսքիի ծննդեան տարեդարձին առթիւ Խորհրդային Միութեան Մշակութային Կեդրոնը, գործակցութեամբ Եգիպտացի Երիտասարդ Երաժիշտներու Ընկերակցութեան եւ Գահիրէի Երաժշտանոցին, կազմակերպած էր համերգ մը Գահիրէի Չայքովսքիի անուան հանդիսասրահին մէջ, Հինգշաբթի 6 Դեկտեմբեր 1990-ին երեկոյեան ժամը 7-ին:

Յայտագրին առաջին բաժնին մէջ կատարուեցան երգահաններ Չայքովսքիի, Վիէնիավսքիի եւ Կամալ Ապտէլ Րահիմի ստեղծագործութիւնները: Երկրորդ բաժինին մէջ տեղ գտած էին Չայքովսքի, Պոթցա, Հայկ Սարգիսեան, Փրոքոֆիէվ եւ Ալան Ռիտօ:

Հայկ Սարգիսեան:

Եգիպտահայ մեր երիտասարդ խմբավարին ստեղծագործութեան անդրանիկ ելոյթն էր որ տեղի կ'ունենար հեղինակին ներկայութեան:

Գործը՝ մշակում մը արաբական ժողովրդական *Պէնթ էլ շալապիա* երգին, գրուած էր թաւափողի Պասուն քառեակի համար:

Գահիրէի երաժշտանոցի երիտասարդ թաւափողահարներու քառեակը (Ֆաուզի էլ Շամի, Ահմէտ էլ Հէննաուի, Շիրին էլ Շերպինի եւ Թամէր Քամէլ էլ Տին) երբ հնչեցուց երաժշտութեան առաջին խազերը, հայկական մեղեդին էր որ սփռուեցաւ հանդիսասրահին մէջ, եւ ապա՝ շատ գեղեցիկ համադրութեամբ մը արաբական եւ հայկական երաժշտութեան, հնչեց Հայկ Սարգիսեանի *Պենթ էլ Շալապիա*ն:

Ներկայ արաբ եւ օտար հասարակութիւնը բուռն ծափահարութիւնով գնահատեց երգահանն ու երաժիշտները:

Յուզումի, յոյզի եւ խնդութեան ալիքները խռովեցին ներկայ մի քանի հայերուն հոգիները:

Բարի երթ Հայկ, դէպի ստեղծագործական աշխարհ:

Ծ.Խ. - Կը տեղեկանանք, թէ նոյն ստեղծագործութիւնը անցեալ Օգոստոս 14-ին կատարուած է Գահիրէի Միջնաբերդի փառատօնին, այս անգամ լարային քառեակով:

Անկէ ի վեր, Հայկ Սարգիսեան ներդաշնակած է եգիպտական ժողովրդական մեղեդիներ, յատկապէս Սայիտ Տարուիշի դասական երաժշտական գործիքներով, բազմաձայնութեան հիմունքի վրայ: Օրինակ՝ *Ահօ տալըը սար*, փողային քառեակի, ինչպէս նաեւ լարային եւ փողային վեցեակի, *Էլ հէննա եւ նախշիթէն* լարային քառեակի, ինչպէս նաեւ կամերային անսամբլի, *Էլ հելուա տի ամէթ* սրինգի, օպուայի, թաւջութակի եւ դաշնամուրի համար:

*Արեւ*, 12 Դեկտեմբեր 1990, 75-րդ տարի, թիւ 21646, էջ 1

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 3 ՅՈՒՆՈՒԱՐ 1991

ԱՄԱՆՈՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ՏՕՆԱԾԱՌ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ

ԳԱՀԻՃԸ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 3 ՅՈՒՆՈՒԱՐ 1991, Կ. Ե. ԺԱՄԸ 6·30ԷՆ ՍԿՍԵԱԼ

**ՏԱՐԵԿԱՆ ՊԱԶԱՐ**

Կազմակերպութեամբ

ՏԻԿՆԱՆՑ «ՄԱՐՕ» ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ

Կը վաճառուին

ԶԱՆԱԶԱՆ ԱՆՈՒՇԵՂԷՆՆԵՐ, ԽՄՈՐԵՂԷՆՆԵՐ
ԱՒԱՆԴԱԿԱՆ ԹՕՓԻԿ, ՔՈՒՊԷՊԱ,
ԼԱՀՄԱՃԻՒՆ, ՄԱՆԹԸ ԵՒ ԳԱՆԵԼՈՆԻ

Սիրալիր Հրաւէր Բոլորին

---

ԺԱՄԸ 8·ԷՆ ԵՏՔ



ԱՄԱՆՈՐԻ ԵՒ
Ս. ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

**ՏՕՆԱԾԱՌ**

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Յայտարարութիւն (սկիզբ)
*Զարթօնք*, 27 Դեկտեմբեր 1990, նոր շրջան, թիւ 1219, էջ 4

ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆ (ԿԱԼԱ ԿԱԼԱ)

ՆԱԵՒ ԵԼՈՅԹ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ

9-ԱՄԵԱՅ ՊԱԼԷԻ ՄԵՆԱԿԱՏԱՐՈՒՀԻ

ԴՈՒՍՏՐԸ՝ ՊԱԼԷԹ ՄԱՅՍԹԸՐ ՍՈՆԻԱ ՍԱՐԳԻՍԻ

ԻՆՉՊԷՍ ՆԱԵՒ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԾՆՈՒՆԴԻ ՀՐԵՇՏԱԿԸ

Զաւեշտ մէկ արար

ԽԱՂԱՐԿՈՒԹԵԱՄԲ

Նուպարեան Ազգ. Վարժարանի Աշակերտութեան

Երաժշտութեամբ՝ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

ԲԵՄԱԴՐՈՒԹԵԱՄԲ

ՏԻԿ. ԱԼԻՍ ՋԱՔԱՐԵԱՆԻ ԵՒ ՕՐ. ՄԱՐԱԼ ՏԷՕՎԼԷԹԵԱՆԻ

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

Կաղանդ Պապային նամակը պարտաւորիչ է փոքրիկներուն համար

ՀԱՄՊԸՐԿԸՐԻ ԵՒ ԼԱՀՄԱՃԻՒՆԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՏԱՐԵԿԱՆ ՊԱԶԱՐՆ ՈՒ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԷՆ ՆԵՐՍ

(հատուած)

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Օրուան հանդիսավարին բացման խօսքէն ետք տեղի ունեցաւ թատերական ներկայացում մը՝ *Ծնունդի հրեշտակը*։ Թատերախաղ մէկ արար, խաղարկութեամբ Նուպարեան Ազգային Վարժարանի աշակերտութեան, երաժշտութեամբ բոլորիս ծանօթ երաժշտագէտ Հայկ Սարգիսեանի, բեմադրութեամբ Տիկ. Ալիս Զաքարեանի եւ Օր. Մարալ Տէօվլէթեանի։ Բոլոր փոքրիկ դերակատարներն ալ ճիգ չէին խնայած լաւ խաղալու, որոնց մէջ կային խաղացող տարրեր որոնց կարելի պիտի ըլլայ աւելի մեծ դերեր վստահիլ մօտ ապագային։ Օր. Ա. Նազաշեան այս առթիւ շնորհակալութիւն յայտնեց Նուպարեան վարժարանի տնօրէնութեանց եւ յատկապէս Տիկ. Ա. Զաքարեանի եւ Օր. Մ. Տէօվլէթեանի, որոնք մեծ աշխատանք տարած էին այդ պզտիկները բեմ հանելու եւ բեմադրելու գործով։

*Զահակիր*, 10 Յունուար 1991, նոր շրջան, թիւ 1220, էջ 1-3

## Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻ, ԳԱՀԻՐԷ

## ԿԻՐԱԿԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1991

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆԸ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

(հատուած)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կիրակի, 6 Յունուար 1991-ի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ Ս. Ծննդեան արարողութիւնը: Օրուան պատարագիչն էր, եգիպտահայ գաղութի բարեջան Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան:

Արարողութեան իրենց մասնակցութիւնը բերին Շնորհալի երգչախումբը, ղեկավարութեամբ երկարամեայ դպրապետ Մօ. Եդուարդ Յակոբեանի, երգեհոնի նուագակցութեամբ երիտասարդ հմուտ խմբավար Հայկ Սարգիսեանի, ինչպէս նաեւ Աւագ սարկաւագ Յակոբ Համբիկեանի, ուրարակիր սարկաւագներ՝ Յարութիւն Լեւոնեանի եւ Օննիկ Պօղոսեանի:

*Արեւ*, 10 Յունուար 1991, 75-րդ տարի, թիւ 21669, էջ 1

ՉԱՅՔՈՎՍՔԻ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1991

ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ
ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ



Կիրակի, 6 Յունուար 1991, կ.ե. ժամը 7

«ՋԱՅՔՈՎՍՔԻ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

# ՄԻՋՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

Մասնակցութեամբ՝ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Մշակութային եւ Մարզական Ակումբներուն

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ա. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՐԱՅՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆԻ**

Ատենապետ Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Մասնաժողովին

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍՈՒՀԻ

Յատկապէս հրաւիրուած Աղեքսանդրիայէն

**ՏԻԿԻՆ ՆՈՒԱՐԴ ՃՈՃՈՒԵԱՆ**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԲԱՑԱՌԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ

Յայտարարութիւն (սկիզբ)
*Արեւ*, 2 Յունուար 1991, 75-րդ տարի, թիւ 21663, էջ 4

| | |
|---|---|
| Բացման խօսք | Գրիգորիս Դալլընեան |
| Արտասանութիւն | Անի Գասապեան |
| Հայկական ժողովրդական պար | Զանգեզուր փոքրերու պարախումբ<br>Ղեկ. Մարալ Տէօվլէթեան |
| Արտասանութիւն | Հայկ Սաատուրեան |
| Երգ | Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ. Գուսան Երգչախումբի Մենակատարներ<br>Ցամիկ Տիչչեքճեան<br>Ցակոբ Թիւթիւնճեան<br>Ցովսէփ Նալպանտեան<br>Ղեկ. Հայկ Սարգիսեան<br>Դաշնակի Ընկ. Կասիա Ճղալեան |
| Արտասանութիւն | Մարալ Տէօվլէթեան |
| Խորհրդապատկեր «Վան» | Հ.Գ.Մ. Կոկանեան Սրահ<br>Երիտասարդաց յանձնախումբ<br>Զանգեզուր պարախումբ |
| Կատակ պար | Մարալ Տէօվլէթեան<br>Սեւան Կարիպեան<br>Արմէն Զէչէնեան |
| Խօսք | Տիկ. Նուարդ Ճաճաեան |
| Երգչախումբ | Հ.Բ.Ը.Մ. Կռունկ երգչախումբ<br>Ղեկավարութեամբ Հայկ Սարգիսեանի<br>Դաշնակի ընկերակցութեամբ Կասիա Ճղալեանի |
| Փակման խօսք | Գերշ. Տէր Զաւէն Արք. Չինչինեան |

Յայտարարութիւն (շարունակութիւն)

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԱԻԱՆԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆԸ

(հատուածներ)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Այսօր յաջորդող Աղեքսանդրիոյ Հ. Բ. Ը. Մ.ի Գուսան երգչախումբի երեք մենակատարներու ելոյթը կրկնապատկեց ներկայ հանդիսականներուն խանդավառութիւնը: Արդէն շատ մը առիթներով ունկընդրուած ու գնահատուած է սոյն երգչախումբը, սակայն այս մէկը տարբեր էր միւսներէն: Օր. Յասմիկ Տիշչէքէնեան իր ձայնի լաւորակութեամբ երգեց *Կապոյտ երազ* երգը Արամ Սաթեանի: Հնչուն է անոր երգեցողութիւնը եւ ելեւէջները թրթռուն ու հոգեթով: Ապագայ կը խոստանայ:

Նմանապէս գնահատելի են Յովսէփ Նալպանտեանն ու Յակոբ Թիւթիւնճեանը, որոնք զուգակցաբար երգեցին Խաչատուր Աւետիսեանի *Մախմուր աղջիկ*ը (դաշնաւորում Հայկ Սարգիսեանի) եւ Վլատիմիր Պալեանի *Մէրս զաղտնի թող մնայ*ն, ձայնակցութեամբ Յասմիկ Տիշչէքէնեանի: Հիանալի թրիօ մը իսկական:

[...]

Յայտագիրին վերջընթեր ելոյթն էր Հ. Բ. Ը. Մ.ի Կռունկ քառաձայն երգչախումբի երգերու փունջը, ղեկավարութեամբ հմուտ երաժիշտ խմբավար Հայկ Սարգիսեանի, դաշնակի ընկերակցութեամբ Կասիա Ճղալեանի: Այստեղ աւելցնենք Կասիայի նուագածութեան շնորհը, որ բաժնուած է թէ Կռունկ եւ թէ Գուսան զոյգ երգչախումբերու միջեւ, եւ շնորհաւորելի է անոր նուաճումները դաշնամուրի նուագածութեան մէջ:

Այս առթիւ, յայտագրի վրայ կային հայկական խանդավառ երգեր, որոնք կը սփոփէին հանդիսականներու հոգիները:

Կոմիտասի *Գարուն ա*, Սահառունիի *Ճանս մրմուր*ը կատարեց երգչախումբը: Հարի Չէչճէնեան մեներգեց Ռոպէր Ամիրխանեանի *Այնպէս ուզում եմ*ը: Ալիս Սիմոնեան մեներգեց Ռոպէր Ամիրխանեանի *Թող վերջին անգամ*ը: Իսկ Ռաֆֆի Չէչճէնեան ազգագրական *Հանա նայ-նար* երգը երգեց, տհոլի ընկերակցութեամբ Ռուբէն Թերզիպաշեանի:

*Արեւ*, 29 Յունուար 1991, 75-րդ տարի, թիւ 21683, էջ 2-3

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ԿՈՄԻՏԱՍ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԿԻՐԱԿԻ, 17 ՄԱՐՏ 1991

Հ.Բ.Ը.Մ. 85-ԱՄԵԱԿԻ Ա. ՁԵՌՆԱՐԿ

**ՀԲԸՄ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**



# 85-ԱՄԵԱԿԻ Ա. ՁԵՌՆԱՐԿ

Կիրակի, 17 Մարտ 1991,
Երեկոյեան ժամը 7.00 ին

**ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ**

**«ԿՈՄԻՏԱՍ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏԱՀԱՅՑ ԹԵՄԻ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**ԸՆԴՀ. ՀԻՒՊԱՏՈՍ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ**

ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
**«ԳՈՒՍԱՆ»**
ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ԽՄԲԱՎԱՐ

**ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

# Ա. ՄԱՍ

Եգիպտական Քայլերգ

Հ Բ Ը Մ ի Քայլերգ

**Ով Հայոց Աշխարհ** — **Մակար Եկմալեան**

**Հայրապետական Մաղթանք** — **Կոմիտաս**

Սարերի Հովին Մեռնիմ — Երգտ. Յովհաննէս Պատալեան
Մշկ. Թաթուլ Ալթունեան

Սարի Սիրուն Եար — Գուսան Աշոտ

Լիրիքական Երգ — Ճէյմզ Գէօզէլեան

Ասում եմ թէ մոռացել ես — Խաչատուր Աւետիսեան
Մենակատար Յովսէփ Նալպանտեան

Կապոյտ Երազ — Աշոտ Սաթեան
Մենակատար Յասմիկ Տիօյէքէնեան

Սէրս գաղտնի թող մնայ — Վլատիմիր Պալեան
Մենակատար Յակոբ Թիւֆիւնճեան

## ԴԱԴԱՐ

# Բ ՄԱՍ

Սիւնեաց Սարեր — Գուսան Աշոտ

Մենակատար Էօլի Պանարեան

Արի Եար Ջան — Ժողովրդական

Մշկ. Թաթուլ Ալթունեան

Ճանս Մամուռ — Սանասունի

Իմ Եղէգ — Խաչատուր Աւետիսեան

Մենակատար Յ. Տիւշէկէնեան

Մախմուր Աղջիկ — Խաչատուր Աւետիսեան

Զուգերգ Յ. Նալպանտեան եւ Յ. Թիւթիւնճեան

Իմ օրօրան — Գուսան Աշոտ

Մենակատար Ալին Ազնաւուրեան

Հանայ Նայ Նար — Ազգագրական



Դաշնամուր — Կարօ Ճղալեան

Տհոլ — Խուրէն Թերզիպաշեան

# ԳՈՒՍԱՆ

## ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԿԱԶՄԸ

Աբգարեան Մարի
Ազնաւուրեան Ալին
Ազնաւուրեան Թամար
Արթինեան Անի
Չարպհանճըլեան ՙԱնուշ
Չարպհանճըլեան Տօսինիշ
Լէյլէկեան Քարին
Ճոնռեան Թալին
Ճոնռեան Լիւսի
Վարձապետեան Վանիա
Վարձապետեան Քրիսթին
Տիշչէքէնեան Յասմիկ
Ռէիզեան Ռիթա

Թիւքիւննեան Յակոբ
Ճաննի Բաքրիս
Նալպանտեան Յովսէփ
Պահարեան Էտի
Վարձապետեան Հրանդ
Օհանեան Նշան

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 85-ԱՄԵԱԿԻ Ա. ՁԵՌՆԱՐԿ ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

Այս տարի Հ.Բ.Ը.Միութեան հիմնադրութեան 85-ամեակն է: Այս պատճառով Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութիւնը ծրագրած է շարք մը ձեռնարկներով հանդիսաւորել արժանաւորապէս:

Ա. ձեռնարկը տեղի ունեցաւ Կիրակի 17 Մարտ 1991-ի երեկոյեան, Պօղոսեան Ազգային Վարժարանի Մելգոնեան հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ վիճակիս Բարեխնամ Առաջնորդ Գեր. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ ընդհանուր հիւպատոս եւ Տիկին Վահան Ալեքսանեանի: Ներկայ էին համայնքիս հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Խչկ. Քհնյ. Օհաննեան, Ազգային Իշխանութեան անդամներ գլխաւորութեամբ Քաղաքական Ժողովի ատենապետ Տոքթ. Արթօ Արթինեանի ինչպէս նաեւ աղեքսանդրաբնակ ծանօթ ազգայիններէն ստուար թիւ մը:

Սոյն յոբելինական ձեռնարկը կը կայանար երգահանդէսէ, կատարողութեամբ Միութեան Գուսան երգչախումբին, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի: Այս տարի երգչախումբը բաղկացած էր 13 աղջիկներէ եւ վեց տղոցմէ: Աչքի կը զարնէր խումբին անդամներէն մեկնող կամ այլ պատճառներով բացակայողներուն թիւը, սակայն բնաւ զգալի չեղաւ, շնորհիւ ղեկավարին ջանքերուն, շնորհին եւ ճպոտին...:

Յայտագիրը բաղկացած էր երկու բաժինէ. առաջինը՝ կը պարունակէր ութ երգեր, որոնցմէ երեքին մենակատարութիւնը տրուած էր Յասմիկ Տիշչէքէնեանի, Յովսէփ Նալպանտեանի եւ Յակոբ Թիւթիւնճեանի: Իսկ երկրորդ բաժինը կը բաղկանար եօթը երգերէ, որոնցմէ երեքի մենակատարներն էին Էտի Պահատըրեան, Յասմիկ Տիշչէքէնեան ու Ալին Ազնաւուրեան եւ մէկ զուգերգ մը կատարողութեամբ Յովսէփ Նալպանտեանի եւ Յակոբ Թիւթիւնճեանի:

Միջնարարին Պր. Նազարէթ Գարթալեան կարդաց ցանկը այն անձերուն որոնք սրտաբուխ նուիրատուութեամբ քաջալեր կը հանդիսանային Միութեան:

Հանդէսի աւարտին ծաղկեփունջ մը տրուեցաւ Տիկ. Սիպիլ Ալեքսանեանի, խմբավար Հայկ Սարգիսեանի, դաշնակահարուհի Տիկ. Կասիա Ճղալեանի եւ տհոլի ածու Պր. Ռուբէն Թերզիպաշեանի: Իսկ վարչութեան ատենապետ Պր. Սարգիս Վարձպետեանի կողակիցին՝ Տիկ. Մակի Վարձպետեանի ձեռամբ յիշատակի նուէրներ յանձնուեցան նոյն անձերուն, առ ի գնահատանք:

Հանդէսի վերջաւորութեան բեմ հրաւիրուեցաւ համայնքի ժրաջան հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Խչկ. Քհնյ. Օհաննեան, որ փակման խօսքով եւ

պահպանիչով փակեց այս յաջող երգահանդէսը։

Այս առթիւ կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Միութեան հիմնադրութեան 85-ամեակը եւ կը մաղթենք որ ան շարունակէ իր տարած բազմազան ազգանուէր գործունէութիւնը։

*Զահակիր*, 18 Ապրիլ 1991, նոր շրջան, թիւ 1226, էջ 3

## ԳՈՒՍԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՅԱՂԹԱԿԱՆ ԵԼՈՅԹԸ

ԹՂԹԱԿԻՑ

Կիրակի 17 Մարտ 1991, երեկոյեան ժամը 7-ին, Պօղոսեան Ազգային Վարժարանի ամբողջութեամբ լեցուն Կոմիտաս հանդիսասրահին մէջ, տեղի ունեցաւ Հ.Բ.Ը.Միութեան 85-ամեակին նուիրուած Ա. ձեռնարկը։ Այս առթիւ, Աղեքսանդրիոյ մասնաճիւղի Գուսան երկսեռ երգչախումբը տուաւ իր տարեկան ելոյթը, խմբավարութեամբ երիտասարդ, սիրուած Մօ. Հայկ Սարգիսեանի։

Ձեռնարկը կը վայելէր հովանաւորութիւնը Թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, եւ նախագահութիւնը՝ Ընդհանուր Հիւպատոս եւ Տիկին Վահան Տ. Ալեքսանեանի, որոնք անձամբ ներկայ գտնուեցան, նաեւ քոյր յարանուանութեանց պետերը, Արժ. Տ. Գրիգոր Աւագ Քհնյ. Օհաննեան եւ երէցկինը, Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան անդամները՝ գլխաւորութեամբ Պատկառելի Քաղաքական Ժողովի յարգելի ատենապետ Տոքթ. Արթօ Արթինեանի, միութեանց ատենապետներ, մշակութային եւ մարզական միութեանց անդամներ, Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ Մասնաճիւղի յարգելի ատենապետ՝ Տէր եւ Տիկին Սարգիս Վարձպետեան, խանդավառ երկսեռ երիտասարդութիւն մը, որ ներկայ էր յատկապէս քաջալերելու համար երգչախումբն ու իր տինամիք խմբավարը։

Բեմը զարդարուած էր երեք գեղեցիկ ծաղկեկողովներով, ուղարկուած քոյր միութեանց վարչութիւններուն կողմէ։

Յոտնկայս ունկնդրուած Եգիպտական եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներէն ետք, բեմ եկաւ Աղեքսանդրիոյ Քաղաքական Ժողովի անդամ եւ օրուան գլխաւոր ատենախօս Տիար Պարգեւ Մազլըմեան, որ յանուն Հ.Բ.Ը.Մ.ի Վարչութեան՝ տուաւ Միութեան 85-ամեայ գործունէութեան հակիրճ պատկերը, առաւել՝ 1988-ի երկրաշարժէն ետք Հայաստանի մէջ ծաւալած չորս գլխաւոր ծրագիրները, որոնք պիտի արժեն մօտ քսան միլիոն ամերիկեան տոլար։

Երգչախումբի յայտագիրը բաժնուած էր երկու մասի, մօտ 15 երգերով,

խմբական ու մենակատարութեամբ։

Ա. մասին մէջ ունկնդրեցինք Եկմալեանի՝ *Ով հայոց աշխարհ*, Կոմիտասի՝ *Հայրապետական մաղթանք*, Պատալեանի՝ *Սարերի հովին մեռնեմ*, Գուսան Աշոտի՝ *Սարի սիրուն եար*, Կէօզէլեանի՝ *Լիրիքական երգ*, Խ. Աւետիսեանի՝ *Ասում են թէ մոռացել ես* (մենակատարութեամբ Յովսէփ Նալպանտեանի), Սաթեանի՝ *Կապոյտ երազ* (տպաւորիչ մենակատարութեամբ Օր. Յասմիկ Տիշչէքէնեանի) եւ ի վերջոյ Վ. Պալեանի՝ *Մէրս գաղտնի թող մնայ* (թովիչ մենակատարութեամբ Յակոբ Թիւթիւնճեանի)։

Յայտագրի Բ. մասին մէջ, ունկնդրեցինք Գուսան Աշոտի՝ *Միւնեաց սարեր* (մենակատարութեամբ Էտի Պահարեանի), ժողովրդական *Արի եար ջան*, Սահառունիի *Ճանս մոմուռ*, Խ. Աւետիսեանի *Իմ եղէգ* (դարձեալ գեղեցիկ մենակատարութեամբ Օր. Յասմիկ Տիշչէքէնեանի), Աւետիսեանի *Մախմուր աղջիկ* (զուգերգ Յ. Նալպանտեան եւ Յ. Թիւթիւնճեան), Գուսան Աշոտի՝ *Իմ օրօրան* (մենակատարութեամբ խոստմնալից Օր. Ալին Ազնաւուրեանի) եւ ի վերջոյ ազգագրական *Հանայ նայ նար* ուժեղ խմբերգը։ Աւելորդ է ըսել, թէ իւրաքանչիւր խմբերգ բուռն եւ որոտընդոստ ծափահարութիւններով կը դիմաւորուէին եւ սրահին խանդավառութիւնը հասած էր իր գագաթնակէտին։

Ելոյթին մեծապէս նպաստեցին Գահիրէէն յատկապէս հրաւիրուած Տիկ. Կասիա Ճղալեան (դաշնամուրի) եւ Պրն. Ռուբէն Թերզիպաշեան (տիոլի) իրենց մասնակցութեամբ։

Այս ուրախ առթիւ, առ ի քաջալերանք, Հ.Բ.Ը.Մ.ի ազգօգուտ դերին եւ անոր երգչախումբին, եղան փայլուն նուիրատուութիւններ։

Ձեռամբ օրուան մեծարգոյ նախագահին, երգչախումբի ղեկավարին տրուեցաւ յիշատակի գեղեցիկ արծաթեայ ափսէ մը, նաեւ Տիկին Կասիա Ճղալեանի ու Պրն. Ռուբէն Թերզիպաշեանի, որմէ ետք Եկեղեցւոյ Հովիւ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Օհանեանի Հուսկ Բանքով եւ Պահպանիչով վերջ գտաւ 85-ամեակի այս գեղեցիկ Ա. ձեռնարկը, որ նիւթական եւ բարոյական կատարեալ յաղթանակ մը եղաւ Աղեքսանդրիոյ Մասնաճիւղին համար, որուն վարչութեան ժրաջան Ատենապետն է Տիար Սարգիս Վարձպետեան, շրջապատուած խումբ մը կորովի վարչականներով։ Ջերմօրէն կը շնորհաւորենք զանոնք, ինչպէս նաեւ երգչախումբի երկսեռ անդամներն ու անոնց տինամիք խմբավարը, ու անհամբեր կը սպասենք 85-ամեակի յաջորդ ձեռնարկներուն։

Վարձքը կատար բոլորին։

*Արեւ*, 14 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21765, էջ 3

# ԾԱՂԿԱԶԱՐԴ

*Այս Կիրակի, 24 Մարտ 1991-ին Ծաղկազարդի Տօն է. Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի Յաղթական Հրաշափառ Մուտքը յԵրուսաղէմ: Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ տեղի պիտի ունենայ առաւօտեան ժամերգութիւն եւ ապա հանդիսաւոր Ս. Պատարագ:*

*Կէսօրէ ետք ժամը 5-ին Դռնաբացէք արարողութիւն: Հայց. Եկեղեցւոյ յատուկ այս արարողութիւնը, խորհրդանշական իր խոր իմաստով, միշտ սիրուած է մեր բարեպաշտ ժողովուրդէն, սրտագրաւ չարականներուն եւ ծէսին համար:*

*Ս. Պատարագի երգեցողութիւնները պիտի երգուին «Շնորհալի» Երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Մօ. Եդ. Յակոբեանի, երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին*
*Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10·15-ին*
*Դռնբացէք կէսօրէ ետք ժամը 5-ին*

*Դէպի Մայր Տաճար երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է օթօպիւսի յատուկ սպասարկութիւն:*

*Հելիոպոլսոյ Զաֆիրի կայարանէն 8·25-ին*
*Նուպարեան Ազգային Վարժարանէն 8·30-ին*
*Սինեմա Նորմանտիի առջեւէն 8·40-ին*
*Սինեմա Ռօքսիի առջեւէն 8·45-ին*

*Դռնբացէքի համար*

*Հելիոպոլսոյ Զաֆիրի կայարանէն կէսօրէ վերջ 4-ին*
*Նուպարեան Ազգ. Վարժարանէն կէսօրէ վերջ ժամը 4·10-ին*
*Սինեմա Նորմանտիի առջեւէն կէսօրէ վերջ ժամը 4·20-ին*
*Սինեմա Ռօքսիի առջեւէն կէսօրէ վերջ ժամը 4·30ին*

*Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այս հոգեպարար արարողութիւններուն:*

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 22 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21728, էջ 4

Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐ,
ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 31 ՄԱՐՏ 1991

ՏՕՆ ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԵԱՆ

# ՏՕՆ
# ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԵԱՆ

*Մեծ Պահոց Քառասնօրեայ շրջանէն եւ հոգեւոր պատրաստութենէն ետք, մեր գաղութի բարեպաշտ ժողովուրդը յառաջիկայ Կիրակի, 31 Մարտ 1991-ին, պիտի տօնախմբէ Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի Հրաշափառ Յարութիւնը:*

*Զատկական Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ, առաւօտեան ժամերգութենէն ետք:*

*Այս առիթով Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ*

*Առաջնորդ Հայոց Եղիպտոսի*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Քարոզէն առաջ ի լուր ժողովրդեան պիտի կարդացուի*

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ՎԱԶԳԷՆ Ա.**
**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

*Սրբատառ Կոնդակը:*

*Ս. Պատարագը պիտի երգուի քառաձայն, «Շնորհալի Երգչախումբ»ին կողմէ, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Յակոբեանի, երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին*
*Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10-ին*

*Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու Զատկական Ս. Պատարագին:*

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 28 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21733, էջ 4

ՊՐԼՐՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 11 ԱՊՐԻԼ 1991

Հ.Բ.Ը.Մ. ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

Հ.Բ.Ը.Մ



ԳԱՀԻՐԷ

# ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 11 Ապրիլ 1991,
Երեկոյեան ժամը 8.00 ին

ՆՈՒԻՐՈՒԱԾ

## ՀԲԸՄի ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 85 ԱՄԵԱԿԻՆ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ
## ԿՐՕՆԱՊԵՏԵՐՈՒՆ

ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ
« ՊԸԼԸՖՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ » ԻՆ ՄԷՋ

ՕՐՈՒԱՆ ԲԱՆԱԽՕՍ

ՏԻԿԻՆ ՍՕՍԻ ՊԵՏԻԿԵԱՆ
ՅԱՏԿԱՊԷՍ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ ԿԻՊՐՈՍԷՆ

ԽԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
Կ Ռ Ո Ւ Ն Կ
ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ԽՄԲԱՎԱՐ

ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ

# ՅԱՅՏԱԳԻՐ

## Ա. ՄԱՍ

*Եգիպտական Քայլերգ*

*Հ Բ Ը Մ ի Քայլերգ*

*Բացման Խօսք*

| | |
|---|---|
| *«Նանար» սրնգահարներու խումբ* | *Ղեկ. Անահիտ Սարգիսեան* |

*Ես պուճուր, եարս պուճուր, Մարկերի ոլորը, Հմայեակ*
*Հայաստանի Աղջիկները*

| | |
|---|---|
| *Խօսք* | *Տիկին Սօսի Պետիկեան* |

## Բ ՄԱՍ

### «ԿՌՈՒՆԿ» Երգչախումբ

| | |
|---|---|
| *Ով Հայոց Աշխարհ* | *Մակար Եկմալեան* |
| *Ազգային Օրհներգ* | *Կոմիտաս* |
| *Սարի Սիրուն Եար* | *Գուսան Աշոտ* |
| *Ձեփիւռի Նման* | *Գուսան Շահէն* |
| Մենակատար Թալին Կապէեան | |
| *Սիւնեաց Սարեր* | *Գուսան Աշոտ* |
| Մենակատար Արմէն Ջէչճէնեան | |
| *Կապոյտ Երազ* | *Արամ Սաղեան* |
| Մենակատար Ալիս Սիմոնեան | |
| *Կռունկ բարով դառնաս* | *Ալեքսէյ Հէքիմեան* |
| Մենակատար Սիլվա Թերզիպաշեան | |
| *Ճանս Մռմռու* | *Սահառունի* |
| *Գարուն ա* | *Կոմիտաս* |
| *Իմ օրորան* | *Գուսան Աշոտ* |
| Մենակատար Լիւսի Տէր Ներսէսեան | |
| *Վախենամ քնեմ* | *Մշկմ Թաթուլ Ալթունեան* |
| Մենակատարներ Մարի Տէր Ներսէսեան եւ Լուսար Միլաս | |
| *Ասում են թէ մոռացել ես* | *Խաչատուր Աւետիսեան* |
| *Լիրիքական Երգ* | *Ճէյմզ Կէօզէլեան* |
| *Հանայ Նայ Նար, Նինօ* | *Ազգագրական* |
| Մենակատար Ռաֆֆի Ջէչճէճեան | |

| | |
|---|---|
| *Դաշնամուր* | *Կասիա Ճղալեան* |
| *Տհոլ* | *Ռուբէն Թերզիպաշեան* |

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 85-ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

ԱՐԱՔՍԻ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ

Պարձ, յաջող եւ տպաւորիչ հանդիսութեամբ մը, Գահիրէի Հ.Բ.Ը. Միութիւնը նշեց իր հիմնադրութեան 85-ամեակը, Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանի Պըլըքտաննեան հանդիսասրահին մէջ, 11 Ապրիլ 1991-ի երեկոյեան ժամը 8.00-ին։

Եգիպտահայ յարանուանութեանց հովանաւորութիւնը վայելող այս հանդիսութիւնը, հոծ բազմութեան մը կողքին կը պատուուէր նաեւ ներկայութեամբը հիւրաբար քաղաքս գտնուող, Վիեննայի Մխիթարեան Միաբանութենէն Հայրեր Գէորգ Աբգարեանի եւ Անդրէաս Հարմանտիկեանի, որոնք եկած էին ընկերակցութեամբ Հայ Կաթողիկէ Համայնքի ներկայացուցիչ՝ Հայր Անդրանիկ Արամեանի ընկերակցութեամբ։

Հանդիսութիւնը կը սկսէր Եգիպտոսի եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներով։

Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Տեղական Մասնաճիւղի Ատենապետ Պր. Նորայր Տէօվլէթեան իր բացման խօսքը ուղղելով ներկայ Թեմական եւ Քաղաքական Ժողովներու Ատենապետներուն, բարեսիրական, մշակութային ու մարզական հաստատութիւններու մշակութային ու մարզական հաստատութիւններու ներկայացուցիչներուն եւ ժողովուրդին, կը նշէր. «1906-ի Ապրիլ 15-ին, Պօղոս Նուպարի մտայղացումով հիմնուած Հ.Բ.Ը.Մ.ը կրնանք հպարտութեամբ ըսել, թէ համա-հայկական ամենահզօր կազմակերպութիւնն է իր տասնեակ հազարաւոր անդամներով եւ վայելած վստահութեամբ»։

Ապա, ան կ'անդրադառնար Միութեան ցկեանս պատուոյ նախագահ Պր. Ալեք Մանուկեանի կատարած մեծ գործին, ըսելով, «աւելի քան երեսուն եւ հինգ երկար տարիներ, բացառիկ տնօրինութեամբ եւ անձնական օրինակով, Պր. Ալեք Մանուկեան օժանդակեց Հ.Բ.Ը. Միութեան հզօրացման եւ բոլոր աշխատանքներուն արդիւնաւորման»։

«Հպարտ ենք», ըսաւ Պր. Տէօվլէթեան, «որ այժմու նախագահ, Տիկին Լուիզ Մանուկեան-Սիմոն եւ իր անմիջական գործակիցները, ոչ մէկ ճիգ կը խնայեն յաջողութեամբ պսակելու Հ.Բ.Ը.Մ. ձեռնարկած համազգային մեծ գործերը»։

Պր. Տէօվլէթեան բացման խօսքը կ'աւարտէր ուղղելով «յարգանք ու պատիւ, բոլոր անոնց որոնք իրենց բարոյական թէ նիւթական լուման դրած են ու կը շարունակեն դնել ի պանծացումն եւ առաւել հզօրացումն Հ.Բ.Ը. Միութեան»։

Հանդիսութեան գեղարուեստական առաջին բաժնին մէջ ելոյթ կ'ունենար Նանար սրնգահարներու խումբը ղեկավարութեամբ Անահիտ Սարգիսեանի։

Հայկական ժողովրդական երգերու փունջ մըն էր որ ներկայացուց Նանարը

նոյնքան հաճելի ու առինքնող որքան Ապրիլ 5-ի իր համերգը, որուն մասին անդրադարձանք *Արեւ*ի 18 Ապրիլ 1991-ի թիւին մէջ:

Հ.Բ.Ը.Մ. կրթական հաստատութիւններու երկարամեայ ուսուցչուհի-տնօրէնուհի Տիկին Սօսի Պետիկեան, որ հանդիսութեան առթիւ հրաւիրուած էր Կիպրոսէն, ունեցաւ փայլուն ելոյթ մը:

Տիկին Պետիկեան տիրացած է իր մտքերը պարզօրէն, առանց աւելորդ դէպքերու, թիւերու եւ բառերու խճողումի, տալու արուեստին: Իր ելոյթին մէջ ներկայ էր Հ.Բ.Ը. Միութիւնը: Ներկայ էր իր անցեալով ու ներկայով, իր նպատակով ու անդամներով, իր կրթական, բարեգործական, մշակութային եւ ընկերային գործունէութեամբ, իր ծրագիրներով: Մօտ կէս ժամ երկարող իր ելոյթը համապարփակ էր:

Յայտագրին երկրորդ բաժինը Հ.Բ.Ը.Մ. Կոունկ երգչախումբի ելոյթն էր, ղեկավարութեամբ Հայկ Սարգիսեանի:

Երբ բացուեցաւ վարագոյրը, բեմին խորքին դասական դարձած խորհրդապատկեր չկար: Կար երիտասարդ արուեստագէտ Ռաֆֆի Չէչճէնեանի բծախնդրութեամբ եւ գոյներու ու երանգներու գեղեցիկ համադրութեամբ պատրաստուած աշխարհի քարտէզը: Քարտէզին վրայ Հ.Բ.Ը.Մ.ի համայնքային կեդրոնները նշող շրջանակներ էին, որոնք ակամայ կը յիշեցնէին Վահրամ Մավեանի *Ամէն տեղ հայ կայ* հատորը:

Աշխարհին առջեւ ու ժողովուրդին դիմաց Կոունկն էր 22 հաշուող իր անդամներով: Խմբավար Հայկ Սարգիսեանի ելքը բեմ, ժողովուրդը կ’ողջունէր որոտընդոստ ծափահարութեամբ:

Համերգը սկսաւ Մակար Եկմալեանի *Ով հայոց աշխարհ* երգով, որուն յաջորդեց Կոմիտասի *Ազգային օրհներգ*ը: Յայտագրի առաջին այս երկու երգերուն կատարումը Կոունկը կը նուիրէր իր անդամներէն ողբացեալ Լեւոն Յովակիմեանի յիշատակին, որ վերջերս զոհ գացած էր ցաւալի արկածի մը:

Երգերուն զգայուն կատարումը յուզեց եւ կատարողները եւ ժողովուրդը:

Ապա, սկսաւ շարքը գուսանական, քնարական, դասական, ժողովրդական ու ազգագրական երգերուն, որոնց դաշնամուրով կ’ընկերակցէր Կասիա Ճղալեան: Համաձայն բազմավաստակ դաշնակահարուհի Օր. Նուարդ Տամատեանի, ընկերակցիլ երգողին կամ երգչախումբին, բաւական բարդ է, եւ Կասիան ներդաշնակ ու լաւ ընկերակցող է:

Ազգագրական երգերէն անբաժան տհոլը Ռուբէն Թերզիպաշեանի ձեռքին եռանդ եւ խինդ կը սփռէր չորս դին:

Աւա՜ղ, Անահիտ Սարգիսեանն ու իր սրինգը բացակայ էին այս համերգէն:

Երբ կ’երգէ Թալին Կապէեանը, չես կրնար որոշել թէ իր որ տուեալն է որ կը գրաւէ ունկնդիրը: Մեղմ ու անուշ ձայնը, թէ գրաւիչ ժպիտն ու պարզ կատարումը: Սակայն որոշ է որ Թալինը կը գրաւէ ունկնդիրը: Այդ օր ան գրաւեց մեզ

*Զեփիւռի նման* երգին զեփիւռի նման կատարումով։

Արմէն Չէչճէնեան առաջին անգամ հանդէս եկաւ որպէս մենակատար, *Միւնեաց սարեր* աշուղական երգով։ Ինչպէս նախորդ համերգներուն այս համերգին եւս Լիւսի Տէր Ներսէսեան մենակատար էր։ Ան կատարեց Գուսան Աշոտի *Իմ օրօրան* երգը։ Թէ Լիւսին եւ թէ Արմէնը ունին աշուղական մաքուր ձայն եւ ազատ կատարում։

1959-էն ի վեր Թաթուլ Ալթունեանի մշակած ժողովրդական երգերը կը գրաւեն մեզ։ Յայտագրին վրայ տեղ գտած *Վախենամ քնեմ* երգը ներդաշնակութեամբ կատարուեցաւ երգչախումբին եւ մենակատարներ Մարի Տէր-Ներսէսեանի եւ Էտուար Միլատի կողմէ։ Առաջինը ունի մեղմ ու անուշ ձայն եւ հաճելի ժպիտ, երկրորդը առնական թաւ ու հարուստ ձայն։

Յայտագրին միակ էսթրատային երգը Արամ Սաթեանի *Կապոյտ երազ*ն էր։ Դժուար, բարձր ու ցած ելեւէջներով երգ մը, որ Ալիս Սիմոնեան կրցաւ տալ իր ինքնատիպ ու քաղցր ձայնով, լաւ տիրապետելով ցած ու բարձր ձայնանիշներուն։ Ալիսը պէտք է ձերբազատուի կաշկանդումէ եւ ձեռք բերէ անվախ կատարում տիրապետելու բեմին եւ ժողովուրդին։

Ազգագրական երգերն ու Ռաֆֆի Չէչճէնեանը կարելի չէ զատել իրարմէ։ Ռաֆֆին կ՚երգէ ամբողջ սրտով, կ՚երգէ զգացումով։ Կարծես մայր հողին վրայ ազգն է դիմացդ, որ իր ցաւերով կը տխրեցնէ ու իր ուրախութեամբ կը խանդավառէ քեզ։ Ռաֆֆին կատարելապէս տիրած է ազգագրական երգերու կատարողական արուեստին։

Քանի՜ բեմերէ ու քանի՜ շրթներէ իմացած ենք *Կռունկ բարով դառնաս* երգը։

Գէորգ Էմինի գրչին պատկանող այս տողերը, թեւեր առած Ալէքսէյ Հէքիմեանի երաժշտութեամբ, միշտ ալ յուզած են ունկնդիրը։ Սակայն այդ օր, Սիլվա Թերզիպաշեանի մեկնաբանումը այլ էր։ Երգը երգ չէր այդ օր. ան ապրուած ու ապրող իրողութիւն մըն էր, տանջող, տառապեցնող իրողութիւն մը, որ Սիլվային ինքնուրոյն ու ջերմ, համոզող ու կլանող կատարումով մտաւ իւրաքանչիւր ներկայի հոգիին մէջ, ու արձագանգեց պատգամը։ «Կռունկ բարով դառնաս»։

Յայտագրի վերջաւորութեան ծափեր, ծափեր եւ ծափեր... ապա՝ յայտագրէն դուրս փունջ մը, կազմուած նախորդ համերգներու երգերէն եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգը։ Դարձեալ ծափեր խոնարհող Կռունկին եւ իրենց խմբավար՝ Հայկ Սարգիսեանին։

Արդեօ՞ք Հայկը ծափահարելու առիթը պիտի ունենանք կրկին։ Հայկը, որ գիտէ 22 արհեստավարժ անձերով տալ նման անանցանելի վայելք, Հայկը որ մօտ տասնամեակ մըն է որ մեր երիտասարդ, պատանի ու մանուկ սերունդներուն կը ջամբէ սէր, հանդէպ հայ երգին ու երաժշտութեան, հայ բառին ու բանին, Հայկը, որ մեծ է ոչ միայն իր արուեստով, այլ մեծ է իր խոնարհութեամբ եւ համեստութեամբ, մեծ է իր մէջ կրած մարդկային ու հայ հոգիին համար։

Չծափահարենք միայն, այլ գործենք եւ փորձենք պահել Հայկը։

*Արեւ*, 2 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21756, էջ 3. 3 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21757, էջ 3

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 85-ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

ՄԱՆՈՒԷԼ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Ինչպէս գիտենք, Հ.Բ.Ը.Միութիւնը հիմնուած է Գահիրէի մէջ, 15 Ապրիլ 1906-ին, Պօղոս Նուպար Փաշայի գլխաւորութեամբ։ Հետեւաբար Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ը, ինչպէս հայաշատ բոլոր գաղութներուն մէջ, հոս եւս ծրագրած է կազմակերպել կարգ մը ձեռնարկներ արժանավայել կերպով։

Այս առթիւ ան իր առաջին ձեռնարկը տուաւ Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանի Պըլըքտանեան Հանդիսասրահին մէջ, Հինգշաբթի 11 Ապրիլ 1991 կ.ե. ժամը 8-ին։

Հանդիսութիւնը կը վայելէր հովանաւորութիւնը եգիպտահայ յարանուանութեանց կրօնապետերուն, որուն ներկայ գտնուեցան համայնքի ներկայացուցչական դէմքեր, Հ.Բ.Ը.Մ.ի մեծ ընտանիքի անդամներ, համակիրներ եւ ստուար թիւով բազմութիւն մը։

Եգիպտոսի եւ Հ.Բ.Ը.Մ.ի քայլերգներէն ետք բացման խօսքով ելոյթ ունեցաւ Գահիրէի Հ.Բ.Ը.Միութեան Մասնաժողովի Ատենապետ Պր. Նորայր Տէօվլէթեան։ Ան հակիրճ խօսքով յայտնեց թէ Բարեգործականը այսօր համահայկական ամենահզօր կազմակերպութիւնը կը նկատուի սփիւռքահայ պատմութեան մէջ։

Գեղարուեստական բաժինը կը սկսէր Նանար սրնգահարներու նուագումով, որ կը ղեկավարէր Տիկ. Անահիտ Սարգիսեան։ Նանարի խումբը օժտուած է պարզութեամբ եւ դիտողին համար հաճելի է, որ մեզ հրամցուց հայկական ժողովրդական երգեր։

Սոյն հանդիսութեան Կիպրոսէն յատկապէս հրաւիրուած էր բանախօսելու բազմամեայ եւ բազմավաստակ դաստիարակ եւ Կիպրոսի Մելգոնեան Կրթական Հաստատութեան նախկին տնօրէնուհի Տիկ. Սօսի Պետիկեան։ Ան նախ տուաւ Հ.Բ.Ը.Միութեան պատմականը, ապա պատշաճութեամբ ներկայացուց Բարեգործականի վերջին իրադարձութիւններն ու իրագործումները, յատկապէս Հայրենիքի մէջ։ Տիկին Սօսի Պետիկեան նաեւ անդրադարձաւ Պատուոյ Նախագահ Պր. Ալեք Մանուկեանի եւ իր ունեցած մեծ դերին մասին։

Յայտագրին երկրորդ բաժինը ամբողջութեամբ տրամադրուած էր Միու-

թեան՝ Կռունկ երգչախումբին, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի։

Բեմին խորը կը տեսնուէր գունաւոր աշխարհի քարտէսը, որուն վրայ նշուած էր Հ.Բ.Ը.Միութեան կեդրոնները։ Այս ճաշակաւոր գործը տարած էր արուեստագէտ Ռաֆֆի Չէչճէնեան։

Համերգը սկսաւ *Ով հայոց աշխարհ* ապա *Ազգային օրհներգ* երգերով, որոնք նուիրուած էին երգչախումբին անդամներէն ողբ. Տոքթ. Լեւոն Յովակիմեանի յիշատակին, որ վերջերս ցաւալի արկածի մը պատճառով, իր մահկանացուն կնքած էր ծաղիկ հասակին մէջ։

Ապա շարունակուեցաւ յայտագիրը, որ կը պարփակէր ազգագրական, ժողովրդական, գուսանական, էսթրատային եւ այլ երգեր։

22 երիտասարդ-երիտասարդուհի անդամներէ բաղկացած քառաձայն երգչախումբով, այսքան յաջող համերգ մը տալ, կը նշանակէ յարատեւ աշխատանք, նուրբ ճաշակ եւ մանուանդ տաղանդաւոր ղեկավար։ Անշուշտ առաջին առթիւ կը պարտինք արուեստագէտ Հ. Սարգիսեանին, որ գիտէ, թէ ինչ կը նշանակէ «Հայ երգ»։ Դաշնակի նուագակցութիւնը ներդաշնակօրէն կատարեց Կասիա Ճղալեան, իսկ տհոլի խանդավառող բաժինը ստանձնած էր Ռուբէն Թերզիպաշեան։ Մենակատարները լաւ մեկնաբանութեամբ կատարեցին իրենց երգերը։ Մէկ խօսքով բոլորը ճիգ չէին խնայած իրենց լաւագոյնը կատարելու եւ որ արժանացաւ ամենուս գնահատանքին եւ բուռն ծափահարութեան։

Կը շնորհաւորենք Հ.Բ.Ը.Միութեան հիմնադրութեան 85-ամեակը, մաղթելով առաւել բեղուն գործունէութիւն։

*Զահակիր*, 2 Մայիս 1991, նոր շրջան, թիւ 1227, էջ 2-3

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ,
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԿԻՐԱԿԻ, 14 ԱՊՐԻԼ 1991

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Գեղարուեստական Ճքեղ Երգահանդէս

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

Կիրակի, 14 Ապրիլ 1991, երեկոյեան ժամը 6-ին,

վարժարանի հանդիսասրահին մէջ:

Կը հրաւիրենք հայ հասարակութիւնը ներկայ գտնուելու սոյն երգահանդէսին:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն,

*Արեւ*, 12 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21744, էջ 4

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ԹՂԹԱԿԻՑ

Կիրակի 14 Ապրիլ 1991, երեկոյեան ժամը 6-ին, Պօղոսեան Ազգային Վարժարանի Կոմիտաս հանդիսասրահին մէջ, հոծ բազմութեան մը ներկայութեան, տեղի ունեցաւ վարժարանի աշակերտութեան կողմէ պատրաստուած գեղարուեստական շքեղ երգահանդէս մը, ղեկավարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի: Այս առթիւ, ներկաներուն հրամցուեցաւ տոհմիկ երգերու ճոխ հաւաքածոյ մը, ընթացիկ տարուան երգի դասերէն քաղուած:

Երեկոյթին ներկայ էին Հայ Կաթողիկէ համայնքի Գերյարգելի Վարդապետը, Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Օհաննեան եւ երէցկինը, Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան անդամներ, միութեանց ներկայացուցիչներ եւ ծնողներ: Իրենց ներկայութեամբ, հանդէսին բացառիկ փայլ մը տուին Աղեքսանդրիոյ Սովետական Մշակութային Կեդրոնի նոր տնօրէն Տէր եւ Տիկին Ռոպերթ Արզումանեանները, որոնց առաջին այցելութիւնն էր աղեքսանդրահայ համայնքին:

Երկու մասերէ բաղկացած օրուան յայտագրին մէջ, հետզհետէ ելոյթ ունեցան կրտսեր ու երէց բաժիններու աշակերտութիւնը շատ յաջող կերպով: Աւարտին, յիշատակի գեղեցիկ ափսէ մը նուիրուեցաւ Մօ. Հայկ Սարգիսեանին, վարժարանի տնօրէնուհի Տիկին Զուարթ Գալայճեանի կողմէ, որ բարի գալուստ մաղթելէ ետք հայրենի հիւրերուն, հրաւիրեց Տիար Ռոպերթ Արզումանեանը ելոյթ ունենալու: Ան ալ իր ուրախութիւնը յայտնեց աղեքսանդրահայ գաղութի կենսունակութեան համար եւ պատրաստակամութիւն յայտնեց, իր քաղաքս կեցութեան յառաջիկայ չորս տարիներուն ընթացքին, իր գործակցութիւնը բերելու համայնքին ազգային կարիքներուն:

Հանդիսութեան փակման խօսքը կատարեց Արժ. Քահանայ Հայրը եւ պահպանիչով փակեց սոյն գեղեցիկ երգահանդէսը:

Կը շնորհաւորենք վարժարանի տնօրէնուհին եւ իրեն անմիջական գործակիցները այս գողտրիկ երեկոյթին համար եւ յաջողութիւն կը մաղթենք իրենց ապագայ գործունէութեան մէջ:

*Արեւ*, 9 Մայիս 1991,75-րդ տարի, թիւ 21762,  էջ 3

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 24 ԱՊՐԻԼ 1991**

ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ
ՅՈՒՇԱՏՕՆ

ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

ԵՐԵՔ ՀԱՅ ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏԵՐՈՒՆ

*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ*

ԳԱՀԻՐԷԻ ԲՈԼՈՐ ՀԱՅ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

*Տեղի կունենայ*

*Պըլըքրանեան Հանդիսասրահին մէջ*

*Չորեքշաբթի, 24 Ապրիլ 1991-ի գիշերը*

*Ժամը ճիշդ 8.30-ին*

*ՅԱՅՏԱԳԻՐ*

*Եգիպտական Քայլերգ*

*Մարշ Ֆիւնէպրը, Շոբէն, դաշնամուր*

*ՕՐ. ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆ*

*Բացման Խօսք* *ՏԻԿԻՆ ՍՕՆԱ ՊԱՅՐԱՄԵԱՆ*

*Արտասանութիւն, Ծաւլին ճիչը, (Պէպօ Սիմոնեան)*

*ՕՐ. ՄԱՐԱԼ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ*

*Մեներգ Ով Մեծասքանչ* *ՕՐ. ՄԱՐԻ ԹԱՉՊԱՉԵԱՆ*

*Հայաստան Աշխարհ*

*Խմբական Արտասանութիւն, Հողին Կորուստը,*

*ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ*

*ԱՇԱԿԵՐՏՆԵՐ*

*Նուագ, Ջութակ -* *Տիար ՊԵՏՐՈՍ ԳՈԳՈՐԵԱՆ*

*Դաշնամուրի Ընկերակցութեամբ*

*Մօ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ*

*Արտասանութիւն, Դարակէսի Հիմնը, (Պ. Սեւակ)*

*ՕՐ. ԿԱՐԻՆ ՓԱՅԼԱԿԵԱՆ*

*Խօսք* *ՏԻԱՐ ՅՈՎՍԷՓ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ*

*Նուագ, Սրինգ* *Տիկին ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆ*

*Դաշնամուրի Ընկերակցութեամբ*

*Մօ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ*

*Մեներգ* *ՏԻԿԻՆ ՇԱՔԷ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ*

*Պահպանիչ*

*Սիրալիր հրաւէր բոլորին*

*Յարգենք մեր Նահատակները*

Յայտարարութիւն

*Արեւ*, 18 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21746, էջ 4

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆԸ ՆՇՈՒԵՑԱՒ ՓԱՌԱՇՈՒՔՕՐԷՆ
(հատուած)

ՄԱՐՕ ՍԱԳԱՅԵԱՆ

Օր. Պետրոս Գոգորեան ջութակի նուագածութեամբ հրամցուց եղեռնի զոհերէն անմահին Կոմիտասի *Ծիրանի ծառ*ը եւ *Կռունկ*ը, դաշնամուրի ընկերակցութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:

Օր. Կարին Փայլակեան ասմունքեց Պարոյր Սեւակի գլուխ գործոցներէն, *Դարակէսի հիմնը*, հմայելով բոլոր ներկաները:

Այս բարձրորակ ելոյթին յաջորդեց նոյնքան բարձր կատարողութիւն մը: Տիկին Անահիտ Սարգիսեան սրինգի վրայ նուագեց *Հաւուն-հաւուն*ը եւ Տիգրան Մանսուրեանի յօրինումներէն, դաշնամուրի ընկերակցութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:

*Արեւ*, 29 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21754, էջ 1

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

Պ.

Օր. Պետրոս Գոգորեան ջութակի վրայ նուագեց անմահին Կոմիտասէն զոյգ կտորներ, դաշնակի ընկերակցութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի: Պր. Գոգորեան իր ճշգրիտ եւ զգայուն նուագով խոր տպաւորութիւն թողեց ներկաներուն վրայ: Պ. Սեւակի *Դարակէսի հիմնը* արտասանեց Օր. Կարին Փայլակեան հանդարտաբարոյ եւ արտայայտիչ զգացողութեամբ: Փափաքելի է ուրիշ առիթներով եւս տեսնել զինք:

Այս որակաւոր յուշահանդէսին, բնական էր որ իրենց մասնակցութիւնը բերէին Սարգիսեան ամոլը: Տիկ. Անահիտ մեզ ներկայացաւ որպէս մենակատար սրինգի նուագակցութեամբ, դաշնակի ընկերակցութեամբ մեր սիրելի Հայկին: Հաճելի էր ունկնդրել իրենց փոփոխական ելեւէջները կատարեալ ներդաշնակութեամբ:

*Զահակիր*, 2 Մայիս 1991, նոր շրջան, թիւ 1227, էջ 1, 3

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 25 ԱՊՐԻԼ 1991

ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ ՎԱՐԺԱՐԱՆ

*ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ*

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

*Առաջնորդ Հայոց Եգիպտոսի*

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ*

## ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ

*Ատենապետ Գաւ. Քաղաքական Ժողովի*

*Տեղի կունենայ Վարժարանիս մէջ*
*Հինգշաբթի, 25 Ապրիլ 1991–ին, կ.ե. ժամը 8–ին*
*Սիրայիր հրաւէր ծնողներուն եւ կրթասէր*
*հասարակութեան*

Յայտարարութիւն
*Արեւ*, 23 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21750, էջ 4

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

ՊԱՐԳԵՒ ՔՀՆՅ. ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս տեղի ունեցաւ վարժարանին մէջ Ամավերջի հանդէսը խանդավառ մթնոլորտի մէջ, Հինգշաբթի, 25 Ապրիլ 1991-ի կ.վ. ժամը 8-ին:

Կը հովանաւորէր թեմիս բարեխնամ Առաջնորդ բազմաշնորհ Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան:

Օրուան նախագահն էր Քաղաքական Ժողովի յարգարժան ատենապետ Պրն. Նուպար Սիմոնեան եւ իր ազնուափայլ Տիկինը:

Ներկայ էր Հայ Կաթողիկէ համայնքի ներկայացուցիչ Գերյարգելի Հայր Անդրանիկ Աղամեան եւ Գաhիրէի նախկին հոգեւոր հովիւ Արժ. Տ. Պարգեւ Քհնյ. Նալպանտեան:

Ներկայ էին նաեւ Պատկառելի Թեմական Ժողովի յարգարժան ատենապետ Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեան, Նուպարեան Ազգային Վարժարանի տնօրէն Պրն. Մարտիկ Պալաեան եւ իր Տիկինը, Հ.Գ.Մ.ի ցկեանս նախագահ Պրն. Վահագն Տեփոյեան եւ իր Տիկինը, ինչպէս նաեւ վարժարանիս հոգաբարձութեան անդամներ՝ Տէր եւ Տիկին Նորայր Տէօվլէթեան եւ Պրն. Վարուժան Գազանճեան, սրահներու ատենապետներ, մամլոյ ներկայացուցիչներ, Ծնողք-Ուսուցիչ Միութեան անդամներ, Տիկնանց Խնամակալութեան անդամներ եւ ծնողքներու հոծ բազմութիւն մը:

Եգիպտական քայլերգէն եւ վարժարանի մաղթերգէն վերջ, հանդիսութիւնը բացաւ վարժարանիս երկարամեայ եւ նուիրեալ տնօրէն Պրն. Նշան Վարդեան, որ իր խօսքին մէջ շեշտեց հայ դպրոցին կարեւորութիւնը ապագայ սերունդներու կերտումի գործին մէջ: «Հայ դպրոցը երաշխիքն է առողջ սերունդին եւ գաղութին կենսունակութեան», ըսաւ ան: Ապա ներկայացուց վարժարանին կրթական եւ բարոյական տեղեկագիրը, որ պիտի տանք առանձին:

Շրջանաւարտ Օր. Սիւզան Սէմիզեան կարդաց իր հրաժեշտի խօսքը: Անոր յաջորդեց մշակութային ճոխ յայտագիր մը, որ տեւեց երկուք ու կէս ժամեր:

Նախ, մանկապարտէզի աշակերտ-աշակերտուհիներ առաջնորդութեամբ Տիկին Անահիտ Սարգիսեանի երգեցին *Ծիլի պումը* խօսք Հայրապետեանի, երաժշտ. Ռ. Մելիքեանի: Ապա երգեցին *Թիթեռ*, խօսք Հ. Չէչճէնեանի, երաժշտ. Հայկ Սարգիսեանի, մենակատարներ Քրիստին Սոլոմոն եւ Լորա Գասապեան: *Փինոքիոն* զաւեշտախաղ - դերակատարներ, Էտնա Թրայեան, Վաչէ Արթինեան, Թինա Նալպանտեան: *Թզուկի երգը*, խօսք Պ. Մարտիրոսեան, երաժշտ. Է. Միհրանեան - մենակատար՝ Ռաֆֆի Նալպանտեան: *Պատմէ մեծ հայրիկ* խօսք Հ.

Չէչճէնեանի եւ երաժշտ. Հ. Սարգիսեանի։ *Պատճառը*, արտասանութիւն Լորա Գասապեանի։ *Կովիկի երգը* խօսք Հ. Չէչճէնեան, երաժշտ. Հ. Սարգիսեան։ *Խուտուտ-մուտուտ* երաժշտ. Տ. Մանսուրեանի։

Կարճ դադարէ մը ետք հանդիսութիւնը շարունակուեցաւ իր յայտագրին երկրորդ բաժինով, որուն մասնակցութիւն բերին Նախակրթարանի եւ Բարձրագոյն դասարաններու աշակերտ-աշակերտուհիներն եւ ուսանող-ուսանողուհիները։

Անի Գասպարեան արտասանեց իր ինքնագիր *Արաքսին* ոտանաւորը։ Յետոյ երգուեցաւ *Հայաստան* խօսք Ղուկասեանի, երաժշտ. Այվազեանի։ *Կռունցէք տղերք* հայրենասիրական երգը - մենակատար Ռ. Միլատ։ *Մարտիկի երգը*, խօսք Գ. Սարեան, երաժշտ. Աշոտ Սաթեանի - մեներգող՝ Թալին Նալպանտեան։ *Լուսաւորչի կանթեղը* Վ. Թէքէեանի, արտասանեց Անի Լուիզ Պարսում։ *Ես միշտ ուարխ եմ լինում* երգը, խօսք Մուրատեանի եւ երաժշտ. Ռ. Ամիրխանեանի - մենակատարներ՝ Ռ. Միլատ եւ Թալին Նալպանտեան։ *Անդրանիկ Զօրավար* հայրենասիրական երգ - մենակատար՝ Ռաֆֆի Պօղոսեան։ *Հայրենիքի* Յ. Շիրազի, արտասանեց Գարոլին Տ. Յակոբեան։ *Ձայնը հնչեց Էրզրումի հայոց լեռներէն* երգը երգեց Էտուար Միլատ։ *Զարթիր լաօ* ժողովրդական երգը երգուեցաւ։

*Պանդուխտ հայ մայրերին* Սարմէնի, արտասանեց Ռաֆֆի Հեղինեան։ Արաբերէն երգ *Միասին երգենք*։ Ապա *Երեւան Էրեբունի* խօսք Պարոյր Սեւակի եւ երաժշտ. Է. Յովհաննիսեանի, արտասանեց Հերմին Նատր։ *Լուսաւորչի կանթեղը* Յ. Թումանեանի, արտասանեց Վիվիան Սէմիզեան։

Գովելի էին արտասանողներն ու երգողներ թէ իբրեւ կատարում եւ թէ իբրեւ ընտրութիւն։ Երգերը ընդհանրապէս ժողովրդային, հայրենասիրական էին որոնք երգուեցան խանդավառութեամբ եւ անթերի կերպով։

Ապա Առաջնորդ Սրբազան Հայրը խօսք առաւ եւ իր խօսքին մէջ ըսաւ ի միջի այլոց, թէ Ազգային Իշխանութիւնը որեւէ ճիգ չի խնայեր դպրոցները վառ պահելու համար։ Ան գնահատեց Պրն. Տնօրէնը եւ ուսուցչական կազմը, որոնք խղճմտօրէն իրենց դերը կը կատարեն յօգուտ աշակերտութեան դաստիարակութեան եւ հանդիսութիւնը փակեց աղօթքով եւ պահպանիչով։

1989-1990 տարեշրջանի սոյն հանդիսութեան տեղի ունեցաւ նաեւ մրցանակաբաշխութիւն։

*Արեւ*, 9 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21762, էջ 3

# Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՏԱՃԱՐ, ԳԱՀԻՐԷ

# ԿԻՐԱԿԻ, 28 ԱՊՐԻԼ 1991

# ՊԱՏԱՐԱԳ

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆԸ ՆՇՈՒԵՑԱՒ ՓԱՌԱՇՈՒՔՕՐԷՆ

(հատուած)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կիրակի, 28 Ապրիլի առաւօտեան տեղի ունեցաւ հանդիսաւոր Ս. Պատարագ Գահիրէի Սբ. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ, որ մատուցեց եգիպտահայոց բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան եւ յաւուր պատշաճի հայրենաշունչ քարոզ մը տուաւ։

Ս. Պատարագի բազմաձայն երգեցողութիւնները կատարեց Շնորհալի Երգչախումբը, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Յակոբեանի եւ երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի։

*Արեւ*, 30 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21755, էջ 1

# 76 - ԱՄԵԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԵՌՆԻ

Ապրիլեան Եղեռնի 76-րդ տարելիցին առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ Կիրակի, 28 Ապրիլ 1991ին տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա հոգեհանգիստ, ոգեկոչելու համար խնկելի յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն:

Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

*ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ*

Յաւարտ Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն եւ ծաղկեպսակներ պիտի զետեղուին մեր բիւրաւոր նահատակներուն ի յուշ կառուցուած մատուռին մէջ:

Երգեցողութիւնները պիտի կատարուին Շնորհալի Երգչախումբին կողմէ բազմաձայն, ղեկավարութեամբ Մօ. Նշ. Յակոբեանի եւ երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին
Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10-ին
Քարոզ առաւօտեան ժամը 11-ին
Հոգեհանգիստ առաւօտեան ժամը 11.45-ին

Հայրենիքի եւ հաւատքի համար մարտիրոսացածներն ու նահատակեալները յարգել, անոնց արժանի յաջորդները ըլլալ կը նշանակէ:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալու բոլոր արարողութիւններուն, աղօթելու անոնց հոգիներու հանգստեան համար:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 18 Ապրիլ 1991, 75-րդ տարի, թիւ 21746, էջ 4

## ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

## ՇԱԲԱԹ, 11 ՄԱՅԻՍ 1991

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

**Նուպարեան Ազգ. Վարժարան**

*ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ*

*Շաբաթ 11 Մայիս 1991 – կ.ե. ժամը 8.30–ին*

*ԳԸԼԸԳՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

*Հովանաւորութեամբ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*Բարեջան Առաջնորդ Եգիպտահայ Թեմի*

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ*

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

*Ատենապետ Թեմական Ժողովի*

*Մրցանակաբաշխում եւ 1989-90 Տարեշրջանի*

*Շրջանաւարտները*

*պիտի ստանան իրենց վկայականները*

*Սիրալիր Հրաւէր Բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 10 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21763, էջ 4

# ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

ՊԱՐԳԵՒ ՔՀՆՅ. ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս տեղի ունեցաւ Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսը, ուրախ մթնոլորտի եւ խուռներամ բազմութեան մէջ, Շաբաթ 11 Մայիս 1991 կ.վ. ժամը 8.30-ին Պըլըքտանեան վերանորոգուած հանդիսասրահին մէջ։

Օրուան նախագահն էր Պատկառելի Թեմական Ժողովի մեծայարգ ատենապետ Տիար Անդրանիկ Մեսրոպեան եւ իր ազնուափայլ տիկինը։ Ներկայ էր Ս. Եկեղեցւոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Պարգեւ Քհնյ. Նալպանտեան, Պատկառելի Քաղաքական Ժողովի յարգարժան ատենապետ Տիար Նուպար Սիմոնեան եւ իր ազնուափայլ տիկինը։ Գալուստեան Ազգային Վարժարանի վաստակաւոր Տնօրէնը՝ Տիար Նշան Վարդեան, Հ.Գ.Մ.ի ցկեանս նախագահ Տէր եւ Տիկին Վահագն Տեփոյեան, Տիար Վարուժան Գազանճեան, Թեմական Ժողովի ատենադպիր՝ Տոքթ. Սուրէն Պայրամեան, Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի Մասն. ատենապետ Տէր եւ Տիկին Նորայր Տէօվլէթեան, Տէր եւ Տիկ. Երուանդ Թումայեանց, սրահներու ատենապետներ, մամլոյ ներկայացուցիչներ, վարժարանի հոգաբարձուներ, վարժարանի Տիկնանց Խնամակալութեան Յանձնախումբի անդամներ, ուսուցիչներ, աշակերտներ եւ ծնողքներ։

Բացման խօսքը ըրաւ վարժարանիս երկարամեայ ուսուցչուհի Տիկին Վերոն Թիւսիւզեան։ Յետոյ սկսաւ օրուան յատուկ յայտագրին Ա. Բաժինը նախակրթարանի բաժնի աշակերտներու կողմէ *Ծիլի պում* երգով, ղեկավարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի։ Ապա Սթիւ Սիմոնեան եւ Ալիս Յակոբեան երգեցին *Գծագրութեան տետրակիս մէջ* երգը։ Ատոր յաջորդեց խմբային արտասանութիւնը *Սասունցի Դաւիթը զառնարած* Սթիւ Սիմոնեանի, Թալին Յակոբեանի, Ալիս Յակոբեանի, Ալէն Էմիրզեանի ընկերակցութեամբ։

Երգուեցաւ նաեւ *Արեւ բացուեց* երգը, զոր կատարեցին Վահագն Տեփոյեան եւ Նաթալի Ասլանեան։ Նոյնպէս՝ Թալին Յակոբեան եւ Ռիթա Շահմիրեան երգեցին *Թիթեռ* երգը։

Յետոյ Դ. դասարանը արտասանեց *Ով ունին* ու անոր յաջորդեց Քաթրին Կիւլիւզեանի կողմէ երգուած *Կաքաւիկ* երգը։ Ապա Ա. դասարանը արտասանեց *Ինծի կ՚ըսեն խելօք չես*, իսկ Անի Օհաննէսեան երգեց *Կովիկը* երգը։ Ասոր յաջորդեց *Թզուկը* խմբերգը, զոր կատարեցին Այգ Զաքարեան, Նաթալի Ասլանեան, Քաթրին Կիւլիւզեան, Թալին Բերլոշեան։

Պատրաստականի բաժինէն Թամար Յակոբեան մեներգեց *Հայաստան* երգը եւ ապա երգուեցաւ նաեւ խմբովին *Անդրանիկ* երգը։ Մեներգ կատարեց

Պատրաստականի բաժինէն Լինտա Յակոբեան երգելով *Բարով եկարը*։ Ասոր յաջորդեց *Ձայն մը հնչեց* խմբերգը եւ յետոյ Թալին Քոֆթիկեանի, Սիլվա Ոսկերիչեանի, Ժորժ Շահմիրեանի եւ Արմէն Վարժապետեանի ընկերակցութեամբ երգուեցաւ *Կռունցէ՛ք* երգը։

Նայիրի Սիմոնեան Պատրաստական բաժինէն մեներգեց *Ես միշտ ուրախ եմ լինում* երգը, յետոյ արտասանեց *Արարատ* ոտանաւորը Ալին Նազաշեան, ապա դարձեալ երգ՝ *Արդեօք ովքեր են* Սթիւ Սիմոնեանի եւ Աշոտ Թումայեանցի կատարմամբ։

Գ. դասարանը արտասանեց *Հայրենիքը*։ *Պատմէ մեծ հայրիկ* երգը միասին երգեցին Թալին Յակոբեան, Ռիթա Շահմիրեան, Ճեսիքա Երամեան եւ Ալիս Յակոբեան եւ ի վերջոյ խմբովին երգուեցաւ *Խուտուտ մուտուտ* խմբերգը։

Այս ճոխ յայտագրի ներկայացումէն ետք, 15 վայրկեան դադար տեղի ունեցաւ։

Յայտագրին Բ. Բաժինը սկսաւ վարժարանին երիտասարդ եւ կարող Տնօրէն Տիար Մարտիկ Պալաեանի խօսքով։

Յարգելի Տնօրէնը անդրադարձաւ վարժարանին տարեկան գործունէութեան, կրթական զարգացումին եւ նուաճումներուն, ինչպէս նաեւ ուսուցչական եւ վարչական տեղեկագրութիւնը տուաւ։

Տեղի ունեցաւ նաեւ մրցանակաբաշխում եւ վկայականներ բաժնուեցան ձեռամբ Արժ. Տ. Պարգեւ Քհնյ. Նալպանտեանի, Տեարք Անդրանիկ Մեսրոպեանի, Նուպար Սիմոնեանի, Նշան Վարդեանի եւ Վահագն Տեփոյեանի։

Բեմ հրաւիրուեցաւ Ս. Եկեղեցւոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Պարգեւ Քհնյ. Նալպանտեան, որ փակման իր խօսքը ըսէ։ Արժ. Տ. Հայրը իր խօսքերուն մէջ ըսաւ, թէ ուսումը, զարգացումը շատ կարեւոր տեղ մը ունեցած է մեր ժողովուրդին սրտին եւ մտքին մէջ։ Արդի կեանքին մէջ յաջողութեան ճամբան դպրոցէն եւ համալսարանէն կ՚անցնի։ Վերջապէս մասնագիտութիւններու ժամանակաշրջանի մը մէջ կ՚ապրինք։ Վեր առաւ դաստիարակին գործը ու շեշտեց ըսելով, վսեմ նուիրական պատասխանատու գործ մըն է եւ նուիրումի, կոչումի ասպարէզ մը։

Հանդէսը փակուեցաւ Տէր Հօր Տէրունական աղօթքով եւ Պահպանիչով։

*Արեւ*, 24 Մայիս 1991, 75-րդ տարի, թիւ 21773, էջ 3-4

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Կիրակի, 18 Օգոստոս 1991-ին Տօնն է Վերափոխման Ս. Կոյս Աստուածածնի:*

*Այս առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ:*

*Պիտի պատարագէ եւ քարոզէ Եգիպտահայոց Առաջնորդ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Ս. Պատարագի ընթացքին պիտի կարդացուի*

**Ն. Ս. Օ. Տ. Տ. ՎԱԶԳԷՆ Ա.**

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

*Սրբատառ Կոնդակը ի յուշ Ս. Եկեղեցւոյ վաստակաւոր մեներգչուհի յաւէտ*

**ՈՂԲ. ՄԱՐԿՐԻԹ - ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆԻ**

*Ապա պիտի օրհնուի Մայր Հայրենիքէն բերուած ԽԱՉՔԱՐԸ ողբացեալին շիրիմին վրայ զետեղուելու համար:*

*Երգեցողութիւնները պիտի կատարուին «ՇՆՈՐՀԱԼԻ» երգչախումբին կողմէ, խմբավարութեամբ Մօ. Եղ. Ցակըրեանի եւ երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի:*

*Արարողութենէն ետք տեղի պիտի ունենայ ընդունելութիւն Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:*

*Կը հրաւիրենք բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալու առաւօտեան ժամերգութեան եւ Ս. Պատարագին:*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին*
*Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10-ին*

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

Յայտարարութիւն
*Արեւ*, 3 Օգոստոս 1991, 75-րդ տարի, թիւ 21829, էջ 4

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 31 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1991

ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ

# ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ
(հատուած)

Գալուստեան Ազգային Վարժարանի Ամանորի հանդէսը տեղի ունեցաւ Երկուշաբթի 31 Դեկտեմբերին: Հանդէսին յայտագիրը գործադրուեցաւ Մանկապարտէզի փոքրերու եւ նախակրթարանի Ա. Բ. Գ. դասարաններու աշակերութեան կողմէ:

Վարժարանի Ա. յարկի անցքը եղաւ հանդիսավայրը ուր տեղ գրաւեցին օտար եւ հայ ուսուցիչ-ուսուցչուհիները, ծնողքները եւ նախկին աշակերտ-աշակերտուհիները, իսկ աշակերտները գորգով ծածկուած կողմնակի սանդուխի աստիճաններուն:

Հանդէսը ունեցաւ չորս բաժիններ. Առաջինը՝ Նախակրթարանի եւ Միջնակարգի աշակերտութեան Կաղանդի եւ Ս. Ծննդեան խմբերգներ ղեկավարութեամբ Տիկին Անահիտ Սարգիսեանի եւ դաշնակի ընկերակցութեամբ Պրն. Հայկ Սարգիսեանի:

Աշակերտները հագուած էին ճերմակ երկար շապիկներ կարմիր վերարկիկով (փէլըրին):

Արտասանուեցաւ *Տէրունական աղօթքը* նուագի ընկերակցութեամբ, *Լուռ գիշեր*, *Ինչ մանուկ է սա*, *Երջանկութիւն ձեզի*, *Երեք մոգեր*, *Եկէք ով հաւատացեալներ* (Ատեսթէ ֆիտէլիս), *Լսեցէք հրեշտակներ*, *Առաջին կաղանդը*, *Աշխարհի երջանկութիւն*, *Զանգակներ ղօղանջեցէք*, *Կաղանդի տանսներկու օրերը*. այս երգերը տրուեցան անգլերէն եւ հայերէն լեզուով:

*Արեւ*, 29 Յունուար 1992, 76-րդ տարի, թիւ 21975, էջ 3

# Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐ, ԳԱՀԻՐԷ

# ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1992

# ՊԱՏԱՐԱԳ

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆԸ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

(հատուած)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Երկուշաբթի, 6 Յունուար 1992-ի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ Ս. Ծննդեան արարողութիւնը։

Օրուան պատարագիչն էր Եգիպտահայոց բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, որուն կը սպասարկէր Արժ. Տէր Նշան Խչկր. Քհնյ. Պէյլէրեան։

Արարողութեան իրենց մասնակցութիւնը բերին Շնորհալի երգչախումբը, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Յակոբեանի, խմբավար Հայկ Սարգիսեան եւ Օր. Արփի Ճանիկեան երգեհոնի նուագակցութեամբ, նաեւ սարկաւագներ՝ Յակոբ Համբիկեան, Յարութիւն Լեւոնեան, Օննիկ Պօղոսեան եւ դպիրներ։

*Արեւ*, 7 Յունուար 1992, 75-րդ տարի, թիւ 21958, էջ 1

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Երկուշաբթի, 6 Յունուար 1992-ին Տ ՏՕՆ է ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի առաւօտեան ժամերգութիւն եւ հանդիսաւոր Ս. Պատարագ։ Պիտի պատարագէ եւ քարոզէ

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՄՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

### ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ

Ս. Պատարագի երգեցողութիւնները պիտի կատարուին Շնորհալի երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Յակոբեանի։

Արարողութիւնները պիտի ձայնասփռուին առաւօտեան ժամը 9·30-էն սկսեալ։

Սկիզբ ժամերգութեան ժամը 8-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 9-ին
Կարգ Մկրտութեան ժամը 11-ին

Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այս արարողութեանց։

Իսկ նախորդ օրը Կիրակի, 5 Յունուար 1992-ին տեղի պիտի ունենայ երեկոյեան Ճրագալոյցի արարողութիւն եւ Ս. Պատարագ, Ազգային վարժարաններու աշակերտներ պիտի կարդան Մարգարէական գիրքեր եւ յատկապէս ԴԱՆԻԷԼԻ ԳԻՐՔԸ ժամը 3·80-էն սկսեալ։

Ս. Ծննդեան օրը 6 Յունուար 1992-ին դէպի Մայր Տաճար երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է օթօպիւսի յատուկ սպասարկութիւն։

Հելիոպոլսոյ Սաֆիրի կայարանէն առաւօտեան ժամը 8-ին
Նուպարեան Ազգ. վարժարանէն առաւօտեան ժամը 8·25-ին
Օլիմփիա Նորմանտիի առջեւէն առաւօտեան ժամը 8·30-ին
Օլիմփիա Ռօքսիի առջեւէն առաւօտեան ժամը 8·45ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 3 Յունուար 1992, 75-րդ տարի, թիւ 21953, էջ 4

ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ, ԳԱՀԻՐԷ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, 27 ՓԵՏՐՈՒԱՐ 1992

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

**Հ. Գ. Մ. ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ**
**ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ**

*Հինգշաբթի 27 Փետրուար 1992-ի*
*երեկոյեան ժամը 9-ին*
*Հայ Գեղ. Միութեան Թէքէեան*
*Սրահին մէջ*

**ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ*
*ՕՐՈՒԱՅ ԲԱՆԱԽՕՍ*

**ԱՐԺ. ՏԷՐ ՆՇԱՆ ԽԱՉԱԿԻՐ ՔՀՆՅ. ՊԷՅԼԷՐԵԱՆ**

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ*

*Այս առթիւ տեղի պիտի ունենայ աւանդական քէշկէկի սպասարկութիւն։*

*Սիրալիր հրաւէր բոլորին անխտիր*

Յայտարարութիւն
*Արեւ*, 26 Փետրուար 1992, 76-րդ տարի, թիւ 21999, էջ 4

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

Ապա Գալուստեան վարժարանէն խումբ մը երկսեռ աշակերտներ ելոյթ ունեցան հայրենասիրական եւ ազգագրական փունջ մը երգերով: Քառաձայն երգչախումբի երգերուն մեծամասնութիւնը նուիրուած էին Վարդանանց հերոսամարտին, ղեկավարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի, որ մեծապէս գնահատուեցաւ ներկաներուն կողմէ:

*Ջահակիր*, 5 Մարտ 1992, նոր շրջան, թիւ 1248, էջ 1-2

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԷՋ
(հատուած)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Ապա, Գալուստեան Ազգային Վարժարանի աշակերտներ՝ Օր.եր Հերմին Նատէր, Անի Գասապեան եւ Պր. Լեւոն Տէր Յակոբեան բեմ հրաւիրուեցան, որոնք խոր ըմբռնումով, հարազատօրէն մեկնաբանեցին բանաստեղծութեան իշխան՝ Վահան Թէքէեանի *Խորհուրդ վարդանանց* քերթուածը, դաշնակի ընկերակցութեամբ տաղանդաւոր խմբավար Հայկ Սարգիսեանի, ու արժանացան ունկնդիրներու անվերապահ գնահատանքին եւ ծափերուն:

Հայկական ոգեշունչ մթնոլորտին մէջ, բեմ բարձրացան Գալուստեան Ազգային Վարժարանի կարգ մը աշակերտ-աշակերտուհիները, որոնք երգեցին *Իմ հայրենեաց հոգի Վարդան* հայրենասիրական երգը: Յետոյ, Ռոպէր Միլատ իր զմայլելի ձայնով մեներգեց անմահին Կոմիտասի *Լուսնակ անուշ* երգը: Իսկ Ժան Փիէռ Աւագեան իր կուռ ձայնով երգեց *Կռուեցէք տղերք* մարտաշունչ երգը: Ռոպէրն ու Ժան հմայեցին հանդիսականները ու խլեցին անոնց երկարատեւ գնահատելի ծափերը:

Ազգայնաշունչ ոգեւոր երգերուն յաջորդեց խմբերգ, Գալուստեան վարժարանի երկսեռ աշակերտներու կողմէ, որոնք բեմական վայելուչ կեցուածքով, խմբավար Հայկ Սարգիսեանի դաշնակի ընկերակցութեամբ երգեցին *Հայ ապրինք*

*եղբայրք* հայրենաշունչ երգը, որ ներկայ հանդիսականներու կողմէ գնահատուեցան երկարատեւ ծափերով եւ կրկնուեցաւ անոր կատարումը:

Օր. Հերմին Նատէր իր թովիչ ձայնով մեներգեց յայտագրին վերջին երգը *Այ ֆիտայի* ոգեւորիչ երգը, որ կրկնապատկեց հանդիսատեսներու խանդավառութիւնը:

*Արեւ*, 6 Մարտ 1992, 76-րդ տարի, թիւ 22007, էջ 3

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԾԱՂԿԱԶԱՐԴ

Այս Կիրակի, 12 Ապրիլ 1992-ին ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ՏՕՆ Է. ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՀՐԱՇԱՓԱՌ ՄՈՒՏՔԸ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ։

Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ տեղի պիտի ունենայ առաւօտեան ժամերգութիւն եւ ապա հանդիսաւոր Ս. Պատարագ։

Կէսօրէ ետք ժամը 5-ին Դռնբացէք արարողութիւն։ Հայց. եկեղեցւոյ յատուկ այս արարողութիւնը, խորհրդանշանական իր խոր իմաստով, միշտ սիրուած է մեր բարեպաշտ ժողովուրդին, սրտագրաւ չափահասներուն եւ ծնողին համար։

Ս. Պատարագի երգեցողութիւնները պիտի կատարուին «ՇՆՈՐՀԱԼԻ» երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Ցակրեանի, երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգսեանի։

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին
Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10.15-ին
Դռնբացէք կէսօրէ ետք առաւօտեան ժամը 5-ին

Դէպի Մայր Տաճար երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է օթօպիւսի յատուկ սպասարկութիւն։

Հելիոպոլսոյ Զաֆիրի կայարանէն 8.25-ին
Նուպարեան Ազգային Վարժարանէն 8.30-ին
Սինեմա Նորմանտիի առջեւէն 8.40-ին
Սինեմա Ռօքսիի առջեւէն 8.45-ին

Դռնբացէքի համար
Հելիոպոլսոյ Զաֆիրի կայարանէն կէսօրէ վերջ ժամը 4-ին
Նուպարեան Ազգային Վարժարանէն կէսօրէ վերջ ժամը 4.10-ին
Սինեմա Նորմանտիի առջեւէն կէսօրէ վերջ ժամը 4.20-ին
Սինեմա Ռօքսիի առջեւէն կէսօրէ վերջ ժամը 4.30-ին

Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու այս հոգեպարար արարողութիւններուն։

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 7 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22030, էջ 4

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ, ԳԱՀԻՐԷ

# ԿԻՐԱԿԻ, 12 ԱՊՐԻԼ 1992

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ԱՄԱՎԵՐՋԻ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

(հատուածներ)

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Երբ սրահէն ներս մտանք, նշմարեցինք բեմին ամբողջ պատին վրայ գծուած գոյնզգոյն իսկայ չորս մարգարտածաղիկներ եւ որոնց մէջ արձանագրուած՝ չորս բառեր - Թող միշտ շողայ արեւը։ Այսինքն թէ յաւերժ մնայ դպրոցը, որ լոյս է տաքութիւն եւ զօրութիւն, ինչպէս արեւը։

Այս գեղազարդումը կը պարտինք Տիկին Անահիտ Սարգիսեանի, որ իր ամուսինին՝ խմբավար Հայկ Սարգիսեանի հետ դպրոցի գեղարուեստական ոգին միշտ վառ կը պահէն։

Բեմին վրայ դպրոցի երգչախումբը (25 հոգի) եւ թիոլահարը, դաշնակի վրայ՝ խմբավար Հայկ Սարգիսեան որ կ'ընկերանար եւ կը ղեկավարէր երգերը։

[...]

Հետզհետէ աշակերտները երգեցին, արտասանեցին իւրաքանչիւր դասարան առանձին, յետոյ խմբական երգեր, որոնցմէ յիշենք *Կովկասի քաջերը*, *Լուսնակ անոյշը*, *Կենաց երգը*, *Հայաստան*, *Իմ Երեւան*, *Կռունկ ՛ [sic]*

*Աշտարակ*, *Ղաննո՛ւ մաայա՛* արաբերէն, *Զօրաւոր զօրքիդ մեռնեմ*, *Հայ ապրինք եղբարք*։ Այս վերջինը խմբավար Հայկ Սարգիսեան երկու ձայնի վերածած էր նոյն տողի կրկնութեամբ։

*Արեւ*, 29 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22046, էջ 2-3

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

ԴՊՐՈՑԱԿԱՆ

ԱՄԱՎԵՐՋԻ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍ

1990–199 *տարեշրջանի*

ԴՊՐՈՑԻՍ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

*Կիրակի 12 Ապրիլ 1992, Երեկոյեան ժամը 7.30–ին*

*Հովանաւորութեամբ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

*ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ*

*Նախագահութեամբ*

**ՏԻԱՐ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

*ՊԱՏԿ. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԱՏԵՆԱՊԵՏ*

*Շրջանաւարտներու Վկայականներու բաշխում*

*Մրցանակաբաշխութիւն*

*Ուղերձ – երգ – արտասանութիւն*

*Սիրալիր հրաւէր բոլորին*

*ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ*

Յայտարարութիւն

*Արեւ*, 9 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22032, էջ 4

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ՏՕՆ ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԵԱՆ

*Մեծ Պահոց Քառասնօրեայ շրջանին եւ հոգեւոր պատրաստութիւններէն ետք, մեր գաղութի բարեպաշտ ժողովուրդը յառաջիկայ Կիրակի, 19 Ապրիլ 1992-ին, պիտի տօնախմբէ* ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԻՒՆԸ։

*Զատկական Ս. Պատարագը տեղի պիտի ունենայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ, առաւօտեան ժամերգութիւններէն ետք։*

*Այս առիթով Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ՝*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Առաջնորդ Հայոց Եգիպտոսի*

*Քարոզէն առաջ ի լուր ժողովրդեան պիտի կարդացուի Ն.Ս.Օ.Տ.Տ. Վազգէն Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի սրբատառ կոնդակը։*

*Ս. Պատարագը պիտի երգուի քառաձայն, «Շնորհալի Երգչախումբ»ին կողմէ, ղեկավարութեամբ* ՄՕ. ԵԳ. ՅԱԿՈԲԵԱՆԻ, *երգեհոնահարութեամբ* ՄՕ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ *եւ* ՕՐ. ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆԻ։

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին*
*Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10-ին*

*Կը հրաւիրենք հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու Զատկական Ս. Պատարագին։*

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 17 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22039, էջ 4

# Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐ, ԳԱՀԻՐԷ

# ՈՒՐԲԱԹ, 24 ԱՊՐԻԼ 1992

# ՊԱՏԱՐԱԳ

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 77-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ

(հատուած)

Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ առաւօտեան հանդիսաւոր Ս. Պատարագ մատուցուեցաւ գաղութիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի կողմէ, որուն կը սպասարկէր Արժ. Տէր Նշան Խչկր. Քհնյ. Պէյլէրեան եւ եկեղեցական արարողութեան կը մասնակցէին Բարեշ. սարկաւագներ՝ Յակոբ Համբիկեան, Նշան Վարդեան, Արամ Ամիրեան, Օննիկ Պօղոսեան, դպրաց դասը ու երգեցողութիւնները կը կատարէր Շնորհալի երգչախումբը, ղեկավարութեամբ Մօ. Եդուարդ Յակոբեանի, երգեհոնահարութեամբ խմբավար Հայկ Սարգիսեանի եւ Օր. Արփի Ճանիկեանի:

*Արեւ*, 28 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22045, էջ 1

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## 77-ԱՄԵԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԵՌՆԻ

*Ապրիլեան Եղեռնի 77-րդ տարելիցին առիթով Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ Ուրբաթ 24 Ապրիլ 1992ին տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա Հոգեհանգիստ, ոգեկոչելու համար խնկելի յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն:*

*Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ*

## ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

### *ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ*

*Յաւարտ Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն եւ ծաղկեպսակներ պիտի զետեղուին մեր բիւրաւոր նահատակներուն ի յուշ կառուցուած մատուռին մէջ:*

*Երգեցողութիւնները պիտի կատարուին ՇՆՈՐՀԱԼԻ Երգչախումբին կողմէ քառաձայն, ղեկավարութեամբ Մօ. ԵԴ. ՅԱԿՈԲԵԱՆի եւ երգեհոնահարութեամբ Մօ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆի եւ Օր. ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆի:*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8-ին*
*Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 9.45-ին*
*Քարոզ առաւօտեան ժամը 11-ին*
*Հոգեհանգիստ առաւօտեան ժամը 11.30-ին*

*Հայրենիքի եւ հաւատքի համար մարտիրոսացեալներն ու նահատակները յարգել, անոնց արժանի յաջորդները ըլլալ կը նշանակէ:*

*Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալու բոլոր արարողութիւններուն, աղօթելու անոնց հոգիներու հանգստեան համար:*

Յայտարարութիւն
*Արեւ*, 21 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22041, էջ 4

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

**ՈՒՐԲԱԹ, 24 ԱՊՐԻԼ 1992**

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ
**77-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ

*Ապրիլեան Եղեռնի 77-րդ Տարելիցին առթիւ*

1915-1992

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒ

*Նախաձեռնութեամբ*

*Գահիրէի Ազգային Իշխանութեան*

*Եւ*

*Եգիպտահայ բոլոր կազմակերպութիւններուն*

*Հրաւիրուած է Բանախօսելու*

*Կիպրոսի Մելգոնեան Կրթական Հաստատութեան*

*Տնօրէն*

## ՏԻԱՐ ՎԱՀԷ ԳԱՐՈՒՃԵԱՆ

*Ուրբաթ*, 24 *Ապրիլ* 1992*-ի երեկոյեան ժամը*

*ճիշդ* 8*-ին*

*Հելիոպոլսոյ Պօղոսեան Հանդիսասրահին մէջ*

*ՅԱՅՏԱԳԻՐ*

*Բացման Խօսք* — *ՏԻԿԻՆ ԱԼԻՍ ՏԵՓՕՅԵԱՆ,*

*Մեղայ Քայլերգ – Սանկեան Էջմաս, Սոնաթ թիւ* 1 *Բ. մաս*

*Մահանուաղ – Արտօսր և չիրիմ Մեծին Ներսէսի Երանեալ Հայրապետին,*

*Պատրիարքին Թուրքիոյ Հայոց, Տիգրան Չուխաճեան*

*Դաշնամուր* — *Տիար ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ.*

*Ասմունք* — *Տիկին ՍԻԼՎԱ ԳԱՆԳՐՈՒՆԻ*

*Խմբերգներ* — *«ԿՌՈՒՆԿ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԽՄԲԱԿ*

*Խօսք* — *Տիար ՎԱՀԷ ԳԱՐՈՒՃԵԱՆ,*

*Արտասանութիւն – Պատմութիւն, Ժող. Յակոբեան*

*Կատարանք* — *Օր. ՄՈՆԱ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ,*

*Մեներգ – Տաղ «Սիրտ իմ սասանի» «Յորժամ մտցես»*

*Տիկին ՉԱՊԻԼ ՈՍՏՈՒՆԻ*

*Փակման խօսք – ԳԵՐՊ. ՊԵՏՐՈՍ ԵՊՍ. ԹԱՐՄՈՒՆԻ*

*Պահպանիչ – ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ*

Յայտարարութիւն

*Արեւ*, 22 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22042, էջ 3

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՏՕՆ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 77-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
(հատուած)

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Հ.Բ.Ը.Միութեան Կռունկ երգչախումբէն անդամներ՝ Տիկին Սիլվա Թերզիպաշեան, Սեդա Ալիքսանեան եւ Օր. Աննա Գազանճեան, Տիկին Կասիա Ճղալեանի դաշնակի ընկերակցութեամբ երգեցին Եկմալեանի *Տէր կեցոյ* եւ Կոմիտասի *Գարուն* երգերը, որոնք այնքան զմայլելի էին։

*Արեւ*, 29 Ապրիլ 1992, 76-րդ տարի, թիւ 22046, էջ 1

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 77-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ
(հատուած)

Հ.Բ.Ը.Մ.ի Կռունկ երգչախումբի խմբակ մը, բաղկացած յանձինն՝ Սիլվա Թերզիպաշեանի, Սիլվա Ալիքսանեանի եւ Աննա Գազանճեանի, դաշնակի նուագակցութեամբ Կասիա Ճղալեանի, ելոյթ ունեցան օրուան պատշաճ խմբերգներու փունջով մը՝ լաւ տպաւորութիւն թողելով ներկաներուն վրայ։

*Ջահակիր*, 30 Ապրիլ 1992, նոր շրջան, թիւ 1252, էջ 1, 3

ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՇԱԲԱԹ, 9 ՄԱՅԻՍ 1992

ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ




# ՇԱԲԱԹ 9 ՄԱՅԻՍ 1992-Ի, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9-ԻՆ
## «ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*

## ՅԱՐԱՆՈՒԱՆՈՒԹԵԱՆՑ ԵՐԵՔ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ
## ԽՄԲԵՐԳԱՅԻՆ ԵՐԵԿՈՅ

## Հ.Բ.Ը.Մ. «ԿՌՈՒՆԿ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

*ԵԼՈՅԹ ԿՈՒՆԵՆԱՅ*

*ՍԻԼՎԱ ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆԻ, ԱՆՆԱ ԳԱԶԱՆՃԵԱՆԻ, ՅԵՊԱ ԱԼԻՔՍԱՆԵԱՆԻ, ԻՐԻՍ ԳԱՅՍԷՐԼԵԱՆԻ, ԱՐՓԻ ՃԱՆԻԿԵԱՆԻ, ՆԱՅԻՐԻ ԳԱՄՊԷՐԵԱՆԻ, ԴԱՖՖԻ ՁԷՁՃԷՆԵԱՆԻ, ՎԻԳԷՆ ՃԻԶՄԷՃԵԱՆԻ ՊԵՐՃ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆԻ ԵՒ ԷՏՈՒԱՐ ՄԻԼԱՏԻ*

*ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԵԱՄԲ*

| | |
|---|---|
| *ԴԱՇՆԱԿ* | *ԿԱՍԻԱ ՃՂԱԼԵԱՆ* |
| *ՍՐԻՆԳ* | *ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍԵԱՆ* |
| *ՏՀՈԼ* | *ՌՈՒԲԷՆ ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆ* |

*ԽՄԲԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ*

## ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

*Մեծարելի հրաւէր բոլորին*

Յայտարարութիւն
*Արեւ*, 4 Մայիս 1992, 76-րդ տարի, թիւ 22049, էջ 4

# Հ.Բ.Ը.Մ.Ի ԿՌՈՒՆԿ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՀՈՅԱԿԱՊ ԵԼՈՅԹԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Անցեալ Շաբաթ օր, 9 Մայիսի երեկոյեան ժամը 9-ին Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգային Վարժարանի Պըլըքտանեան հանդիսասրահը երաժշտասէր հոծ բազմութեամբ լեցուած էր, ունկնդրելու համար այնքան սպասուած Հ.Բ.Ը. Միութեան Կռունկ երգչախումբի ելոյթը, որուն խմբավարն է Մօ. Հայկ Սարգիսեան:

Անժխտելի իրականութիւն մըն է, որ խմբավար Հայկ Սարգիսեան իր մօտ տասը տարիներու խմբերգային կազմակերպութեամբ, ոչ միայն եգիպտահայութիւնը՝ այլեւ ուրիշ գաղութահայերու հոգին ոգեւորած է իր խանդավառ երաժըշտական գործունէութեամբ: Որքան որ ունկնդրենք անոր երգչախմբային ելոյթները, ժամանակի մը համար կը յագեցնեն հայ երաժշտութեան մեր սիրոյ պապակը, որովհետեւ մեր հոգին միշտ ծարաւի է եւ կարիքը ունի հայկականութիւն ներշնչող հայկական երգերու ըմբոշխումին:

Երեկոյթը կը վայելէր եգիպտահայ երեք յարանուանութեանց պետերու հովանաւորութիւնը: Ներկայ էին Արժ. Տ. Նշան Խչկր. Քհնյ. Պէյլէրեան, Պատկ. Թեմական Ժողովի ատենապետ՝ Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեան, Պատկ. Քաղաքական Ժողովի ատենապետ՝ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան, Հ.Բ.Ը.Մ.ի Եգիպտոսի Կեդրոնական Յանձնաժողովի ատենապետ՝ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան, ազգային երեսփոխաններ, մշակութային եւ այլ միութիւններու ներկայացուցիչներ:

Երգչախումբը իր առաջին *Ալագեազ* ելոյթովն իսկ խանդավառեց մթնոլորտը: *Սարերը ման եմ եկել* խմբերգը որուն մենակատարն էր Օր. Իրիս Գայսէրլեան, աւելի ոգեւորեց ներկայ հանդիսականները:

Երգչախումբը երգեց նաեւ *Տէր ողորմեա* եւ ապա Օր.ներ Արփի Գալընեան, Արփի Ճանիկեան եւ Պրն. Էտուար Միլատ երգեցին *Խամբաճի երգը* որ այնքան հմայիչ էր:

Երբ Պր.ներ Ռաֆֆի Չէչճէնեան եւ Պերճ Տէր Ներսէսեան երգեցին *Մարալ մարալ* երգը, ներկայ հանդիսականներու կողմէ ջերմ ընդունելութիւն գտան եւ անդադրում ծափահարութիւնները ստիպեցին որ կրկնուի երգը:

Նման խանդավառ գնահատանքի արժանացաւ նաեւ *Դու ինչպէս մի աստղ* երգը զոր կատարեց երգչախումբը: Իսկ *Յիս քու դիմէթըն* որ յաջորդեց անոր, երգուեցաւ մեզի ծանօթ արուեստագէտ Պրն. Ռաֆֆի Չէչճէնեանին կողմէ, ու թովեց բոլոր ունկնդիրները:

Յայտագրին առաջին մասը վերջացաւ *Քամանչա* երգով որ կատարեց երգչախումբը ու ծափահարութեանց որոտին տակ անգամ մը եւս կրկնուեցաւ:

Կարճ դադարէ մը ետք յայտագրին երկրորդ մասը սկսաւ *Գարուն ա* երգով, երգչախումբի կատարմամբ, որ շատ գրաւիչ էր։ Անոր յաջորդեց *Տէր կեցոյ* եկեղեցական երգը, որ այնքան տպաւորիչ էր։ Նոյնքան հիանալի էր *Լուսնակ գիշեր* երգը։ Հապա *Գիշեր ցերեկ*ը, որուն մենակատարն էր Տիկին Սիլվա Թէրզիպաշեան, դիւթեց հանդիսականները եւ երկարատեւ ծափողջոյններ կրկնել տուին զայն։

Խանդավառութիւնը գագաթնակէտին հասաւ Պր.ներ Ռաֆֆի Չէչճէնեանի եւ Էտուար Միլատի երգած *Մախմուր աղջիկ* երգով, որ իսկական վայելք մը եղաւ։ Յաջորդ երգը *Որտեղ գտնեմ քեզ* երգն էր, զոր կատարեց երգչախումբը։ Վերջին երգը *Կռունկներ*ն էր, որուն եզրափակիչ կատարումը եղաւ հայ երգը պանծացնող Կռունկ երգչախումբի սոխակներու դայլայլումով։

Այսքան շէնշող երաժշտական երեկոյթ մը վայելելէ ետք, վստահաբար ամէն հանդիսական ի մտի հարց տայ ինքն իրեն, արդեօք նման երաժշտական խմբերգային երեկոյի մը ներկայ գտնուելու պատեհութիւն պիտի ունենայ կրկին...

Սպասելի են նման յաջող խմբերգային համոյթներ եւ կը յուսանք, որ խմբավար Հայկ Սարգիսեան պիտի շարունակէ իր առաքելութիւնը, խանդավառելով եգիպտահայութիւնը եւ ինչո՛ւ չէ նաեւ այլուր։

Կռունկ երգչախումբի Շաբաթ օրուան խմբերգային երեկոյին յաջողութեան իրենց արուեստական կարողութիւնը մատուցին դաշնակով՝ Տիկին Կասիա Ճղալեան, սրինգով՝ Տիկին Անահիտ Սարգիսեան եւ տհոլով՝ Պրն. Ռուբէն Թէրզիպաշեան ու ստացան ծաղկետուփեր։

Չենք ուզեր Կռունկ երգչախումբի երգահանդէսը «փայլուն» որակել, որովհետեւ այդ որակումը այլեւս սովորական դարձած է անոր համար, այլ՝ պէտք է ըսել, «վայելքի օր» մը եղաւ, որովհետեւ ան հայ երգերով պարուրեց ներկաներու հոգին ջերմ հայկականութեամբ։ Պէտք է դիտել տալ, որ ամէն խմբերգային երեկոյի, խմբավար Հայկ Սարգիսեան մեզ կը ներկայանայ յայտագրային նորութիւններով եւ ատիկա բարենիշ մըն է, երաժշտագէտի մը յառաջդիմութիւնը բնորոշող։

Կը շնորհաւորենք զայն եւ Կռունկ երգչախումբի բոլոր անդամները եւ յաղթական երթ կը մաղթենք անոնց։

*Արեւ*, 12 Մայիս 1992, 76-րդ տարի, թիւ 22056, էջ 1

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՂԹԱՆՔ ԳՈՀԱԲԱՆԱԿԱՆ

Կիրակի, 24 Մայիս 1992-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, յընթացս Ս. Պատարագի պիտի ոգեկոչուի

**ՅԻՇԱՏԱԿԸ ԱՇԽԱՐՀԱԶՕՐԱՑ ԵՒ ԶՕՐԱՎԱՐԱՑՆ ՀԱՅՈՑ**

որք կատարեցան ի հերոսամարտին Սարդարապատի 1918 ամի, վասն հաւատոյ եւ հայրենեաց:

Արդ, 1918 Մայիսի 28-ին, Հայաստանի Առաջին Հանրապետութեան հռչակման առթիւ, գոհաբանական մաղթանք պիտի կատարուի, ըստ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետի 14 Յունիս 1989-ի որոշման կոնդակաւ հրահանգին:

Տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ Գոհաբանական մաղթանք եւ հոգեհանգիստ, հերոսներու եւ մարտիրոսներու հոգւոց ի հանգիստ:

Ս. Պատարագի երգեցողութիւնները կը կատարէ ՇՆՈՐՀԱԼԻ երգչախումբը ղեկավարութեամբ Մօ. Ծդ. Յակոբեանի եւ երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի եւ Օր. Արփի Ճանիկեանի:

Սկիզբ ժամերգութեան ժամը 8.15-ին
Սկիզբ Ս. Պատարագի ժամը 10-ին
Գոհաբանական Մաղթանք ժամը 10.30-ին
Հոգեհանգիստ ժամը 11-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն
*Արեւ*, 21 Մայիս 1992, 77-րդ տարի, թիւ 22064, էջ 4

# ՊՐԱՇՈՎ, ՌՈՒՄԱՆԻԱ

# ՅՈՒԼԻՍ (առաջին կէս) 1992

# ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ՀԵՌԱՏԵՍԻԼԻ ԵՐԳԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ ԱՆՈՒՇՔԱ Կ’ԱՐԺԱՆԱՆԱՅ ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿԻ

Անուշքայի երգած չորս երգերէն երեքը մշակուած են Հայկ Սարգիսեանի կողմէ.

Երգի վերնագիր՝ *Քոնթ ֆէն*
Խօսք՝ Պահաա’ Էլ-Տին Մոհամմէտ
Եղանակ՝ Հասան Ապուլ Սըուտ
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Երգի վերնագիր՝ *Մուշ պահլամ պիք*
Խօսք՝ Մակտի Ալ-Նակկար
Եղանակ՝ Զիյատ Ալ-Թաուիլ
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Երգի վերնագիր՝ *Մուշ պը իտի*
Խօսք՝ Մակտի Ալ-Նակկար
Եղանակ՝ Մարսէլ Տրակոմիր
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

# ԱՆՈՒՇՔԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿԸ ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ՀԵՌԱՏԵՍԻԼԷՆ

ՄԱԿՏԻ ԱՊՏԷԼ ԱԶԻԶ
Թարգմանութիւն արաբերէնէ՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ շաբաթ, ռումանական հեռատեսիլի կազմակերպած երգի փառատօնին Անուշքա կը տիրանայ առաջին մրցանակի։ Փառատօնին կը մասնակցէին Լիբանանէն եւ 23 եւրոպական երկիրներէ երգիչներ։

Ռումանական հեռատեսիլը Պրաշով քաղաքին մէջ կազմակերպած էր երեք մրցոյթներ, որոնց ընթացքին Անուշքա ներկայացաւ չորս երգերով՝ *Քոնթ ֆէն*, *Մուշ պահլամ պիք*, *Ապայան զէն* եւ *Մուշ պը իտի*, եղանակ՝ Հասան Ապուլ Սըուտ, Զիյատ Ալ-Թաուիլ, Հայկ Սարգիսեան եւ Մարսէլ Տրակոմիր։

Ռումանիա գտնուած ժամանակ Անուշքա համաձայնագիր կը ստորագրէ իր չորս ալպոմները հրապարակելու Արեւելեան Եւրոպայի երկիրներուն մէջ։

*Ախպար ալ-եում*, օրաթերթ, Գահիրէ, 18 Յուլիս 1992, 48-րդ տարի, թիւ 2489, էջ 2

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Կիրակի, 26 Յուլիս 1992–ին,* ՏՕՆ է ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ, ՎԱՐԴԱՎԱՌ։

*Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ։*

*Ս. Պատարագը պիտի մատուցանէ եւ քարոզէ*

**ԳԵՐՇ.Տ. ԶԱՒԷՆ ՄՐԲ. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Առաջնորդ Հայոց Եգիպտոսի*

*Ս. Պատարագէն ետք պիտի կատարուի խաղողի օրհնութիւն, ըստ Հայց. Եկեղեցւոյ աւանդութեան։*

*Երգեցողութիւնները պիտի կատարուին «ՇՆՈՐՀԱԼԻ» երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Մօ. Եղ. Յակոբեանի եւ երգեհոնահարութեամբ Մօ. Հայկ Սարգիսեանի եւ Արփի Ճանիկեանի։*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 7.45-ին*

*Ս. Պատարագ առաւօտեան ժամը 9.45-ին*

*Խաղողի օրհնութիւն առաւօտեան ժամը 11-ին*

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Յայտարարութիւն

*Արեւ*, 16 Յուլիս 1992, 77-րդ տարի, թիւ 22106, էջ 4

## 1992

Անուշքայի (Անուշքա Չատրճեան) ալպոմը, ուր տեղ գտած են
Հայկ Սարգիսեանի յօրինած եւ մշակած երեք երգեր

Ալպոմի վերնագիր՝ *Ապայան զէն*
Պիտակ՝ Հայ Քուալիթի TC HQ 007
Ձեւաչափ՝ Երիզ (քասէթ)
Ձայնագրութիւն՝ Սթուտիոներ՝ Սոթ Էլ-Հոպպ / Էմ Սաունտ / Քորնէթ
Արտադրութիւն՝ Ալ-Աութար Ալ-Զահապէյա

Երգի վերնագիր՝ *Քոնթ ֆէն*
Խօսք՝ Պահաա՛ Էլ-Տին Մոհամմէտ
Եղանակ՝ Հասան Ապուլ Սըուտ
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Երգի վերնագիր՝ *Եա քալպի*
Խօսք՝ Մակտի Քամէլ
Եղանակ՝ Հայկ Սարգիսեան
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Երգի վերնագիր՝ *Մուշ պահլամ պիք*
Խօսք՝ Մակտի Ալ-Նակկար
Եղանակ՝ Զիյատ Ալ-Թաուիլ
Մշակում՝ Հայկ Սարգիսեան




Անուշքայի ալպոմին անուանաթերթը

# أنوشكا ١٩٩٢ أبيّن زين

**الوجه الأول :**

| | تأليف | تلحين | توزيع |
|---|---|---|---|
| ١- أبيـّن زيـن | سامح العجمى | مصطفى قمر | حميد الشاعرى |
| ٢- ماعرفش ليه | مجدى النجار | وائل صبرى | أشرف محروس |
| ٣- كنت فين | بهاء الدين محمد | حسن ابو السعود | هايك ساركيسيان<br>تنفيذ / أشرف محروس |
| ٤- مع قلوبنا | رضا أمين | محمد الموجى | أشرف محروس |

**الوجه الثانى :**

| | تأليف | تلحين | توزيع |
|---|---|---|---|
| ١- يا قلبى | مجدى كامل | هايك ساركيسيان | هايك ساركيسيان |
| ٢- مش بحلم بيك | مجدى النجار | زياد الطويل | هايك ساركيسيان<br>تنفيذ / أشرف محروس |
| ٣- ولاد الشمس | بهاء الدين محمد | زياد الطويل | أشرف محروس |
| ٤- علامة | عادل عمر | حميد الشاعرى | حميد الشاعرى |
| ٥- بافتح شباكى | بهاء الدين محمد | حسن أبو السعود | أشرف محروس |

تم التسجيل باستوديوهات : **صوت الحب / إم ساوند / كورنيت**

مهندسى الصوت : **لطيف بشاى / أحمد جوده / محمد صقر**

إنتاج فنى : **شركة الأوتار الذهبية**



طبع و توزيع : **شركة هاى كواليتى**

طارق عبدالله



٢٨ شارع النور - المهندسين - القاهرة - ت : ٧٠٥٤٦١

Անուշքայի ալպոմին բովանդակութիւնը

## 1994

Անուշքայի (Անուշքա Չատրճեան) ալպոմը, ուր տեղ գտած է
Հայկ Սարգիսեանի մշակած մէկ երգ

Ալպոմի վերնագիր՝ *Քատտաա*
Պիտակ՝ Հայ Քուալիթի TC HQ 007
Ձեւաչափ՝ Երիզ (քասէթ)
Ձայնագրութիւն՝ Սթուտիոներ՝ Սոթ Էլ-Հոպպ / Ամրիքանա / Քորնէթ
Արտադրութիւն՝ Ալ-Ութար Ալ-Զահապէյա

Երգի վերնագիր՝ *Մուշ պը իտի*
Խօսք՝ Մակտի Ալ-Նակկար
Եղանակ՝ Մարսէլ Տրակոմիր
Մշակում՝ Հայկ Սարգիսեան




Անուշքայի ալպոմին անուանաթերթը

## ԱՊՐԻԼ 2005

# ՍԱՅԷՏ ՏԱՐՌՈՒԻՇ, *ԱՀՕ ՏԱԼԼԸ ՍԱՐ*

Լարային քառանուագի համար
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Առաջին տպագրութիւն՝
*Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Ապրիլ 2005,
Ե. տարի, թիւ 2 (18), էջ 50-58

# AHO DALLE SAR

for String Quartet

Music: SAYED DARWISH
Arrangement: HAIG SARKISSIAN

Moderato e delicatamente ♩= 100

Violino I

Violino II

Viola

Violoncello

mf

5

mf

9

mf

mp

mp

*Ահօ տալլը սար*

Տպագրուած տարբերակի առաջին էջը

## ՅՈՒԼԻՍ 2005

# ՍԱՅԷՏ ՏԱՐՈՒԻՇ, *ԷԼ-ՀԵԼՈՒԱ ՏԻ*

Լարային քառանուագի համար
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Առաջին տպագրութիւն՝
*Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Յուլիս 2005,
Ե. տարի, թիւ 3 (19), էջ 23-30

# EL-HELOUA DI

for String Quartet

Music: SAYED DARWISH
Arrangement: HAIG SARKISSIAN

Moderato ♩= 96-100
Con desiderio

Violino I
Violino II
Viola
Violoncello

*Էլ-Հէլուա տի*
Տպագրուած տարբերակի առաջին էջը

## ՀՈԿՏԵՄԲԵՐ 2005

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ, *ՊԷՆԹ ԷԼ-ՇԱԼԱՊԷՅԱ*

Լարային քառանուագի համար
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Առաջին տպագրութիւն՝
*Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Հոկտեմբեր 2005,
Ե. տարի, թիւ 4 (20), էջ 41-47

# ՅՈՒՆՈՒԱՐ 2006

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ, *ԷԼ-ՀԵՆՆԱ*

Լարային քառանուագի համար
Մշակում՝ Հայկ Սարգիսեան

Առաջին տպագրութիւն՝
*Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Յունուար 2006,
Զ. տարի, թիւ 1 (21), էջ 51-62

# EL-HENNA

for String Quartet

Music: POPULAR
Arrangement: HAIG SARKISSIAN

**Andante contemplare** ♩= 110

Violino I
Violino II
Viola
Violoncello

*mf dolce*

5

*mf dolce*
*mp*

9

*mf dolce*
*mf dolce*
*mp*
*mp*

*Էլ-հեննա*
Տպագրուած տարբերակի առաջին էջը